ՌՈՒԲԵՆ ԶԱՐՅԱՆ

# ՀՈՒՇԱՊԱՏՈՒՄ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

«ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ · 1975

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Երկու խոսք

## ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

Ամեն մարդու կյանքում էլ հետաքրքիր կողմեր կան: Ահա մի այդպիսի կողմ էլ իմ կյանքն ունի: Գուցե իմ սերնդակիցներն ավելի բեղմնավոր եղան իրենց գործում: Գուցե: Բայց մի կողմից,— դա կարող եմ հաստատ ասել,— բախտն ինձ բավական վաղ ժպտաց և ավելի, քան ընկերներիցս որևէ մեկին:

Ահա այդ մասին էլ ուզում եմ պատմել ընթերցողին:

Տասնվեց տարեկան էլ չկայի, երբ եղա Նար-Դոսի տանը: Մի տասը տարի էլ չէր անցել, որ Զարենցի կրտսեր ընկերներից էի: Այնուհետև Բակունցի ու Զորյանի: Ուսանող ժամանակս Շիրվանզադեի հետ մի ամբողջ ամիս, գրեթե ամեն օր հանդիպել եմ, զրուցել: Մի օր էլ մորիցս իմացա, որ Դեմիրճյանը մեր հեռավոր ազգականն է: Դրանից հետո ավելի շատ էի հայտնվում նրանց տանը, մանավանդ որ նույն բակումն էինք ապրում: Իսկ հետո բոլորովին երիտասարդ, հայտնվեցի գրական աշխարհի խաչմերուկներում՝ հրատարակիչ, գրական հանդեսի խմբագիր, գիտական հաստատության ղեկավար: Անխուսափելի դարձավ ծանոթությունը, ապա նաև երկար տարիների բարեկամությունը Իսահակյանի, Փափազյանի, Սարյանի հետ: Նաև ուրիշների: Դարձա ուսուցիչներիս շատերի գործընկերը: Ես գիտական խորհրդի նիստի էի լինում այնպիսի հսկաների հետ, ինչպես Աբեղյանը և Աճառյանն էին: Մի խոսքով, հարաբերությունը գրականության ու արվեստի մեծերի հետ՝ պարադոքսալ

բնավորություն ստացավ: Երենք ավագ, են՝ կրտսեր, իրենք մեծ, են՝ փոքր, բայց պաշտոններիս բերումով ինձ վիճակված էր դեր խաղալ նրանց կյանքում: Հետագայում այս բոլորին ավելացան նաև արտասահմանյան հանախակի շրջագայությունները և բնականաբար, ծանոթությունը, իսկ ինչ որ դեպքերում և բարեկամությունը այնտեղ ապրող և գործող հայ ու այլազգի մասնագետների հետ:

Ես միշտ էլ, դեռևս վաղ հասակից, սիրել եմ հուշ կարդալ: Եվ հաճախ հուշերից ավելի մեծ բավականություն եմ ստացել, քան վեպից: Երբ ձեռքս ընկավ Էկերմանի ծավալուն գիրքը՝ «Զրույցներ Գյոթեի հետ»,— իսկ դա 1933-ին էր,— սովորություն դարձրի գրառել հանդիպումներս:

Դժբախտաբար, միշտ չէ, որ լասծս ու տեսածս գրի եմ առել, և այժմ դրա համար, իհարկե, ցավում եմ: Բացի այդ, ամեն ինչ չէ, որ գրի եմ առել: Մտածելով, թե մի օր հրապարակվելու են այդ գրառումները, գրի եմ առել այն, ինչ ժամանակին ունեցածս պատկերացումով կարելի էր ընթերցողին առաջարկել: Մի խոսքով՝ «ներքին խմբագիրը» արգելել է գրառելու բազմաթիվ զրույցներ, որոնք մի ժամանակ մեղավոր էին թվում ինձ, բայց անցած տարիները երեկվա անթույլատրելին այսօր թույլատրելի են դարձրել իրավամբ, բայց արդեն ուշ է և շատ բան անէացել է հիշողությանս մեջ:

Հետագոտող բանասերին երկրորդել կարելի է, գերազանցել նույնպես, իսկ հուշագիրն ինչ որ առումով անփոխարինելի է: Խոսքը չի վերաբերում լավ ու վատ գրելուն: Խոսքն այն մասին է, որ հուշագիրը հաճախ պատմում է այն, ինչ միայն իրեն է հայտնի: Եվ այդ անկրկնելիությունն էլ հուշագրությանը հաղորդում է մի առանձին արժեք:

Գրառումները լույս են տեսնում այնպես, ինչպես գրվել են ժամանակին: Իհարկե, լեզվական խմբագրումներով, կրճատումներով: Բաց եմ թողել որոշ գրառումներ, որոնք էթիկական նկատառումներով չի կարելի հրապարակել հիմա կամ ընդհանրապես: Սկզբում մտադրվեցի գրառումների հիման վրա նոր շարադրանք ստեղծել: Մի խոսքով՝ եղածը «հապեցնել» հոգեբանական այնպիսի դիտողություններով, որ բերել է իր հետ տարիների հասունությունը: Բայց հետո

հրաժարվեցի այդ մտքից և գրառումը պահպանեցի իր սկզբնական տեսքով:

Հուշակնարկների տակ թվականներ չեն դրված, որովհետև մեծ մասը գրվել է տարիների ընթացքում: Հուշակնարկների հաջորդականությունը որոշվել է հիմնականում ըստ «գործող անձանց» մահվան տարիների, այսինքն՝ թե ով երբ է դուրս եկել իմ կյանքից: Նախապատվությունը տրվել է այդ սկզբունքին, քանի որ հուշերս նվիրված լինելով ուրիշներին, իմ մասին են միաժամանակ:

Ռ. Զ.

## ՆԱՐ-ԴՈՍ

Աշակերտ էի այն ժամանակ, հազիվ 15—16 տարեկան պատանի, որի ուշքն ու միտքը ոչ այնքան դպրոցական դասերն էին, որքան գրականությունն ու թատրոնը։ Կարդում կլանում էի ձեռս ընկած գիրքը, ոչ մի նոր ներկայացում բաց չէի թողնում։ Ինքս էլ գրելու փորձեր էի անում։ Գրում էի արձակ, գլխավորապես պատմվածքներ։ Ինչի մասին՝ չեմ հիշում, ինչպես՝ այդ էլ չգիտեմ, երևի ոչ լավ, այլապես չէի հրաժարվի։ Բայց միտս է, միամտաբար կարծում էի, թե լավ պատմվածք գրելու համար ոչ թե տաղանդ է պետք, այլ հնչեղ անուն, ինչպես գտել էին իրենց համար հայ գրողներից շատերը՝ Րաֆֆի, Մուրացան, Շիրվանզադե, Վարուժան, Նար-Դոս, Սիամանթո, Տերյան, Զարենց...

24—25 թվականներն էին։ Ապրում էի Հավլաբարում։ Մեր տունը գտնվում էր Պոլկովայա փողոցում, այսպես կոչված «կազարմի թաղում»։ Զորանոցի մյուս կողմում Օբվոդնի անունով մի նեղլիկ փողոց կար։ Այնտեղ ապրում էր ընկերներիցս մեկը՝ Հմայակ Պողոսյան. այժմ ճարտարապետ։ Նրանց տանը հաճախ էինք լինում։ Զրուցում էինք, երազում, ինչպես բոլոր պատանիները, խոսում էինք գրականությունից, թատրոնից, մեր կարդացած գրքերից, դատողություններ անում, վիճում։ Ես, օրինակ, տոլստոյական էի, մի ընկեր ունեի, որ հակառակը՝ դոստոևսկիական էր։ Մի օր խոսք բացվեց Նար-Դոսի մասին։ Այդ ժամանակ կարդում էի նրա «Սպանված աղավնին»։ Ասացի, թե շատ կուզեի տեսնել հեղինակին։ Ընկերոջս հայրը ծիծաղեց։ Ես հարցական նայեցի նրա կողմը։

— Շա՞տ ես ուզում։ Դե որ էդպես է՝ մոտիկ արա։ Տեսնո՞ւմ ես դռան մոտ կանգնած էն մարդուն։ Տեսնո՞ւմ ես։ Այ, հենց քո ասած Նար-Դոսը դա է։

Նայեցի նրա ցույց տված ուղղությամբ։ Այդ մարդուն առաջ էլ էի տեսել։ Աչքերիս չհավատացի։ Թվում էր թե ընկերոջս հայրը կատակում է։ Նա տեսավ, որ չեմ հավատում, այս անգամ արդեն լրջացավ.

— Հենց նա է, որ կա։

Նետվեցի փողոց։ Մի պատրվակով անցա կողքից։ Մոտիկից նայեցի։ Հա՛, տեսել էի նրան և տեսել էի մի քանի անգամ։ Եվ երբեք մտքովս չէր անցել, թե նա գրող է, կամ ընդհանրապես կարող է գրականության հետ կապված մարդ լինել, ուր մնաց՝ Նար-Դոսը, այն նուրբ գրվածքների հեղինակը։ Շիրվանզադեին տեսել էի։ Ճիշտ է, բոլորովին այլ կերպ էի պատկերացնում նրան, բայց այն, ինչ որ տեսա համենայն դեպս գերազանցեց երևակայությանս ուժով ստեղծված կերպարին։ Իսկ այս դեպքում՝ ճիշտ հակառակը. ի՞նչ էի պատկերացնում և ի՞նչ տեսա։

Միջահասակ մարդ էր, բավական անշուք հագնված. խիստ հասարակ արտաքինով, կոշտ դիմագծերով և նայողը երբեք չէր ասի, թե մտավոր աշխատանքի հետ կապված մեկն է։ Ես ոչ մի կերպ չէի կարողանում հաշտեցնել իրար հետ այդ հասարակ արտաքինը նրա գրվածքների բարձր ճաշակի հետ, դիմագծերի կոպտությունը և նրա արվեստի նրբությունը։

* * *

Նար-Դոսը ցերեկով մի, երբեմն երկու-երեք ժամով գալիս էր Հայարտուն։ Մի բազկաթոռ կար, սիրում էր բազմել նրա մեջ։ Բոլորը գիտեին, որ դա Նար-Դոսի մշտական տեղն է։ Եվ որ օրը Նար-Դոսը չէր գալիս, իսկ այդպիսի օրեր լինում էին, բազկաթոռը մնում էր թափուր։

Հավաքվում էին գրողներ, արվեստագետներ և զրուցում էին, նորություններ պատմում, վիճում։ Ես էլ մեկ-մեկ փախչում էի դասերից, գնում Հայարտուն, որովհետև այստեղ տե-

ղի ունեցած զրույցներից շատ ավելի նյութ էի քաղում։ Գնում էի, խոնարհ հարգանքով բարևում Նար-Դոսին և հետաքրքրությամբ հետևում գրողների վեճերին, լսում, թե ով ինչ է ասում։

Նար-Դոսը չէր խառնվում խոսակցությանը, վեճերին չէր մասնակցում, երբեմն նույնիսկ այնպիսի տպավորություն էր ստացվում, որ չի էլ լսում, թե ինչ են խոսում կամ ինչի մասին վիճում։ Նստում էր լուռ, նայում առաջը, մեկ մեկ էլ շուրջը։ Հարց տային՝ կպատասխաներ, այն էլ կարճ, շատ սեղմ, իսկ եթե ոչ, իր համար լուռ կմնար։ Եվ այդպես մի երկու ժամի չափ։ Շատ հազվագյուտ էր պատահում, որ խոսի, մի բան ասի։ Եվ եթե մի բան էլ ասում էր, ապա դա էլ մեծ մասամբ հարց էր լինում։

Մի օր Նար-Դոսը նստած իր սովորական բազմոցին, նամակ էր կարդում։ Երբ վերջացրեց, շուրջը նայեց, դիմագծերը ոչինչ չէին ասում, բայց աչքերը բավականություն էին արտահայտում, զգացվում էր, որ խոսելու կարիք ունի։ Տեսավ, որ բացի ինձանից ոչ ոք չկա, դարձավ իմ կողմը։

— Մի ուսուցչուհի է գրում, գյուղից։ Ասում է՝ ես ձեր Աշխենն եմ, դուք իմ կյանքն եք նկարագրել, իմ հոգեբանությունը։

Լռեց։ Հուզված էր երևում։

— Իր շնորհակալությունն է հայտնում։

* * *

Հայարտանը Նար-Դոսին նվիրված հավաքույթ էր։ Զեկուցում էր Մարգարը։ Խոսեց նրա պատմվածքների մասին ընդհանրապես, բայց կանգ առավ գլխավորապես «Մեր թաղի» վրա, որ այն ժամանակ որպես շարք դեռևս գոյություն չուներ։ Գնահատեց շատ բարձր, ինչ-որ կապեր և ընդհանրություններ տեսավ Զեխովի ու Գորկու հետ։ Շատ մարդ կար։ Հավաքույթը ջերմ անցավ։ Ուրիշներն էլ խոսեցին։ Ասացին թե Նար-Դոսը նուրբ արվեստագետ է, խոշոր գրող, որ մինչև հիմա արժանի կերպով չի գնահատված և այլն։ Նար-Դոսը չկար։ Տարօրինակ էր այդ և բոլորը ուշա-

դրույթյուն դարձրին դրա վրա։ Մյուս օրը, ցերեկով, Հայաստան էր եկել և սովորականի պես՝ լուռ նստած էր բաղնոցի մեջ։ Մոտեցավ նրան Գարեգին Մելոյանը և հարցրեց, թե ինչու չէր եկել երեկվա հավաքույթին. հիվա՞նդ էր, թե՞ չգիտեր, որ հավաքույթ կա։

— Սկզբունքով,— պատասխանեց Նար-Դոսը։

Մելոյանը չհասկացավ։

— Գրողը չպետք է ներկա լինի իրեն նվիրված հավաքույթին։

— Ինչո՞ւ։

— Որ խոսողները ազատ զգան։

Փոքրիկ դադարից հետո շարունակեց.

— Ուզեն քննադատել՝ պիտի քաշվեն, ուզեն գովել՝ ես ինձ պիտի վատ զգամ։

* * *

Երիտասարդ գրողների հավաքույթ կար Հայարտանը։ Քննարկման էր դրված իմ պատմվածքը։ Ոչ վերնագիրն եմ հիշում, ոչ էլ բովանդակությունը։ Կարդացի պատմվածքը, հետո ելույթներ եղան։ Բոլորն էլ պատմվածքի մասին խոսեցին գովեստով, ես էլ, իհարկե, հավատացի ու ոգևորվեցի։

Երբ հավաքույթը վերջացավ և մենք աղմուկով անցանք դահլիճ՝ Նար-Դոսն իր բազկաթոռին նստած էր։ Մի քանիսը շրջապատեցին նրան և սկսեցին հիացմունքով արտահայտվել նրա վեպերի մասին։ Նար-Դոսը կարմրեց և, որպեսզի փոխի նյութը, հետաքրքրվեց, թե ինչով էինք այսօր զբաղված։ Տղաները մատնացույց արին ինձ և ասացին, որ իմ պատմվածքն էր քննարկվում։

— Ուրեմն՝ ձեր մեջ արձակ գրող էլ կա։ Հետաքրքիր է, իսկ ես կարծում էի, թե բոլորդ բանաստեղծներ եք։

Նայեց իմ կողմը, դեմքը հանդարտ էր, բայց աչքերը զննող արտահայտություն ունեին, կարծես արտաքինս ուսումնասիրելով՝ ուզում էր որոշել, թե ինձնից գրող դուրս կգա՞, թե չէ։

— Զարյա՞ն. այդ ազգանունով արդեն երկուսը կան,

կան և Զորյաններ, չփոխել կարող են։ Ավելի լավ չի լինի՞ փոխեք, ընտրեք մի ուրիշ, չկրկնվող ազգանուն։

Ձայն չհանեցի, բայց համաձայն չէի։ Այդ ստորագրությամբ արդեն մի երկու պատմվածք էր լույս տեսել և միամտաբար կարծում էի, թե բոլորն արդեն ճանաչում են ինձ, ինչպես, ուրեմն, կարելի է փոխել։

Նար-Դոսը հասկացավ, թե ինչ եմ մտածում։

— Գուցե մի տառ փոխեք, այն ժամանակ փոփոխությունը զգալի չի լինի. կարելի է ստորագրել Զալյան։

Դրան էլ համաձայն չէի, բայց դարձյալ ձայն չհանեցի։ Խոսակցությունն այլ ընթացք ավեց մեր ընկերներից մեկը, որը Նար-Դոսին խնդրեց, որ եթե ժամանակ ունի՝ կարդա իմ պատմվածքը։ Նար-Դոսը համաձայնեց։ Ավելի մեծ երջանկություն չէր կարող լինել ինձ համար։ Ասացի, թե այսօրվա դիտողությունները նկատի առնելով, նորից կարտագրեմ պատմվածքս և կտամ իրեն։

* * *

Մի շաբաթ հետո պատմվածքս հանձնեցի Նար-Դոսին։ Ասաց, թե մի երկու օրից կարող եմ անցնել իր մոտ՝ երեկոյան դեմ, ժամը 8-ի կողմը։ Ուզեց բացատրել տան տեղը, ասացի, որ գիտեմ։ Նույն թաղումն եմ ապրում։ Ժպտաց։

— Ուրեմն թաղակիցներ ենք. ավելի լավ։

Պատվիրած օրը, նշանակված ժամին գնացի։ Առաջարկեց նստել պատշգամբում, որտեղից մի սքանչելի տեսարան էր բացվում։ Ասես ափի մեջ՝ քո աչքերի դիմաց քաղաքի մեծ մասն էր, երևում էր Քուռ գետը և վրան՝ Մուխրանյան հսկայաշեն կամուրջը։

Մինչև պատմվածքի մասին խոսելը՝ մի երկու հարց տվեց, ուզեց իմանալ, թե որ դպրոցումն եմ սովորում, ով է հայոց լեզվի ուսուցիչս, որտեղից եմ, ովքեր են ծնողներս։

Ելավ տեղից, գնաց սենյակ և բերեց պատմվածքս։ Հավանաբար քաջալերելու նպատակով մի երկու խրախուսական խոսք ասաց, որից հետո դիտողություններն արեց այնպես, կարծես ավելի շատ խորհուրդ էր տալիս։

— Ածական շատ եք գործածում, լավ կլինի խուսափեք։ Գեղեցիկ լեզուն այն է, երբ կարդալիս չես էլ զգում, որ գեղեցիկ է։ Զգտեք միտքը ձևակերպել հստակ, ճշգրիտ։

Երբ խոսքը վերջացրեց, ժպտաց.

— Ահա բոլորը, սիրելի Թաղակից։

Ես ասացի, որ չգիտեմ, թե գրածս ինչպես կոչեմ. պատմվա՞ծք, թե նովել, մեր ուսուցիչն ասում է, թե դրանք նույն բաներն են, իսկ գրականության մեջ էլ կարդացել եմ, որ տարբերություն կա։

— Ոչինչ էլ մի գրեք. թող ընթերցողն ինքը որոշի, թե ինչ է։

Հարցրի, թե իր կարդացած պատմվածքն արժե՞ տպագրության հանձնել.

— Իմ կարծիքով, ոչ։

Ասաց։ Նայեց դեմքիս և անմիջապես՝ իրեն համար անսովոր շտապողականությամբ ավելացրեց.

— Այդ որակի գործեր, իհարկե, տպագրվում են, բայց խորհուրդ չէի տա շտապել։ Պետք է ավելի լավ գրել։ Ուրիշը գրեք, ավելի երկար մշակեք։

* * *

Մոտեցավ Նար-Դոսին մեկը, ասաց, թե ինքը գրականագետ է, տվեց իր ազգանունը, որ միտս չի մնացել և չեմ հիշում, որ նրա անվանը մամուլում հանդիպած լինեմ երբևէ։ Բայց նա իր անունը տվեց այնպես, ասես հռչակված մի մարդ լիներ։ Խոսվածքից երևում էր, որ վանեցի է։ Հագնված էր բավական լավ, կոկ, մաքուր, օսլայած օձիք, վառ կարմիր փողկապ, գունավոր թաշկինակի ծայրը դուրս էր նայում կրծքագրպանից։ Ինքնահավան մի ժպիտ կար դեմքին, թեև խոսում էր սիրալիր արտահայտությամբ, բայց այնպես, կարծես այդ մի զիջում էր նրա կողմից։

Նար-Դոսը զարմացած հայացքով լսում էր նրան։

Անծանոթ գրականագետն ասաց, թե ինքը ձեռնամուխ է եղել գրելու մի աշխատություն Նար-Դոսի գրական ժառանգության մասին։

— Ես դեռ չեմ վախճանվել,— ասաց Նար-Դոսը։

— Իսկ միթե գրողի մահից հետո միայն կարելի է գիրք, այսինքն՝ ուսումնասիրություն գրել նրա մասին։

Նար-Դոսը, որ քիչ առաջ փոքր ինչ նեղացած տեսք ուներ, խաղաղված ձայնով պատասխանեց.

— Ինքներդ ասացիք, թե ուզում եք իմ գրական ժառանգության մասին գրել։

Նար-Դոսը շեշտեց ժառանգություն բառը։

Այժմ գրականագետն էր չռել աչքերը նրա վրա։ Նա չէր հասկանում, թե ինչ է ասում Նար-Դոսը։ Վերջինս բացատրեց նրան, որ մարդ մեռնելուց հետո է միայն ժառանգություն թողնում։

Գրականագետը հասկացավ, թե չէ, չգիտեմ, բայց կարմրեց։ Մելոյանը, որ ներկա էր զրույցին, զգաց այդ և շտապեց նրան դուրս բերել անհարմար դրությունից՝ ասելով, թե ոչինչ, պարզապես հաջող չձևակերպվեց միտքը, ավելի լավ է, որ շարունակի իր խոսքը, ասի, թե ինչ է ուզում։

Գրականագետը, սակայն կորցրել էր նախկին ինքնավստահությունը և այժմ խեղճացած ձայնով, մի մեղավորի ժպիտ դեմքին, ասես մեկը գլխին տվել էր, ասաց, թե ուզում է ծանոթանալ Նար-Դոսի մասին եղած քննադատական գրականությանը և, մտածելով, որ իբրև հեղինակ երևի ժամանակի ընթացքին հավաքել է այդ բոլորը, խնդրում է հնարավորություն տալ իրեն նայելու։ Նար-Դոսը շատ հանգիստ, ինչպես առաջ, ասաց, որ չունի իր մասին գրված հոդվածները, հետևաբար և չի կարող օգտակար լինել։

Երբ գրականագետը ներողություն խնդրեց ու հեռացավ՝ Մելոյանը հետաքրքրվեց, թե իսկապես չունի, թե՞ պարզապես ուզում էր ճանապարհ դնել։ Նար-Դոսը կարծես վիրավորվեց, որ ենթադրում են, թե ինքը կարող է ճիշտ չասել, բայց այդ զգացումը չարտահայտեց և ասաց միայն, որ ժամանակին չի հավաքել, չի պահպանել։

Մելոյանը զարմացավ։

Նար-Դոսն ասաց, որ իր մասին շատ չեն գրել, ընդհանրապես քննադատությունը քիչ է երես տվել իրեն, հազարից մեկ է անդրադարձել։ Երեք դեպք է հիշում. Բերբերյանը,

Տերտերյանը, մեկ էլ վերջերս Մարգարը։ Հատուկենտ հոդվածներ էլ են գրվել, այսպես ասած՝ մատենախոսականներ։ Դրանց մեջ ուշադրության արժանի հոդված չի հիշում։

Լռեց։ Մելոյանն իրեն անհարմար էր զգում, կարծես ինքը մեղավոր լիներ քննադատության անտարբերության համար։ Ոչ մի ձայն չէր հանում։

Նար-Դոսը շարունակեց.

— Սկզբում վշտանում էի, հետո ընտելացա։ Ինձ միշտ մխիթարել եմ նրանով, որ քննադատների համար չեմ գրում, այլ ընթերցողի։ Ճիշտն ասած, թե ընթերցողն ինչ կարծիք ունի, այդ էլ լավ չգիտեմ։ Դե, ես որտեղից պետք է իմանամ, հո չեն գա ու ինձ ասի, թե ձեր վեպը շատ հավանեցինք, կամ ընդհակառակը՝ վատն է, ձանձրացանք։

Նորից լռեց և մի փոքր հետո ամփոփեց.

— Դե՛հ, Գարեգին, լավ, թե վատ գրել եմ, քառասուն տարի գրել եմ, երևի ավելի շատ վատ, քան լավ։

Մելոյանն սկսեց հավատացնել նրան, որ միշտ էլ լավ է գրել, որ նա մեր հռչակավոր գրողներից է, որին ընթերցողը շատ է սիրում, հաճույքով կարդում է և այլ նման բաներ։

Նար-Դոսը սկզբում ուշադիր լսում էր, հետո սկսեց վատ զգալ, որ իրեն իր ներկայությամբ այդպես գովում են։

* * *

Մի քանի գրող շրջապատել էին Նար-Դոսին և վիճում էին։ Մեկն ասում էր, մյուսն առարկում, մեկը մի փաստ էր բերում, մյուսը՝ հակադիր օրինակ։ Նար-Դոսը լուռ էր, ձայն չէր հանում, թեև ամեն մի խոսող իր միտքն ավարտելիս նայում էր նրա կողմը, երևի կամենալով իմանալ, թե իր ասածին նշանավոր գրողը հավանությո՞ւն տալիս է, թե ոչ։

Վիճում էին այն մասին, թե գեղարվեստական գրականությունը միտում պետք է ունենա, թե՞ չէ։ Մի մասը պնդում էր, որ ոչ, մյուս մասը գտնում էր, որ գրականությունը միշտ էլ միտումնավոր է եղել։

Երբ Նար-Դոսին դիմեցին, նա այն միտքը հայտնեց, թե չկա գրվածք, որով հեղինակը չկամենա մի բան ասել, բայց,

դրա մասին հեղինակը չպետք է հայտարարություն անի, գրողը պիտի կարողանա արծարծվող միտքը լավ միահյուսել վիպական գործողությանը և այն ժամանակ ընթերցողը գիրքը կարդալուց հետո ինքնաբերաբար կկատարի հարկավոր եզրակացություն։

* * *

Մի օր Նար-Դոսին հարցրին, թե ինչ կարծիք ունի այսինչ բանաստեղծի մասին։ Անմիջապես չպատասխանեց։

—Վերջերս չեմ կարդացել,— ասաց նա,— բայց առաջ, որ կարդացի ոչ մի բավականություն չստացա, վերացական էր ու փքուռույց, իսկ այդ տեսակ բանաստեղծությունը, չգիտեմ, թե ինչ կարծիքի եք դուք, իմ ճաշակովը չէ։

Լռեց։ Մի փոքր հետո.

— Մեր բանաստեղծները կյանքից չեն գալիս։ Սա է նրանց դժբախտությունը։

* * *

Մի օր Նար-Դոսին մոտեցան Մարգարը և Գևորգ Մեսյանը։ Աթոռներ քաշեցին ու նստեցին դիմացը։

Մարգարը հարցրեց.

— Նոր վեպդ ավարտե՞լ ես։

— Ավարտել եմ։

— Բա ինչի տպագրության չես տալիս։

Նար-Դոսը ժպտաց.

— Մտքումս ամեն ինչ պատրաստ է, մնում է թղթին տալ։

— Դե՛, արա էլի։

— Ձեռքիս գործ կա. Հայաստանի հրատարակչության համար հատորներս եմ պատրաստում։ Պրծնեմ, թե չէ, դրան եմ ձեռնամուխ լինելու։

— Քանի հատոր է լինելու։

— Չորս։ Թե սա էլ հացնեմ՝ հինգերորդը կլինի։

— Ժողովածուից որևէ բան մնո՞ւմ է դուրս։

— Շատ. բոլոր պիեսները, հեքիաթները, առաջին գործերս։ Հա՛, ոտանավորներս։

— Դրանք էլ մի հատոր թող լինի։

— Չէ՛։ Չարժեն։ Մի ժամանակ շատ էի ոգևորված պիեսներով։ Իմ առաջին գործը պիես է եղել։ Կարծում էի, թե դրամատուրգ եմ։ Հիմի էլ որ մտածում եմ, մեկ մեկ նույն մտքին եմ գալիս։ Թումանյանն էլ իր մասին այդ կարծիքն ուներ, ասում էր՝ «սպասեք երբ ես դրամա գրեմ, էն ժամանակ կտեսնեք, թե ինչ գրող եմ»։ Ասում էր, բայց էդպես էլ չգրեց։

* * *

Նար-Դոսը ծայրահեղ համեստ էր, խիստ անգործնական մի մարդ, որ երբեք չի կարողացել կյանքը կազմակերպել իր արժանիքների համեմատ, երբեք չի կարողացել պաշտպանել սեփական շահը։ Եթե ուրիշները մտածել են նրա մասին՝ լավ, եթե չէ՝ շարունակվել է ամեն ինչ առաջվա պես։ Դիմել, խնդրել՝ անհարմար էր զգում։ Իսկ պահանջել՝ հակառակ էր նրա էության։ Դրանով պետք է բացատրել, որ նա սրբագրիչի հոգեմաշ աշխատանքը շարունակեց երկար տարիներ, սովետական կարգեր հաստատվելուց հետո էլ, այն ժամանակ, երբ ուրիշ գրողներ և արվեստագետներ, Նար-Դոսի համեմատությամբ երկրորդական դեմքեր, վայելում էին այն բոլոր արտոնությունները, որ իշխանությունը ստեղծել էր գրականության և արվեստի աշխատողների համար։

Չէր շփվում, հասարակության մեջ հազվադեպ էր լինում։ Այդ պատճառով էլ շատերն անունը լսել էին, երկերը կարդացել, բայց իրեն չգիտեին, չէին ճանաչում։

Հազարից մեկ էր պատահում, որ տեղ գնար, ճանապարհորդեր։ Եվ դա հասկանալի էր, որովհետև կյանքի ամենափոքրիկ դժվարությունից հուսահատվում էր, գլուխը կորցնում, չգիտեր, թե ինչ պետք է անի։ Նրա մասին միշտ ուրիշներն են հոգ տարել, տանը՝ կինը կամ հարազատները, դուրսը՝ ընկերները։

Մի անգամ Նար-Դոսին հրավիրում են Երևան՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման տարեդարձի հոբելյանական օրերին մասնակցելու։ Մեծ դժվարությամբ, տանեցիների և բարեկամների ճնշման տակ հրավերն ընդունում է և գալիս։ Հյուրեր շատ են լինում և նրան տեղավորում են հյուրանոցի այն սենյակում, ուր ապրում էր Արազին, որ Թիֆլիսից նոր էր Երևան փոխադրվել։

Հասնում է վերադարձի օրը։ Արազին տեսնում է, որ Նար-Դոսը մռայլ նստած է, հարցնում է, թե ինչ է պատահել։

— Ինչպե՞ս պիտի գնամ։

— Շատ պարզ։ Պետք է տոմս առնել։

— Հենց էդ է, որ կա, որտե՞ղ պիտի առնեմ, ինչպե՞ս պիտի առնեմ։

Արազին խոստանում է օգնել։ Միասին գնում են քաղաքային կայարան։ Մեծ հերթ է լինում։ Նար-Դոսը բոլորովին շփոթվում է։ Արազին խնդրում է սպասել, իսկ ինքն անցնում է կայարանապետի գրասենյակը և ասում, որ հայտնի գրող Նար-Դոսը պետք է Թիֆլիս մեկնի, խնդրում է գնացքի տոմս։ Անմիջապես տալիս են։ Երբ Արազին բերում է տոմսը, տալիս Նար-Դոսին, վերջինս զարմացած նայում է նրան ու ասում.

— Դու այդ ինչ գործնական մա՜րդ ես եղել, Արազի։ Չէ՛, դու կապրես, կապրե՜ս, Արազի՛։

* * *

Ոչ ոքի նեղություն չէր տա և եթե պատահեր, որ որևէ մեկը նրա համար մի չնչին բան աներ, չէր մոռանա երբեք, միշտ կհիշեր, տված խոսքը խոսք էր, բարեխիղճ, պարտաճանաչ, չլինի թե մի ուրիշն իր պատճառով նեղվի, իր համար տուժի։

Պատմում են, թե ինչպես մի ծանոթ Նար-Դոսին և նրա հետ միասին մի ուրիշ ընկերոջ հրավիրում է իր տուն։ Պայմանավորված ժամին գնում են և տեսնում, որ տանը չի։ Ընկերը զայրանում է, ասում, որ եթե հանդիպեն, ինքը կշշպռի, ինչ որ պետք է՝ կասի, իսկ Նար-Դոսը խնդրում է

ձևացնել, որ իբր ինչ որ պատճառով իրենք չեն կարողացել գնալ, ներողություն խնդրել, որ խոսք են տվել ու չեն պահել, որ չլինի, թե հանկարծ այն հրավիրողն իրենց պատճառով սրտնեղի, որ սրանք եկել են ու ետ դարձել։ Ու այդ բավական չէ, երդում է առնում նրանից, որ հանդիպելիս իսկապես զգացնել չի տա։

* * *

Մի օր նրան շրջապատեցին մի քանի երիտասարդ գրողներ և հայտնեցին իրենց ցանկությունը զրուցելու անվանի գրողի հետ։ Դեմքին մի գոհունակ ժպիտ երևաց։ Անսովոր այդպիսի հանդիպումների՝ նույնիսկ հուզվեց։ Հայտնեց իր պատրաստակամությունը պատասխանելու մեզ հետաքրքրող բոլոր հարցերին։ Պայմանավորվեցինք հաջորդ երեկո գնալ նրա տուն։ Գնացինք։ Հարցրեց, թե որտե՞ղ ենք ուզում նստել, սենյակո՞ւմ, թե պատշգամբում։ Մեկն ասաց, որ սենյակում ավելի լավ է, ավելի ամփոփ։

— Ես էլ այդ կարծիքի եմ։

Ասաց ու հրավիրեց ներս։ Բոլորեցինք սեղանի շուրջ։

— Դե՛, ես ձեզ լսում եմ։

Մի երկու հարց տվին, հիմա չեմ հիշում, թե ինչ, պատասխանեց։ Հետո մեկն ասաց՝ մեզ հետաքրքրում է, թե ինչպես է ինքը գրում, ինչ մեթոդով։

— Ուզում ենք գրելու արվեստը սովորել ձեզանից։

Նար-Դոսն անմիջապես չպատասխանեց։ Մտածում էր, թե ասես դժվարանում էր պատասխան գտնել։ Հետո այսպես խոսեց.

— Սիրելինե՛րս, այդպիսի հարցով պետք է դիմել կլասիկներին և ոչ թե ինձ։

Զարմացած իրար նայեցինք։

— Հա՛, ճիշտ եմ ասում, մի զարմանաք, կլասիկներին՝ Տուրգենևին, Տոլստոյին, Չեխովին։ Ա՛յ թե ումից պետք է սովորել։ Թե ինչպես են նրանք աշխատել, այդ մասին գրքեր և ուսումնասիրություններ կան։

Ու ասաց, որ թեև ինքը չի կարդացել, բայց հաստատ-

պես գիտե, որ կան։ Բայց ավելի լավ է, որ դրա փոխարեն նրանց երկերը ուշադիր կարդանք. սկզբում այնպես, բովանդակության հետ ծանոթանալու համար, իսկ հետո, երբ արդեն գիտենք, թե ինչ է կատարվում, կարդանք նորից, մի քանի անգամ։ Մի անգամ մեր առաջ խնդիր դնենք հետևել, թե ինչպես է տիպ ստեղծում, կամ ինչպես է հերոսներին խոսեցնում, մի այլ անգամ տեսնենք, թե ինչպես է կառուցում։ Սա շատ կարևոր է ստեղծագործության մեջ։ Ուշադիր լինենք, թե որ գրողն ինչպես է սկսում կամ ինչպես է վերջացնում։ Լավ սկիզբ գտնելը մեծ բան է. պետք է կարողանալ և վերջացնել, գտնել հաջող մի կետ և կանգ առնել։

Տղաներից մեկը, որ նոր էր կարդացել «Մահը», հարցրեց, թե քանի տարի է աշխատել վրան։

Ասաց, թե դժվարանում է ասել, սկսել է գրել, որքան հիշում է, 80-ական թվականներին, վերջերին, և 25 տարի շարունակ չի հաջողել լույս ընծայել։ Այդ ժամանակամիջոցում մի քանի անգամ անդրադարձել է, մշակել, սկզբում փոքր գործ էր, հետո մեծացավ, աճեց և ընդունեց այժմյան ծավալը։ Երևի իրար վրա գումարած 8—10 տարի աշխատել է։

Ես հարցրի՝ եթե չհաջողվեր «Մահը» տպագրել, դարձյալ կմշակե՞ր։

— Անշո՛ւշտ։ Մշակելուն վերջ չկա, ամեն կարդալիս մարդ ուզում է մի բան փոխել։ Բայց կա մի կետ, երբ դրան հասնում է՝ արդեն վերջ, հիմքին այլևս ձեռք չի տալիս և փոփոխությունները դառնում են մասնակի, ավելի ոճական։ Մարդ նայում է, որ չլինի, թե մի բառը նույն նախադասության մեջ երկու կամ մի քանի անգամ կրկնվի հանկարծ, որ կազմված նախադասությունը ծանր չլինի, ոչ էլ խճողված։ Երբեմն կատարում է ավելի կարևոր ուղղումներ։

Լռեց։ Ժպտաց։

— Այդքան երկար տարիներ աշխատել եմ, համարյա քառորդ դար աչքս վրան է եղել ու մի օր, այն էլ վերջերս, բարեկամներիցս մեկը հակասություն գտավ իմ վեպում, երկրորդ մասի վերջում պատառոտված, կտոր-կտոր եղած լրագիրը երրորդ մասում մեջտեղ է գալիս բոլորովին ան-

*վթար վիճակում։ Տեսնո՞ւմ եք, թե ինչքան ուշադիր պետք է լինել։*

*Կանգ առավ և մի փոքր հետո շարունակեց.*

*— Չեք կարող երևակայել, թե այդ մի վրիպումը ինչպիսի ցավ է պատճառում ինձ։*

* * *

*Նար-Դոսի հոբելյանն էր. լավ հիշում եմ, ասես երեկ եղած լինի։ Նար-Դոսը հագել էր սև կոստյում, հնաձև մի զգեստ, որ երևի կարվել էր անցյալ դարի վերջերին։ Երևում էր, որ շատ տարիներ չէր հագել։ Կարծես կոստյումը իրենը չլիներ, այլ մի ուրիշից, պարզապես այդ երեկոյի համար փոխ առած։ Հոբելյանը չուներ ոչ փայլ, ոչ էլ աղմկալի հանդիսավորություն. հիշեցնում էր լավ պիեսի ձախողված բեմադրություն։ Նար-Դոսն այնքան ծայրահեղորեն համեստ էր, այնքան անշուք, որ ամեն մի շռնդալի խոսք, որ մի այլ դեպքում կհնչեր, տպավորություն կթողներ՝ այժմ կորցնում էր իր իմաստը։*

*Նստած էր լուռ և, ինչպես միշտ, դեմքը ոչինչ չէր արտահայտում։ Բայց մեկ-մեկ էլ երևում էր, որ լավ չի զգում, նեղվում է, կարծես նույնիսկ ամաչում, որ իրեն այդչափ գովում են, նման այն մարդկանց, որ իրենց օտարոտի են զգում նոր կոստյում հագած առաջին երկու օրը։*

*Լավ հիշում եմ հոբելյարի վերջին խոսքը։ Բավական երկար խոսեց. միտքն այն էր, թե անցյալում որևէ հայ գրողի մտքովը երբեք չէր անցնի, որ իր հոբելյանին կարող է ներկա լինել լուսավորության մինիստրը։ Իսկ այսօր, խորհրդային իրավակարգում այդ հնարավոր է և ահա իր, մի համեստ հայ գրողի հոբելյանին ներկա է երկրի լուսավորության ժողկոմը։*

*Այս նույն մտքին նա անդրադարձավ մի քանի անգամ տարբեր ձևակերպումներով։ Խոսեց այնքան երկար, որ դահլիճում տրտնջացողներ եղան։ Մի ուսուցիչ, որ կողքիս էր նստած, դժգոհեց.*

*— Ի՜նչ երկար է խոսում։*

Մաթևոս Դարբինյանը, որ սկզբում նախագահության մեջ էր, իսկ հետո եկավ դահլիճ, և բազմեց կնոջ կողքին, դարձավ դժգոհող ուսուցչին և կամացուկ ասաց.

— Եղբայր, ի՞նչ եք ուզում, այդ մարդը քառասուն տարի չի խոսել, բա իրավունք չունի իր ամբողջ կյանքում գոնե մի անգամ երկար խոսելու։

* * *

1933 թվին էր։ Այդ օրերին էր, որ ես ապրեցի իմ կյանքի առաջին ծանր և ամենամեծ հիասթափությունը։ Ամռան մի շոգ օր մտա խմբագրի առանձնասենյակը։ Ես այն ժամանակ կիսատ էի թողել ուսումս, եկել էի Թբիլիսի և աշխատում էի խմբագրատանը։ Չեմ հիշում այժմ, թե ինչ գործ ունեի խմբագրի հետ, որը մի ազնիվ ու բարյացակամ մարդ էր։ Նստած գրում էր արագ-արագ։ Ասաց, որ մի րոպե սպասեմ, հետո ավեց գրածը, խնդրեց տալ մեքենագրուհուն և պատվիրեց ասել, որ շտապ կերպով մեքենագրեն։ Նայեցի, տեսնեմ Նար-Դոսին նվիրված մահախոսական է։

Գիտեի, որ Նար-Դոսը ծանր հիվանդ է, բայց մահվան մասին լուր չունեի։ Շրջվեցի դեպի խմբագիրը։

— Վախճանվե՞լ է։

— Դեռ չէ. բայց մի օրվա կյանք է մնացել։

Մնացի ապշած. մարդը դեռ կենդանի է, իսկ նրա մահվան առիթով հոդված են գրում արդեն։ Դա ինձ սարսափելի թվաց. ուզում էի ճչալ, բողոքել։ Խմբագիրը, որ ըստ երևույթին, հասկացավ, թե ինչ է կատարվում հետս, ժպտաց, կամեցավ մեղմել.

— Բժշկի ասելով, կարող է նույնիսկ այսօր մեռնել։

Հետո ավելացրեց.

— Որ մեռնի՝ գլուխներս այնքան խառը կլինի, որ գրելու ժամանակ չենք գտնի։

Դրանից հետո, բավական երկար ժամանակ, երևի մի ամբողջ տասնամյակ մահախոսական հոդվածների անկեղծությանը չէի հավատում. բոլորն էլ թվում էին վաղօրոք գրված։

* * *

Մի, թե երկու ժամ հետո խմբագիրն ասաց, որ Նար-Դոսն իրեն շատ վատ է զգում, կարգադրեց հոդվածն ուղարկեն շարելու, իսկ ինքը, պատրաստվեց գնալու հիվանդի մոտ։ Խնդրեցի ինձ էլ հետը տանել։ Մեզ միացավ մի ուրիշը ևս, չեմ հիշում, թե ով։ Կես ժամ անց, Նար-Դոսի մոտ էինք։ Շատ նիհարել էր, դեմքը մորուսած էր, աչքերը խոր ընկած, հայացքը բոլորովին անփայլ։ Երբ մտանք, նայեց մեր կողմը, նայեց անտարբեր, ոչինչ չարտահայտող աչքերով և հայացքը, ինչպես առաջ էր, գամեց դիմացի պատին։

— Վերջացավ... ամեն ինչ վերջացավ...

Շատ դժվարությամբ, կարծես հեգելով ասաց Նար-Դոսը։

Խմբագիրը թե.

— Ի՞նչ եք ասում. դուք դեռ երկար կապրեք։

Ես մնացի ապշած. հոդվածը տպարան է ուղարկել, իսկ իրեն ինչ է ասում։ Նար-Դոսը աչքերը նրա կողմը թեքեց։ Հայացքի մեջ կշտամբանք կար. միթե այդ պահին էլ կարելի է կատակ անել,— կարծես ասում էին նրա աչքերը։

Ինկապես, գոնե լսեր, ձայն չհաներ։

— Երջանկությունը...

Այլես չշարունակեց, ավելի ճիշտ չկարողացավ, կամ գուցե չուզեց, ավելորդ համարեց։ Ինչ էր կամենում ասել՝ այդպես էլ չիմացանք։

Մահամերձի սնարին կանգնած էր տիկին Օլգան և հավիվ էր զսպում արցունքը։ Մի կողքին Նարն էր, տխուր աչքերով, մյուս կողքին՝ աղջիկը, որ դեմքը թաքցրել էր մոր կրծքի մեջ և միայն թիկունքն էր մատնում, թե ինչ է կատարվում հետը։

Բժիշկը չէր սխալվել. Նար-Դոսն այդ գիշեր վախճանվեց և մյուս օրը լրագրում լույս տեսավ մեր խմբագրի հոդվածը, գրված մի այնպիսի հուզիչ շնչով, որ կարծես, թե սիրելի գրողի մահվան լուրը հանկարծակիի է բերել նրան, ցնցել, տակն ու վրա է արել նրա հոգին և դրա ազդեցության տակ էլ տեղն ու տեղը նստել ու գրել է։

* * *

Թաղումը բազմամարդ չէր։ Սովորականի համեմատությամբ շատ մարդ կար, բայց Նար-Դոսի համար, իհարկե, քիչ էր։ Թեև ճառեր ասացին, մեծարեցին, բայց շուք և հանդիսավորություն չկար։ Մարդ ակամա մտածում էր, թե Նար-Դոսի մահն էլ այնպես եղավ, ինչպես կյանքը։

Ճառեր էին ասում, բայց ինձ թվում էր, որ բառերի աղմուկ եմ լսում, կարծես ոտքի տակ ընկած ընկույզի կճեպը ջարդվելիս լիներ։

Ստեղծեց, բայց չվայելեց։ Տվեց, բայց չստացավ։ Երազեց և երազն էլ երազ մնաց։ Ինչքա՜ն շատ մարդ է կյանքից գնում, կյանքին պարտական։ Եվ ինչքան քչերը, որոնց ինքը՝ կյանքն է մնում պարտք։

Ահա դրանցից էր Նար-Դոսը։

## ԱԼԵՔՍԱՆԴՐ ՇԻՐՎԱՆԶԱԴԵ

*Մի օր, եթե չեմ սխալվում 1934-ի ապրիլ ամսի վերջերին էր, Գրողների տանն ինձ ասացին, թե Չարենցը զանգ է տվել ու ասել, որ մոտը գնամ։ Մի փոքր ժամանակ անց նրա տանն էի արդեն։ Գրասեղանի մոտ նստած պարապում էր. բարձրացրեց գլուխը և անբավական նայեց ինձ։ Դժգոհ էր, որ ընդհատեցի զբաղմունքը։ Բացատրեցի գալուս պատճառը։ Ասես ինչ-որ հիշելով, խնդրեց մի քանի րոպե սպասել։ Գլուխը նորից թաղեց գրքերի մեջ և շարունակեց գրել։ Ըստ երևույթին, ընդհատված միտքն ուզում էր ավարտել։ Եվ իսկապես, մի-երկու րոպե անց տեղից վեր կացավ, լուռ անցավ սենյակով և ապա առաջս կանգնելով, ասաց.*

*— Ծերուկը, հասկանո՞ւմ ես, դժգոհ է...*

*Չհասկացա, թե ում մասին է խոսքը։*

*— Շիրվանը,— բացատրեց նա։*

*Պարզվեց հետևյալը։ Պետհրատը լույս էր ընծայել Թումանյանի, Սունդուկյանի և Չարենցի մեծադիր միհատորյակները։ Շիրվանզադեն հարց էր բարձրացրել՝ իր երկերի մի հատորյակն էլ հրատարակել, անպայման նույն ձևով։ Չարենցը, որ այն ժամանակ Պետհրատի Գեղարվեստական գրականության բաժինն էր գլխավորում, նրա բողոքը իրավացի էր համարել և անհրաժեշտ գտել ամենամոտիկ ապագայում գոհացում տալ՝ հրատարակելով նրա լավագույն երկերը մի հատորով։*

*Հարցրի, թե իսկ ես ինչ կապ ունեմ դրա հետ։ Բանաստեղծը բացատրեց, որ պետք է օգնեմ Շիրվանզադեին՝ կազմելու ժողովածուն։*

Երբ ես հայտնեցի պատրաստակամությունս՝ ասաց.

— Ուսանողի համար դրանից էլ լավ բա՞ն. համ փող կստանաս, համ նշանավոր գրողի հետ կշփվես։

Եվ նա առաջարկեց առաջիկա տասը օրվա ընթացքում, ուսանողական պարապմունքներից բացի, ոչինչ չանել, զբաղվել միայն Շիրվանզադեով, վերցնել նրա ութհատորյակը, նորից կարդալ և լավագույն երկերի ցանկը կազմել։ Այդպես էլ արի, թողի ամեն ինչ, երբեմն նույնիսկ համալսարան դասախոսության չէի գնում, տանը փակված՝ Շիրվանզադե էի կարդում, միայն Շիրվանզադե, երբեմն մի անգամ կարդացածը վերակարդում։ Այդ աշխատանքը շատ ավելի ժամանակ պահանջեց, քան սահմանել էր Զարենը։

* * *

Նորից Զարենցի մոտ եմ, տանը։ Աչքի անցկացրեց ընտրածս երկերի ցանկը։ Մի անուն, հիմա չեմ հիշում, թե ինչ,— ջնջեց, և մի պատմվածք էլ ավելացրեց, որ իմ ցանկում չկար։

— Լավ է։ Տեսնենք ինքն ինչ կասի։

Ասաց ու վեր կացավ տեղից, մի պահ մտքերի մեջ խորասուզված մնաց, հետո կրկին դարձավ ինձ.

— Անհնար չէ համոզել, բայց նկատի առ, վեհ, առարկություն չի սիրում։ Ընդհանրապես դժվար ծերուկ է։ Լսիր, ինչ որ կասի, բայց արա քո գիտցածի պես, եթե, իհարկե, համոզված ես, որ ճիշտ ես։

Ապա անցավ ուրիշ հարցերի, հետաքրքրվեց, թե ինչ նորություններ կան, հետո նորից վերադարձավ Շիրվանզադեին։

— Ուղիղ գնա մոտը։ Ծանո՞թ ես։ Չէ՞։ Ուրեմն քեզ պետք է ներկայացնել, ինչպես հարկն է։

Ժպտաց, խորամանկ փայլ առան աչքերը։ Մի երկտող գրեց և պատվիրեց հանձնել Շիրվանզադեին։

* * *

Մի կես ժամ հետո Շիրվանզադեի մոտ էի, այն հյուրանոցում, ուր նա, սովորաբար, ապրում էր Երևանում եղած ժամանակ, այն ժամանակ, «Ինտուրիստ», այժմ՝ «Երևան»: Դուռը բախեցի: Ներսից մի խուլ ձայն լսվեց.

— Մտե՛ք:

Մտա: Նստած էր գրասեղանի մոտ և այդ օրվա թերթն էր աչքի անցկացնում: Երբ ներս մտա՝ դիրքը չփոխեց, միայն գլուխը շրջեց իմ կողմը: Գլուխը հետ գցած, ինչպես այդ անում են ակնոցակիրները, նայում էր ինձ: Այդ վիճակում նրա դեմքը շատ ավելի խրոխտ տեսք ուներ: Շրթունքները սեղմած՝ խստահայաց նայում էր: Եվ քանի որ նրան դեռևս հայտնի չէր, թե ո՛վ եմ և ինչի՛ եմ եկել՝ այնպիսի անհաղորդ լռությամբ էր նայում, որ ճնշված զգացի ինձ:

Հանձնեցի Զարենցի երկտողը: Ըստ երևույթին, բանաստեղծը, գործի շահերից ելնելով, չափազանցված գույներով էր ներկայացրել ինձ: Շիրվանզադեն, նամակը կարդալուց հետո, մի լավ զննեց ինձ և, ինչպես նկատեցի, ստացած տպավորությունը և Զարենցի հանձնարարականը, մեղմ ասած, չհամընկան իրար:

Զարենցի և իմ կատարած ընտրությունից Շիրվանզադեն դժգոհ մնաց:

— Չէ՛, լավ չէ:

Դեմքին մի խոով արտահայտություն եկավ: Շրջվեց պատուհանի կողմը և երկար ժամանակ ձայն չէր հանում: Ծրնշող լռություն սենյակում:

— Չէ՛, լավ չէ: Այն չէ,— նորից փնթփնթաց քթի տակ. առանց իմ կողմը նայելու:

Հետաքրքրվեցի, թե ինչից է դժգոհ և ասացի, որ վերջապես դա առաջարկ է լոկ, որ արված է իրեն օգնելու նպատակով միայն, կարող է բոլորովին էլ չընդունել և ինքը մի նոր ընտրություն կատարել:

Նա ինձ նայեց զարմացած, կարծես նոր էր տեսնում, որ սենյակում, բացի իրենից, մի ուրիշն էլ կա:

— Այո, իհարկե,— ասաց համեմատաբար խաղաղված ձայնով։

Սակայն, երբ երկրորդ օրը մենք հանդիպեցինք և նա իմ առաջ դրեց իր ձեռքով կազմած ցանկը ես, թեև ձայն չհանեցի, բայց տարբերություն չգտա մեր առաջարկածի համեմատությամբ։ Միակ տարբերությունն այն էր, որ մեր ցուցակում եղած «Քաոսը» փոխարինվել էր «Կյանքի բովիցով»։ Ես այդ ճիշտ չգտա և իմ զարմանքը հայտնեցի, որ Շիրվանզադեի ընտիր երկերի միհատորյակը լույս է տեսնելու առանց նրա գլուխ-գործոցի։

Ջղայնացավ։

— Իսկ ո՞վ ասաց, որ իմ լավագույն գործը «Քաոսն» է։ Ես այդ կարծիքի չեմ։

Ես կարծում էի, թե նա այդպես է ասում ջղայնացած պահին միայն։ Բայց հետո, մի այլ օր, նա ասաց, որ իր ամենասիրած գործը և իր կարծիքով լավագույնը «Վարդան Ահնասիրամյանն» է։ Ես գիտեի, որ Տուրգենևն իր ամենագողտրիկ երկը համարում էր «Ասյան», գիտեի նաև այն, որ իր բոլոր գործերից Տոլստոյն ամենից ավելի հավանում էր «Կազակները»։ Հիմա էլ Շիրվանզադեն. ոչ թե «Քաոս», այլ «Վարդան Ահրումյան»։ Դա, իհարկե, պարզ կամակորություն չէր։

Հիշելով Չարենցի զգուշացումը, որոշեցի չհակաճառել։ Եվ դա օգնեց։ Նա մի կարճ ժամանակից, հանդարտած և կամացուկ ձայնով, կարծես շուզենալով, որ մի ուրիշն էլ լսի, ասաց թե «Քաոսը» մի քանի անգամ լույս է տեսել, իսկ «Կյանքի բովիցի» մասին մտածող չկա։

Այդ ասելիս նա այնպես էր մեղմացել, որ մի ուրիշը, եթե ներկա լիներ, անպայման այն տպավորությունը կստանար, թե այդ հարցի վճիռը միայն ինձանից է կախված։

Երբ երեկոյան Չարենցին պատմեցի՝ շատ ծիծաղեց։

— «Քաոսը», ինչ խոսք, պետք է լինի։ Բայց կարիք չկա վշտացնել։ Թող լույս տեսնի իր ուզածի պես։ Դու նրան ասա, որ ես համաձայն եմ և ում որ պետք է՝ կհամոզեմ Պետհրատում։ Ես հասկանում եմ նրան. նա «Քաոսին» դեմ չէ, այլ ուզում է, որ «Կյանքի բովիցը» անպայման լինի։

Եվ Չարենցն ասաց, թե Շիրվանզադեի այդ պահանջը

արդարացի հիմք ունի։ «Կյանքի բովից» նրա նախորդ ժողովածուի մեջ մտավ կիսատ, լույս տեսավ առաջին գիրքը, որ զբաղեցրեց յոթերորդ հատորը, իսկ երկրորդ գիրքն այդպես էլ մնաց։

Հաջորդ հանդիպման ժամանակ Շիրվանզադեին հաղորդեցի Զարենցի ասածը։ Անչափ ուրախացավ։ Եվ ընդհանրապես այդ օրը բարձր տրամադրության մեջ մնաց մինչև վերջը։ Ինձ հետ էլ առանձնապես սիրալիր էր։ Կարծում եմ, սխալված չեմ լինի, եթե ասեմ, որ դա վճռական դեր խաղաց մեր հարաբերությունների մեջ, ավելի ճիշտը՝ նկատելիորեն ջերմացավ նրա վերաբերմունքը։ Գրասեղանի դարակից հանեց «Քաոսի» առանձին հրատարակությունից մի օրինակ և նվիրեց ինձ։

— Այս էլ քո հավանած «Քաոսը». թող հիշատակ մնա ինձանից։

Այդ օրվանից նա ինձ հետ սկսեց դու-ով խոսել։

Շիրվանզադեի մտածողությունը կոնկրետ էր, թանձրացած, շեղումներ չէր սիրում, սկսում էր հարցի էությունից և ընդհանրապես մտքի ընթացքը կտրուկ էր, շատ որոշ։ Չեմ հիշում մի դեպք, որ խոսելիս հարցից շեղվեր։ Բայց, ինչի մասին էլ խոսեր, արտահայտվում էր պարզ, հասկանալի, երբեք չէր խոսի ցրված, չէր թողնի միտքն անավարտ։ Չեմ հիշում նրան երկար խոսելիս, բայց որքան էլ երկարեր խոսքը, միևնույն է, ամբողջականության զգացումը չէր դավաճանի նրան։ Չէր սիրում բարձրագոչ բառեր գործածել, նրա խոսքը հյութեղ պատկերավորություն ուներ, ասածն անմիջապես պատկերացնում էիր, մի տեսակ խոսքը կարծես աչքիդ առաջ առարկայանում էր, զգում էիր նրա նյութականությունը շոշափելիության աստիճան։

Լիրիկան նրա հոգուն մոտ չէր, ընդհանրապես բանաստեղծության մի առանձին սիրահար չէր, թեև երբեմն երբեմն կարդում էր նույնիսկ անհայտ, նոր միայն ասպարեզ եկած պոետների։ Այդ օրերին լույս էր տեսել Հովհաննես Շիրազի առաջին գիրքը՝ «Գարնանամուտը»։ Այդ առթիվ «Գրական թերթում» մի հոդված էի տպագրել։

Երբ անցա հյուրանոց, Շիրվանզադեն աչքի էր անցնում «Գրական թերթը»։ Նա ինձ ուրախ դիմավորեց։

— Լավ ես արել, որ գրել ես,— ասաց նա,— շնորհքով տղա է։ Թե այդպես շարունակի՝ շատ առաջ կգնա։

Ճիշտ ասած՝ ինձ ուրախացրեց Շիրվանզադեի ասածը, մանավանդ, որ բոլորին լավ հայտնի էր նրա դժվարհաճությունը։ Բայց ես չգիտեի, որ իմ այդ ոգևորությանը հաջորդելու է հիասթափություն։ Նա հոդվածը չէր կարդացել, այլ միայն աչքի էր անցկացրել։ Գոհ էր մնացել, որ ընդհանուր գնահատականը դրական է։ Նա հոդվածը կարդացել էր իմ գնալուց հետո, և երբ հաջորդ օրն անցա մոտը, մեղմ ասած՝ հանդիմանեց.

— Ավելի լավ կարծիք ունեի քո մասին։

Իմ հոդվածում, հիմա միտս չէ, թե ինչ կապակցությամբ հիշատակվում էր արևմտահայ բանաստեղծներից մեկը։

— Ի՞նչ եք կուռք դարձել ու պաշտում։ Պետք է կռվել դրա դեմ, իսկ դու հիացմունքով ես խոսում նրա մասին։ Ինչի՞ նման է։ Ես այդպիսի գրականություն չեմ հասկանում, և չեմ էլ ընդունում։ Պատերազմ է, մարդիկ արյուն են թափում, իրար հոշոտում, ժողովուրդների բախտն է որոշվում, իսկ նա կանգնել է թե՝ աղվոր էր, իմ թռչունը թևերը բաց թռավ երկնքով, և այլ այսպիսի անհեթեթություններ։

Անմիջապես հիշեցի Շիրվանզադեի հարձակումը Գարեգին Լևոնյանի «Գեղարվեստ» ամսագրի վրա, նրա վեճը Տերտերյանի հետ՝ Արամ Չարըգի ու Վարուժանի այնտեղ տպագրված բանաստեղծությունների առթիվ։ Այո, դա նրա համոզումն էր, հաստատ ու անդրդվելի, որ ուներ իր հին արմատները, գրականությունը հասարակական կյանքի անմիջական հոգսերին ծառայեցնելու պահանջից ծնված մի բողոք, կյանքի աննյութական, վերացական պատկերացումների, հասարակայնորեն օգտակար գաղափար չպաշտպանող, չնչին ապրումներ, մանր մտքեր արտահայտող գրականության դեմ. ի՞նչ է ուզում ասել հեղինակը, ի՞նչ օգուտ կարող է տալ դա։ Այս էր նրան ղեկավարող գեղագիտական սկզբունքը։

— Գրականությունը, սիրելի՛ս, զվարճության աղբյուր

չէ։ Երբ ինձ ասում են, թե իմ գրվածքը կարդացել են ու մեծ բավականություն ստացել, կատաղությունս բռնում է։ Ես նրանց օգնում եմ կյանքը իմանալ, մարդուն հասկանալ, իսկ նրանք բավականությունից են ճառում։ Գրողը նրա համար է, որ խառնվի կյանքին, օգնի մարդուն ապրել։ Այլ ըմբռնում չունե՞մ և հազար տարի էլ անցնի՝ չե՞մ կարող հաշտվել վերացական, անգաղափար գրականության հետ։

Մի փոքր լռելուց հետո.

— Միշտ զարմացել եմ, թե այդ ինչպես է պատահում, որ գրողն իր աչքով տեսած կյանքը թողած, գրում է պատմությունից։ Չեմ հասկացել և չեմ էլ հասկանա երբեք։

* * *

Սիրում էր կատակել, սրախոսել։ Նրա կատակի մեջ հաճախ խայթ կար, ծակոց, երբեմն նույնիսկ հեգնանք։

Գնունի փողոցի վրա մի սրճարան կար, ուր գրողները, ընդհանրապես արվեստագետները, սիրում էին հավաքվել։ Մի երեկո մի խումբ գրողներ մտան սրճարան։ Ես էլ հետներն էի։ Տեսնենք՝ Շիրվանզադեն մենակ նստած է, իսկ առջևը, սեղանին՝ գարեջրի հինգ-վեց դատարկ շիշ։ Շրջապատեցինք նրան։ Երբ մեկը հարցրեց, թե մեն-մենա՞կ է խմել, պատասխանեց.

— Հապա ինչպե՞ս։

Զարմացած և մի քիչ էլ հեգնական՝ նայեց հարցնողին։ Քթի տակ ծիծաղեց։ Ապա դարձավ բոլորին.

— Ափսոս ուշ եկաք և զրկվեցիք զվարճությունից։ Եկան այսինչը և այնինչը,— նա տվեց երկու նշանավոր գրողի անուն։— Անցան մոտովս և չտեսան, որ նստած եմ։ Այ՛ այն անկյունում սեղան գրավեցին։ Երկուսով մի շիշ գարեջուր պահանջեցին։ Երկու ժամ նստեցին, պատկերացնո՞ւմ եք, երկու ժամ, և երկուսով մի շիշ գարեջուր խմեցին, այն էլ կարծեմ ոչ ամբողջովին։ Որքան նկատեցի՝ շիշը դատարկ չէր։

Ասաց ու կուշտ ծիծաղեց։

* * *

Խոսք բացվեց Պողոսյանի մասին։ Չեմ հիշում առիթն ինչ էր։ Կարծեմ ասաց, որ կամենում է հավաքել իր ֆելյետոնները «Մաղբու» ստորագրությամբ և գրականության ու արվեստի մասին գրված հոդվածներն ու հրատարակել մի առանձին գրքով։ Խնդրեց գտնել մեկին, որ արտագրեր այդ ամենը պարբերական մամուլի միջից։

— Ժամանակին ես էլ քննադատ եմ եղել, չէ՞։ «Արձագանքում» եղածս ժամանակ, դե՛, ես ամեն ինչ էի։ Թերթի իսկական խմբագիրը ես էի. գրում էի առաջնորդող հոդվածներ, կազմում էի լուրեր, բանակռիվ էի մղում, ֆելիյետոն էի գրում, թարգմանություն անում, գրքեր գրախոսում... Մի անգամ էլ Պողոսյանի մասին գրեցի, նեղացավ։ Մի կեղտոտ փոր էր նկարագրել, ես էլ գրեցի, թե դա գռեհկություն է, նատուրալիզմ։ Երկար ժամանակ նեղացած մնաց, բայց հետո հաշտվեցինք։

Մի փոքր սպասեց, հետո շարունակեց։

— Փնթի մարդ էր, թափթփված, նրա ձեռագրերը, որ ձեռդ ընկնեն՝ նայիր, այդտեղ էլ փնթիություն կգտնես։ Դե՛, մարդու բնավորությունն ամեն տեղ էլ երևում է, նույնիսկ ձեռագրի մեջ։ Վերցրու Պողոսի վեպերը, թափթփված չեն, բա ի՞նչ են։ Շատ չէր մտածում, արագ գրում էր, արագ էլ տպում։ Կնստեր ու ձեռաց մի վեպ կգրեր։ Նյութ շատ ուներ. առողջ էր, հողից ու ժողովրդից, չէի էլ ասի, թե շնորհք չունի, նյութը կենդանացնել գիտեր, բայց Պողոսը արտիստ չէր։ Չգիտեմ, հասկանո՞ւմ ես ինձ, թե չէ։ Մշակված չէր, բյուրեղացած չէր։ Կոմիտասն էլ ժողովրդից էր քաղում իր եղանակները։ Ա՛յ՝ նա արտիստ էր իսկական։ Դա էլ պակասում էր Պողոսին։

* * *

Հարցրեց, թե այժմ ինչ եմ գրում։ Չեմ կարծում, թե նրան իսկապես զբաղեցնում էր այդ։ Նրա հարցը ընկալեցի ավելի որպես ուշադրություն։ Ասացի, թե հիմա ոչինչ էլ

*չեմ գրում, քանի գնում, այնքան ավելի եմ համոզվում, որ կարգին գրելու համար դեռ շատ գիտելիք է պակասում ինձ։ Ամբողջ ժամանակս նվիրում եմ կարդալուն։*

*Նայեց աչքերիս, կարծես ուզում էր հասկանալ, թե իսկապես այդպես եմ մտածում, թե միայն ձևի համար եմ ասում։*

*— Այդ լավ ես անում, որ կարդում ես։ Ես էլ եմ կարդալու հափշտակություն ունեցել, բայց դա էլ պետք է իր չափն ունենա։ Ես չեմ հարգում այն մարդկանց, որ մի գիրքը հազիվ վերջացրած, անմիջապես նորն են ձեռն առնում։ Հիշեցնում են մոլի ծխողներին։ Չեմ սիրում։ Մի գրքից մյուսը մտածելու, անդրադառնալու ժամանակ է պետք։*

*Մի փոքր անց շարունակեց.*

*—Հետո, իմացիր, որ մարդ զարգանում է ոչ միայն կարդալով։ Գրիր, շարունակ գրիր, դուրդ չի գալիս՝ տպագրության մի տուր, մի կողմ դիր, բայց գրիր, որովհետև գրելն էլ է մարդուն զարգացնում։ Չե՞ս նկատել, որ երկար ժամանակ չգրող մարդը դժվար է գրիչ ձեռն առնում։*

* * *

*Երբ ներս մտա՝ Շիրվանզադեն հուզված էր։ Ոչ պակաս հուզված էր նաև գրուցակիցը՝ Ցոլակ Խանզադյանը։ Վիճում էին։ Խոսքի արանքում լսեցի Սունդուկյանի անունը։ Լավ հիշում եմ Խանզադյանի վերջին խոսքը.*

*— Նախ, այդպես չի եղել, իսկ եթե եղել էլ է՝ չպետք է գրեիք։*

*Ասաց ու գնաց։*

*Ես գլուխս կախ աշխատում էի, բայց աչքի ծայրով հետևում էի Շիրվանզադեին, որը հոգեկան խռովքի մեջ ընկած, չգիտեր, թե ինչ անի։ Մեկ վեր էր կենում, մի քանի քայլ անում, մեկ նստում, մեկ օրվա լրագիրն էր ձեռն առնում, բայց աչքի չանցկացրած վայր դնում, մեկ ակնոցի ապակիներն էր թաշկինակով մաքրում։*

*Մի փոքր անց խաղաղվեց.*

— Երևակայում ես, պահանջում է, որ Սունդուկյանին ներկայացնեմ ոչ թե այնպես, ինչպես ես եմ տեսել ու հասկացել նրան, այլ ինչպես ինքն է պատկերացնում։ Ծիծաղելին էլ այն է, որ հետը ծանոթ էլ չի եղել։ Հիմի ինձ դասեր է տալիս, թե այս այսպես է, այն էլ այնպես։ Ասա, դու ո՞րտեղից գիտես։

Լռեց։

— Չէ, ես կարևորություն չէի տա, եթե այդպես միայն Յոլակը մտածեր։ Ցավն այն է, որ հիմի հուշ գրողները ղեկավարվում են «մեռածի մասին կամ լավ, կամ ոչինչ» նշանաբանով։ Եվ ինչ է ստացվում՝ գունազարդված նկարագրություն. ո՛չ թուլություններ է ունեցել, ո՛չ էլ որևէ թերություն, այլ եղել է առաքինությունների մի կատարյալ մարմնացում։

Նորից լռեց։

— Է՜հ, եղա՛վ, ինհարկե՝ ոչ։ Մարդուն պետք է ներկայացնել այնպես, ինչպես եղել է, ինչպես դու նրան տեսել ես։ Հուշը նրա համար է, որ ճանաչես, ճիշտ ճանաչես։ Ես չեմ հասկանում, թե ինչի են մարդիկ այդպես վրդովվում, երբ ասում ես, թե այսինչ մեծ մարդը այսպիսի թուլություններ է ունեցել կյանքում. մեկը մանր է եղել, մի ուրիշը գծուծ կամ ժլատ։ Անմիջապես վրդովվում են, աղմուկ բարձրացնում, մեղադրում, թե այդ ինչպես համարձակվեցիր ստվեր գցել նվիրական անունների վրա։ Նախ մտածողություն և եթե ուզում ես՝ մի քիչ էլ գավառականություն։

Դռան բախոցն ընդհատեց Շիրվանզադեի խոսքը։ Ներս եկավ մի անծանոթ մարդ։ Շիրվանզադեն գլխարկը, ձեռնափայտը վերցրեց և շտապեց դուրս, ասելով, թե ինքը մի երկու ժամից կգա։

Եկավ ավելի շուտ, քան ասել էր, բայց, ցավոք սրտի այլևս չվերադարձավ ընհատված զրույցին։ Սակայն մի երկու օր հետո, երբ ժողովածուի մեջ տեղադրում էի Շիրվանզադեի արդեն աչքի անցկացրած «Կյանքի բովից» առաջին մասը և նայում, թե ինչ է արել, տեսա, որ Սունդուկյանին վերաբերող գլխում մի խիստ արտահայտություն ջնջել է։

* * *

Մի օր Շիրվանզադեի մոտ եկավ մի երիտասարդ գրող և խնդրեց կարդալ իր վիպակը։ Շիրվանզադեն նրան սառն ընդունեց, դեմքի դժգոհ արտահայտությամբ, և մերժեց, ասելով, որ հիմա շատ զբաղված է և չի կարող կարդալ։ Երիտասարդն ասաց, թե ինքը հետո կանցնի, երբ Շիրվանզադեն ազատ ժամանակ կունենա։

Ես չգիտեմ, հետո անցա՞վ Շիրվանզադեի մոտ, թե ոչ, բայց որ վերջինս հրաժարվեց նրա երկը կարդալուց ոչ միայն ժամանակ չունենալու պատճառով՝ այդ ինձ համար կասկածից վեր էր։

Երբ երիտասարդը գնաց, Շիրվանզադեն ասաց, թե ինքը միշտ չէ, որ մերժում է, բայց, ճիշտն ասած, ընդհանրապես չի սիրում երիտասարդ գրողների գործեր կարդալ։ Հանգիստ չեն տալիս, մեկը պիես է գրում, մյուսը պատմվածք, վեպ, երբեմն էլ պատահում է, որ բանաստեղծներ են գալիս, և բոլորն էլ ուզում են, որ կարդա, լսի իրենց, դիտողություններ անի։ Չի կարող այդ անել, ավելի ճիշտ՝ դժվարանում է անել, և ոչ թե նրա համար, որ ժամանակ չունի, կամ ալարում ու ղլանում է։ Չէ՛, չէ՛, պարզապես դժվարանում է իր վրա պատասխանատվություն վերցնել։

— Դժվար գործ է, և չի կարելի դրան մատների արանքով նայել։ Երբ երիտասարդը փոքրված գրողին ձեռագիր է բերում՝ նրան մի հարց է հետաքրքրում, թե ինքը գրող կդառնա՞, թե չէ։ Դե՛, արի ու վճռիր։ Կարդում ես, և կարծես թե տվյալներ կան, ոգևորում ես, խրախուսում, նա էլ ամեն ինչ թողած՝ գրում է, գրում, բայց վերջիվերջո գրող չի դառնում։ Եվ այդ պատճառով էլ ուրիշ բան էլ չի դառնում։ Է՜հ, կարո՞ղ ես հանգիստ լինել։ Հակառակն էլ է պատահում. կարդում ես ձեռագիրը, և հեղինակը քեզ ոչ մի հույս չի ներշնչում, բայց տարիներ են անցնում և տեսնում ես, որ կարգին գրող է դարձել։ Այո՛, երևակայիր, այդպես էլ է լինում, որ ուշ է բացվում։ Ի՞նչպես որոշել. կարդում ես և չես հավանում, և նա էլ քեզ հավատալով՝ թողնում է, այլևս

չի գրում, այնինչ գուցե գրեր, գրեր և մի օր բացվեր։ Այո՛, ավագ գրողի մի անզգույշ խորհուրդը կարող է կործանել մի լավ ապագա, և հակառակը։ Երևի կարդացած կլինես. իմ մի խոսքը պատճառ դարձավ, որ Ադամյանը վառարան ձգի իր մի ձեռագիրը։ Ես ոչ ոքի մոտ չեմ կարդացել իմ երկերը։ Եվ ի՞նչ է, գրող չդարձա՞։

Լռեց, հոգոց քաշեց և ապա ավելի հանգիստ շարունակեց.

— Ահա, համեցեք, սեղանիս վրա է։

Եվ նա ցույց տվեց սեղանի վրա դարսված աշակերտական կապտակազմ տետրեր, թվով տաս հատ։ Հարցրի, թե ի՞նչ է։

— Վեպ է։ Հեղինակը երիտասարդ է, բերել է, որ կարդամ, կարծիք հայտնեմ։

— Հետո, բոլորը պետք է կարդա՞ք։

Ժպտաց։

— Շատ գոհ կլինեի, եթե բավականանար այդքանով։ Ասում է սա առաջին հատորն է, բերելու եմ նաև երկրորդը։ Կարծեմ երրորդն էլ գրելու մտադրություն ունի։

— Ուղարկեցեք Գրողների միություն։

— Ասել եմ, չի համաձայնում։ Ուզում է, որ անպայման ես կարդամ։ Ասում է մյուսներին չեմ վստահում, սա առաջին երկս է։ Հետաքրքիր է, չէ՞, գրիչ է վերցրել-չի վերցրել՝ վեպ է գրել, փառքի հետևից է վազում անպիտանը, ուզում է ընթերցողին անպայման վեպով ներկայանալ, հաստ գրքով։ Պատմվածքը ի՞նչ է, մի քանի էջ, կարող է և չնկատվել։

Հեգնական մի շեշտ կար նրա ձայնի մեջ։

— Ես էլ այդպես էի. առաջին գրածս վեպ էր։ Վեպի փառքը հափշտակել էր ինձ։ «Հրդեհ նավթագործարանում» պատմվածքս այդ վեպի մի հատվածն է։ Վեպը տպվել է տաճկահայոց ինչ-որ թերթում, անունը չեմ հիշում։ Վեպս կոչվում էր «Քաոս»։ Կիսատ թողի, տեսա, որ չէ, վեպ գրելը իմ բանը չէ։

* * *

Երբ ներս մտա՝ Տիրվանզադեն անկողնումն էր, իսկ դիմացը՝ նստած էր անծանոթ մի մարդ, ըստ երևույթին կապտակազմ տետրերի հեղինակը, որովհետև ազատ աթոռի վրա այդ տետրերն էին դրված։ Ես այդ մարդուն առաջին անգամն էի տեսնում, հետո էլ այլևս չտեսա։ Նստած էր լուռ, առանց ձայն-ծպտուն հանելու, լսում էր, ինչպես նկատեցի, անբավական։ Երևի այլ խոսք էր սպասում, քան ասում էր Տիրվանզադեն։

Թե ինչ էր ասել մինչև իմ գալը՝ չգիտեմ, բայց, երբ սենյակ մտա, նա արդեն ավարտում էր զրույցը։ Ես գրավեցի իմ տեղը գրասեղանի մոտ և իբր թե իմ գործն եմ անում, գրի առա Տիրվանզադեի զրույցից հետևյալը.

— Ձեր մեջ մի ծայրահեղ հակում եմ նկատում՝ ինչպես էլ լինի գեղեցիկ գրել։ Դուք շպարում եք լեզուն։ Ես դա համարում եմ վնասակար ձգտում։ Ում է հարկավոր այդ ոճական բարրոկոն։ Պարզության փոխարեն խճճվածություն և ծանրաբեռնվածություն։ Գրեք ճիշտ հակառակ ձևով. ոչ մի ավելորդ բառ։ Պետք է այնպես գրել, որ կարդացողը ոչ բառ կրճատելու ոչ էլ ավելացնելու պահանջ չզգա, ոչ էլ եղած բառը ուրիշով փոխարինելու ցանկություն ունենա։ Զգտեք մտքի հստակ ձևակերպմանը մաքսիմալ չափով։ Դուք պետք է կարողանաք այնպես պատմել, որ ընթերցողի մեջ առաջ բերեք նկարագրվածի ֆիզիկական զգացողություն։ Դուք ածականախեղդ եք անում լեզուն. ես ածականին դեմ չեմ, եթե գտնված է ճիշտ, ջերմությանը՝ նույնպես, միայն տեղին լինի։ Դեմ եմ պճնասիրության։ Կողմնակից եմ թվաբանական հստակության հասնող ճշգրիտ ձևակերպման։

Տիրվանզադեն թեև խոսում էր հանգիստ, բայց երևում էր, որ հազիվ է զսպում իրեն, որ ձայնը չբարձրացնի։ Խոսում էր չոր ու խիստ, վիրավորված ու մի փոքր էլ դառնացած։ Ու երբ տետրերի հեղինակը, ներողություն խնդրելով պատճառած անհանգստության համար, շնորհակալություն հայտնեց ու գնաց, Տիրվանզադեն ասաց.

— Ամբողջ էությունս տակն ու վրա է լինում, երբ մարդու մեջ, թեկուզ տաղանդավոր, նկատում եմ ավելի գեղեցիկ ու առաքինի երևալու ցանկություն։

* * *

Զարենցը մի օր հետաքրքրվեց աշխատանքների ընթացքով։ Պատմեցի։ Ասաց, թե հարցուփորձ արա, տես, թե ինչ է ասում, ժողովածուին առաջաբան կցե՞նք, թե չէ, և եթե այո՝ ապա ո՞վ է նրա կարծիքով ամենահարմարը մեր գրականագետներից։

Մյուս օրը հաղորդեցի Տարվանզադեին Զարենցի ասածը և հարցրի, թե ինքը ինչպես է նայում դրան։

— Ո՞վ գրի, ինկապես։

Հարցական նայեց ինձ։ Նկատելի էր, որ դժվարին կացության մեջ է, չէր կարողանում որոշել։ Խոսք բացվեց քննադատների մասին։ Առաջ էլ նկատել էի նրա մեջ քննադատության հանդեպ ոչ-համակրական վերաբերմունք։

— Ինչի՞ են նման մեր քննադատները. ոչ իրենք են բանի նման, ոչ էլ գրածները։ Ճիշտ եմ ասում,— ասաց ու ծիծաղեց։ —Տես՝ այս մեկը,— և նա տվեց այն ժամանակվա հայանի քննադատներից մեկի անունը։ Բոյ չունի, նայում ես՝ ոնց որ դատարկ տակառ լինի փողոցով գլորվելիս, իսկ ապա լավ հիշիր, պատկերացրու այսինչի դեմքը, կարծես գիտավորյալ այդպես այլանդակ ծնված լինի, որ իր կենդանի օրինակով հաստատի Դարվինի թեորիան։ Բա այս ի՞նչը, կարծես ստվեր լինի, այրված լուցկի։

Ասաց ու ծիծաղեց։

— Գիտես, ո՛վ լավ կգրի, Պողոսը.

Խոսքը Մակինցյանի մասին էր։

Կանգ առավ։ Նայեց ինձ, թե ինչ մտածեց՝ չգիտեմ, բայց հանկարծ պոռթկաց.

— Չէ՛, կարիք չկա, թող առաջաբան չլինի, չեմ ուզում։

Եվ բացատրեց.

— Ընդհանրապես ինչի՞ համար են այդ առաջաբանները. ի՞նչ կարիք կա, որ հեղինակի և ընթերցողի արանքը մի

ուրիշն էլ խցկվի։ Բոլորովին ավելորդ ջանք։ Քննադատն ուզում է՝ թող հոդված գրի, գիրք, իսկ առաջաբան, չէ՛, պետք չէ։ Եթե գրողը գրող է՝ առանց քննադատի էլ ճանապարհ կգտնի դեպի ընթերցողը։

Դեմքին արհամարհական արտահայտություն գծվեց։

— Գիտե՞ս ինչի են նման քննադատները։

Եվ նա մի շատ վիրավորական համեմատություն կատարեց, որից գոհ մնաց։ Քահ-քահ ծիծաղեց։

— Հա՛, մոռացա, որ դու էլ քննադատությամբ ես զբաղվում, ներողություն։

Թեև առաց մեղավոր ձայնով, բայց չէր կարողանում, այնուամենայնիվ, զսպել ծիծաղը։

Ընդհանրապես չէր կարողանում զսպել իր կիրքը քննադատության վերաբերմամբ, զգացվում էր, որ դաղված է, հին վերքերը թույլ չէին տալիս հաշտվել քննադատության հետ։ Եվ ամեն անգամ քննադատության մասին խոսելիս՝ որևէ ծանր բան ասում էր։

Մի օր ես անզգուշություն ունեցա խոսք բանալ Լեոյի մասին, ջղայնացավ։

—Անունը մի՛ տա։

— Լռեց, երկար լռեց։ Թե ինչ էր մտածում՝ չհասկացա։ Ըստ երևույթին, ինչ-որ հիշողություններ վերակենդանացան մեջը, գոնե այդպես կարելի էր ենթադրել նրա հետագա խոսքից։

— Վերջը մեղա եկավ։ Նամակ գրեց ինձ, թե սխալվել եմ, հիմի եմ հասկանում ու էլ չգիտեմ, թե ինչ։ Մեծ նամակ է։ Ես նամակներ պահելու սովորություն չունեմ, բայց էդ մեկը պահել եմ։ Ինձանից հետո կարող եք հրատարակել։ Անկախ ինձանից էլ՝ մեջը հետաքրքրական շատ բան կա։

Մի օր էլ ակնարկեցի իր և Մամբրե Մաթևոսյանի վեճը։ Կարծում էի, թե տարիները մեղմացրած կլինեին նրան, բայց չարաչար սխալվում էի։

— Պարծենկոտի, ինքնահավանի մեկն էր։ Զարմանեցի այդ մարդուն։ Չկարծես, թե նրա համար, որ քննադատեց պիեսս, չէ՛, չէ՛, չէ՛, դեռ Փարիզում նրան վռնդեցի իմ սենյակից։ Ասում էր, թե որոշել է կործանել հայ գրականու-

թյան բոլոր կուռքերը, նույնիսկ Րաֆֆուն, պատկերացնո՞ւմ ես՝ Րաֆֆուն։

Մի փոքր լռելուց հետո շարունակեց.

— Ներիր, վրդովվեցի, հանգիստ չեմ կարողանում լսել այդ մարդու անունը։ Ֆանֆարոնի մեկն էր, դերասան՝ ճառերի մեջ, իսկ ասած խոսքը՝ փուչ, դատարկ։

Ես զղջացի, որ Մատենճյանի մասին խոսք բացի։ Տատ հուզվեց, մի քանի անգամ հազը բռնեց։ Ներողություն խնդրեց ու պառկեց։ Մի որոշ ժամանակ հետո Մատենճյանին մոռացած, շարունակեց կարդալ ժողովածուի նյութերը՝ մատիտը ձեռին։

* * *

Երբ մտա՝ նկատեցի, որ տրամադրությունը այնքան էլ լավ չէ։ Մտածեցի, որ գուցե ինձ է այդպես թվում, ոչինչ չհարցրի և անձայն գործիս անցա։

Մի փոքր հետո ամեն ինչ պարզվեց։

Եկավ Գարեգին Լևոնյանը։ Եվ լուռ Տիրվանզադեն բացվեց.

— Քիչ առաջ մի մարդ էր եկել մոտս, չեմ էլ ճանաչում, թե ով էր։ Եկավ, ներողություն խնդրեց ու բացեց սիրտը, պատմեց, թե հոգեկան ինչպիսի մեծ տրագեդիա է ապրում. կինը կապված է իր հիմնարկի պետի հետ։ Քայքայվում է մի լավ ընտանիք, իսկ ինքը ոչինչ չի կարող անել դրա առաջն առնելու համար։ Գրելու համար շատ լավ նյութ է, մի ամբողջ վեպ կարելի է հյուսել։

Մի պահ լռեց։

— Թեև այդ ամբողջ պատմության մեջ ինքը մի անմեղ զոհ է, բայց ես տրամադրվեցի նրա դեմ։ Մի զարմանա, սպասիր բացատրեմ միտքս։ Ես անկեղծությունը գնահատում եմ, բայց դա էլ ունի մի սահման, որից այն կողմը չի կարելի անցնել։ Հոգեկան կյանքի այնպիսի անկյուններ կան, որ պետք է առմիշտ փակ մնան ուրիշների համար։ Իսկ իմ այցելուն ոչինչ չթաքցրեց, ամեն ինչ ասաց մինչև վերջ։ Ճիշտն ասեմ՝ աչքիցս ընկավ այդ մարդը, կարեկցության

փոխարեն մի այլ, վիրավորական զգացում առաջացավ մեջս։ Վիրավորված էի որպես մարդ։ Ես չեմ կամենում մարդուն այդ դրության մեջ տեսնել։ Անկեղծ խոստովանության ժամանակ էլ մարդը պետք է իր հոգեկան արժանապատվությունը պահպանի։

Լեոնյանի ժպիտը տարակուսանք էր արտահայտում. նա ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, թե ինչու է Շիրվանզադեն գնահատելու փոխարեն այդպես գրգռված զրուցակցի անկեղծության դեմ։

Շիրվանզադեն շարունակեց։

— Մինչև հիմի էլ չեմ կարողանում Ռուսսոյի գրքի հետ հաշտվել. ով էր ստիպում նրան իր հոգեկան կյանքի գաղտնիքներն այդպիսի անամոթ անկեղծությամբ մարդկությանը խոստովանել։ Երբ մարդ անկեղծանում է այն չափ, որ ասում է այն, ինչ դժվարությամբ միայն կարող է ինքն իրեն խոստովանել, նշանակում է դիմացինին չի հարգում, բանի տեղ չի դնում։

* * *

Շիրվանզադեն համարյա թե ձեռագիր չի թողել։ Երբեմն կարծում են, թե նրա երկերը գրչի տակից դուրս են եկել հենց այնպես, ինչպես մեզ հայտնի են։ Մինչդեռ բնավ էլ այդպես չէ։ Թե ինչ էր կատարվում գրողի գլխում, մինչև իր մտքերը կհանձներ թղթին, չեմ կարող ասել։ Ոչ հարցրել եմ, ոչ էլ առիթ է ներկայացել, որ ինքն ասի։ Բայց տեսել եմ, թե ինչպես էր գրում, ինչպիսի ահռելի և մանրակրկիտ աշխատանք թափում, պարզապես տանջվում, որ գրած յուրաքանչյուր նախադասությունը լավ ստացվի, իսկ լավ ասելով, նա հասկանում էր.

— Նախ և առաջ՝ ճիշտ, այնքան ճիշտ, որ ոչ մի արարած աշխարհիս երեսին, թեկուզ դա Կանտը կամ անգամ Հեգելը լինի, մեկ է, չհանդգնի երկու կերպ բացատրել գրածդ։ Ինձ միշտ էլ ջղայնացրել են այն գրողները, որոնց հասկանալու համար պետք է եղել գլուխ ջարդել, մի քանի անգամ կարդալ։

Միտս չէ հիմա, թե այդ որ գրվածքն էր, բայց լավ հիշում եմ, որ աչքի էր անցկացնում և իր կողմից նայված էջը, որպես արդեն պատրաստ՝ հանձնում էր ինձ։ Մի փոքր առաջ տրված էջում, իրար կողք գտնվող նախադասության մեջ, կրկնվում էր միևնույն բառը։ Ես գտա, որ ականջ է ծակում և վիպագրի ուշադրությունը դարձրի դրա վրա։ Գրիչը ձեռն առավ, որ ուղղի, բայց երբ նորից կարդաց երկու նախադասությունն էլ, որպեսզի որոշի, թե որը պահպանի, և որը փոխարինի հոմանիշ բառով, նայեց իմ կողմը.

— Չէ՛, թող մնա, թող այդպես մնա։

Եվ բացատրեց.

— Ուրիշ ոչ մի բառ չի բռնի, երկուսն էլ իրենց տեղումն են։ Իհարկե, կարելի է մի այլ նույնանիշ խոսք գտնել,— ասաց ու թվեց մի քանիսը,— տեսնում ես, չեն բռնում այստեղ, չէ՛, սա լավ չէ, ինչ անենք որ կրկնվում է։ Կրկնվում է, բայց, տե՛ս, թե ինչ ուժ ունի։

* * *

Ինչպե՞ս էր Շիրվանզադեն աշխատում։

Մի առանձին թերթիկի վրա գրում էր նախադասությունը, ապա կարդում և եթե անհրաժեշտ էր գտնում՝ փոփոխում էր գրածը։ Մի տեղ բառ ջնջում, մի այլ տեղ՝ ավելացնում։ Ուղղածն արտագրում էր մի այլ թերթիկի վրա, իսկ նախորդը գցում զամբյուղ։ Եվ այդպես իրար ետևից զամբյուղ էին նետվում բոլոր թերթիկները, մինչև որ նախադասությունը, շարունակ արտագրվելով, ստանում էր նրա ուզած ձևը։ Այդ դեպքում միայն նա արդեն վերջնավարիանտը մաքրագրում էր տետրի մեջ և նույն քրտնաջան աշխատանքը կատարում մյուս նախադասությունը գրելիս, նորից առանձին թերթիկների վրա, որոնց տեղն ի վերջո դարձյալ զամբյուղն էր։

Մի օր ասացի, թե ավելի լավ չէր լինի, եթե չոչնչացներ այդ թերթիկները։

— Իսկ ինչի՞ համար։

— Ապագա ուսումնասիրությունների։

— Այդ ուսումնասիրությունները ոչ ոքի պետք չեն։

Թող գրածի մասին դատեն, ինչպես որ կա, իսկ թե ինչպես եմ գրել, ինչ եմ ջնջել կամ ինչ ավելացրել, ո՞ւմ է հարկավոր։ Ոչ ոքի։ Մարդիկ իրենց համար գրադարանք են ստեղծում։

Խոսում էր գրգռված, կարծես ինչ որ մեկին նկատի ունենալով, ու թեև ինձ էր ասում, բայց վիճում էր նրա հետ։ Հետո մեղմացավ.

— Տանել չեմ կարող սևագրություն։

Ասում էր ու ոչնչացնում բոլոր սևագրությունները և այդպիսով համարյա թե ոչ մի հետք չթողնելով իր ստեղծագործական մտքի ընթացքն ուսումնասիրելու համար։

* * *

Եթե Շիրվանզադեով զբաղվող բանասերներից որևէ մեկը մեր պատրաստած միհատորյակի տեքստը փորձի համեմատել գրողի ութհատորյա ժողովածուի տեքստի հետ, ապա այնտեղ կգտնի մանր, բայց ուշագրավ տարբերություններ։ Բազում անգամներ լույս տեսած գրվածքը 75-ամյա վիպասանը կրկին աչքի էր անցկացնում մանրակրկիտ բարեխղճությամբ ու ուղղում։ Մի դեպքում լեզուն մաքրում էր հնացած ձևերից, մի այլ դեպքում՝ գրականը փոխարինում ժողովրդական բառով, որպեսզի արտահայտությունը միջավայրը բնորոշող ավելի հարազատ երանգ ընդունի։ Երբեմն մի բառը փոխարինում էր մի ուրիշով, գտնելով, որ դա իր ուզած իմաստն ավելի ճիշտ ու դիպուկ կարող է արտահայտել։ Նախադասությունը ավելի սեղմ և կուռ դարձնելու նպատակով բեռնաթափում էր ավելորդ և պարապ բառերից, երբեմն երկու ածականից մեկը թողնում, ինչպես և հաճախ դերանունների գործածությունը նվազագույն չափի հասցնում։

* * *

Մի ամիս տևեց մեր միատեղ աշխատանքը։ Այդ մի ամսում հաճախ եղա նրա մոտ, երբեմն ամեն օր։ Վերջին օրը, երբ նրան հրաժեշտ էի տալիս, բռնեց ձեռքս.

— Քանի՞ տարեկան ես։

Ասացի․

— Երանի՜ քեզ։

Մի պահ կանգ առավ, հետո շարունակեց խոսքը․

— Ինչ ասեմ, ինչ ցանկամ քեզ։ Գնահատիր երիտասարդությունդ։ Ամեն տարիք իր գեղեցկությունն ունի, բայց հիշիր, ոչի՜նչ, ոչի՜նչ չի հասնի երիտասարդությանը։

Հաջորդ տարի Շիրվանզադեն վախճանվեց։

Այդպես էլ չտեսավ մեր պատրաստած ժողովածուն, որը տպագրության հանձնվեց նրա մահից հետո։ Զարենցն էլ այլևս չկար։ Այդ ժողովածուի հետ գործնականապես կապվածներից միայն ես էի մնացել։ Ու թեև ամեն կերպ աշխատում էի, որ միհատորյակը լույս տեսնի հեղինակի ցանկության համաձայն, միևնույն է, չհաջողվեց։ Պետհրատի ղեկավարները ոչ մի կերպ չհաշտվեցին, որ «Կյանքի բովից» կարող է տեղ գրավել այդ միհատորյակում։ Առաջարկեցին հանել «Կյանքի բովից» և նրա փոխարեն դնել նրա վեպերից «Քաոսը»։ Այժմ ինձ մոտ է գտնվում «Կյանքի բովից» այդ օրինակը՝ Շիրվանզադեի ինքնագիր ուղղումներով։ Երբ ամեն անգամ պատահում է առիթ ու ձեռս եմ առնում այդ գիրքը, թերթում էջերը, տեսնում նրա ձեռով կատարած ուղղումները, ինչպես և այն տետրը, ուր ես այն օրերին Շիրվանզադեին նվիրված գրառումներ եմ կատարել, իմ հայացքի առջև է կանգնում պատկառելի ծերունին՝ կոճղի պես պինդ, արծվի պես հպարտ։

* * *

## ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑ

*Գրառումներ ունեի Բակունցից։ Հիշում եմ, նույնիսկ ի մի բերի և պատրաստեցի տպագրության։ Եվ հանկարծ... կորան։ Հույս ունեի, թե կգտնեմ։ Մտածեցի՝ գուցե թղթերի մեջ են ընկել-մնացել, մի օր մեջտեղ կգան։ Տարիներ անցան, նույնիսկ մի տասնամյակից ավելի ժամանակ, իսկ գրառումներս այդպես էլ չհայտնվեցին։*

*Ես ձեռագիր պահելու սովորություն չունեմ։ Հենց որ մի բան մեքենագրված պատրաստ է լինում տպագրության, ձեռագիրը ոչնչացնում եմ։ Այդպես էլ այս անգամ։ Եթե ուրիշների նման ես էլ ձեռագիր պահեի, կունենայի նշումներս։*

*Եղածը եղած է, մնում է հիշողությամբ վերականգնել հանդիպումներս մի գրողի հետ, որի պատմվածքները, հատկապես մի քանիսը, պատանեկության տարիներից ի վեր սիրելի են եղել ինձ։*

* * *

*Թիֆլիսի հայկական մանկավարժական ուսումնարանի ուսանող էի, երևի տասնհինգ-տասնվեց տարեկան մի պատանի, որն իր երեկոները թատրոններում էր անցկացնում, իսկ գիշերները լուսացնում գրքերի վրա։ Ուսումնարանի ուսուցիչներից մեկը՝ Նիկոլ Սարգսյանը, իմանալով իմ գրական փորձերը,— ես այն ժամանակ պատմվածքներ էի գրում,— մեծ դասամիջոցին մի անկյուն քաշեց և գաղտնիք հայտնողի խորհրդավորությամբ ասաց, որ կարդամ ինչ-որ*

կհանդիպի ինձ «Մարտակոչում»՝ Ակսել ստորագրությամբ։

Չեմ հիշում, թե առաջինն ինչ էր, որ կարդացի։ Բայց հիշում եմ, որ կարդալս ու հափշտակվելս մեկ եղավ։ Չեմ հասկանում՝ ինկապե՞ս զգացի տաղանդի ուժը, թե՞ հափշտակությունս թելադրված էր ուսուցչիս ներշնչումից։ Իսկ այդ ուսուցչին հավատում էին ամենքը։ Հավատում էին անխտիր և աշակերտները, և մանկավարժները։ Վեճերի ժամանակ նրա միջամտությունը վերջնական էր երկու կողմի համար էլ։ Գիտելիքներն ու ճաշակը ոչ մեկի մեջ կասկած չէին հարուցում, մանավանդ որ դժվարահաճ էր և ամեն ինչ չէ, որ հավանում էր։

Բարեգործական գրադարանի ընթերցողներից առաջինն էի Երևանից ստացվող լրագրերն ու հանդեսները աչքի անցկացնում։ Որոնածս Ակսելն էր։ Մի կարճ ժամանակից գրադարանը ստացավ նրա առաջին ժողովածուն՝ «Մթնածոր»։

Սիրահարվածի պես էի, որտեղ նստում էի, այնտեղ Բակունցից էի խոսում։ «Միրհավը», «Ալպիական մանուշակը», «Խոնարհ աղջիկը», «Սպիտակ ձին» անգիր գիտեի։

Հավանում էի մի աղջկա, նա էլ ինձ։ Հանդիպումների ժամանակ ամենից շատ Բակունցից էի խոսում։ Հատվածներ էի կարդում նրան։ Սկզբում հաճույքով էր լսում, հետո ձանձրացավ և, զանազան պատրվակների տակ, սկսեց խուսափել ժամադրություններից։ Բավական ժամանակ անց ընկերուհուն գանգատվել էր.

— Զարմանալի տղա է, փոխանակ իր զգացումներից խոսելու, անվերջ Բակունցի շուրջը խորհրդածություններ է անում։ Մի օր էլ ինձ ասաց-թե գիտես, դու նման ես Բակունցի հերոսուհուն՝ Սոնային։ Մի օր էլ ինձ խոնարհ անվանեց։ Սկզբում ուրախացա, բայց հետո նույնիսկ վիրավորվեցի։ Մտածեցի, որ սա ոչ թե ինձ է սիրում, այլ Բակունցի հերոսուհիների հետ ունեցած նմանությունս, իմ մեջ նրանց է որոնում։ Շատ պեծքս է։

Ոչ ոք չէր կարող իմ ներկայությամբ Բակունցի մասին քննադատական խոսք ասել։ Ինչ գիտեի-չգիտեի, մի խոսքով իմ ամբողջ «տեսական» զինանոցը մեջտեղ էի բերում

և պաշտպանում սիրելի գրողին ընկերներիս բոլոր հարձակումներից։

Ես չէի տեսել Բակունցին։ Չէի տեսել անգամ նկարը։ Բայց իմ երևակայությունը կազմել էր մի հմայիչ պատկեր։

Անցնող տարիների միջով ես տարա ինձ հետ Բակունցի հանդեպ ունեցած իմ սերը։ Շատ բան փոխվեց իմ կյանքում հասակ առնելուս հետ, բայց Բակունցը, մանավանդ նրա մի քանի պատմվածքներն ինձ համար մնացին որպես թանկագին հիշողություն։

Երբ Ստեֆան Ցվայգը անձնապատ եղավ՝ Ցեդինը մի հոդված գրեց, որտեղ ասված էր, թե ինքը նախանձում է այն ընթերցողին, որ դեռ նոր կարդալու է նրա նովելները։ Ես նույնը կարող եմ ասել Բակունցի «Ալպիական մանուշակի» և «Միրհավի» մասին։

Ես շտապում էի տեսնել նրան։ Ինչպես էլ լիներ՝ պետք է տեսնեի։ Եվ տեսա։

* * *

Ես այն տարիներին երազում էի գրողի ապագա։ Ինչպես ասացի՝ պատմվածքներ էի գրում։ Երևի կոչված չէի, այլապես չէի հրաժարվի։

Եվ մի օր որոշեցի պատմվածքներիցս մեկը նորից աչքի անցկացնել, խմբագրել, լավ թղթի վրա տպագրել և հանձնել Բակունցի դատին, մանավանդ որ լսել էի, թե «Նոր ուղի» հանդեսի պատասխանատու քարտուղարն է։

Պատմվածքը չեմ պահել, ուստի և նորից կարդալու հնարավորություն չունեմ, բայց մոտավոր կերպով միտս է մնացել բովանդակությունը։

Մի աղջիկ սիրում է մի տղայի։ Տղան էլ աղջկան։ Համենայն դեպս այդպես է հավատացնում տղան աղջկան։ Երկուսն էլ ուսանողներ են։ Տղան քաղաքից է։ Աղջիկը գավառից է, եկել է մայրաքաղաք ուսում ստանալու և իր հետ բերել իրենց դաշտերի ու երկնքի մաքրությունը։

Հերոսուհու համար աշխարհը մի կողմ, սիրած տղան մի կողմ։ Դրանք նրա համար հավասար հասկացողություններ են։ Գիրք է առնում ձեռքը՝ չի կարողանում կարդալ, տողերի արանքից իրեն է նայում տղան։ Ինչ էլ անում է, ուր էլ գնում է՝ միտքը տղայի հետ է։ Սիրում է։ Դա իսկական ու մեծ զգացում է։

Մի օր տղայի հետ ժամադրություն չունենալով՝ գնում է հանրակացարան նրան տեսնելու և սենյակի կիսաբաց դռնից վկա է դառնում մի սարսափելի տեսարանի. տղան գրկել է իր ուսանող ընկերուհիներից մեկին և համբուրում է։ Նա էլ իբր դիմադրում է՝ ծղրտում, քրքջում, բայց թույլ է տալիս։

Աղջկա գլխին սառը ջուր է մաղվում։ Աչքերը մթնում են։ Հազիվ է ոտքերի վրա մնում։ Դուրս է վազում, ինչպես ցնորված։ Փողոցում արդեն մութ էր և անձրև։ Աշխարհից, մարդկանցից հիասթափված՝ չափչփում է փողոցները։ Բավական թափառելուց հետո, ուշադրություն չդարձնելով՝ գնում հասնում է և ուժասպառ հենվում մի սյան այն փողոցում, որտեղ, սովորաբար, իրենց մարմինը վաճառող փողոցային աղջիկներն էին լինում։ Մոտենում է նրան մի տղամարդ և առաջարկում հետը գնալ։ Եվ նա, լուռ, հետևում է նրան։ Անտարբերությունը աշխարհի, կյանքի ու իր անձի նկատմամբ հասնում է այնպիսի չափերի, որ երբ տեղ են հասնում, թույլ է տալիս անծանոթին իր հետ վարվելու ուզածի պես. Նրա համար արդեն մեկ էր։ Նա կորցրել էր ամենաթանկագինը, դրանից հետո աչքին ոչինչ չէր երևում։

Հիմա չեմ հիշում, թե պատմվածքն ավարտելու համար ինչ վերջվածք էի դրել, բայց միտքս այն էր, թե մի ռոմանտիկ էակի համար որքան ճակատագրական կարող է լինել առաջին և խոր հիասթափությունը։

Խոստովանություն լինի, չեմ կարողանում հիշել՝ պատմվածքս ինքս տարա Երևան, թե ուղարկեցի ու որոշ ժամանակ անց ներկայացա Բակունցին, համոզված, որ արդեն կարդացել է։ Վերջապես, դա բոլորովին էլ կարևոր չէ։ Կարևորը իմ հանդիպումն է Բակունցի հետ։ Անկեղծ ասած, ինձ չէր հետաքրքրում պատմվածքի ճակատագիրը՝ կոպա-

գրվի՞, թե ոչ։ Ինձ համար այս դեպքում պատմվածքը, Բակունցին հանդիպելու առիթ էր միայն։

Այս էլ ասեմ, որ այդ պատմվածքն արդեն երկու մարդ կարդացել էին՝ Մաթևոս Դարբինյանը և Արշավիր Մելիքյանը։ «Կիկոսի» հեղինակը հայտնի էր երիտասարդների հանդեպ ունեցած բարյացակամությամբ, երկրորդը, որ բացարձակ հեղինակություն էր, «Լուսաբաց» հանդեսի խմբագիրն էր։ Այդ պատճառով էլ եթե առաջինին ինքս էի խնդրել, որ կարդա, երկրորդին, իմ խնդրանքով, պատմվածքս տարել էր ընկերս՝ Սարգիս Պայազատը։ Դարբինյանը խորհուրդ չավեց տպագրության հանձնել, իսկ Մելիքյանը որոշել էր՝ չի կարելի տպագրել։ Պայազատի պատմածով՝ ասել էր նաև քաջալերիչ խոսքեր։ Ասե՞լ էր իսկապես, թե բարի ընկերս սիրտս չկոտրելու համար խմբագրի մերժումը հաղորդեց ինձ իր կողմից հավելած քաջալերիչ մասով։

Մի խոսքով՝ այժմ սպասում էի Բակունցի խոսքին։ Ավելի ճիշտ՝ հանդիպմանը նրա հետ։

Ներկայացա Բակունցին։

Նա խնդրեց հանդիպել երկու օր հետո, ցերեկով, ժամը 12-ին, Գրողների տանը։ Իսկ ես գնացքի տոմս էի վերցրել նույն օրը վերադառնալու համար։ Մնացի։

* * *

Պայմանավորված ժամին Բակունցի մոտ էի։ Առաջարկեց նստել։ Զբաղեցրի պատահած առաջին աթոռը։ Խնդրեց ավելի մոտ նստել։

Գրասեղանի դարակից հանեց պատմվածքիս ձեռագիրը և դրեց առջևը։ Եվ մինչ այդ, որ ինձ թվում էր, թե անտարբեր եմ, հանկարծ զգացի, որ սիրտս խփում է անհանգիստ։

Մի-երկու հարց տվեց՝ ո՞վ եմ, որտեղի՞ց եմ, ծնողներս կա՞ն, ի՞նչ մարդիկ են։ Լավ հիշում եմ, մեկ էլ հարցրեց, թե ո՞վ է եղել հայոց լեզվի ուսուցիչս։

Հիմա երբ անդրադառնում եմ անցած-գնացած այդ օրվան, ինձ թվում է, որ նրան այնքան այդ հարցերի պատասխանը չէր զբաղեցնում, որքան հասկանալ էր ուզում,

թե իր դիմաց նստած և իրեն անծանոթ երիտասարդի նկատմամբ ինչպիսի մոտեցում պետք է ունենալ։

— Կարդացի։

Հայտարարեց նա։ Եվ Բակունցի հայացքը կանգ առավ ինձ վրա։

— Այս ի՞նչ եք գրել, երիտասա՛րդ։

Ասա՛ց նա խիստ, բայց հայացքում այնքան բարություն կար, որ ես անհամբեր էի լսելու, թե ի՛նչ եմ գրել, ո՛րն է իմ մեղքը, նման այն մեղադրյալին, որ սպասում է գնդակահարության և հանկարծ իմանում է, որ իր կյանքը խնայված է։

— Այս ի՞նչ հոռետեսություն է։ Եվ այն էլ այդ հասակում։ Հա՛, ի դեպ, քանի՞ տարեկան եք։

Ասացի։

— Չեմ հասկանում, ոչինչ չեմ հասկանում։ Բոլորովին երիտասարդ և հանկարծ խոր հիասթափություն կյանքից։ Ո՞ւմ է հարկավոր այդ մռայլությունը։

Դուռը բացվեց և ներս մտավ մի տարեց մարդ՝ ճաղատ գլխով, չափազանց նիհար, ձեռնափայտով։

— Չե՞մ խանգարի։

— Ոչ։

Եղավ պատասխանը։ Ես, իհարկե, կկամենայի մեն-մենակ լսել բոլոր կշտամբանքները, առանց երրորդ անձի ներկայության։ Ես այդ մասին էի մտածում, իսկ նա իր խոսքը առաջ տարավ. խոսեց այն մասին, որ երիտասարդ հասակում և ընդհանրապես հիանալ է պետք աշխարհով, մարդկանցով։

— Մի լավ նայեք ձեր շուրջը՝ շինարարություն է, կառուցումներ։ Գավառը մայրաքաղաք է դառնում։ Վերածնություն է։ Իսկ դուք... ի՛նչ ասեմ։

Մի փոքր հետո.

— Ծիպոտահար պետք է անել ձեզ, երիտասարդ, վաղաժամ ծերության առաջն առնելու համար։

Թեև խիստ էր խոսում, բայց ինձ թվում էր, որ հայրն է կշտամբում մեղանչած որդուն։ Ու ասաց, որ եթե ինքը, այնուամենայնիվ, ներողամիտ է, պատճառն այն համոզումն

է, որ կարդացած պատմվածքը ավելի գրքային մղումից է, քան կյանքից քաղած տպավորություն։

Հետո ավելացրեց.

— Այս պատմվածքը չենք տպագրի։

Ասաց, որ իրենց կարգի համաձայն՝ ձեռագրերը չեն վերադարձվում։ Բայց ինքը բացառություն է անում և տալիս է ինձ։

— Տարեք և ոչնչացրեք։ Այրեք ձեռագիրը և վանեք ձեր հոգում ծվարած հոռետեսին։

Խոսեց նա և ապա նրան թվաց, թե շատ է խիստ, պետք է մթնոլորտը մեղմել։

— Բայց դա չի նշանակում, որ հրաժարվում ենք ընդհանրապես տպագրելուց։ Նորը գրեք՝ պայծառ, լուսավոր մի պատմվածք, և կտպագրենք։

Ու ավելացրեց.

— Դուք շնորհքից զուրկ չեք։ Եթե աշխատեք՝ գրող կդառնաք։

Թերթեց իր առջև դրված ձեռագիրը, գտավ մի էջ, որի լուսանցքին մատիտով նշան էր արել։

— Լավ է նկարագրված անձրևը, մանավանդ նրա կաթիլները ճեղքող էլեկտրական լույսի խուրձը։

Հետո ավելացրեց.

— Պատմել գիտեք։

Ըստ երևույթին, ավարտել էր ասելիքը։ Ես չգիտեի ինչ ասել, ինչ անել։

Լսվեց մի այլ ձայն։

Հայացքս դարձրի դեպի ձայնը։

— Համբերություն, երիտասարդ, համբերություն,— միջամտեց նա։— Հեշտ չէ գրող դառնալը։ Ֆլոբերը մոտ տասը տարի տարավ-բերեց Մոպասանին, մինչև որ իրավունք տվեց հրապարակ գալու։

— Ոչ մի տասը տարի, Դերենիկ, ժամանակի ռիթմը փոխվել է։

Ուրեմն դա Դերենիկ Դեմիրճյանն է։ Հա, նման էր իր լուսանկարին։

Բակունցը դարձավ ինձ.

— Կարծում եմ, որ մեր հաջորդ հանդիպումը շատ չի ուշանա և ավելի հաջող կլինի։ Այդ երկուսն էլ միայն ձեզնից է կախված։

Ես այդ գիշեր չքնեցի։ Հակասական ապրումների մեջ էի։ Մեկ՝ ինձանից ավելի երջանիկ մարդ չկար։ Տեսել էի սիրելի գրողին, լսել նրա ձայնը։ Մեկ էլ ինձ թվում էր, որ զարկված եմ։

Բակունցը երրորդ մարդն էր, որ մերժում էր պատմվածքըս։ Արդյոք պետք չէ՞ ճակատագրական որոշում կայացնել՝ հրաժարվել գրելուց։

Ես այլևս Բակունցին պատմվածք չտարա։ Բայց տարիներ անց ու թե հանդիպում, այլ հանդիպումներ եղան և այդ մեծ մարդու հետ ունեցած իմ սրտագրավ ծանոթությունը մնաց որպես մի գեղեցիկ հիշողություն։

* * *

Փոխադրվեցի Երևան։ Բակունցին հանդիպեցի Գրողների տանը։ Մոտեցա։ Ճանաչեց։ Երեք տարի էր անցել։ Հիշեցրի։

— Հա, ինչպես չէ։ Դե, կհանդիպենք և հուսով եմ, որ անցյալ հիասթափություններից բան չի մնացել։

Հաճախ էի տեսնում Բակունցին Գրողների տանը, երբեմն Չարենցի մոտ, մի երկու անգամ էլ իր տանն եմ եղել։

Միշտ կմոտենար, կբարևեր, հարց ու փորձ կաներ։

Բակունցից ավելի հմայիչ մարդ ես չեմ հիշում այն ժամանակվա գրական շրջանակում։ Եվ, չնայած դրան, ես նրա հետ չշփվեցի մոտիկից այնպես, ինչպես Չարենցի, Դեմիրճյանի, Զորյանի և ուրիշների հետ։

Մի ձգողական ուժ կար Բակունցի մեջ, որ քաշում էր դեպի իրեն։ Բայց ինքը, հակառակ իր սիրալիր պահվածքին, մի խորհրդավոր անհաղորդություն էր կրում իր մեջ։ Որքան էլ անկեղծանում էր,— իսկ նա երբեք սառը խոսակցություն չէր վարում,— զգում էիր, որ, այնուամենայնիվ, հոգու շատ դռներ քո առջև փակ են մնում։

Ես կարծում էի, թե ինձ հետ է այդպես, բայց հետո նկատեցի, որ նույն տպավորության են իմ բոլոր հասակա-

կիցները. ավելին. գրական ավագանին, գրողներից նրանք, որ նույն մտածելակերպն ունեին, ինչ նա, համախոհներ լինելով՝ հաճախ էին հանդիպում միմյանց։ Նույնիսկ Չարենցը... գրական թևը, որին պատկանում էր Բակունցը, գլխավորում էր Չարենցը։ Վերջինս գիտեր այդ։ Բակունցն էլ գիտեր, ընդունում էր, որ այդպես պետք է լինի և խոսում էր նրա մասին, որպես գրական շարժման պարագլխի նույնիսկ այն ժամանակ, երբ գժտված էր բանաստեղծի հետ։ Բայց նկատել էի նաև մի բան. Չարենցը ծայրահեղորեն տրամադրության տեր մարդ, բորբոքուն ու անհավասարակշիռ, որ հաճախ հաշիվ չէր տալիս, թե իր հետ խոսողը կի՞ն է, տղամա՞րդ, բոլորովին այլ էր Բակունցի ներկայությամբ, քաշվում էր, զսպվում, նեղվում նույնիսկ։ Եթե կարելի է ասել՝ Բակունցը դյուրամատչելի չէր անգամ Չարենցի համար, ո՜ւր մնաց իմ ու ինձ նման երիտասարդների, որոնց աչքին Չարենցը և Բակունցը գրական կուռքեր էին։

Որքան հիշում եմ և միտս է, քիչ էր պատահում, որ գար գրական հավաքույթներին։ Հազվադեպ ցերեկները երևում էր Գրողների տանը, գրեթե չէր խառնվում վեճերին, պահում էր իրեն այնպես, որ հետը չէին վիճում։ Եթե մեկնումեկն առարկելի էր համարում նրա հայտնած միտքը, հարցի ձևով էր արտահայտում իր տարակուսանքը կամ անհամաձայնությունը։ Բակունցը հազարից մեկ էր միջամտում այդ վեճ-զրույցներին, իսկ միջամտելիս էլ մեծ մասամբ նրա ասածը գրչակից ընկերներն ընդունում էին իբրև վերջնական խոսք։ «Կաֆե-տուրիստում», որտեղ գրողները միշտ լինում էին, նրան չեմ տեսել։ Ընդհանրապես գրական միջավայրին հայտնի էր իր խստաբարո կենցաղով։ Հեռու էր գրական բոհեմայից, կերուխումի մոլությունից, որին առատորեն տուրք էին տալիս Չարենցը, Մահարին և ուրիշներ։

* * *

Մի երեկո իր տանն էի։ Զրուցում էինք, ավելի ճիշտ՝ նա հարցնում էր, ես պատասխանում էի։ Հետաքրքրվում էր երիտասարդությամբ։ Շատ էր ուզում իմանալ, թե ժամա-

նակակից երիտասարդությունը, հատկապես ուսանողությունը, ինչ կյանքով է ապրում։ Չեմ հիշում մի հանդիպում, որ նա այդ հարցին չանդրադառնար։ Նրա հետաքրքրության մեջ անհանգիստ մի բան կար։

Եվ նա ասաց.

—Երիտասարդությունը մեր ապագան է։ Մենք լավ պիտի իմանանք, թե նա ինչպիսին է։ Երիտասարդության նկատմամբ անտարբեր մնալ՝ նշանակում է անտարբեր լինել քո իսկ վաղվա օրվա հանդեպ։

* * *

Մի օր հարցրի մեր գրողներից մի-երկուսի մասին՝ Զորյանի, հետո Դեմիրճյանի։

Մի պահ նայեց ինձ։ Ու ես կարդացի հայացքը. անկեղծ լինե՞մ։ Եվ տատանումն ավարտվեց անկեղծ լինելու օգտին։

— Զորյանը, խոսք չկա, լավ գրող է, բայց իմ սրտովը չէ, թեև հիմա նրան ավելի եմ արժեք տալիս, քան առաջները։

Մի պահ լուռ մնալուց հետո.

— Շատ է հանգիստ։ Վերջապես՝ թուրք չունի։ Գուցե սխալվում եմ, չգիտեմ։ Դա է իմ տպավորությունը։

Կարճ դադար։

— Այ, Դեմիրճյանը այլ է և ավելի է ինձ սիրելի, գլխավորը՝ ներվ ունի, ինչի մասին էլ գրի, կգրի ներքին այրումով։

Եվ հետո այն միտքը զարգացրեց, թե Դեմիրճյանը դեռ չի գտել իրեն։ Բայց որ գտնի՝ կպոռթկա ժայթքող հրաբուխի պես։

Հարցրի՝ ինչո՞ւ է այդպես կարծում։

— Գիտեք ինչ, մեջը կուտակում շատ կա, չարտահայտված, տարիներով ամբարված։

Մի պահ լուռ մնաց և ապա վերջացրեց խոսքը։

— Ով ավելի է, քան կարողանում է անել, չարանում է մարդկանց ու աշխարհի դեմ և որովհետև ներքուստ համոզված է, թե ինքը արդար է, իսկ ճակատագիրն իր նկատ-

մամբ անարդար ու եթե չի հաշտվում բախտի հետ պայ-
թում է։

Շատ տարիներ անց Դեմիրճյանը «Վարդանանքը» գրեց՝ Բակունցը մարգարեացավ։

Ինձ հետաքրքրում էր Բակունցի կարծիքը երկու երիտասարդ գրողի մասին։

— Գիտեք ինչ, երկուսն էլ շնորհալի են, դրական կուլտուրա էլ ունեն կարծես, բայց տառապում են մեծ պակասությամբ։ Բացի այդ՝ նրանց տպավորությունները կյանքից չեն քաղված։ Կարդում ես և տեսնում, որ կյանքից, ժողովրդից չեն գալիս, գրքերի վրա են աճել, իսկ դա լուրջ վտանգ է, եթե կուզես՝ այնպիսի վտանգ, որ նրանց ապագան դնում է վտանգի տակ։

* * *

Չեմ հիշում հիմա, թե ինչ առիթով, բայց մի օր Դեմիրճյանն ասաց.

— Ես այն կարծիքի եմ, թե գրելիս և դրանից առաջ չպետք է գիրք կարդալ. կարող է խանգարել։

Ակսելն առարկեց.

— Ես ճիշտ հակառակն եմ անում, միշտ էլ գրելուց առաջ՝ կարդում եմ, բայց միայն կլասիկներին, այն էլ ընտրովի։ Մի քանիսը կան, միշտ ձեռս եմ առնում, երբեմն շատ եմ կարդում, երբեմն քիչ, ընդամենը մի քանի էջ, բայց անպայման կարդում եմ։ Կարդում եմ արդեն ծանոթ գործեր, որ միտքս բովանդակությամբ չզբաղվի, ամբողջ ուշադրությունս լեզվի և ոճի կողմը լինի։ Անում եմ համը, ընկալում այնպիսի ճաշակ, որին հասնելը դառնում է ներքին անդիմադրելի պահանջ։

* * *

Աշխատասենյակում նստած զրուցում էինք գրականությունից, արվեստից, մեկ էլ Բակունցի կինը՝ տիկին Վարվառան, ամուսնուն մի երկու րոպեով դուրս խնդրեց։ Բակունցի դուրս գնալն ու վերադառնալը մեկ եղավ։ Նա

ասաց, թե մարդ է եկել, հիմա կճանապարհի ու կգա։ Ասաց նաև, որ իր սեղանին գրքեր կան, զբաղվեմ մինչև գա։

Մոտեցա գրասեղանին, գրքերից մեկը վերցրի։ Ժամանակակից մի հայ բանաստեղծի հատորյակ էր դա։ Ավելի մեքենայորեն վերցրի, քան հետաքրքրությունից, մանավանդ որ գիրքն ինձ ծանոթ էր։

Թերթեցի և ինչ տեսնեմ. Բակունցի ձեռքով լցված էին գրքի բոլոր էջերը։ «Եղբայրության ընկուզենիները» նա արտագրել էր այդ գրքի մեջ*։

Պատմեմ, որ հասկանալի լինի։ Թումանյանի և Չարենցի մեծադիր միհատորյակներն էին լույս տեսել և մեր բանաստեղծներից մեկը պահանջ էր դրել, որ իրեն նույնպես այդպես հրատարակեն։ Բայց նա մեծադիր հատորի համար անհրաժեշտ չափով գրվածք չուներ։ Թումանյանի և Չարենցի հատորներում շարվածքը երկու սյունով էր տրված ու էջեր կային, որ ընդգրկում էին հինգից ավելի ոտանավոր։ Որպեսզի մի կերպ ստացվի իր ուզած հատորը՝ այս բանաստեղծը խնդրել էր, որ ամեն մի բանաստեղծություն սկսվի նոր էջից։ Ոտանավորներ կային, որ մի քանի տող էին ընդամենը։ Եվ ստացվում էր մաքուր էջ՝ ճերմակ բաց տարածություն։ Եվ Բակունցն էլ այդ գիրքն օգտագործել էր որպես ընդհանուր տետր ու իր վիպակն արտագրել նրա մեջ։ Դա էլ հեգնելու մի ձև էր։

* * *

Հայպետհրատը լույս էր ընծայել Վարդան Այգեկցու առակների աշխարհաբար թարգմանությունը։ Փոքրիկ գրքույկ էր դա, «Աղվեսագիրք» անունով։ Ճաշակով մի հրատարակություն էր, որ ձևավորել էր Հակոբ Կոջոյանը իրեն հատուկ արվեստով։ Մի քանի օրում սպառվեց։ Գրքին բաժին ընկած հաջողությունը մեծ էր։ Եվ հանկարծ... ջախ-

---

* Ուսուցիչ Ա. Ավագյանը 1940-ին ասաց ինձ, թե այդ գիրքն իր մոտ է, իսկ վերջերս նամակ ստացա որտեղ գրում է թե «մնաց Տարոնցու մոտ»։

չախիչ հոդվածներ հրապարակվեցին «Խորհրդային արվեստում»։ Հոդվածներից մեկի վերնագիրը հիշում եմ՝ «Աղվեսագրքի և լիբերալիզմի թակարդն ընկած աղվեսների մասին»։ Բակունցը և նրան հովանավորողները հայտարարվում էին միջնադարով տարված ազգայնամոլությամբ տառապողներ։ Ազգային արժեքների բացասման ոգով գրված այդ հոդվածը մեծ հուզում առաջ բերեց։

Բակունցը, որ ներկա էր, ոչ մի խոսք չասաց։ Լուռ լսում էր, մեկ-մեկ ժպտում միայն։

Դեմիրճյանն ու Բակունցը փողոց դուրս եկան։ Ես միացա նրանց։ Դեմիրճյանը հարցրեց, թե ինչու է լուռ, վերջապես ինչպե՞ս կարելի է հանգիստ մնալ։

— Իմ գործն արդար է, պաշտպանության կարիք չունի։

Հետո ասաց.

— Կարևորը գիրքն է և ոչ նրա շուրջն ստեղծված աղմուկը։ Աղմուկը կմոռացվի, գիրքը կմնա։ Կգա ժամանակ և «Աղվեսագրքի» շուրջ եղած այս ամոթալի պատմությունը կստանա իր գնահատականը։ Ոչինչ չի մոռացվում։

— Այսպիսի համոզման տեր մարդը,— ասաց Դեմիրճյանը Բակունցից բաժանվելուց հետո, —իհարկե, պետք է հանգիստ լինի, թեև խոսելիս, նկատեցի՞ր, ձայնի մեջ վրդովված շեշտ կար։

* * *

Ցերեկով մի խումբ գրողներ զրուցում էին։ Այդպիսի դեպքերում ես մոտենում էի, մի անկյունում տեղ գրավում և լսում։

Չեմ հիշում հիմա, թե ում, բայց մի գրողի հարցրին, թե ինչո՞ւ վերջերս չի երևում։ Ոչ գիրք է հրատարակում, ոչ մամուլում է տպագրվում։ Սա էլ թե՝

— Մուսայիս եմ սպասում, նա էլ չի գալիս։

Իհարկե, կատակով էր ասված։ Բայց դա պատճառ դարձավ, որ խոսակցությունը դառնա ստեղծագործական ներշնչանքի շուրջ։

— Ներշնչանքը ծնվում է աշխատելու ժամանակ։
Ասաց Բակունցը և շարունակեց.
— Ես հավատում եմ, որ մարդ կարող է տրամադրված չլինել ու չկարողանա գրել։ Կարող է պատահել, բայց ներշնչանք առավծը գալիս է աշխատանքի հետ, ինչպես ռուսն է ասում՝ апетит приходит во время еды.
Մի փոքր հետո.
— Ես չեմ ասում, թե նստեցիր, գրիչը ձեռդ առար, թերթ-թերթի հետևից կլցնես։ Երբեմն պատահում է՝ գրում ես, գրում ու չի ստացվում։ Նշանակում է նյութի հասունացում դեռ չկա։
— Ճիշտ է։
Հաստատեց Նորենցը։
— Ցավալին այն է, որ աշխատելու կուլտուրա չունենք։ Հայ գրողը ծույլ է, չի սիրում տքնել։
Եվ հիշեց Տոլստոյին։
Մեկը, կարծեմ Թոթովենցն էր, ասաց, թե Տոլստոյն իր վեպերը մի քանի անգամ արտագրում էր։
— Պրոֆեսիոնալիզմի նշան է։
Նկատեց Բակունցը։
— Իսկ Դոստոևսկին չէր սիրում մշակել մի անգամ գրածը։
Միջամտեց Տարոնցին։
— Ուրեմն մշակումը տեղի էր ունենում գլխում, երևակայության մեջ։
Վերջակետ դրեց Բակունցը։

* * *

Գրողների տանն էր։ Մի քանի գրողներ խմբված զրուցում էին, լավ հիշում եմ՝ Դեմիրճյանն էր, Թոթովենցը, եթե չեմ սխալվում՝ նաև Նորենցը։ Երբ մոտեցա՝ զրույցը վաղուց էր սկսված և չհասկացա, թե խոսակցության բուն նյութն ինչ է։ Միտս է, սակայն, Բակունցի խոսքը։
—Ուշադրությու՞ն դարձրե՞լ եք, որ մանկության մասին ամենքն էլ լավ են գրում, նույնիսկ ոչ գրողները, եթե միայն մի քիչ գրիչ բռնել գիտեն։

— Պարզ է,— ասաց Դեմիրճյանը։

Բակունցը հարցական նայեց նրան։ Դեմիրճյանի փոխարեն պատասխանեց Թոթովենցը.

— Ապրված նյութ է։

Բակունցը շարունակեց.

— Հիշողությունը պահպանում է տեսածից ու ապրածից ամենաթանկագինը, ինչ որ պետք չէ՝ մոռացվում է, առաջնակարգը երկրորդականից ջոկում է ժամանակը, զտում, թողնում ամենաէականը։

* * *

Ճարտարապետների հավաքույթն էր։ Հրավիրված էին նաև գրողներ։ Դահլիճը լեփ-լեցուն էր։ Ասեղ գցելու տեղ չկար։ Չեմ հիշում հավաքույթի օրակարգը, բայց խոսքը վերաբերում էր ժամանակակից ճարտարապետության հարցերին։ Շատերը խոսեցին։ Հիշողությանս մեջ մնացել է Բակունցի ելույթը, ավելի ճիշտ՝ նրա մի խոսքը։ Սկզբում նա իր տրտունջը հայտնեց, թե քաղաքը լցվել է մեկը-մյուսից գորշ, անարտահայտիչ շենքերով։ Մեկն էլ հենց այն շենքը, որտեղ մենք հավաքվել ենք։ Իսկ հավաքույթը տեղի էր ունենում Կառուցողների ակումբում։ Դահլիճը ծիծաղեց։

Հետո ասաց.

— Կառուցեք այնպես, որ շենքը ժպտա, փողոցով անցնողի հետ խոսի, մի բան ասի։

Դահլիճում բուռն ծափահարություն բարձրացավ։ Եվ մի քանի օր մարդիկ միմյանց հանդիպելիս ելույթից էին խոսում։

* * *

Լավ հիշում եմ, որ Գրողների տանն էր, բայց միտս չէ, թե ով, հարցրեց.

— Աբովյանին նվիրված վեպը ավարտե՞լ եք։

— Այո, վերջացրել եմ։

Իսկ ինչո՞ւ լույս չի ընծայում։ Ասաց, թե մտադիր է պարբերական մամուլում մաս-մաս հրապարակել, դրա հիման վրա մշակել և նոր միայն առանձին գրքով լույս ընծայել։

— Տպվածի մեջ սխալը, թերությունը մարդ լավ է տեսնում։ Այդպես չէ՞։ Ուզում եմ մի լավ մշակել, իսկ հրատարակել՝ միշտ կհասցնեմ։

Հարցրի, թե ինչպե՞ս է կոչել վեպը.

— Երևակայեք, դեռ վերնագիրը չեմ գտել։ Մի քանի բան անցնում է մտքովս, բայց սրտովս չեն, էն չեն։ Տեսնենք, դեռ ժամանակ ունեմ։

Մի տարի էր անցել կամ գուցե ավելի պակաս։ Բակունցը Դեմիրճյանին ասաց, թե երեկ գիշեր վեպի վերջակետը դրեց։

* * *

Մի օր հարցրեց.

— Պատմվածքը, որ բերել էիր ինձ, ի՞նչ արիք, տպագրեցի՞ք։

— Ոչ։

— Բա ինչո՞ւ։

— Ասացիք՝ ոչնչացրեք, ես էլ բռնեցի ու այրեցի։

— Ե՞ս եմ ասել ոչնչացրեք։

— Այո։

— Մի՞թե այդքան դաժան եմ վարվել ձեզ հետ։

Ես ձայն չհանեցի, ինքն էլ լռեց։

— Մի շաբաթ առաջ հիշել եմ ձեզ, ձեր պատմվածքը։

Ու պատմեց, որ իր մոտ եկել է մի ծանոթ գյուղատնտես և արել իմ նկարագրած դեպքին չափազանց նման մի պատմություն։ Ինքը մնացել է զարմացած. ա՛յ քեզ զուգադիպություն։

— Ծանոթիս հարցրի՝ պատմածը ե՞րբ է տեղի ունեցել։ Ասաց՝ մի տարի էլ վրայից չի անցել։

Մի պահ լռելուց հետո.

— Իսկ ես չհավատացի ձեր պատմվածքի կենսական հիմքերին, արի ու տես, որ կյանքը հաստատեց։

Եվ հետո ավելացրեց.

— Ուրեմն կյանքում ամեն ինչ էլ կարող է լինել։

Ես անմիջապես վրա բերի.

— Բայց գրողը պիտի կարողանա հավատացնել։

Ժպտաց։

— Իրավացի եք։

Նրան դուր եկավ իմ ինքնաքննադատական պահվածքը։

— Ուրեմն սուտ եք, այրել եք։ Իզուր։ Իհարկե, լավ եք արել, որ չեք տպագրել, բայց պետք չէր լսել ինձ ու ոչնչացնել։ Ես չէի այրի, եթե անգամ այդ խորհուրդը Չեխովը տված լիներ։

Մի պահ կանգ առավ, հետո շարունակեց.

— Երևի հետաքրքիր կլիներ հիմա կարդալ, տեսնել, թե ինչ եք գրել։ Երևակայեք, ես էլ կկարդայի նորից, գյուղատնտեսի պատմությունը լսելուց հետո։

* * *

Մի օր հարցրեց.

— Եղիշեի մոտ լինո՞ւմ եք։

Պատասխանեցի։

— Ինչպե՞ս է զգում իրեն, վաղուց է չեմ տեսել և ոչ մի լուր չունեմ նրանից։

* * *

Լույս էր տեսել «Սև ցելերի սերմնացանը»։ Ընթերցողը հիացած էր, գրողներն ու քննադատները խոսում էին այն մասին, որ ստեղծվել է բակունցյան ոճ, իսկ մամուլում հաղվադեպ, բայց լսվում էին ձայներ, թե Բակունցը իդեալականացնում է գյուղի նահապետական հետամնացությունը։ Այս ոգով հոդված էր լույս տեսել, եթե չեմ սխալվում՝ «Գրական թերթում»։ Հարցրի՝ կարդացել է։

— Ինչպես չէ։

Ու դառը ժպտաց։

Ես չէի գտնում, թե հարմար է, որ իմ կարծիքն ասեմ իր գրքի մասին, բայց չէի կարող նաև վերաբերմունք չարտահայտել, մանավանդ դա ներքին պահանջ էր, ուստի ասացի, թե ուսանող ընկերներս հիացմունքով են կարդում, գրքի իմ օրինակը ձեռքից-ձեռք է անցնում։

Ժպտաց։

— Այդ գրքով,— ասաց,— ես ամփոփեցի իմ գրական երիտասարդությունը։ Ընտրեցի հաջողվածները, մշակեցի, իհարկե, ու հրատարակեցի։ Եվ վերջ, այլևս չեմ անդրադառնա ոչ այդ նյութին, ոչ էլ կգրեմ նույն ոճով։

Լռեց։

—Համեստություն չի ասածս, թանկագին բարեկամ, բայց ես մի քանի տարի է, որ հասկացել եմ, թե ինչ պիտի գրել և ինչպես։

Մի պահ կանգ առավ։ Հետաքրքրվեց՝ կարդում եմ Աբովյանի հատվածները։ Դա է իսկականը։ Եվ ապա զգուշացրեց, որ սխալ չհասկանամ՝ ոչ թե իր գրածը, այլ ոճը, մոտեցումը, որ հիմա նախընտրում է։ Իր նոր ճանապարհը դա է։ Ուր կհասնի, չգիտե, չգիտե նաև, թե երբ կհասնի, բայց եթե մի բան կարողանալու է անել մեր գրականության համար, ապա երևի այդ ճանապարհին։

* * *

Մի օր ասաց.

—Ես թախիծին դեմ չեմ։ Իմ մեջ, հավատացեք, տխրություն շատ կա։ Բայց թախիծը մտնում է ընթերցողի հոգու խորքերը և իր գործը տեսնում, երբ ներքուստ, անհայտ, անհասկանալի մի անկյունից լուսավորված է, պայծառացած։

* * *

Ես հիմա չեմ հիշում, թե ինչու խոսք բացվեց Գրիգոր Զոհրապի մասին։ Ասացի, որ եթե թարգմանվի ռուսերեն, լավ կընդունվի, գուցե մեծ համբավի էլ հասնի։ Գտավ, որ ճիշտ եմ. արժե, իհարկե, Զոհրապի նման վարպետին թարգմանել ռուսերեն։

— Իսկ դուք կարդացե՞լ եք Երուխանի նովելները։ Ո՞չ։ Կարդացեք, անպայման կարդացեք։ Մեծ բավականություն կստանաք։ Հողի բույրը կզգաք, ջրի սառնությունը։ Ափսոս, շա՜տ ափսոս, որ քիչ է գրել։

Կանգ առավ, մոտեցավ պատուհանին, նայեց դուրս: Փողոցի վրա իջնում էր իրիկնային մութը: Եվ հետո, կարծես չէր էլ ընդհատվել խոսքը, շարունակեց.

— Մեր ընթերցողին ծանոթ չէ Երուխանը: Շատերը չգիտեն, նույնիսկ գրողները: Մարդ կա, որ անունն էլ չի լսել: Ձեռքիս գործ կա, հենց որ վերջացնեմ՝ Երուխանի նովելների ժողովածուն պատրաստելու եմ տպագրության: Եղիշեի համաձայնությունն ունեմ: Ինչ սիրով եմ անելու, մի լավ էլ առաջաբան կգրեմ:

Լռություն:

— Ա՜յ թե կարողանայի այդպես գրել:

Տարիներ անց երբ ձեռնամուխ եղանք Երուխանի նովելների հրատարակությանը՝ մտածեցի, որ իրականանում է Բակունցի անկատար մնացած երազներից մեկը:

* * *

Ահա բոլորը, ինչ որ հիշում եմ:

Ես չեմ հանդիպել մի ուրիշ ավելի ներդաշնակ մարդու, քան Ակսել Բակունցն էր: Ամեն ինչ գեղեցիկ էր նրա մեջ: Նրա մեջ ամեն ինչ գեղեցիկ էին՝ և մտքերը, և գործերը, և անգամ հագուստը: Գուցե ոչ պատահմամբ գրչիս տակ միտքըս ձևակերպվեց չեխովյան սահմանման համաձայն: Բակունցը նման էր Չեխովի մի հերոսին՝ Աստրովին: Սա, իհարկե, երազող էր:

Այ քեզ ամբողջական անձնավորություն: Հիմա, երբ անդրադառնում եմ նրան, չեմ կարող ասել, թե մի ուրիշ գրող նրա հմայքն ուներ: Եվ զարմանալի կերպով կարողանում էր հույզը ենթարկել մտքին, միտքը՝ հագեցնել զգացմունքով: Բոնկումների զոհե ես վկա չեմ եղել, տեսել եմ հանգիստ, խաղաղ, հավասարակշռված, բայց հասկացել եմ, որ հոգում միշտ մի բան անհանգիստ է, այրվում է ներսից, և զարմանում էի, ու հիմա էլ զարմանում եմ, թե ինչպես էր կարողանում տիրապետել իրեն: Կարողանո՞ւմ էր: Ճի՞շտ է գտնված այս բառը, արդյոք: Որ նա մտավորական էր բառի իսկական առումով՝ ճիշտ է: Որ տարիները մշակել

և հղկել էին նրան, այդ էլ ճիշտ է։ Բայց ինձ թվում էր, որ նա ծնվել էր ներդաշնակ։ Ծնվել էր ամբողջական։ Հակասություն չկար գրողի և մարդու միջև, ինչպես նաև կարողության և նրա առջև կանգնած խնդիրների ստեղծագործական լուծման, կոչման և գործունեության։ Ու ես ի վիճակի չեմ հիմա մտաբերելու մի այլ գրողի, որն ունենար ներքին և արտաքին այդպիսի ներդաշնակություն։

Շատ վաղ և դաժանորեն ակամա նա հրաժեշտ տվեց աշխարհին, մարդկանց, գրաղմունքին, երազներին... Մթնաձորի երգիչը, ինչպես անվանում էին նրան, նոր էր ոտքը դուրս դրել հայրենի անտառներից, նոր էր հայացքը դարձրել դեպի հեռուները...

Կայծակը կաղնու անտառներ է այրում, ուր մնաց, որ խնայեր այդ մեկին։ Կայծակից զարկված Բակունցը մնաց կես-ճանապարհին։

Եվ նա մշտական մի վիշտ է մեր գրականության համար։

## ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

Չարենցի հետ ծանոթացա 1933-ին։ Այն ժամանակ համալսարանի երկրորդ կուրսի ուսանող էի։ Մի-երկու հոդված էի գրել։ Դրանցից մեկն այդ շրջանի պոեզիայի վիճակին էր նվիրված, որտեղ ես, նորելուկ մի քննադատ, երիտասարդական հոխորտանքով Չարենցին մեղադրում էի մի շարք իզմերի մեջ՝ պսիխոլոգիզմ, ինդիվիդուալիզմ և այլն։ Ես, իհարկե, այժմ շատ բան կտայի, որ այդ հոդվածը գրված չլիներ, բայց դա եղավ Չարենցի հետ ծանոթանալուս պատճառը. կարդացել էր, հետաքրքրվել ինձնով և ասել, որ անցնեմ իր մոտ։ Գնացի։ Շատ չանցած՝ դարձա բանաստեղծի տան հաճախակի այցելուն։ Տուն գալիս գրի էի առնում նրա ասածները։ Դժբախտաբար, ամեն ինչ ժամանակին գրի չեմ առել։ Երբ ուշ եմ տուն եկել, թողել եմ վաղվան, մյուս օրվան, և այդպես էլ մնացել է առանց թղթին հանձնվելու։ Մեկ-մեկ էլ նշել եմ օրը, խոսակցության նյութը միայն, բայց ոչ խոսակցությունը։ Ցավոք՝ բոլոր գրանցումները չեն պահպանվել։ Շատ կարևոր զրույցներ եմ մտաբերում, որոնց գրանցումները չկան ձեռքիս տակ և ստիպված՝ վերապատմում եմ իմաստը լոկ։

* * *

Ես կարծում էի, թե առաջին հանդիպման ժամանակ Չարենցը կխոսի հոդվածիս մասին, մանավանդ որ իր դեմ այնտեղ սուր էր ճոճված։ Ծանապարհին, մինչև բանաստեղծի տունը հասնելը, մտածում էի, թե ինչ կարող է ասել, ինչ կարգի դիտողություն կամ ինչպիսի առարկություն անել և ըստ այնմ էլ պատասխան էի որոնում, պատրաստվում վեճի

բռնվել։ Բայց, հակառակ սպասածիս, այդ մասին ոչ մի խոսք չեղավ, միայն սկզբում, երբ հարցուփորձ էր անում, թե ինչո՞վ եմ զբաղված, ի՞նչ եմ գրում, ի՞նչ եմ կարդում, ասաց.

— Ուրեմն, դու Պաստերնակ ես կարդացել։ Հետաքրքի՞ր է։

Իմ հոդվածում բավական երկար կանգ էի առել այդ բանաստեղծի վրա։

Զրույցի երկրորդ մասը գործնական էր։ Չարենցն այդ ժամանակ վարում էր Պետհրատի գեղարվեստական գրականության բաժինը։ Ասաց, որ երկու առաջարկ ունի։

Տպագրվում են և շուտով իրար հետևից լույս կտեսնեն Նար-Դոսի երկերի ժողովածուի առաջին երեք հատորը։

Դրանք կազմել է հեղինակը։ Դե՛, հիմի ինքը չկա։ Չորրորդը կլինի «Մահը»։ Հարկավոր է մի օրինակ գտնել՝ տպարան ուղարկելու համար։ Իսկ հինգերորդը պետք է կազմել, այսինքն՝ ժողովել պիեսները, հեքիաթները, նամակները, մի խոսքով՝ ինչ որ դուրս է մնացել։

— Կես տարի ժամանակ. համաձա՞յն ես։

Ոչ մի ձայն չհանեցի։ Նա շարունակեց, ասաց, որ «Էժանագին գրադարանի» սերիայով լույս է տեսնելու Նար-Դոսի «Աննա Սարոյանը»։ Դրա համար առաջաբան է պետք։

Մի փոքր լռելուց հետո առաջ տարավ խոսքը.

— Առաջինը հեշտ գործ չկարծես։ Սկզբում ծանոթացիր, տես, թե ուրիշներն ինչպես են արել, սկզբունքները պարզիր, մեթոդը, և հետո ինքդ արա։ Ընդօրինակելու կարիք չկա, բայց եղած փորձը նկատի առ ամեն ինչ նորից չսկսելու համար։ Իսկ երկրորդը, սիրելի՛ս, արդեն պատիվ է. ամեն մեկին չեն առաջարկում առաջաբան գրել։ Պետք է լավ գրել։ Եվ միայն լավ։ Չերկարացնես. որքան կարճ՝ այնքան լավ։ Դե՛, պայմանավորվեցի՞նք։

Քիչ հետո՝

— Այս առիթով ասելիք ունեմ։

Լռեց։ Ելավ տեղից։ Ես էլ բարձրացա։

—Նստի՛ր, նստի՛ր, ինձ այսպես ավելի հարմար է։

Ու ասաց, որ հիմա մեր գրական կյանքում կուլտուրա-

կան ժառանգության հարցի շուրջ գոյացել է երկու թև, «ձախերի» և այսպես կոչված՝ «աջերի»։ Վերջինները թեև աջ են անվանվում, բայց կանգնած են ճիշտ ճանապարհի վրա։ Նրանք հիմք են ընդունել լենինյան մոտեցումը։ Առանց հնի՝ նորը չի ծնվի։ Այսպես մտածողներին աջ են անվանում նրանց հակառակորդները՝ ձախերը՝ որ ճիշտ ասած՝ ձախլիկներ են։ Ու ավելացրեց.

— Քեզ էլ կարող են մեղադրել։ Աջ էլ կասեն, նացիոնալիստ էլ կասեն։ Ուշք մի դարձրու և քո գործն արա։ Միշտ հիշիր. առանց անցյալի՝ չկա ժողովուրդ։

* * *

Իզաբելլային հարցրի, թե ով կա իր մոտ, ասաց՝ մենակ է։ Ներս մտա, տեսնեմ, թախտին քնել է, կողքին մի գիրք, բաց ընկած։ Կարդացել է ու քնել։ Մի գիրք վերցրի սեղանից և նստեցի աթոռին։ Մի-երկու էջ հազիվ էի կարդացել՝ արթնացավ։ Նայեց իմ կողմը, ժպտաց, ծխախոտ վերցրեց, լուցկի խնդրեց։ Գիրքը ձեռքն առավ, բայց, երևում էր, ոչ թե կարդալու մտադրությամբ, այլ պարզապես միտքը վերադարձավ կարդացածին։

— Մարդ հնարավորություն ունենար՝ միշտ կարդար։ Պառկեր ու կարդար։ Ամեն մի գիրք մի աշխարհ է։ Ո՞վ է ասել. չեմ հիշում։ Լավ, կարևոր չէ։ Ինչքան էլ կարդում ես՝ էլի կա ու կա։ Ամենից շատ կարդացել է Տոլստոյը։ Է՜հ, նրան ինչ։ Մարդը գրաֆ էր, բա որ նա չկարդար, ե՞ս պիտի կարդայի, скажи пожалуйста! Համ հնարավորություն ուներ, համ էլ երկար ապրեց։ Մենք ոչ այդ հնարավորությունն ունենք, ոչ էլ այդքան կապրենք։

* * *

Մի օր էլ չէր անցել՝ անդրադարձավ նույն մտքին։

— Գիրքը խմիչքից ոչնչով պակաս չէ, իհարկե լավ գիրքը։ Խմողը դարդը խեղդում է հեղուկի մեջ, կարդացողը՝ գրքի։ Կարդում ես ու գնում մի այլ աշխարհ։

*Մի փոքր հետո ավելացրեց.*

*— Գիտես, ամենաերջանիկ մարդն էլ կարիք ունի իր շրջապատից վերանալու, իրականությունից հեռանալու, կտրվելու, թեկուզ մի քանի ժամով։*

* * *

*Մի օր նորից խոսեց կարդալու մասին։*

*— Մեր գրողները չեն կարդում։ Գրող կա, որ եթե հարցնես, թե ով է Պոն՝ չի ասի։ Կգտնվեն այնպիսիները, որ անունն էլ չեն լսել։*

* * *

*Չարենցի գրասեղանին Պուշկինից միշտ մի որևէ գիրք էր լինում։*

*— Ոչ մի բանաստեղծ, ոչ մի պոետ ինձ այնպես չի խաղաղեցնում, ինչպես Պուշկինը. Հոգեկան ներդաշնակության բարձրագույն ձևը նրա մեջ եմ տեսնում միայն։*

* * *

*Գնում էի տուն։*

*— Ի՞նչ գիրք է։*

*Ցույց տվի։*

*— Հա՛, «Կյուխլյան» է, «Վազիր Մուխտարի մահը» կարդացե՞լ ես։*

*Ասացի, որ կարդացել եմ։*

*— Իսկ* «Подпоручик Киже!»*-ն։ Ամենալավը դա է։ «Կյուխլյան» «Վազիրից» լավ է։ Բայց սպասիր, թող մի Ակսելն «Աբովյանը» մեջ բերի, տես քո Տինյանովը մկան ծակը քանիսով կառնի։*

*Լուռ քայլում էինք։*

— Տինյանովը էրուդիտ է, գրել էլ գիտի։ Բայց գրող չէ։ Այսինքն՝ կոչված չէ։ Ակսելն իսկական գրող է։ Եվ ոչ էլ պակաս էրուդիտ։ Սպասիր, սպասիր, մի քիչ էլ սպասիր և այն ժամանակ կտեսնես ինչեր կանի մեր բարեկամը։

* * *

Ասել էր, որ անցնեմ իր մոտ։ Նստած գրում էր։ Խնդրեց զբաղվել որևէ գրքով, մինչև ինքը վերջացնի։ Մոտեցա գրապահարանին։ Ինքն էլ մոտեցավ։

— Էկերմանը կարդացե՞լ ես։

Ասացի, որ լսել եմ, բայց չեմ կարդացել։ Ոչինչ չասաց, բայց գլուխն օրորեց, հայացքն էլ հանդիմանական էր։ Հանեց Էկերմանի գիրքը, մի հին հրատարակություն, եթե չեմ սխալվում՝ 1905-ին լույս տեսած (երկու պրակով), իսկ ինքը վերադարձավ շարունակելու զբաղմունքը։

Հասկացա, որ դա պատահական առաջարկ չէր։ Նախորդ օրը, մեմուարային գրականության մասին բավական երկար խոսք եղավ, և նրան ասացի, թե շատ եմ սիրում գրականության այդ ճյուղը, լավ հուշագրությունից ավելի մեծ բավականություն եմ ստանում, քան վեպերից։ Ես, իսկապես, քիչ չէի կարդացել մեմուարներ, բայց, ըստ երևույթին, նրա համար տարօրինակ էր, որ խոսելիս երբեք չէի հիշել Էկերմանի անունը։ Եվ այսպես, ուրեմն, որոշեց սուրգել։

Գրելը վերջացնելով, այլևս չհարցրեց էլ ուզո՞ւմ եմ, թե չէ և «Գյոթեի զրույցների» երկու պրակն էլ փաթաթեց լրագրի մեջ, որ տանեմ կարդալու։

Մի քանի օր անց հետաքրքրվեց՝ կարդո՞ւմ եմ։ Ես սխալ հասկացա նրան, կարծեցի, թե շտապեցնում է, ասացի, որ քիչ է մնացել և շուտով կբերեմ։

— Կարող ես չշտապել։

Եվ իմ առաջ դրեց Էկերմանի նոր հրատարակությունը՝ մի հատորով։ Այդ ինձ շատ ուրախացրեց։ Ես անզգուշություն ունեցա կարծելու, թե մոտս եղածը կարող է մնալ ինձ։ Երբ ասացի՝ զարմացավ, ոչ իհարկե նրա վրա, որ գիրք եմ ուզում, մանավանդ որ երբեմն ինքն էր առաջարկում։ Զար-

մացավ, որ ես կարող էի մի գրքի նոր հրատարակությունն ունենալու պատճառով հինն ավելորդ համարել։

— Իհարկե, լավ կլինի, որ Էկերման ունենաս։ Միշտ պետք կգա։ Մի բան կանենք։

Այդ օրը մենք երկու գրախանութ մտանք։ Չարենցը խնդրում էր իրեն համար։ Ափսոսում էին, որ չեն կարող նրա ցանկությունը կատարել, վերջին օրինակը երկու օր առաջ էր վաճառվել։ Ներողություն էին խնդրում, անհարմար զգում։

— Գնանք Տիգրանի մոտ։ Անկարելի է, որ չունենա։

Այդ այն գրավաճառն էր, որը Չարենցի համար սովորաբար գիրք էր պահում։ Էկերմանի նոր հրատարակությունն էլ նա էր պահել Չարենցի համար։

Ճանապարհին գովում էր Տիգրանին, ասում, թե շատ լավ է ճանաչում գիրքը և գիտե, թե ում է հարկավոր տալ։

Գրախանութը, ուր աշխատում էր Տիգրանը, գտնվում էր Աբովյան և Ռուբենի (այժմ Սվերդլովի) փողոցների անկյունում, ուր այժմ ջրավաճառանոց է։

— Տիգրան, Էկերման եմ ուզում։

— Երեկ չէ՞ր որ տվի, ընկեր Չարենց։

— Այս երիտասարդի համար եմ ուզում։

Տիգրանի հայացքը չափեց ինձ ոտից-գլուխ։

— Չունեմ։

Ըստ երևույթին ոչ մի տպավորություն չթողեցի։

— Եթե ճար չանես՝ իմ օրինակն եմ տալու։

Տիգրանը նորից նայեց ինձ, և այս անգամ նրա հայացքի մեջ մեղմ հանդիմանություն կար։ Չարենցը հասկացավ, որ ունի, բայց տատանվում է։

— Տո՛ւր, Տիգրան, չի կարող պատահել, որ հոգեպահուստ չունենաս։

— Հա՛, մի օրինակ պահել եմ,— ասաց Տիգրանը և տվեց մի ազգանուն, որ լավ չլսեցի։

Չարենցը ծիծաղեց։

— Նրա ինչի՞ն է պետք։ Տանելու է, չի էլ կարդալու։ Գիրքն էլ հակառակի նման, մի փառահեղ տեսք ունի,— հեգնանքով նկատեց նա։

Տիգրանի դեմքին ժպիտ խաղաց։
Եվ ես այդ օրը տուն վերադարձա իմ սեփական էկերմանը թևիս տակ։

* * *

Իր հանձնարարությամբ պատրաստած Նար-Դոսի երկերի լիակատար ժողովածուի այն հատորը, որի մեջ մտնում էին պիեսները, տարա ցույց տալու։ Սկսեց թերթել։ Գլուխը թաղել էր ձեռագրերի մեջ և մեկ-մեկ միայն բարձրացնում էր, երբ ուզում էր որևէ հարց տալ կամ դիտողություն անել։ Թերթեց, հասավ Լեոնիդ Անդրեևի «Զին սենատում» պիեսի թարգմանությանը։ Դրամատուրգը, ինչպես հայտնի է, որպես բնաբան, պիեսին կցել է Դերժավինից մի-երկու տող։ Կարդաց, առանց գլուխը բարձրացնելու ասաց.
— Կարծեմ սխալ է թարգմանել։
Հայտնի է, որ Չարենցը լավ գիտեր ռուսական գրականությունը, մանավանդ բանաստեղծներին։ Եվ, այնուամենայնիվ, չէի կարծում, թե նա կարող է այդ պահին հիշել Դերժավինի այն ներբողը, որտեղից քաղված էր բնաբանը։ Նար-Դոսի բարեխղճությունը ամենքին հայտնի էր։ Չէի ուզենա, ասենք, չէի էլ կարծում, թե նրա թարգմանության մեջ կարող է սխալ լինել և, ինչ թաքցնեմ, այդ պահին մտածում էի, որ Չարենցը պարզապես մեծամտում է։ Նա կարծես կռահեց միտքիս և ի պատասխան դրա, արտասանեց Դերժավինի հսկայական ներբողը՝ սկզբից մինչև վերջ։
Ես մնացի ապշած։

* * *

Մի այլ առիթով ես կրկին համոզվեցի, թե ինչ լավ հիշողության տեր է Չարենցը։
Գրողների տանը գրական լեզվի հարցերին նվիրված սուլիններ կազմակերպվեցին։ Առաջին զեկուցումը, որքան հիշում եմ, տվեց Բակունցը։ Երկրորդ զեկուցումը, պոեզիայի լեզվի մասին, կարդաց Թերզիբաշյանը։ Հետո հանդես

եկավ Դեմիրճյանը։ Չորրորդ զեկուցումը Չարենցինն էր։ Սրանք իրարից անջատ զեկուցումներ էին, բայց հաջորդեցին միմյանց և, այդ բոլոր հավաքույթները միասին առած՝ շուրջ տասը օր լարված հետաքրքրության մեջ պահեցին գրական հասարակայնությունը։ Չարենցի զեկուցման կապակցությամբ բացված մտքերի փոխանակությանը մասնակցեցին շատերը։ Ելույթ ունեցա նաև ես։ Իմ միտքը հաստատելու համար հանկարծ կարիք զգացի մեջբերել Տերյանի մի տանավորը՝ ռուսերեն թարգմանությամբ։ Մի քանի տող ասացի ու կանգ առա, շարունակությունը չէի հիշում, կանգ առածս տեղից մինչև վերջ շարունակեց Չարենցը։

* * *

Լեզվի սուլիսին լեզվաբաններից մասնակցում էր Գուրգեն Սեվակը։ Նա համաձայն չէր Չարենցի հիմնական դրույթին և առարկում էր բավական համոզիչ ու տրամաբանված։ Իր վերջին խոսքն ասելիս, Սևակին ըստ էության պատասխանելուց առաջ, Չարենցը վճռեց նաև զվարթ մթնոլորտ ստեղծել հակառակորդի շուրջը, այսպիսով խախտել նրա թողած տպավորությունը և նոր միայն անցնել վեճի բուն նյութին։ Մի-երկու անգամ Սևակի անունը տալուց հետո, իբր թե սխալվելով, ընկեր Սևակ ասելու փոխարեն, ասաց՝ ընկեր Լեզվակ։ Դահլիճում հռհռոց ընկավ։ Չարենցը նպատակին հասավ։ Եվ իր դիտավորության հետքերը ծածկելու համար սկզբում ձևացրեց, որ իբր չի հասկանում, թե ինչու են ծիծաղում, հետո ինքն էլ սկսեց ծիծաղել։ Տեսնելով, որ հարմար պահ է, անցավ առարկության՝ արդեն ըստ էության և ըստ համոզման։

* * *

Մի անգամ էլ, եթե չեմ սխալվում, դարձյալ լեզվի սուլիսի ժամանակ, տեղի ունեցավ հետևյալը.

Չարենցը խոսում էր. հակաչարենցականները, որ գրավել էին առաջին բոլոր նստարանները, մի ռեպլիկ մյուսի

հետևից բաց թողնելով, խանգարում էին, չէին թողնում Չարենցին խոսել։ Դրանց մեջ առանձին աշխուժություն էր ցույց տալիս Վահան Մարտյան անունով մի փիլիսոփա։ Հավաքույթին ներկա էր նաև Քաղկոմի քարտուղար Գ. Հաննեսօղլյանը։ Վերջինս տեսնելով, որ հակաչարենցական-ները չափն անցնում են, չեն թողնում, որ բանաստեղծը ձայն հանի, մի անգամ էլ, երբ Մարտյանը կրկին ոտքի ցատկեց և մի երկար ռեպլիկ տվեց՝ այլևս չհամբերեց և, տեղից բարձրանալով, բավական խիստ կերպով սաստեց.

—Վերջ տվեք խուլիգանությանը։

Չարենցը, որ կարծես հենց այդ խոսքին էր սպասում, անմիջապես վրա բերեց.

— Սա էլ քեզ Ցեկայի կարծիքը քո մասին։

Մարտյանն ապուշ կտրեց։ Սառեց նաև Հաննեսօղլյանը։ Իսկ դահլիճը սրտանց ծիծաղում էր։

* * *

Մի օր, թեև շատ ժամանակ էր անցել, Չարենցն անդրադարձավ պոեզիայի մասին գրած հոդվածին։ Այդտեղ էր նաև Բակունցը, որ ինչ-որ գրքով զբաղված՝ չհասկացա, լսում էր մեր զրույցը, թե ոչ։

— Մահարուն պետք է պաշտպանել հարձակումներից։ Դու ճիշտ ես վարվել։ Բայց գիտե՞ս ինչ, նա ավելի արձակագիր է, քան բանաստեղծ։ Եվ լավ արձակագիր է, ընտիր, է՛, առաջնակա՛րգ։ Իհարկե, Ակսելից հետո։

Ասաց ու նայեց նրա կողմը։ Բակունցը ձայն չհանեց, խորասուզված մտքի մեջ՝ նստել էր թախտի ծայրին։

Ասացի, թե «Մանկությամբ» հիացած եմ։

— «Պատանեկությունն» էլ պակաս չէ։ Լավ էջեր շատ կան։

* * *

Գրքի երկու պահարան ուներ, որ դրված էին գրասեղանի հանդիպակած պատի տակ։ Բացի այդ, պատի մի պահարանն էլ գրասեղանի հարևանությամբ։ Այս պահարանի

վերևի երկու շարքը Տոլստոյի բազմահատոր հրատարակությունն էր զբաղեցնում։

Մի օր, տանից դուրս գալուց առաջ, ասաց, թե դուռը ձեռքով պահեմ, որ մարդ չգա, իսկ ինքը, աթոռին կանգնելով, Տոլստոյի ամենավերին շարքի հետևից դրամի մի աՀագին կապոց հանեց։ Առանձնացրեց այդտեղից երեք հարյուր ռուբլի, մնացածը տեղը դրեց։

Ճանապարհին թե՝

— Մի բան եմ խնդրելու՝ պիտի անես։

Գրպանից հանեց երեք հարյուր ռուբլին, փաթաթեց լրագրի մեջ և բացատրեց, թե ուր և ում պետք է տանեմ։

— Տես՝ չասես, որ ես եմ տվել։

Եվ ինքը գնաց Գրողների տուն։

Դրանից հետո, մի-երկու օր անընդհատ հարցնում էր, հո իր անունը չե՞մ տվել, իսկ հետո մոռացության տվեց, կարծես այդպիսի բան չէր էլ եղել։

* * *

Մի օր թե՝

— Գիտես, շատերը խոսում են գեղեցկից, բայց ոչ հասկանում են, ոչ էլ զգում։ Գիտեն, որ պետք է խոսել՝ խոսում են։ Մարտիրոսի նկարները շատերը չեն հավանում, բայց գովում են, հիացմունքով խոսում, վախենում են, որ իրենց անհասկացողի տեղ կդնեն, ու կեղծում են։

Լռեց։

— Գեղեցկի զգացողությունը գրողի տաղանդի մի մասն է։ Առանց դրան իսկական գրող չկա։

Այս ասելիս բերեց Հայնեի օրինակը, թե ինչպես Փարիզում եղած ժամանակը ամեն օր Լուվր էր գնում և ժամերով կանգնում Վեներայի արձանի առաջ։

Ասում են՝ նրան տեսել են լաց լինելիս։

* * *

Շատ էր խոսում Թումանյանից։ Հիշում եմ, թե ինչպիսի ոգևորությամբ էր արտահայտվում նրա մասին։ Չէր հաշտվում լեզվի հետ։ Այդ կողմից գերադասում էր Տերյանին,

բայց այն կարծիքին էր, թե Թումանյանը մեր ոչ միայն ամենամեծ բանաստեղծն է, այլև ամենամեծ գրողն ընդհանրապես։

Ես լսում էի նրան ու մտածում, թե ինչպես և՛ Տերյանը, և՛ Չարենցը, իրենց կյանքի վերջին տարիներին, հանգեցին Թումանյանի մեծության բացարձակ ճանաչմանը։

Ասում էր՝ Թումանյանը գնահատված չէ, ինչպես հարկն է և որ նրա մասին դեռևս իսկական խոսք չի ասված։

* * *

Մի երեկո Չարենցի մոտ էի։ Երբ ներս մտա՝ ասաց.

— Կարդացի։

Տարոնցու նոր գրքի մասին գրածս հոդվածը նկատի ուներ։

— Գիտե՞ս ինչ, սիրելի՛ս, —ասաց Չարենցը,— քո լեզվի մասին ասելիք ունեմ։ Նախադասություններդ շատ երկար են, երբեմն խճճված, տեղ-տեղ էլ մանվածապատ։ Մարդ կարդում է ու չի հասկանում, թե ինչ ես ուզում ասել։ Լսիր խորհուրդս. գրիր պարզ, միտքդ հստակ ձևակերպիր։ Սեղմ, կարճ նախադասությունը գերադասիր։ Ինչքան պարզ՝ այնքան լավ։ Եվրոպական բառեր շատ ես գործածում։ Ինչի՞ համար։

Քննող հայացքով նայեց ինձ։

— Մի բան էլ ասեմ։ Ինձ թվում է, որ քո խառնվածքը, ինչքան հասկացել եմ քեզ, այլ է, հոդվածներիդ ոճը՝ ուրիշ։ Հարազատ մնա քեզ։ Ինչի՞ ես այդպես չոր գրում։ Կարծում ես միայն գրո՞ղը պետք է ոճ ունենա, քննադատը ո՞չ։ Սխալվում ես։ Քննադատն էլ պետք է ստիլիստ լինի, նրա խոսքն էլ պետք է փայլ ունենա, պատկերի ուժ։

* * *

Գրողների միության անդրանիկ համագումարի նախօրյակին էր։ Չարենցը պատրաստվում էր Մոսկվա մեկնել։ Բերեցին Մաքսիմ Գորկու «Բանաստեղծություններ ու լեգենդներ» (Չարենցի թարգմանությամբ) գրքի առաջին

օրինակը, այսպես ասած՝ ազդանմուշը՝ որ իր ստորագրությամբ թույլ տա բազմացնելու։

— Հավանո՞ւմ ես։

Իսկապես դա մի գողտրիկ գիրք էր։

Չարենցը թերթում էր, նայում Կոջոյանի նկարներին, հիանում, կարծես առաջին անգամն էր տեսնում։ Կանգ առավ մի բալլադի ձևավորման վրա։

— Մեկը մյուսից լավ է, բայց էս մեկն ինչ ասես արժե։ Ա՛յ մակարդակ, ա՛յ ճաշակ։ Ուր ուզում ես տար՝ չես ամաչի։ Ուզում ես տար Ցավորսկու կողքը դիր։ Կդիմանա՛։

Ես ասացի, որ «Գիրք ճանապարհին» էլ շատ լավ է ձևավորվել։

Վերցրեց «Գիրք ճանապարհին»։

— Սա՞։ Սա ուրիշ բան է։

— Ոսկերչական արվեստի նրբությամբ է արված։ Ի՞նչ զարմանալու բան կա, հայրն ու պապը տոհմիկ ոսկերիչներ էին։ Ինքն էլ վարպետ է, իսկական արտիստ։ Ոչ մի նկարչի մեջ նյութի և ոճի այդպիսի զգացողություն չեմ հանդիպել։ Խոսում ես հետը, թվում է չի հասկանում, գնում է տուն, բերում ձևավորումը՝ մնում ես ապշած։ Գործը բկից բռնել գիտե։ Հայ է իր արվեստով, գալիս է հին, շատ հին ժամանակներից։

* * *

Իմացա, որ Չարենցը Մոսկվայից վերադարձել է։ Անմիջապես շտապեցի մոտը։ Բարձր տրամադրության մեջ էր. բաց ճամպրուկի առաջ չոքած՝ բաժանում էր բերած նվերները, կնոջը՝ Իզաբելլային ինչ-որ թանկարժեք կտոր, մեծ աղջկան՝ շրջազգեստ, փոքրին՝ խաղալիք։ Հանկարծ նայեց ինձ։

— Ա՛յ տղա, բա քեզ բան չեմ բերել։ Մոռացել եմ, տես, է՛։

Մի փոքր հետո։

— Բա ի՞նչ անենք,— դարձավ կնոջը։

Ձեռքը տարավ ճամպրուկի խորքը և մի գիրք հանեց։

Հիմա չեմ հիշում, թե ինչ գիրք էր, ըստ երևույթին, Մոսկվայում առած, բայց չավեց։

— Էս հեչ, մի բան չի։

Տակնուվրա արեց ճամպրուկը, անկյունից, գրքերի տակից հանեց մի բլոկնոտ։

— Իմ նշումներն են։ Ուրիշ հետաքրքիր բաներ էլ կգտնես մեջը։ Պահիր, միշտ կհիշես ինձ։

Շատ ուրախ էի ստացածիս համար։ Ի՞նչ նվեր կհամներ դրան, իսկ Իզաբելլան, անկեղծորեն վշտացած, որ մի «կարգին նվեր» չստացա՝ անհարմար էր զգում ամուսնու փոխարեն։

* * *

Արտասահմանից Չարենցը երկու նկար էր բերել. մեկը Քրիստոսն էր, փշե պսակը գլխին, մյուսը՝ կիսամերկ մի կին։ Այս երկու նկարը Չարենցը կախել էր միևնույն պատին. վերևը Քրիստոսն էր, ներքևը՝ կինը։ Քրիստոսի հայացքը հեզ ու տխուր՝ հակված էր ցած։

Ես չգիտեմ, չեմ հարցրել, թե Չարենցը դիտավորյա՞լ էր այդպես դասավորել նկարները, բայց հաճախ էր անդրադառնում այդ նկարներին, նայում ու ծիծաղում։

— Տեսնո՞ւմ ես Քրիստոսին, ոնց է աչքը մնացել գեղեցիկ կնոջ...

Ասում էր ու բարձր ծիծաղում։

— Չէ, մարդկայինը հատուկ է նաև աստվածներին։

* * *

Չարենցի մոտ էր Արուս Ոսկանյանը։ Երբ սենյակ մտա՝ նա արդեն դուրս պիտի գար։ Ծանոթացրեց։ Դերասանուհին շտապում էր, ներողություն խնդրեց ու գնաց։

— Շատ եմ սիրում Արուսին։ Ամեն անգամ նրան հանդիպելիս ինձ թվում է, թե կյանքս երկարում է։

Մի օր էլ հարցրեց.

— Ա՛յ տղա, նոր օթելլոներ են լույս աշխարհ ընկել։ Տեսե՞լ ես։ Չէ՞։ Դրանք ի՞նչ օթելլոներ են։ Ես Փափազյանի մի շարժումը չեմ փոխի նրանց ամբողջ խաղի հետ։

* * *

Չարենցին շատ էր մտահոգում մեր գրական երիտասարդության կուլտուրայի հարցը։ Եվ հաճախ դիմացինի համար աննկատելի ձևով ստուգում էր, թե ինչ է կարդացել, գիտելիքների ինչ պաշար ունի։ Եվ աշխատում էր օգտակար լինել։

Մի օր խոսք բացվեց մի դաժան արարքի մասին։ Ես ասացի.

— Սադիզմ է։

Նա թե՝

— Հակառակն ի՞նչպես կլինի։

— Մազոխիզմ։

— Ո՞րտեղից է առաջացել։

Չգիտեի։

— Զախեր Մազոխ. լսե՞լ ես։

— Գրող է, բայց չեմ կարդացել։

— Է՜հ, դու էլ պիտի ասես ֆիլոլոգիականի երկրորդ կուրսի ուսանող ես։

Եվ պահարանից հանեց Զախեր Մազոխի մի փոքրիկ հատորյակը՝ «Անգութ կանայք», դրեց առջևս, որ տանեմ կարդալու։

* * *

Մի օր էլ խոսք բացվեց Մորուզովից։ Հարցրեց, թե ի՞նչ գիտեմ նրա մասին։ Ասացի ինչ գիտեի։

— Լա՛վ, լա՛վ. իսկ գի՞րքը, գիրքը կարդացե՞լ ես։

Ասացի, որ չեմ կարդացել։

— Ոչինչ։

Եվ նա իմ առջև դրեց Մորուզովի «Քրիստոսը»։

— Առա, տար հետդ։ Եթե ուզում ես՝ կարդա, կարող ես

և չկարդալ, բայց թերթիր, աչքի անցկացրու, առանձին էջեր ու հատվածներ անպայման կարդա։

Հետո ավելացրեց.

— Տես՝ գրքին բան չպատահի, խմը չի։

* * *

Անդրադարձավ Ջոյսին։

— Գրողների տանն էի քիչ առաջ։ Ում հարցրի, թե ինչ գիտեն Ջոյսի մասին, ոչ մեկը բան չկարողացավ ասել։ Կարդացե՞լ ես։

Ձայն չհանեցի։ Հասկացավ, որ ես էլ չեմ կարդացել։ Գրապահարանից հանեց մի գիրք, հիմա չեմ հիշում, թե ինչպես էր կոչվում, բայց լավ միտս է, որ Արևմտա-եվրոպական գրականության նորույթներին նվիրված ժողովածու էր։

— Տար, աչքի անցկացրու, այդտեղ Ջոյս էլ կա, ուրիշ գրողներն էլ։ «Ուլիսից» մի քանի հատված է տպագրված։ Կարդա, տես, թե ինչպես է գրում։

* * *

Զարենցը Մոսկվայում ներկա էր գտնվել Յոլակ Խանդադյանի դիակիզման արարողությանը։ Խնդրել էր, որ իրեն թույլ տան իջնել ցած, որտեղ հնոցն է։

Պատմում էր, թե ինչպես երկու մարդ կանգնած սպասում են դագաղն իջեցնելուն։ Եվ երբ հնոցի երկու փեղկն էլ դանդաղ բացվում է՝ նրանք դագաղը մղում են դեպի ներս։

— Ես տեսա, թե ինչպես կրակն իր բոցերի մեջ առավ Յոլակին։ Քիչ հետո նույն դանդաղությամբ փեղկերը փակվեցին։

Պատմում էր սարսափահար աչքերով։

— Եվ գիտես ի՜նչն է զարհուրելի։ Այն երկուսի պաշտոնը։ Ինչպես են համաձայնել։ Միլիոն ռուբլի տային՝ չէի համաձայնի։ Սրտի ինչ դաժանություն է պետք։ Իսկ նրանք...

նրբ հնոցի փեղկերը փակվեցին՝ ես պատին էի կպել անշարժացած, տեսածիս ահավոր տպավորության տակ։ Իսկ նրանք, կատակին տալով, կարծես ոչինչ չէր եղել, բարձրացան աստիճաններով վեր, երևի հանգիստ առնելու, մինչև մի ուրիշ դագաղ կբերեին։

* * *

Չարենցի սիրած հեղինակներից էր Շոուն։ Իռլանդացի ծերուկը, ինչպես երբեմն նրան անվանում էր մեր բանաստեղծը, եկել էր Սովետական Միություն, շրջագայել, տեսել էր, հիացել ու գնացել։ Մոսկվայում Չարենցի ականջովն էր ընկել նրա մի խոսքը, որ հաճույքով պատմում էր։ Շոուի մեկնելու օրը, հենց կայարանում հրաժեշտի պահին մեր գրողներից մեկը, դառնալով Շոուին, ասում է. «Հուսով եմ, որ դուք հեռանում եք որպես մեր երկրի բարեկամ»։ Նա պատասխանում է. «Ես այդպիսին կմնամ մինչև մահս», մի պահ լռում է և ավելացնում. «Իսկ թե դրանից հետո ինչ կլինի, ճիշտն ասած, չեմ կարող երաշխավորել»։

* * *

Երեկոյան դեմ անցա Չարենցի մոտ։

—Տխուր ես երևում, ի՞նչ է պատահել։

Ասացի, որ ընկերոջս եղբայրն է մահացել։ Հետո ասացի, թե երբ մի ծանոթ մարդ է մեռնում՝ ինձ պաշարում է մի տարօրինակ զգացում, ինձ մեղավոր եմ զգում, որ ես կենդանի եմ մնացել, իսկ նա՝ ոչ։

— Սանտիմենտալություն. ես հակառակ զգացումն եմ ունենում։ Մեղավորը ոչ թե կենդանի մնացողն է, այլ կյանքից հեռացողը։

* * *

Չարենցի ավագ դուստր անունը Արփենիկ է։ Այն ժամանակ երևի հազիվ չորս տարեկան լիներ։ Աղջկա մի հատկությունը հորը խելքից հանում էր։ Արփիկը վրդովված դիտողություն էր անում ամենքին, ով զարկում էր կատվին,

կոպիտ խոսք ասում տիկնիկին կամ էլ բույսից տերև պոկում։ Ասում էր՝ «չի՛ կարելի» և խիստ սաստում բոլորին, անկախ նրանից, թե ով է դիմացինը, մե՞ծ թե փոքր, տնի՞ց թե դրսից։ Զարենցը հիանում էր և ասում, որ իր մեծ աղջկան է անցել խղճի այն զգացումը, որ մշտապես կրել է կրծքի տակ և, ավա՜ղ, չի կարողացել արտահայտել այնպե՛ս և այնքա՛ն, ինչքան և ինչպես կուզենար։

* * *

Սեղանի վրա մի տետր կար, որից Զարենցը Պետհրատի փոքրիկ բլանկների վրա ոտնավորներ էր արտագրում։ Հարցրի, թե ինչ է անում և չե՞մ կարող օգնել իրեն։

— Չէ՛։

Քիչ հետո գլուխը բարձրացրեց։

— Տերյան սիրո՞ւմ ես։

Զսպսեց պատասխանիս.

— Ինչպե՜ս կարելի է չսիրել,— Ապա մատնանշեց իր արտագրությունը։— Տերյան է, սիրելի՛ս, Տերյան։ Ուզում եմ մի լավ հատոր պատրաստել։ Սրանք նրա անտիպ ստիխներից են, չմշակված, մեծ մասամբ սևագրություն։ Բայց տես ինչպե՜ս է գրել։

Կարդաց հորը նվիրված ոտանավորը։

Վեր կացավ, պահարանից հանեց Մակինցյանի հրատարակած Տերյանը։

— Այս է իսկական Տերյանը։

Ձեռքին երրորդ հատորն էր։

— Տերյանը սա է, որ չգիտեն, դժբախտաբար։ Այստեղ է նրա իսկական հմայքը։

Ու թեև հատորը ձեռքին, անգիր ասաց «Տեսա երազ մի վառ...» բանաստեղծությունը։

— Սա գիտե՞ս ինչ է, մինիատյուր, իսկական մինիատյուր։ Հազվագյուտ խաղացում։ Մաքի, երևակայության այս աներևակայելի թռիչքը միշտ էլ ինձ հիացրել է։

Մի փոքրիկ լռությունից հետո երկու ոտանավոր էլ

կարդաց, սկզբում «Դու հպարտ չես, իմ հայրենիք», իսկ հետո՝ «Մշուշի միջից տեսիլ դյութական»։

— Ո՞վ է իր երկրի մասին այսպես գրել։ Ոչ ոք։ Հա՛, գուցե մեկ էլ Թումանյանը։ Մնացածը պրիմիտիվ է, հասարակ, ամեն ինչ ուղղակի է ասված, «лобовой» ասես քարոզ լինի, միտինգում ասված ճառ։ Սեր՝ զգում ես, որ կա, բայց արտահայտություն չկա, վառված սիրտ, այո՛, կա, բայց պատկերը գտնված չի։ Ա՛յ, Տերյանն ուրիշ է։ Լսի՛ր։

Զլլացա խնդուն փառքիդ
Անցյալ ու հին փառքով երբեք.—
Սիրեցի հեզ, անքեն հոգիդ,
Եվ երգերըդ մեղմ ու բեկ-բեկ,
Խեղճությունըդ՝ խավար ու լուռ,
Աղոթքներըդ դառն ու ցավոտ,
Զանգակներիդ զանգը տխուր՝
Եվ խուղերիդ լույսերն աղոտ...

Լռեց ու ինձ նայեց։ Ես ասացի.

Սիրում եմ մեր երկինքը մուգ, ջրերը ջինջ, լիճը լուռ,
Արևն ամռան ու ձմեռվա վիշապաձայն բուքը վսեմ,
Մթնում կորած խրճիթների անհյուրընկալ պատերը սև
Ու հնամյա քաղաքների հազարամյա քարն եմ սիրում։

Ծիծաղեց։

— Այո՛, այո՛, այդպես է։ Արմատներս այստեղ են, Տերյանի մեջ։ Եվ միայն ի՞մը, արդյոք։ Շատերն են նրանից գալիս։ Եվ ուրիշ ի՞նչպես։ Տերյանը բարձր տեսակ է, իսկական փղոսկր։ Կրկնել չի կարելի։ Ըլակետ է, բայց ճանապարհն ինքդ պիտի անցնես...

* * *

Մի օր հարցրի՝ տեսե՞լ է Տերյանին։

— Մի անգամ։ Պատահմամբ։ Ինչպես Լերմոնտովը Պուշկինին։

* * *

Լույս էր տեսել մի բանաստեղծի ժողովածու։ Դա նրա առաջին գիրքն էր։ Ես մի հոդվածով ողջունեցի նրա մուտքը գրականություն։

Երեկոյան գնացի Չարենցի մոտ։ Ընդունեց անտրամադիր, մի քիչ խոժոռ։ Չէի հասկանում պատճառը, մինչև որ խոսեց.

— Էդ ի՞նչ հոդված էիր գրել։

Տարակուսած նայեցի նրան։

— Ես էլ կարծում էի, թե պոեզիայից բան ես հասկանում։

Փորձեցի արդարանալ։

— Օժտված տղա է։

— Է՛հ, ի՞նչ անենք։

— Լավ ապագա ունի։

— Քեզ ինչ։

Ես արդեն ոչինչ չէի հասկանում։

Երբ ճանապարհվում էի բանաստեղծի տուն՝ կարծում էի, նույնիսկ համոզված էի, թե գովական խոսքեր եմ լսելու, բայց նա կշտամբեց ինձ։

— Մարդ պիտի ուղղությանը նայի. ի՞նչ է բերում գրականությանը, հո ետ չի՞ քաշում, նորից չի՞ տանում մեզ դեպի գավառայնություն։

Մի փոքր հետո մեղմացավ։

— Ես չեմ հասկանում, թե ինչպես դու կարող ես հիանալ մի պոեզիայով...

Եվ մի անվայել խոսք գործածեց։

* * *

Երբ մտա՝ Չարենցի ձեռքին մի գիրք կար։ Թերթում էր ու նայում։

— Մոտ արի, տես թե ինչ է։

Մոտեցա։ Դեմքին հիացմունքի արտահայտություն կար։

Ֆիրդուսու «Շահնամեից» մի հատված էր, որ լույս էր տեսել հայերեն թարգմանությամբ և իր խմբագրությամբ։

— Թարգմանությունը հեչ, մի բան չի։ Գուցե հարազատ է, չգիտեմ, բայց բանաստեղծական չէ։ Դու ձևավորումը նայիր, թե ինչ է։ Մարտիրոսինն է։ Այս եղնիկներին նայիր, տես, թե ինչպես են խրտնած փախչում. մեկը գլուխն առաջ, սլացքի մեջ, մյուսը գլուխը ետ դարձրած, ասես ստուգելիս լինի, թե հո չե՞ն հասնում հետևից։

Մի-երկու էջ շրջեց։

— Բա ձիե՞րը, սրանց ոտներին նայիր, ինչ բարակ են, գեղեցիկ. այսպես միայն արաբական ձիերն են լինում։ Լավ նայիր։ Չէ՛, չէ՛, լա՛վ նայիր։ Դու հասկանո՞ւմ ես, թե ինչ ճաշակ է։ Բա ժայռերը, մի-մի ծառ վրան։ Մի էս ձիու գլխին նայիր, ինչ հպարտությո՜ւն կա, ինչ ո՛ւժ։ Տես՝ առաջին ոտքերը բարձրացրել է, հիմա ծառս կլինի ու կմղվի առաջ։ Սա միայն կարողանալ չի, այլև իմանալ, ժամանակի զգացողություն միաժամանակ, մի հատկություն, որ քչերին է տրված։ Այնպես է նկարել, ասես պարսկական մինիատյուր լինի։ Ժամանակի ոճը պահպանված է, բայց միաժամանակ հասկանում ես, որ հիմա է նկարված։ Սա ամենադժվարինն է։ Թե չէ ի՞նչ է, դիր առաջդ հին մինիատյուրները և ոճավորիր, դրանից էլ հե՞շտ գո՞րծ։

* * *

Ալազանը մի օր ասաց, թե Զարենցը կանչել է։ Գնացի, Ալազանից բացի, այնտեղ էին Գուրգեն Վանանդեցին և Խորեն Սարգսյանը։ Ինքը սենյակում չէր։ Մի փոքր հետո եկավ։

— Տղանե՛ր,— առաջին խոսքը եղավ նրա,— ես ձեզ հավաքել եմ մի շատ կարևոր գործով։

Լռեց։ Անցավ սենյակով մեկ և ապա շարունակեց խոսքը.

— Մեր դասագրքերը լավ չեն կազմված։ Կազմում են պատահական մարդիկ, մեծ մասամբ դրամ վաստակելու համար։ Ես խոսել եմ Արտո Եղիազարյանի հետ, որ մենք զբաղվենք այդ գործով։ Է՞հ, ի՞նչ կասեք։

Ոչ ոք ձայն չհանեց։

— Ուրեմն՝ համաձայն եք։ Ես ուզում եմ մի-երկու խոսք ասել սկզբունքների մասին։

Մենք նստած էինք սենյակի տարբեր մասերում։ Իսկ ինքը խոսում էր՝ անցուդարձ անելով սենյակով մեկ։ Երբեմն մեկնումեկիս առաջ կանգ էր առնում և խոսում, կարծես միայն մեկի հետ էր խոսում։ Շատ երկար խոսեց։ Երևի մի ժամ։ Խիստ քննադատեց եղած դասագրքերը, ասելով, որ կազմողները, ղեկավարվելով միայն թեմատիկ սկզբունքով, մոռացության են տվել էսթետիկականը։ Դասագրքում տեղ գտնող հատվածը գեղեցիկ մղումներ տալու հետ միասին պետք է գտնվի արվեստի բարձր աստիճանի վրա։ Սա է հիմնականը։ Դասագիրքը մշակում է աշակերտի ճաշակը, զարգացնում է սեր դեպի լեզուն, ոճը, գեղեցիկի ըմբռնումը։ Աշակերտը պետք է կլանվի բովանդակությամբ, համակվի գաղափարով, բայց և պետք է հասկանա պատկերը, հիանա անսպասելի, դիպուկ գտնված համեմատությամբ։

Հետո կանգ առավ մի այլ, շատ ավելի կարևոր հարցի վրա։ Միտքն այն էր, որ գռեհիկ սոցիոլոգիզմը հարվածի տակ է պահում գրականության զարգացումը, ոչ միայն գրականագիտությունը, այլև գեղարվեստական խոսքը։ Եվ, հիշում եմ, բերեց գործարանատիրոջ պատկերման մի օրինակ։ Գեղարվեստական գրականության մեջ մարդու պատկերումը չի կարող բավարարվել միայն սոցիալական էության բնութագրությամբ։ Այդ ճանապարհը միշտ էլ տանում է դեպի սոցիոլոգիական սխեման։ Հենց որ գեղարվեստական գրականությունը սահմանափակվի երևույթի պատկերման միայն սոցիալական մթնոլորտով, աչքաթող անի հոգեբանականը, բարոյականը, անմիջապես կյանքի զարկերակը կանգ կառնի գրվածքում։

* * *

Երեկոյան դեմ էր։ Իզաբելլան մի փոքրիկ սեղան պատրաստեց։ Մի-երկու կում կոնյակը Չարենցի տրամադրու-

թյունը բարձրացրեց։ Սկսեց կատակներ անել, ինչ-որ բան ասաց Խորեն Սարգսյանին, սա էլ թե՝

— Չեմ հասկանում։

— Բա ես քեզ հասկանո՞ւմ եմ,— ասաց Չարենցը,— էսպիսի մարդ չեմ տեսել,— դարձավ նա մյուսներին,— ինչքան բարդ բան ասեմ՝ կուբիզմ, էքսպրեսիոնիզմ, կհասկանա, իսկ պարզ բաները՝ չէ, տեղ չեն հասնում։

* * *

Քիչ հետո էլ կպավ Վանանդեցուն, թե՝ խնձոր կեր։ Նա էլ թե՝ չեմ ուզում։ Չարենցը համառում էր, Վանանդեցին չէր զիջում։

— Գիտեք ի՞նչ, տղերք։ Գուրգեն, բացե՞մ գաղտնիքդ։ Էս մարդը ռեալական դպրոցում սովորելիս մի քննությունից առաջ երդվում է, որ եթե հաջող տա՝ էլ կյանքում ինչ-որ կլոր է, չի ուտելու։ Թարսի նման՝ քննությունը հաջող է տալիս։ Հիմի, էդ օրից, ինչը կլոր ձև ունի՝ չի ուտում։

Ասում էր ու սրտանց ծիծաղում։

* * *

Չարենցին այցելեց նրա հովանավորությունը վայելող մի երիտասարդ գրող։ Սափրված չէր։ Չարենցը, որ գրքով էր զբաղված, գլուխը բարձրացրեց, մի շտապ հայացք նետեց եկողի վրա և ապա շարունակեց թերթել գիրքը, որոնած էջը գտնելու համար։ Առանց գլուխը բարձրացնելու, նա դիտողություն արեց, թե ինչու՞ չի սափրվել։ Երիտասարդն ասաց, թե գործերը լավ չեն, դրա համար էլ այնպիսի տրամադրության մեջ չի, որ հետևի արտաքինին, մտածի սափրվելու մասին։

Չարենցը ցատկեց տեղից։ Մի-երկու անգամ անցավ սենյակի երկայնքով և ապա արձանացավ երիտասարդ գրողի առաջ։ Վերջինս տագնապած աչքերով նայում էր նրան, իսկ բանաստեղծի դեմքը անթափանց խստություն էր արտահայտում։

— Լսի՛ր,— ասաց նա,— չենմ-չիմանամ, որ մեկ էլ

կրկնես ասածդ։ Հենց որ գործերդ վատանում են, ճիշտ հակառակն արա, սափրվիր, մաքուր և լավ հագնվիր, գլուխդ բարձր անցիր փողոցով։ Զուներս փող՝ ծախիր ունեցածդ, նույնիսկ գրքերդ, բայց վրադ ու գլուխդ կարգի բեր։ Մի թողնիր, որ թշնամիդ իմանա, թե ինչ է կատարվում հոգուդ մեջ և չարախնդա։

* * *

Չարենցի համար կայուն հեղինակություններ գոյություն չունեին։ Մի օր կարող էր մեծարել, մյուս օրը նույն կրքով փնովել։ Սակայն կար մի մարդ, որի նկատմամբ նրա ունեցած ակնածանքը մնաց մինչև վերջը անփոփոխ։ Դա Արշավիր Մելիքյանն էր։ Վերջինիս կարծիքը նրա համար օրենք էր։

Գրողների տանը ժողով էր Մոսկվայից եկած ռուս գրողների մասնակցությամբ։ Եկել էին Կավերինը, Կիրպոտինը, Գատովը և Կոլոսովը։ Ժողովին ներկա էր և Արշավիր Մելիքյանը, որ ինչ-որ գործով Թիֆլիսից Երևան էր ժամանել այդ օրերին։ Գյուլիքեվխյանի հետ նստած էր վերջին շարքերում։

Չարենցը երկար խոսեց, հուզված, վրդովված։ Խոսում էր ռուսերեն, որ Մոսկվայից եկածներն իրեն հասկանան առանց մեկ ուրիշի միջամտության։

Միտս է, որ խոսում էր ազգային ձևի մասին, և որպես օրինակ բերեց սեղանին դրված ջրամանը։ Լավ հիշում եմ, բարձրացրել էր ջրամանը, բայց մտքից թռել էր, թե ինչպես է նա ռուսերեն կոչվում։ Առաջին շարքում նստածները հուշում էին.

— Գրաֆի՞ն, գրաֆի՞ն։

Բայց նա չէր լսում, դարձել էր դեպի հետին շարքերը.

— Товарищ Меликян, как это будет по-русски?

Մինչև Մելիքյանը չասաց՝ չհանգստացավ։

* * *

Չարենցը հանձն էր առել Մասեհյանի թարգմանած «Լիր արքայի» խմբագրությունը։ Խնդրեց, որ գտնեմ Մասեհյանի թարգմանությունը։ Ասացի, որ համալսարանի գրադարանում

կա։ Մի երկտող տվեց Տիգրան Մուշեղյանի անունով, որ այն ժամանակ համալսարանի ռեկտորն էր։ Տարա գիրքը։ Ասաց, որ մի-երկու օրից կսկսի։ Եվ, իսկապես, սկսեց։

Չարենցը պառկած էր թախտին, ծխում էր, իսկ ես, կողքին նստած, կարդում էի «Լիրի» տեսարաններից մեկը՝ Մասեհյանի թարգմանությամբ։ Սենյակ մտավ իմ համալսարանական մի ընկերը, որ լուսանկարչությամբ էր զբաղվում՝ ընտանիքի նյութականը հոգալու համար։ Չարենցն էր կանչել, որ իրեն ու երեխաներին լուսանկարի։ Չարենցը ձայն տվեց Իզաբելլային ու երեխաներին, որ պատրաստվեն, իսկ ինձ խնդրեց շարունակել։ Ընկերս լուսանկարչական ապարատը սկսեց պատրաստել։ Նա արդեն կազմ ու պատրաստ էր գործի անցնելու, մեկ էլ տեսանք, որ Չարենցը քնել է՝ ծխախոտը բերանին։ Ես տեղիցս վեր կացա և խնդրեցի ընկերոջս՝ լուսանկարել։ Սկզբում չեմ ու չում արեց և, այնուամենայնիվ, լուսանկարեց։ Դրանով էլ ընկերոջս այցելության խորհուրդն այդ օրն ավարտվեց։ Արթնացնել չհամարձակվեցինք։ Կինն էլ հետաձգեց լուսանկարումը և մենք էլ, երկու ընկեր, գնացինք։ Տարիներ հետո ընկերս, որն արդեն վերջ էր տվել լուսանկարչական զբաղմունքին, նվիրեց ինձ այդ լուսանկարը, որպես հիշատակ այն օրվա, և ասաց, որ այդ նկարից այլևս ոչ մի օրինակ չի պահպանվել։

* * *

Տողած թուղթը դրեց առաջը, Մասեհյանի թարգմանությունը մյուս կողքը և սկսեց արտագրել՝ տեղն ու տեղը խմբագրական փոփոխության ենթարկելով։ Սկզբում բավական հարազատ մնաց թարգմանությանը, փոխում էր քիչ, իսկ հետո փոփոխությունները շատացան։ Թարգմանությունը մաքրում էր հնաբանություններից, պահպանելով ոճի վեհությունը, լեզուն այժմեացնում էր, մի բառի տեղ դնում էր մի ուրիշը, աշխատում մաքին հաղորդել ճշտակի և դիպուկ արտահայտություն։ Մի օր խնդրեց, որ պահարանից հանեմ Կուզմինի թարգմանությունը։ Նայեց։ Գլուխն օրորեց։ Ինչ-որ

կասկածներ էին ծագել, որ հանգիստ չէին տալիս իրեն։ Խնդրեց, որ ռուսական մի այլ թարգմանություն էլ գտնեմ իր համար։ Մի գեղեցիկ օր էլ սեղանի վրա երևաց «Լիր արքան»՝ գերմաներեն թարգմանությամբ։ Թե որքան գիտեր գերմաներեն և ինչքան էր կարողանում օգտվել՝ չեմ կարող ասել։ Ամբողջապես համակված էր Շեքսպիրի ողբերգությամբ։

Պատահում էին օրեր, երբ ինքը թելադրում էր, իսկ ես գրում էի։

— Լսի՛ր, տես, թե ինչպես է թարգմանել Մասեհյանը։ Հիմա գրիր, ինչ որ կասեմ։

Երբ դու ինձանից օգնություն խնդրես՝
Ձոքած քո առջև ինքս քեզանից
Ներում կհայցեմ,— այսպես մենք կապրենք,
Կաղոթենք, կերգենք և հին հեքիաթներ
Կպատմենք իրար և կծիծաղենք
Այն թիթեռների վրա ոսկեթև,
Որ որպես խղճուկ թշվառականներ
Խոսում են ճղճիմ գործերի մասին,
Լուրերի մասին այն պալատական.
Մենք էլ կիմանանք նրանցից, թե ով
Բարձրանում է վեր և ով է ընկնում.
Ում գործերն են վատ և ումն՝ աջողակ։
Եվ այդ գործերի էությունը լոկ
Դիտելով՝ մենք մեզ կըբացատրենք
Իբրև գաղտնիքն ինչպես աստծո
Երկու ընտրյալներ, կամ առաքյալներ...
Եվ այսպես՝ բանտի պարիսպների մեջ
Կմաշենք բազում մեծամեծների
Խմբեր ու դասեր, որոնք լուսնի հետ
Կելնեն ու կիջնեն, կելնեն ու կիջնեն...

Ես ասացի, որ լավ է, բայց տողերի քանակով շատ ավելի է ստացվել։

— Ի՞նչ,— զարմացած նայեց ինձ, ապա կռացավ թղթի վրա և հաշվեց։— Ճիշտ ես ասում, վեց տող ավելի է։ Բայց դա ի՞նչ կարևոր է, հաշվապահություն հո չէ։ Էականը ոգին է։ Եթե դա կա՝ լավ է։ Ա՛յ, էս երկու տողը սրտովս չի.

Մենք էլ կիմանանք նորից, թե ով
Բարձրանում է վեր և ով ընկնում։

— Արի այսպես դարձնենք.

Մենք էլ նորից կիմանանք այդ սին
Գործերի մասին՝ թե ով է ընկել,
Ով բարձրացել կամ հարստացել։

— Ես սա կհանձնեմ, կարող են տպել։ Սա առաջին էտապն է, հետո ինքս կթարգմանեմ։ Անպայման կթարգմանեմ։ Ոչինչ, որ անգլերեն չգիտեմ։ Զգում եմ, Լիրը հոգուս մեջ է, կարծես մի հարազատ անձ լինի, այնպես եմ զգում նրան։

Խմբագրված ձեռագիրը տարա Պետհրատ և հանձնեցի Էդուարդ Ջրփուրյանին։ Հիշում եմ, առաջին էջի վրա գրել էր խնդրանք-չկորցնել ձեռագիրը և օգտագործելուց հետո անպայման վերադարձնել իրեն։

* * *

Չեմ հիշում, թե որքան էր անցել, որ սկսեց թարգմանել «Լիրը»։

—Չեմ ուզում մթնոլորտից դուրս գալ։ Լավ կլինի հիմի անեմ, թե չէ վախենում եմ հետո սառչեմ։

Ես հաճախ էի ներկա լինում թարգմանությանը։ Աշխատում էր արագ թափով, բայց երբեմն կանգ էր առնում, մի ձևով փորձում, այլ կերպ գրում, և երբ չէր ստացվում՝ ջղայնանում էր, վրդովվում։

— Է՜հ, այսպես ավելի լավ է, չէ՞։ Ինչ ես ասում, այսպես չանե՞նք։

Լիրի կերպարը դարձել էր նրա հարազատը։ Շատ էր խոսում նրանից, հազար ու մի դիտողություն անում։

— «Լիրը» Շեքսպիրի ամենալավ գործն է, ամենախոր, ամենաընդգրկուն։

Իսկ մի օր էլ ասաց.

— Գիտե՞ս, թեև սքանչելի գործ է՝ անհնար է խաղալ։

Ամբողջը միտք է, փիլիսոփայություն, ինչպե՞ս խաղաս։ Ուղես-չուղես՝ գործողությունն առաջ կընկնի և կդառնա մի սովորական սրտառուչ պատմություն։ Չեմ պատկերացնում բեմում։ Կարդալ, միայն կարդալով կարելի է սրա ողջ խորությանը հասնել։

Մի օր էլ թե՝

— Գիտե՞ս, առաջ ես «Լիրը» հասկանում էի։ Եվ միայն։ Հիմա և՛ հասկանում եմ, և՛ զգում։ Զգում եմ հոգուս բոլոր մասերով։ Պատահե՞լ է, որ քեզ մենակ զգաս. ամբողջ շրջապատը մի կողմ, դու մի կողմ։ Որ կողմը դառնաս՝ սուր ու դանակ, ոխակալ դեմք, արնակալած աչքեր։ Մենակ ես, մեն-մենակ բոլորի դեմ։ Դառնանում ես, պղտորվում, բայց զգում ես, որ նրանք չնչին են, մարդուկներ, իսկ դու բարձր... Եվ ոչ ոք քեզ չի հասկանում։

Մի օր մտա՝ տեսնեմ պառկած լայն թախտի վրա, Լիրի մենախոսությունն է կարդում։ Երբ վերջացրեց՝ նայեց իմ կողմը, երկար ու անորոշ, ապա շշուկով, կարծես գաղտնիք էր ասում.

— Դու գիտե՞ս, որ Լիրը ես եմ։

Ասաց ու աչքերը փակեց։

* * *

Բաժբեուկ-Մելիքյանը նկարում էր Չարենցին։ Երբ բանաստեղծն անցավ մյուս սենյակը, նկարիչն ասաց.

— Ես մեր նկարչական աշխարհում քիչ մարդու եմ հանդիպել, որ կարողանա այդպես թափանցել արվեստի նրբությունները, ինչպես Չարենցը։ Մնացել եմ զարմացած։

Մի օր Չարենցը խնդրեց նկարել իրեն հնդկական ձևով, ծալապատիկ նստած։

Այս շրջանում բանաստեղծը Հնդկաստանի մասին շատ էր կարդում, խոսում էր Գանդիի մասին, անդրադառնում էր բուդդիզմին, յոգերին, խոսում նրանց ուսմունքից։ Հաճախ էր նայում։ Բուդդայի արձանիկին, որ դրված էր պահարանի գլխին, և կարծես մոռացած, թե մարդ կա շուրջը՝ խոսում էր վերացած, հոգով և մտքով տեղափոխված Գանգեսի ափերը։

Մյուս օրը եկա՝ նկարն ավարտված էր և արդեն պատից կախված, տակն էլ խոշոր տառերով գրված՝ Մահաթմա Չարենց։

* * *

Մի օր Աբովյանի անհետանալու մասին խոսք բացվեց։

—Ի՞նչ են ուզում էս մարդիկ, չեմ հասկանում։ Ի՞նչ են ընկել, թե պիտի պարզենք՝ որտե՞ղ է թաղված։ Այսպես ավելի լավ չէ՞, խորհրդավորությունը ծածկում, անհայտության մեջ է թողնում ամեն ինչ։ Ասենք՝ հանկարծ պարզվեց, թե խանդի հողի վրա սպանել են ու մի ծառի տակ էլ թաղել։ Հետո՞ ի՞նչ օգուտ։ Չէ՛, ես անհայտությունը գերադասում եմ։ Դրա մեջ ռոմանտիկա կա։ Տրտնջում են, թե չգիտենք որտեղ է թաղված։ Աբովյանն այնքան մեծ է, որ գուցե ավելի լավ է, որ գերեզման չունի. նա ամեն տեղ է, ամեն հայի սրտում։ Չկարծես, թե զեղումներ եմ անում։ Ես էլ չէի ուզենա գերեզման ունենալ։ Չգիտեմ երբևէ կհասնե՞մ այդպիսի մեծության, որ դրան արժանի լինեմ, բայց կուզենայի, որ մարդիկ չիմանային, թե ուր եմ թաղված։

* * *

Բարձրանում էի Չարենցի տան աստիճաններով։ Նրա մոտից իջնում էին Կիրպոտինը, Կավերինը և Գատովը։ Եթե չեմ սխալվում՝ նրանց հետ էր նաև Սուրեն Վահունին։ Երկրորդ հարկի հարթակի վրա նրանք խմբվեցին՝ ինչ-որ կնոջ ճանապարհ տալու համար։ Չեմ հիշում թե ով՝ ասաց.

— Մոսկվայում հիմա դժվար է գտնել մի բանաստեղծ, որ այդքան լավ իմանա ռուսական պոեզիայի անցյալն ու ներկան, ինչպես Չարենցը։

Մյուսները համաձայնեցին։

* * *

Խոսք կար, որ նշվելու է Չարենցի գրական գործունեության 20-ամյակը։ Գրողների միության վարչությունը միահամուռ որոշում էր կայացրել։ Չարենցն աշխատում էր իրեն

այնպես պահել, թե իբր իր համար միևնույն է, բայց իրապես անտարբեր չէր։ Երբեմն նույնիսկ անհանգստության նշաններ էր ցույց տալիս։ Ականջին հասել էր, որ խանգարողներ կան և, կրքոտ մարդ լինելով, քանի գնում այնքան ավելի էր համակվում հոբելյանի գաղափարով։

Նայելով գործի ընթացքին՝ կարելի էր լրջորեն կասկածել, թե հոբելյանը տեղի՞ է ունենալու, մանավանդ որ բավական ժամանակ էր անցել և այդ մասին Գրողների տանը արդեն խոսք անգամ չէր լինում։

Այդ օրերին ուսանողներս որոշեցինք համալսարանում կազմակերպել Չարենցի «Գիրք ճանապարհի» ժողովածուի քննարկումը՝ հեղինակի և այլ գրողների մասնակցությամբ։

1934-ին էր այդ, դեկտեմբեր ամսին։ Օրը չեմ հիշում, բայց լավ միտս է, որ ձմեռային ցուրտ երեկո էր։ Գնացի Չարենցի հետևից։ Նրա մոտ էին Ալազանը, Նորենցը, Տարոնցին, Արուս Ոսկանյանը, Ս. Հարությունյանը։ Խոսք ու զրույց անելով մեր խումբը ճանապարհվեց դեպի համալսարան։

Ես չէի կասկածում, որ դահլիճը լիքն է լինելու, բայց այն, ինչ տեսա՝ վեր էր երևակայությունից։ Այն ժամանակ մեծ սրահը դեռ կառուցված չէր և հավաքույթները տեղի էին ունենում այժմյան փոքր դահլիճում։ Ես իմ կյանքում, ոչ առաջ, ոչ էլ հետո, այդպիսի լեփ-լեցուն դահլիճ չեմ տեսել։ Պատճառը պարզ էր։ Պատին փակցված հայտարարության մեջ գրված էր, թե քննարկմանը ներկա է լինելու ինքը՝ բանաստեղծը։ Լսել էին Չարենցի անունը և բոլորը շտապել էին գալ։ Դահլիճում ոչ միայն նստելու բոլոր տեղերն էին գրավված, այլև ամեն մի փոքր տարածություն, ուր մարդ կարող էր կանգնել։ Անհագին բազմություն էր խռնված դուրսը, դռան մոտ, սատիճանների վրա։ Դրսեցիների պահանջով դահլիճի երկու փեղկն էլ բացել էին, որ մի բան տեսնեն կամ գոնե կարողանան լսել։ Իսկ ինչքա՜ն մարդ կար ներքևի միջանցքում, որ ստիպված էր ետ դառնալ։ Ո՜վ ասես չկար. ուսանողներից բացի, եկել էին գրեթե բոլոր դասախոսները, ոմանք նույնիսկ կանանց հետ։ Անհագին մարդ էր եկել դրսից. ոչ միայն հարևան ինստիտուտներից,

այլև գրականության սիրահարներ։ Ժողովրդական ասացվածքը, թե «ասեղ գցելու տեղ չկար», այդ օրվա համար էր ասված։

Թե ինչ կատարվեց, երբ Չարենցն իր գրչակիցների հետ դահլիճ մտավ՝ նկարագրել անկարելի է։ Մի այնպիսի խելահեղ ծափահարություն բարձրացավ, որ թվում էր շենքն ուր որ է փուլ կգա։ Բոլորը ոտքի կանգնեցին։ Խանդավառված ժողովուրդը սրտագին ողջունում էր բանաստեղծին։ Ծափերին վերջ չկար, վերջ չկար և կանչերին։

Դա էլ պայմանավորեց երեկոյի բնույթը։ Պարզ է, որ այլևս խոսք չէր կարող լինել քննարկման մասին։ Մթնոլորտն այլ էր, ժողովրդի պահանջն ուրիշ։ Անկարելի էր նկատի չառնել։ Անմիջապես որոշվեց, թե ով ինչ է անելու։ Իմ դրությունը բոլորից ծանր էր. պետք է մի կողմ դնեի «Գիրք ճանապարհի» քննարկման համար պատրաստած զեկուցումը և խոսեի Չարենցի նշանակության մասին ընդհանրապես։ Այդպես էլ արի. չեմ կարող ասել, թե ինչպես զեկուցեցի, լավ, թե վատ, չեմ էլ հիշում ինչ էի ասում, բայց միտս է, որ խոսում էի ոգևորված։

Ողջույնի խոսք ասաց պրոֆեսոր Սիմոն Հակոբյանը, որը մի-երկու ցայտուն գծով բնութագրեց բանաստեղծին՝ համարելով նրան ժամանակակից բոլոր բանաստեղծների ուսուցիչը։ Ապա ամբիոն բարձրացավ այդ օրերին Սովետական Հայաստան հյուր եկած Պատրիկ Սելյանը, որը Ամերիկայում լույս տեսնող «Երևան» թերթի խմբագիրն էր։ Լավ հիշում եմ նրա մի խոսքը. «Ոչ թե դահլիճն է փոքր, ասաց նա, այլ Չարենցն է մեծ»։

Ուսանողների անունից ողջույններ եղան, մի-երկուսը Չարենցին նվիրված ոտանավորներ կարդացին։ Բեմ բարձրացավ և Արուս Ոսկանյանը, կարդաց Չարենցի բանաստեղծություններից։ Հիշում եմ առանձնապես այն մեծ ոգևորությունը, որ առաջացրեց «Գանգրահեր տղայի» արտասանությունը։

Վերջում խոսքը տրվեց Չարենցին։ Ժողովուրդը նրան հոտընկայս դիմավորեց։ Հիշում եմ, որ նա իր զգացված շնորհակալությունը հայտնեց.

— Ես գիտեմ, որ մեր ժողովուրդը բանաստեղծություն սիրում է։ Ինձ էլ, ինչ մեղքս թաքցնեմ, վատ բանաստեղծ չեմ համարում։ Բայց այստեղ գտածս ջերմությունը, ճիշտ ասած, չէի սպասում։

Կանգ առավ։ Հուզված էր, երևում էր, որ դժվարանում էր խոսել։ Ծխախոտ խնդրեց, վառեց, մի-երկու քայլ անցավ։ Դահլիճն անձայն էր։ Չարենցը նորից կենտրոն եկավ։

— Իհարկե ինքնասիրությունս շոյված է։ Բայց հարցը դա չէ։ Սա ավելին է, քան մի բանաստեղծի շոյված ինքնասիրություն։ Մտածել է պետք, խորհել դրա շուրջը։ Լուրջ հարց է։ Իմ բարեկամների թիվը փոքր չէ, բայց քիչ չեն և չարակամներս։ Նրանք պղտորում են իմ կյանքը, հաճախ դառնացնում իմ ամբողջ օրը։ Ասենք այդ ո՞ր կարգին գրողն է, որ ախոյան չի ունենում։ Պուշկի՞նը, այն էլ ինչքան, մեր Թումանյա՞նը, նա մինչև օրս էլ թշնամիներ ունի։ Այսօրվա օրը երբեք չեմ մոռանա, ես հասկացա, որ, իմ գրական բարեկամներից բացի, կա մի ամբողջ ժողովուրդ, որ կանգնած է բանաստեղծի մեջքին։ Ես պետք եմ նրան։ Երբ քեզ է նայում քո ժողովուրդը, ինչ ուզում են թող անեն, ինչ դավել ուզում են, թող լարեն։ Երկյուղալի չէ, ի՞նչ կարող են անել մարդիկ՝ ոչինչ։ Ինչ որ անում է՝ անում է ժողովուրդը, անհունորեն բարի և նույնքան անողոք։ Գործ արիր՝ կստեղծի քեզ համար հուշակ, կփառավորի, հակառակ գնացիր՝ կկործանի, կոչնչացնի, փոշի կդարձնի։ Ինչքան շատ ու բարձր են գնահատում քեզ, այնքան ավելի է մեծանում քո պարտքը։ Ես գնում եմ այստեղից ջերմացած հոգով, պայծառացած մտքով, գնում եմ պարտավորված։ Տվեք ժամանակ և ես ինչպես էլ լինի, կմարեմ պարտքս։

Երեկոյից հետո, երբ ճանապարհ ընկանք, բոլորի տրամադրությունը բարձր էր, կատակում էինք, սրախոսում։ Չարենցն հանկարծ ընդհատեց խոսողին.

— Տղե՛րք, սա հո իսկական հոբելյան եղավ...

* * *

Չարենցի հոբելյանը այդպես էլ չկայացավ։ Դրա մասին այլևս ոչ մի խոսք չեղավ։ Եվ չէր էլ կարող լինել, որովհետև դեպքերը հակառակ ուղղությամբ զարգացան։

Չարակամ մթնոլորտը Չարենցի շուրջը խտացավ. որքան բարձրանում էր բանաստեղծի հեղինակությունը ժողովրդի աչքում, այնքան շատանում էր հալածանքը։ Ի՞նչ սխալ ու սայթաքում ասես, որ չէին վերագրում նրան, ի՞նչ մեղքի տակ ասես, որ չէին գցում։ Չարենցի մի սխալը ահռելի մեղք էին հայտարարում, մի մեղքը տասը դարձնում։ Խոսում էր հայրենասիրությունից, ասում էին, թե ազգայնամոլ է։ Խոսում էր պոեզիայի ձևերի մասին, ասում էին, թե ձևապաշտ է։ Եվ այսպես, նրա գրական հակառակորդները խոսում էին գաղափարների ու սկզբունքի դիրքերից, խոսում էին կուսակցության ու ժողովրդի անունից, առանց ունենալու մեկի և մյուսի լիազորությունը։ Նկատելի էր, որ հակաչարենցականներն ավելի միաձույլ էին, քան Չարենցն ու իր համախոհները։ Բարեկամներից շատերը դադարեցին այցելել նրան, գերադասեցին վեճերի ժամանակ լռություն պահպանել, քան միջամտել ու պաշտպանել Չարենցին, որին իրենց գրական պարագլուխն էին հռչակել։ Պարագլուխը մնաց մենակ, հրամանատարը՝ անզինվոր։ Չարենցը հաճախ անդրադառնում էր դրան, մեկին կոչում էր դավաճան, մյուսին անողնաշար, երրորդին՝ վախկոտ։ Անշուշտ իրավացի էր, բայց չէր հասկանում, որ մենակ մնալու պատճառը ինչ-որ չափով նաև ինքն էր, իր բնավորությունը։ Ծայրահեղությունների մարդ էր, շատ էր ենթարկվում պահի տրամադրությանը, մի օր կարող էր կոշտ լինել, կոպիտ, նույնիսկ վիրավորել, վաղը, ընդհակառակը, դառնալ զարմանալի հոգատար։ Այս շրջանում Չարենցը դարձել էր նյարդային, կասկածամիտ։ Թեև կասկածամիտ՝ անկեղծ էր ծայր աստիճան։ Խիստ անմիջական լինելով՝ չէր կարողանում զգացածը չասել, մտածել ու չարտահայտվել։ Պետք է խոսեր, որ հանգստանար։ Նա չգիտեր ինչ բան է գաղտնիքը։ Քեզ կարող էր զգուշացնել, թե այսինչ հարցի մասին չպետք

է ոչ ոքի բան ասել, մանավանդ այս ինչին, բայց քիչ անց՝ ինքն էր ասում, ըստ որում հենց նրան, ումից հենց ինքն էր զգուշացնում։

Այս շրջանում ծայրահեղ քայլերի էր դիմում։ Կենտկոմի քարտուղարի անունով մի հայտարարություն գրեց, թե դուրս է գալիս, ինչպես ինքն էր ասում, գրողների կոր-պորացիայից։ Զարենցի դիմումն ուղարկվել էր Գրողների միության վարչությանը՝ քննելու համար։ Թեև բոլորն էլ շատ լավ գիտեին, թե հոգեկան ինչ ծանր դրամա է ապրում, որ դրածը հուզումի մի պահին կատարած քայլ է, ընդամենը մի պոռթկում, սակայն ոչինչ հաշվի չառան։ Չարակամներն ուրախ էին, որ ինքը՝ Զարենցն է առիթ տալիս իր վրա հարձակվելու, իսկ բարեկամները վիրավորական գտան նրա քայլը և, միացած առաջիններին, որոշեցին Գրողների միությունից վտարել... ժամանակի հայ մեծագույն բանաստեղծին։ Այս լուրը Զարենցին հանեց հավասարակշռությունից։ Ամեն ինչ սպասում էր, բայց ոչ այդ։ Մեկ-մեկ թվում էր իր բարեկամների անունները և ասում՝ մի՞թե սա էլ, մի՞թե այս մյուսն էլ... Մի պահ գրգռվում էր, հայհոյում, բայց հետո, երբ փոքր-ինչ խաղաղվում էր, չէր հավատում, թե այդ բոլորն իրականություն է, մտածում էր, թե այստեղ անշուշտ մի թյուրիմացություն կա, շուտով ամեն բան կպարզվի։ Օրերն անցնում էին, և ամեն ինչ առաջվանն էր մնում։

Դրանից հետո տանը փակվեց. փողոց դուրս չէր գալիս, շատ քչերը մուտք ունեին նրա մոտ։ Խռովել էր աշխարհից։ ապրում էր մենակ, բզկտված հոգով։

Այս օրերին հաճախ էր անդրադառնում իր գնահատությանը, ասում էր, թե ինքը մեր ժողովրդի մեծագույն պոետն է, ամենաժողովրդական բանաստեղծը, և միաժամանակ զգուշացնում, որ ինքնամեծարանքի մի խեղճ փորձ չէ այդ։

— Երբ ժողովուրդն իր անսխալական նժարով չափում է քո արժեքը և արժանացնում քեզ իր բանաստեղծը հռչակելու բարձր պատվին, այլևս համեստություն չպետք է խաղաս։

Պետք է գիտակցես քո տեղն ու դերը և գերագույն պատասխանատվություն կրես դրա համար։

Նա առաջ էլ սակավ չէր անդրադառնում այս հարցին, բայց այլ կերպ, երբեմն կատակով, երբեմն այնպես, ի միջի այլոց։ Այժմ ուրիշ էր։ Դա ռեակցիա էր, հակադրության մի ձև։ Նրան թվում էր, թե այդպիսով ինքը պաշտպանում է այն, ինչ ուզում են խլել իրենից։

* * *

Հիշում եմ Գրողների տան մի հավաքույթը։ Մոսկվայից ռուս գրողներ էին եկել։ Չարենցը տանից դուրս չէր գալիս, այդ օրը եկավ և ելույթ ունեցավ։ Ես Չարենցի ելույթները հաճախ եմ լսել, բայց այս մեկը շատ է տպավորվել։

Չարենցը մեկ դատողություն էր անում, հիմնավորում իր ըմբռնումները, մեկ հարձակվում էր, մեկ պաշտպանվում, մեկ ինչ որ պատմություն էր մեջբերում, ասես կամենալով հյուրերին ծանոթացնել մեր գրական մթնոլորտին։ Նա վրդովված խոսեց այն մասին, թե ինչպես մոսկովյան գրողներին խեղաթյուրված են ներկայացրել իր ստեղծագործությունը, ըստ որում այն աստիճան, որ նրանք զարմացած իրար երես են նայել, երբ իմացել են, որ ինքը Հոկտեմբերյան հեղափոխություն է երգել և Լենինին նվիրված գրվածքների մի ամբողջ շարք ունի։ Չարենցը ստիպված էր ասել, որ ինքը մի պատահական բախտախնդիր չէ, որ իբր մի խղճուկ թմբկահար՝ միացել է հեղափոխությանը, որ ինքն իր ժողովրդի հետ է եղել նրա պատմական գոյության ամենանեղ պահին և նրա հետ միասին էլ եկել հանգել է հեղափոխության գաղափարին, որի համար կռվել է զենքը ձեռքին։

Դահլիճում խանգարողներ կային, անվերջ ռեպլիկներ էին տալիս։ Աշխատում էին շեղել նրան։ Նա դրանից գրգռվում էր, բայց չէր կորցնում իրեն։ Ընդհակառակը, երբեմն սպանիչ պատասխաններ էր տալիս և նորից շարունակում առաջ տանել իր միտքը, որ ոչ այնքան սառն հետևողականությամբ, որքան թռիչքներով էր գործում, երբեմն հասնելով

անօրինակ փայլատակումների։ Այս դեպքում, սակայն, միտքը չէ կարևորը, այլ ինքը։ Նա նման էր ճակատամարտում մաքառող այն զինվորին, որի մի ձեռքին հրացան էր, մյուսին՝ դրոշ, աչքերը բորբոքուն, կրակով լի, թեև արնաքամ՝ նա շարունակում է դիրքում կանգնած մնալ, շարունակում է դրոշը բարձր պահել։

Չարենցին շատ ուրախացրեց Կիրպոտինի նամակը, որի մեջ նախազգուշացում կար, բայց կար և վստահակի գնահատություն։ Սակայն դա էլ երկար չտևեց, և նա նորից մռայլվեց. կրկին ընկավ հուսահատության մեջ։ Հակառակ ուրիշներին տված խորհրդի՝ իր վրա բոլորովին ուշադրություն չէր դարձնում։ Օրերով չէր սափրվում։ Դրանից ավելի նիհար և գունատ էր երևում։ Ծխում էր անընդհատ։ Վանդակն ընկած վագրի նման՝ սենյակի մի անկյունից մյուսն էր չափում։ Երբ հոգնում էր, գալիս նստում էր թախտին, ծալապատիկ, Բուդդայի ձևով, և երկար մնում էր լուռ։

* * *

Տխուր և հուսահատ պահերին Չարենցը սիրում էր կրկնել Վարուժանի խոսքերը.

— Ես Հիսուսն եմ խոցված, Հիսուսը հազար տեղից խոցված...

* * *

Կոմիտասի թաղումն էր։ Դագաղը դրված էր Կուլտուրայի տան դահլիճում։ Ահագին բազմություն էր հավաքվել հրաժեշտ տալու։ Ներս եկողը չէր հեռանում։ Լավ հիշում եմ, այնտեղ էին Կոմիտասի ընկերները, հայ գեղարվեստական մտավորականության այն ներկայացուցիչները, որոնք Կոմիտասի հետ բարեկամություն էին արել, հետը գործել. կանգնած էր Մանուկ Աբեղյանը, ինչպես մի խոժոռ ժայռաբեկոր, դեմքը խիստ էր, ոնց որ միշտ, և դժվար էր հասկանալ, թե այդ պահին ինչ էր մտքինը։ Այստեղ էր Փանոս Թերլեմեզյանը, որը, հակառակ Աբեղյանին, չէր կարողա-

նում լուռ ու անխոս մնալ, և այդ օրը նրա ձեռքն ավելի էր դողում։ Շատերը կային։ Հանկարծ դռան մոտ եղած հասարակությունը ճեղքվեց՝ մեկին ճանապարհ տալու համար։ Զարենցն էր։ Տխուր էր, մռռուսած, դեմքը գունատ։ Բարձրացավ պատվանդանին, գլուխը կախ կանգնեց, տրտում հայացքը դագաղի ապակյա դիմաշրջանակին, որի տակից երևում էր Կոմիտասը։

Զարենցը մի պահ քարացած կանգնեց, ապա կռացավ, համբուրեց ապակին և լուռ քայլեց դեպի դուրս։ Անմիջապես ճանապարհ տվին։ Գնում էր գլուխը կախ, ձեռքերի մեջ ճմրթելով գլխարկը։

Երեկոյան մոտն էի։ Հետաքրքրվեց հուղարկավորության մանրամասնություններով։ Ասացի, որ Հայկանուշ Դանիելյանը երգեց. պատմեցի, թե ինչպես, վերջում, Կոմիտասի հողաթումբը շրջապատելով՝ կոնսերվատորիայի երգչախումբը երգեց «Անձրևն եկավ շաղալեն», իսկ այդ պահին մաղող անձրևի միջից մայր մտնող արևն իր վերջին շողերն էր արձակել։ Այնպիսի տպավորություն էր, որ կարծես երկինքը լալիս էր, արցունք թափում։

Զարենցը հուզվեց։ Փորձեց իրեն տիրապետել, չկարողացավ։ Տեղից վեր կացավ։ Անցավ սենյակի մյուս ծայրը և մեջք արած՝ բավական երկար մնաց գրապահարանի առաջ, իբր ինչ-որ գիրք է նայում, բայց... լալիս էր։

Քիչ հետո մոտեցավ գրասեղանին, վերցրեց մի թերթիկ, ուզեց կարդալ, բայց, հազիվ շշնջաց միայն վերնագիրը, հիշում եմ՝ «Վերադարձի երգ», և այլևս չշարունակեց։ Ես ոչ մի ձայն չհանեցի։ Եվ կարիք կա՞ր, արդյոք, որ մի բան ասեի։

Մի փոքր հետո խոսեց.

— Կանցնեն տարիներ, շատ տարիներ, ես չեմ լինի, գուցե դու էլ չլինես։ Կոմիտասի երգը դուրս կգա մեր երկրից, կլսեն ու կզարմանան։ Կոմիտասը հայ է, բայց աշխարհինն է, բոլորինը, մարդկությանը։ Ու այն ժամանակ հայը, ավելի բախտավոր, քան մենք, կտեսնի անմահացած Կոմիտասին՝ Մոցարտի և Շուբերտի կողքին։

Քիչ անց ասաց.

— Լսիր ինձ ու հավատա։ Կգա ժամանակ, երբ Կոմիտասին հողի տակից կհանեն։ Դամբան կկառուցեն նրա համար։ Թող պառկի այնտեղ և բոլորը գան ի տես։ Նա արժանի է դրան։ Սա այլևս աճյուն չէ, այլ սրբազան մասունք, ուրեմն և մեղք է նրան հողի տակ պահել։

* * *

Ես գրում եմ այս տողերը, իսկ դրսում անձրև է գալիս։ Ուշ գիշեր է, բոլորը տանը քնած են։ Այլևս չեմ կարող շարունակել, կարծես մի հին վերք կա սրտիս մեջ, որ չի անցել, տնքում է ու տնքում։ Ցավը սաստիկ է, վիշտը խոր և զգում եմ, որ արցունքը սեղմում է կոկորդս։ Հագիվ եմ զսպում ինձ։ Գրիչը վայր եմ դնում։ Մոտենում եմ լուսամուտին, նայում դուրս, ոչինչ չի երևում։ Հորդ անձրևն է աղմկում միայն։ Ու թվում է ինձ, թե դա անձրև չէ, այլ հեկեկանք. լալիս եմ ես, լալիս են ամենքը, լալիս է երկինքը, լալիս է բնությունը։

Վերադառնում եմ գրասեղանիս մոտ։ Ուզում եմ շարունակել, բայց տեսնում եմ, որ իսկապես չեմ կարող։ Այժմ մի զարմանալի ապրում է համակել ինձ, որ չէի զգում մինչ այդ, գրելիս. ասես ինձնից խլել փախցրել են մի թանկագին հիշողություն, որ մի ժամանակ իմն էր, միայն իմը, իսկ հիմա արդեն բոլորինն է։ Ավելի լավ՝ մտածում եմ ես։ Բայց դա գիտակցություն է, դատողություն միայն։ Սիրտս հաշտ չէ դրա հետ։ Կարծես երեկ հարուստ էի, այսօր՝ աղքատ։ Ասում են ամեն ինչ ասողից աղքատ մարդ չկա։ Որ այդպես է, ուրեմն թող ամեն ինչ թղթին չհանձնվի, մի քանի դրվագ էլ, որ հիշելիս միշտ հպարտություն եմ ապրել, թող անհայտ մնան, մնան որպես նվիրական հիշատակներ՝ միայն ինձ համար։

## ԴԵՐԵՆԻԿ ԴԵՄԻՐՃՅԱՆ

Չեմ կարողանում մտաբերել, թե առաջին անգամ երբ եմ Դեմիրճյանին տեսել։ Անունը լսել էի վաղուց, երբ բոլորովին փոքր էի։ Նա ախալքալաքցի, էր, մայրս՝ նույնպես։ Ինչ-որ հեռավոր կապ կար մեր ընտանիքների միջև։ Երկու ընտանիքներին իրար հետ կապողը տիկին Վարսենիկն էր, Դեմիրճյանի ավագ քույրը։ Մեր տանը Դեմիրճյանը հազվադեպ էր լինում։ Հետո իմացա, որ գրող է, ու մի օր էլ, բեմում տեսա «Քաջ Նազարը», և տանն ասացին, թե դա գրել է Դեմիրճօղլյանը (այդպես էր նրա իսկական ազգանունը)։ Ավելի ուշ ծանոթացա նրա մյուս երկերին էլ։ Երբ Երևան տեղափոխվեցի՝ համալսարանում սովորելու, ապրում էի նույն բակում ,ուր և Դեմիրճյանը։ Տիկին Վարսենիկը հաճախ էր կանչում իրենց տուն։ Գնալով ընտելանում էի Դեմիրճյանի անժպիտ դեմքին, և նրա խոսքն ու զրույցն ավելի էր հետաքրքրում ու գրավում ինձ։ Սկսեցի հաճախ այցելել։ Ու հիմա, երբ գրիչը ձեռս առած մտաբերում եմ նրան, հառնում է նրա մտահոգ կերպարանքը՝ թախտի ծայրին նստած, զրուցելիս։

* * *

Դեմիրճյանի պրոֆիլն ինձ վրա միշտ թողնում էր հնադարյան մարդու՝ բյուզանդացու տպավորություն, որին ծանոթ ենք մանկուց, հին աշխարհի պատմության դասագրքերից։ Իսկ երբ նայում էր դեմից, անֆաս, մեծ մասամբ խոժոռ ու մտածկոտ, այն տպավորությունն էր ստանում, թե այդ մագաղաթյա դեմքը հայտնվել է հայկական ձեռագրերի միջից։

Դալուկ դեմք։ Բարակ, շատ բարակ դիմագծեր։ Շրթունքներն էլ չափազանց բարակ էին, և անկյուններում՝ սեղմված։ Երբ նայում էի դեմքին, մանավանդ շրթանկյուններին, ինձ թվում էր, թե այդտեղ է ամբողջ Դեմիրճյանը։ Նրա շրթունքները մշտապես պրկված էին ու գաղտնապահ։ Այդպես էր տպավորությունը։ Նա, իհարկե, կարող էր գաղտնիք պահել, մանավանդ ուրիշինը, բայց խառնվածքով գաղտնապահ չէր։ Ամենևին։ Դյուրագրգիռ ու անմիջական՝ չէր կարողանում դիմացինից թաքցնել ո՛չ իր ապրումները, ո՛չ էլ մտքերը։ Այնպես էր թվում, թե մինչև չասեր՝ չէր հանգստանա։ Նրա համար գոյություն չուներ արտաքին սիրալիրություն՝ անկախ իր ներքին զգացողությունից։ Հակառակորդի համար հակառակորդ էր, բարեկամի համար բարեկամ։ Շեշտված համակրությունների և հակակրությունների մարդ էր։ Եվ ամենքի համար պարզ էին նրա և՛ համակրությունները, և՛ հակակրությունները, լիներ այդ որևէ անձի, թե հարցի վերաբերյալ, միևնույն է։ Դա շատ շեշտակի էր դարձնում նրա քաղաքացիական նկարագիրը։ Այս նկարագրի ամենացայտուն հատկանիշը հայրենասիրությունն էր։ Եվ ինչ հակառակ էր հայրենասիրության, կամ թվում էր շեղումն դրանից՝ նա ընդունում էր ուղղված իր անձի դեմ։ Պատահում էր և այնպես, որ գրական խճճված հանգույցներն ստիպում էին նրան դիվանագիտանալ։ Եվ անհաջող։ Բարձրանում էր ամբիոն իր դիվանագիտական խորհրդով, մի բարկ ժպիտ դեմքին։ Նրան լավ ճանաչողների համար պարզ էր, որ դա այն նահանջներից է, որ նա անում է հարկադրաբար, բայց ինքն այնպես էր կարծում, թե փայլուն կերպով գիտե դիվանագիտել։

Ընդհանրապես օբյեկտիվություն չէր խաղում և չեզոք դիրքեր գրավելու սաստիկ հակառակորդ էր։ Երբեք ասպարեզից մի կողմ չէր քաշվում, իրադարձություններին ու դեպքերին հեռվից չէր նայում։ Բնավորությամբ՝ գործուն, մտքով՝ անհանգիստ, ներքնապես՝ այրվող, նա նետվում էր գրական կյանքի հորձանուտը, միջամտում դեպքերի ընթացքին, զարկում էր, զարկվում, միշտ բախումների մեջ, միշտ կրքոտ, միշտ բուռն, միշտ եռանդով։

Գրական կյանքում ամենից ավելի նրան շահագրգռում էին նոր մարդիկ։ Ահա նրան զբաղեցնող առաջին հարցը՝ ասպարեզ իջնող նորեկը շնորհալի՞ է։ Եթե այո, ապա ծագում էր երկրորդ գերագույն խնդիրը՝ ի՞նչ գաղափարի է. ծառայում այդ շնորհքը, ի՞նչ է բերում իր հետ՝. գավառականությո՞ւն, թե կյանքի նկատմամբ նոր ու լայն հայացք։ Եթե շնորհքն առողջ է, ապա կարող է վստահ լինել իր բարեկամության վրա, նա կրտսեր, ինքը ավագ՝ միևնույն բանակումն են իրենք։ Իսկ եթե նորեկը հետամնաց ըմբռնումներ ունի, ապա ինչքան էլ շնորհալի լինի, ծանոթ են, թե ոչ, նշանակություն չունի, պետք է իմանա, որ ի դեմս Դեմիրճյանի՝ ունի պոտենցիալ հակառակորդ։

* * *

Դեմիրճյանի հետ զրուցելը և խորապես հաճելի էր, և դժվար։ Այս տպավորությունը կարող է հակասական, գուցե և տարօրինակ թվալ։ Հաճելի, որովհետև մտքի ընթացքը անակնկալներով լի էր։ Մտքերի մեջ ինքն էր, ուրիշը չկար։ Ոչ մի զրույց նրա հետ պարապ չէր անցնի։ Դժվար էր, որովհետև նրա զրույցը շատ խտացած էր և անընդհատ խելոք։ Նրա մտքի խորությունն ընդհատումներ չուներ, և դա լարում էր լսողին։ Դժվար է երկար զրուցել, երբ դիմացինիդ ամեն մի նախադասությունը կշռում է մի ծանր միտք։ Լսել Դեմիրճյանին, նշանակում էր ականատես ու վկա լինել մտքի տենդագին աշխատանքի։ Ամենախելոք և ամենալավ զրույցի ժամանակ էլ ընդհատումը ոչ միայն բնական է, այլև անհրաժեշտ։ Լավ գրքի խելոք և թարմ մտքերն ընդգծելիս ամեն մի էջի վրա ամենաշատը մի կամ երկու, ասենք երեք տեղ ես ընդգծում, իսկ մնացածը ընդհատում է, սովորականը, որ ապահովում է հանգիստը երկու ծանր և խելոք մտքերի արանքում։ Իսկ ի՞նչ կլինի, եթե գրքում խելոք մտքերն այնքան շատ և այնպես իրար հաջորդեն, որ ստիպված լինես բոլոր էջերը և էջերի բոլոր տողերն ընդգծել։ Դժվար է այդպիսի գրքից բավականություն ստանալ, այդ-

պիսի գիրքը պետք է ոչ թե կարդալ, այլ ուսումնասիրել, մի բան, որ զրույցի ժամանակ, իհարկե, հնարավոր չէ։ Իսկ Դեմիրճյանն այդպես էր զրույցի պահին։

* * *

Ուսանող ժամանակս ապրում էի քրոջս մոտ, ինչպես ասացի, նույն այն բակում, ուր Դեմիրճյանը։ Նույն շենքի նկուղային հարկում ապրում էր մի ընտանիք, որը շուտով ցավագին քայքայման ենթարկվեց։ Կինը թողեց ամուսնուն, թողեց երեխաներին, գնաց... Նրան բաժին ընկած սենյակը զբաղեցրի ես, դառնալով հարևան՝ երեխաների հետ մոլոր մնացած ամուսնուն։ Մի որոշ ժամանակ անց, գնացողին փոխարինեց մի ռուս կին՝ բարի ու նվիրված անձնավորություն։ Անբախտ կին էր դա, որ իր սփոփանքը երեխաներին ոտքի կանգնեցնելու և նրանց մարդ դարձնելու մեջ գտավ։

Դրամատիկ ցնցումներով լի ընտանեկան այս ամբողջ պատմությունը, ինչպես լինում է միշտ և ամենուրեք, հարևանների խոսքի առարկան դարձավ։ Բոլորն էլ խոսում էին, ամեն մեկն իր կարծիքն էր արտահայտում, մեկը պաշտպանում էր, մյուսը դատապարտում, մի ուրիշը՝ երեխաների ճակատագրով մտահոգ՝ ելք էր որոնում։

Լուրը հասավ Դեմիրճյանին։ Մի օր հարց ու փորձ արեց։ Սկզբում կարծես անտարբեր մնաց, հետո դա նրան զբաղեցրեց։ Սկսեց հետաքրքրվել մանրամասնություններով, և աստիճանաբար գրողի երևակայության մեջ հյուսվեց այն պատմվածքը, որ նրա գրչի տակից դուրս եկավ «Ցաված սերը» վերնագրով։

Մղումն ստանալով իրականությունից, նա նույնությամբ չի վերարտադրել դեպքերը, ոչ էլ դեմքերը։ Հիմնականը պահպանել է, բայց փոխել է հերոսի ոչ միայն անունը (Գրիգորի տեղ՝ Ռուբեն), այլև զբաղմունքը (գյուղատնտեսի տեղ՝ որմնադիր)։ Հարևանս, որ իրականում երկու երեխա ուներ. մի աղջիկ և մի տղա, պատմվածքում դարձրել էր երեք երեխայի տեր։ Երեխաներից տղայի անունը՝ Պետիկ,

պահպանել է։ Շատ բան նույնությամբ թողնելով և բավական հարազատ՝ Դեմիրճյանն իր պատմվածքի համար դտել էր իրականում եղածից միանգամայն տարբեր վերջ. այն ժամանակ, երբ ռուս հարևանուհին մինչև հիմա էլ ապրում է իր արածով երջանիկ, երեխաներից, ավելի ստույգ՝ որդուց արդեն իսկական մայր ճանաչված, հարևաններից խորապես հարգված, պատմվածքում Սոֆյա Պետրովնան (իրական անունը՝ Մարուսյա) Ռուբենի մի կոշտ արտահայտությունից վիրավորված՝ ջուրն է նետվում և խեղդվում։

* * *

Մի զրույցի ժամանակ անդրադարձա «Ցաված սեր» պատմվածքին և հարցրի, թե ինչո՞ւ է Սոֆյա Պետրովնային այդպիսի վախճանի հասցրել։

— Ես չէի կարող դեպքերի զարգացումը նկատի ունենալ կյանքում պատահածի պես. ցանկալի՝ կյանքում, անհետաքրքիր՝ գրականության համար։ Պատմվածքը գրել եմ այդ կերպարի համար։ Նա է իմ հերոսուհին։ Ջգնահատված մարդկայնություն։ Կորցնելուց հետո ենք հաճախ հասու լինում, թե ինչից զրկվեցինք։ Մարդուն հեշտությամբ վիրավորելը, երբ մանավանդ մեղք չունի, ներքին ազնվության բացակայություն է։ Վիրավորում ենք ու չենք մտածում հետևանքի մասին, չենք կշռադատում, թե մի ծանր խոսքը ինչ ավերումներ է տալիս, երբեմն անդառնալի ու ճակատագրական։

* * *

Դեմիրճյանը հաճախ էր դանդատվում, որ ինքը, որպես գրող ճիշտ չէ գնահատված։ Հարմար չդատելով խոսել այդ մասին հրապարակավ, նա ամբիոն բարձրանալիս ընդհանրացնում էր, այն միտքն էր հայտնում, թե քննադատները ժամանակակից հեղինակների երկերին ըստ էության չեն մոտենում. եթե գրողը կենդանի է, իրենց աչքի առաջ՝ հարձակվում են, քննադատում անխնա, իսկ բավական է,

որ անցյալի գրողների մասին խոսք բացվի, որ այդ աննախապաշար վերաբերմունքն անմիջապես չքանա, սկսեն մեծարել, խնկարկել նրանց։

Սիրում էր ասել.

— Կլասիկ դառնալու համար մարդ նախ պետք է մեռնի։ Կամ.

— Գնահատվելու համար մարդ պետք է մի քիչ էլ մեռած լինի։

* * *

Ես չէի հավանում «Երկիր Նայիրին»։ Հասկանալի է, որ Դեմիրճյանի սրտովը չէր։ Ասում էր, թե սխալվում եմ։ Ես էլ երիտասարդական հանդգնությամբ դիմադրում էի։ Ցավում էր, որ այդքան բան չեմ հասկանում։ Եվ նա իր միտքն այնպես էր զարգացնում, որ լսողն այն տպավորությունը կստանար, թե նրա մտահոգության առարկան ոչ այնքան վեպն է, որքան ես, ոչ թե իր վեպի պաշտպանությունը, այլ իր կրտսեր բարեկամը, որ գրական երևույթների գնահատության մեջ կարող է այդպես չարաչար մոլորվել։

Մի օր հարցրեց, թե ներկայացումը ե՞րբ եմ նայել։ Ասացի, թե վաղուց, հենց որ առաջին ներկայացումները եղան։

— Դե որ այդպես է, գնանք միասին նայենք։

Գնացինք։ Նստած էինք նույն օթյակում։ Նայում էինք, ընդմիջումներին խոսում, բայց ոչ վեպի, ոչ էլ ներկայացման մասին։ Ես ձայն չէի հանում, նա էլ ոչինչ չէր հարցնում։

Երբ ներկայացումը վերջացավ, դարձավ ինձ.

— Հիմա ի՞նչ կասես։

— Նույնը։

Միառժամանակ չխոսեց։ Երբ մի քանի քայլ առաջ գնացինք, զայրացած ասաց.

—Ամեն մարդ իր սեփական կենսագրությունն է գրում։

Ես չհասկացա, թե ինչ է ուզում ասել և զարմացած նա-

յեցի իրեն։ Բացատրեց, ասաց, թե երբ իր մասին գրվի, անշուշտ կշտամբանքով կանդրադառնան և նրանց, որ ժամանակին չեն կարողացել իր պիեսը գնահատել ինչպես պետք է։

Նայեց ինձ.

— Բա ինչ ես կարծում։ Այդպես է կյանքը։ Մարդու արածը, ամեն մի քայլը նրա կենսագրության մի կետն է։

Լռեց ու հետո եզրակացրեց.

—Ամեն մարդ իր կենսագրությունն է գրում։ Ինձ դրվատելու են այդ պիեսը գրելու համար, իսկ քեզ փնովելու՝ պիեսս չհասկանալու համար։

* * *

Դեմիրճյանը պատմում էր, թե 20-ական թվականներին ինչ միայն չի եկել «Քաջ Նազարի» գլխին։ Պատմում էր, թե ինչպես մի օր երիտասարդությունը «Քաջ Նազարին» նվիրված գրական ասուլիս է կազմակերպում։ Խիստ կարևորություն տալով իրենց ձեռնարկած գործին՝ ասուլիսի ղեկավարները հեղինակին էլ են հրավիրում, որ լսի իրենց։ Դեմիրճյանը, թեև գիտեր, թե ինչ է լինելու, բայց և այնպես գնում է և գրավում մի տեղ հենց առաջին կարգում։

Մի երիտասարդ զեկուցում է, մյուսները ելույթ են ունենում։ Ով բարձրանում է ամբիոն, մի ծանր խոսք է ասում հեղինակին։ Գլխավոր մեղադրանքն այն է լինում, թե Դեմիրճյանը չի վերակառուցվել, թե նա դեռևս կառչած է հնին, անցյալ ըմբռնումներին։ Եվ դրա ապացույցը նրա «Քաջ Նազար» պիեսն է։ Եթե այդպես չէ, ինչի՞ համար ժամանակակից հետաքրքրական թեմատիկան թողած՝ ընկել է հեքիաթների ետևից։ Մեզ հեքիաթ պետք չէ, եթե պետք էլ է՝ ապա կարմիր հեքիաթ, միայն կարմիր։

Վերջում ձայնը տալիս են Դեմիրճյանին։ Բարձրանում է ամբիոն, խաղաղ հանդարտությամբ նայում շուրջը, և ապա դառնալով նախագահության սեղանին, որտեղ նստած էր զեկուցողը, որը և հանդիսանում էր այդ հավաքույթի ոգեշնչողը, ասում է.

— Երիտասա՛րդ, ես հույս ունեմ, որ մի տաս-տասնհինգ տարի հետո հանդիպելու առիթ կունենանք. թե դուք այն ժամանակ որտեղ կլինեք՝ ես չգիտեմ, բայց որ ես գրականության մեջ կլինեմ, ինչպես այժմ, չեմ կասկածում։

Ասում է ու ժողովականների տարակուսած հայացքների տակ նստում իր տեղը։

Անցնում են տարիներ, և Դեմիրճյանը հանդիպում է իր պիեսը դատապարտող երիտասարդ ընկերոջը։ Անցել էր ոչ միայն ժամանակ, այլև ժամանակի հետ շատ ծախլիկ ըմբռնումներ արդեն պատմության էին պատկանում։ «Քաջ Նազարը» բոլորի կողմից ճանաչվել էր, գնահատվել որպես դասական գործ, որով հիանում էին բոլորը, այդ թվում և նրանք, որ մի ժամանակ փնովում, ինչ ասես ասում էին։

Դեմիրճյանը հարցրել է.

— Հիմա ո՞րտեղ եք, երիտասա՛րդ։

Երիտասարդը անհարմարության մի զգացումով բացատրել է, թե ինքն այժմ ղեկավարում է իրենց քաղաքի միջնակարգ դպրոցներից մեկը։

— Այդպես էլ կարծում էի,— ասում է Դեմիրճյանը,— իսկ ես, սիրելի՛ս, առաջվա պես շարունակում եմ գրականության մեջ մնալ։

* * *

1941-ին խմբագրում էի «Սովետական գրականություն» ամսագիրը։ Ուզում էի, որ իմ խմբագրած առաջին համարներում Դեմիրճյանն անպայման նյութ ունենա։ Խնդրեցի՝ չմերժեց։ Պայմանավորվեցինք այսպես. առաջին և չորրորդ համարների համար գեղարվեստական, երկրորդի և երրորդի համար՝ հոդված։ Մի քանի օր հետո բերեց արձակ բանաստեղծությունների մի ամբողջ շարք, որը տպագրեցի «Մանրապատումներ» խորագրով։ Դրա հետ միասին երկու հոդված։ Խոստացավ մի երկու օրից էլ բերել պատմվածք չորրորդ համարի համար։ Եվ բերեց։

Դեմիրճյանը բերել էր թվով տաս-տասներկու մանրապատում, որոնցից ես ընտրեցի լավագույնները, իսկ մնա-

ցածը վերադարձրի։ Զարմացած նայեց ինձ, բայց ձայն չհանեց, խոսակցության նյութը փոխեց, մի փոքր հետո գնաց։ Մի քանի օր անց հայտնի դարձավ, որ վիրավորվել է։ Այլևս բավական ժամանակ խմբագրություն չէր գալիս և եթե երևում էլ էր, ապա միայն կարևոր գործի դեպքում, գալիս էր կարճ ժամանակով և գործը վերջացնելուն պես գնում։ Իմ սենյակը չէր մտնում։ Հարցերը պարզում էր մյուսների հետ և հեռանում։ Երբեմն հանդիպում էինք Գրողների տանը կամ փողոցում, բարևում էր անհաղորդ սառնությամբ, ինչպես սառն ու անհաղորդ կարող էր լինել Դեմիրճյանը։

Իմ մերժած մանրապատումները տարավ «Գրական թերթ», որտեղ անմիջապես տպագրեցին։

Անցան ամիսներ, իմ դեմ եղած բողոքները շատացան։ Մեղադրում էին ամսագրին նեղակադեմիական բնույթ տալու մեջ։ Չեմ կարող ասել, թե մեղադրանքն անհիմն էր։ Ինձ կանչեցին և ասացին, թե խմբագրի պաշտոնից ազատվում եմ։ Հետո պարզվեց, որ դա կարճատև ազատում էր, ժամանակավոր միջոցառում. մի քանի ամսից կրկին անցա խմբագրական պարտականություններիս կատարման։ Դրան Դեմիրճյանը տեղյակ չէր։

Բավական ժամանակ չէինք տեսել միմյանց։ Մի օր հանդիպեցինք տրամվայում։ Տեսնելուս պես՝ մոտեցա, բարևեցի ու հարցրի, թե ինչպես է։ Պատասխանեց և ապա, մի փոքր անց, իրեն հատուկ բարակ, ներողամիտ մի ժպիտ բարակ շրթունքներին, հարցրեց.

— Հիմա ո՞րտեղ ես։

Անմիջապես հիշեցի իր պատմածը «Քաջ Նազարի» մասին և պատասխանեցի.

— Գրականության մեջ։

Դուր եկավ։ Ծիծաղեց։ Մի քանի անգամ անդրադարձավ պատասխանիս։ Դրանից հետո այլևս բարեկամներ մնացինք։

* * *

Թումանյանին մեծ գրող էր համարում, բայց նյարդայնանում էր, տեսնելով նրա անվան շուրջ ստեղծվող պաշտամունքը։ Չէր ընդունում հատկապես նրա լեզուն, առարկում էր բոլորին, ով ասում էր, թե մեր գրականությունը Թումանյանի ճանապարհով է ընթանալու։ Այն համոզմանն էր, որ գրական լեզվի սկզբունքը տվել են Հովհաննիսյանը, Տերյանը, Չարենցը։ Աղայանին էլ համարում էր սրանց նախահայրը։

—Հեռու բարբառից, մաքուր գրական լեզու։

Սա էր նրա պահանջը։

Դրա շուրջը հաճախ վիճում էին Դեմիրճյանն ու Իսահակյանը։ Վերջինս, որ շուտ էր անկեղծանում, նրան վերագրում էր միտում Թումանյանի նկատմամբ։ Դեմիրճյանը բարկանում էր, պնդում, որ իրեն սկզբունքն է հետաքրքրում, բայց երբեմն չէր համբերում և ասում էր.

— Դե՛, իհարկե, դու էլ Թումանյանի կողմը կբռնես. նա գյուղացի, դու գյուղացի, իրար լավ կհասկանաք։

Մեկ-մեկ էլ ասում էր.

— Ամբողջ Եվրոպան ման եկար ու էլի նույն գյումրեցին մնացիր։

Իսահակյանը ժպտում էր...

* * *

Մի անգամ, երբ պայմանավորվում էի Դեմիրճյանի հետ, թե ամսագրի համար ինչ հարցերի շուրջն է հոդված գրելու, ասաց.

— Մեկը՝ Աղայանի մասին։ Բայց ոչ ընդհանրապես։ Լեզվի հարցն եմ դնելու։

Ձայն չհանեցի։

— Նկատի առ, որ հոդվածը արծարծելու է ընդհանուր, սկզբունքային խնդիրներ՝ գրական լեզվի հետ կապված։ Խմբագրական կազմից ոմանց կարող է դուր չգալ։

Ակնարկը բավական թափանցիկ էր։

Խնդրեցի դրա մասին հոգ չտանել և հոդվածը գրել այնպես, ինչպես որ մտածում է։

Հոդվածը ժամանակին հանձնեց։ Ինչպես սպասում էի՝ պոլեմիկական շունչ ուներ։ Մտածեցի, որ ավելի լավ, մտքեր կարող է բորբոքել, վեճ առաջ բերել։ Երբ հոդվածը լույս տեսավ, գրականագետ ընկերներիցս մեկը, որ հայտնի էր Թումանյանի բուռն սիրով, դիմեց ինձ, թե կամենում է Դեմիրճյանի դեմ հանդես գալ։ Համաձայնեցի։ Երբ Դեմիրճյանին ասացի, ժպտաց, բայց ձայն չհանեց։ Գրականագետ ընկերս բերեց հոդվածը, ես ուղարկեցի շարելու, իսկ երկրորդ օրինակն ուղարկեցի Դեմիրճյանին՝ ծանոթանալու։ Մյուս օրը եկավ մոտս.

— Է՜, տպելո՞ւ ես։

Ասացի որ տպարան եմ ուղարկել։

— Պատասխանելու եմ, ի՞նչ կասես։

— Խնդրեմ։

— Քո գործն է, տպիր, բայց տես, տղան մեղք է։ Կոչընչացնեմ։ Այնպիսի պատասխան եմ գրելու, որ իրանից բան չի մնալու, ու թե ապագայում հիշվելու է՝ ապա հոդվածիս շնորհիվ միայն։

Հոդվածը լույս տեսավ թե չէ՝ Դեմիրճյանը հարցրեց.

— Պատասխան գրե՞մ։

Խնդրեցի, որ մի-փոքր սպասի։ Գուցե ուրիշներն էլ կարտահայտվեն, այն ժամանակ, խնդրեմ, թող ինքը բոլորին միանգամից պատասխանի։

— Ավելի լավ։

Ջարախինդ ժպիտ երևաց աչքերում։

Այս խոսակցությունը մայիսին էր, 1941-ի մայիսին։ Մյուս ամսին պայթեց պատերազմը և բոլոր ծրագրերը խառնեց իրար։ Այլևս ինչ գրական վեճ ու սուսիխ։

— Լավ պրծավ տղան,— ասաց մի օր։

Ճիշտն ասած՝ այն ժամանակ լավ չէի ըմբռնում Դեմիրճանի սպառնալիքը։ Բայց հետո, տարիներ անց, երբ Դեմիրճյանը վեճի բռնվելով մի լեզվաբանի հետ՝ պատասխանեց նրան, նոր միայն հասկացա, թե ինչ էր ակնարկում։

* * *

1942-ին էր։ Ամիսը չեմ հիշում, բայց միտս է, որ տաք եղանակներ էին։ Մեր զորքերը նահանջում էին։ Գերմանացիները քաղաք-քաղաքի հետևից գրավելով, հասել էին մինչև Կովկասի դռները։

Երկու, թե երեք օր էր, Դեմիրճյանին չէի տեսել։

Բարձրանում էի Աբովյան փողոցով։ Մեկը անունս տվեց։ Ձայնը Դեմիրճյանինն էր։ Կանգ առա, շուրջս նայեցի։ Դեմիրճյանը չկար։ Այն է, ուզում էի շարունակել ճանապարհս, որ նորից լսեցի անունս։ Ետ եկա ձայնի կողմը և ինչ տեսնեմ՝ Դեմիրճյանը շարքային զինվորի համազգեստով, կոշտ սապոգներ ոտին, գլխին պիլոտկա, խակե բլուզի կրծքին՝ Լենինի շքանշան։

— Գնում եմ ռազմաճակատ։ Ես ու Նաիրին։

Այն ժամանակ Դեմիրճյանը 67 տարեկան էր։ Որոշել էր իր քաղաքացիական պարտքը կատարել՝ մեկնել ռազմաճակատ, կովողների մեջ լինել, մարտիկների հետ կողք կողքի և ոգևորել, բարձրացնել նրանց հայրենասիրական ոգին։

Դեմիրճյանին Կենտկոմում ասացին, թե կարիք չկա, որ նա այս հասակում գնա հասնի կրակի գիծը ու իր կյանքը վտանգի տակ դնի։ Իր հոդվածներով և պատմվածքներով նա թիկունքում նույն գործն է կատարում, ինչ ռազմիկը ճակատում։

Դեմիրճյանը մի կողմից ընկճված, կոտրված էր, որ իր ռազմաճակատ մեկնելու ռոմանտիկական ծրագիրը խափանվեց, մյուս կողմից ուրախ էր, համոզվելով, որ Հայրենիքի համար այս ծանր օրերին ղեկավարությունը այդքան բարձր և ածմեական է համարում իր գրական գործունեությունը։

Դեմիրճյանի այդ որոշումից որպես հիշատակ մնաց մի լուսանկար՝ ինքը և Նաիրին, երկուսն էլ զինվորական համազգեստով։

* * *

1943-ի սկզբներին էր։ Գեղարվեստական գրականության բաժինն էի վարում Պետհրատում և միաժամանակ խմբագրում էի «Սովետական գրականություն» ամսագիրը։ Դեմիրճյանը հաճախ էր գալիս հրատարակչություն։ Գալիս էր, նստում գահավորակին և մնում բավական երկար։ Սիրում էր խոսել, խորհուրդներ տալ, երբեմն միջամտել գործին, խրատել, ինչպես այդ վայել է կրտսերի ճակատագրով մտահոգված տարեց բարեկամին։ Այդ անում էր անկեղծ ու սրտանց, երբեմն մեղմ ու հանգիստ, երբեմն հայրական խստությամբ։

Մի օր եկավ, թե գործ ունի հետս։ Եվ գահավորակին բազմելու փոխարեն, ինչպես անում էր սովորաբար, մի աթոռ քաշեց գրասեղանիս մոտ ու նստեց։

— Չե՞ս կարող ինձ հետ պայմանագիր կապել, փողի կարիք ունեմ։

Ասացի, որ եթե ուզում է, հենց հիմա էլ այդ կարելի է անել։ Ժպտաց։ Անցա դիրեկտորի՝ Եվգենյա Մելիքովայի մոտ, նրա համաձայնությունը ստանալու։ Սպասածիս պես եղավ՝ ոչ մի առարկություն։ Վերադարձա սենյակս։ Հարցրի թե ի՞նչ կարող է ներկայացնել տպագրության, որ ըստ այնմ էլ պայմանագիր կազմվի։

— Երեք առաջարկ ունեմ. պատմվածքների շարք, մի տասնհինգ հատ, բոլորն էլ պատերազմի կյանքից։ Հետո՝ «Քաջ Նազար» վեպը։ Վերջապես՝ պատմական վեպ Վարդան Մամիկոնյանի ժամանակներից։

Հարցրի, թե այդ երեքից որի՞ն է ավելի նախապատրաստված և կարող է անմիջապես գործի անցնել։

— Առաջինի համար թերթերն ամեն օր, մեկը-մյուսից լավ ու պատրաստ սյուժեներ են տալիս։ Գրող է պետք, որ նստի ու գրի։ Մի-երկուսը դու տպագրել ես ժուռնալում, եթե հիշում ես։ Վերջինը, դե՛, ինքդ լավ գիտես, վաղուց պիտի եմ գրել։ Ուսումնասիրություն էլ։ Վեպի կմախքն էլ կա մտքիս մեջ։ Մնաց «Քաջ Նազարը», դա ավելի վեպի նյութ է։

Շատ էի ուզում, որ այս վերջինը գրի։ Պատկերացնում էի, թե ինչ հոյակապ վեպ կլինի, բայց միաժամանակ մտածում էի՝ գուցե ավելի ճիշտ կլինի կանգ առնել պատմվածքների վրա, որոնք անմիջականորեն հարակցվում են մեր ապրած ժամանակների հետ։ Բայց լավ, թե վատ, այդ թեմայով ուրիշներն էլ են գրում, իսկ պատմական վեպ, այն էլ հայրենասիրական ոգով, այն էլ Վարդան Սպարապետի մասին, այն էլ Դեմիրճյանի գրչով, կհնչի որպես ժամանակակից ստեղծագործություն։

Դեմիրճյանը գտավ, որ իրավացի եմ։ Կանգ առանք պատմավեպի վրա։

— Ես էլ այդպես եմ կարծում։ Ինչ թաքցնեմ, վախենում էի, որ հրատարակչությունը չուզենա այս օրերին պատմական գործ հրատարակել։ Շատ ուրախ եմ, որ միատեսակ ենք մտածում։

Պայմանավորվեցինք այսպես, որ մինչև առանձին գրքով լույս ընծայվելը, վեպը մաս-մաս տպագրենք ամսագրում։ Ամսագրի երրորդ համարում խոստացա տպագրել նրա ուսումնասիրությունը Վարդանանց պատերազմի մասին, որ վաղուց ուներ գրած, և այդտեղ էլ ազդարարել, որ ամսագրի հաջորդ համարից տպագրվելու է հեղինակի վեպը նույն ժամանակաշրջանի մասին։ Ըստ մեր պայմանի՝ մի ամիս անց պետք է ներկայացներ վեպի առաջին էջերը՝ ամսագրի համար։ Եվ ինչպես միշտ, տված խոսքի տերը եղավ. պայմանավորված ժամանակին հանձնեց վեպի առաջին էջերը։

* * *

Պայմանագիր կապելիս հարցրի, թե վեպն ինչպես է կոչվելու։

«Հոսանքի հակառակ»։

Ես թեև այդպես էլ գրեցի պայմանագրի մեջ, բայց նկատեցի, որ հաջող չէ։ Ասաց, թե պայմանական վերնագիր է, իր սրտովն էլ չէ, հետո մի ուրիշ, ավելի հարմարը կգտնի։ Երկու օր անց եկավ թե՝ ուզում է «Վարդան Մամիկոնյան» վերնագրել։ Ասացի, որ դա էլ առանձնապես հաջող չէ։

— Ինչի՞ «Գևորգ Մարզպետունի» կարող է լինել, իսկ «Վարդան Մամիկոնյան» չէ։

Բացատրեցի, թե ինչու եմ այդպես կարծում։ Կարծես համոզվեց։ Մի փոքր անց, խաղաղված ձայնով վրա բերեց.

— Դե որ այդպես է՝ ինքդ դիր վերնագիրը։ Մի անգամ գտար։ Եվ վատ չէր։ Մի հարմար բան կգտնես։

Խոսքը «Մանրապատումների» մասին էր, որ իմ դրած վերնագիրն էր (ինքը ներկայացրել էր «Շտրիխներ» խորագրով)։

* * *

Մի ամիս հազիվ էր անցել, որ Դեմիրճյանը ուղարկեց ինձ վեպի առաջին էջերը՝ ամսագրում տպագրելու համար։ Անմիջապես կարդացի։ Եվ այդ պահին էլ իմ մեջ ծագեց վերնագիրը՝ «Վարդանանք»։ Ասացի Դեմիրճյանին, անչափ ուրախացավ։

— Դրանից ավելի լավ չի գտնվի։ Ապրես։

Այնուհետև գրողների շրջանում առիթը ներկայանալիս ասում էր.

— Վեպիս կնքահայրը։

* * *

Ըստ պայմանի՝ վեպը լույս էր տեսնելու մի գրքով. Պայմանագրում նշված ծավալը՝ քսանհինգ մամուլ, հեղինակի ցանկությունն էր։ Սկսեց գրել թե չէ՝ հասկացավ, որ դժվար է լինելու այդ սահմաններում մնալ։

Մի օր թե՝

— Եթե ավելի մեծ ստացվի, ոչի՞նչ։

Խնդրեցի դրա մասին չմտածել, կաշկանդված չզգալ, որովհետև նշված ծավալը պարտադրող նշանակություն չունի։

Ես, ինչպես և ինքն այն ժամանակ, կարծում էինք, թե խոսքը մի հինգ կամ վեց մամուլի հավելման մասին է։ Երբ գործն արդեն բավական առաջ էր գնացել և ինքն էլ պարզ

տեսնում էր, թե դեպքերի զարգացումն ինչպիսի ընդլայնումներ է պահանջում, մի օր ասաց.

— Գիտես, որ մի գրքի մեջ տեղավորվել չեմ կարողանում: Ինչ էլ անում եմ՝ նյութս տարածվում է: Երկրորդ հատորն անխուսափելի է:

Ասաց ու նայեց դեմքիս, ուղիղ աչքերիս մեջ: Նրա հայացքը լարվածություն էր արտահայտում: Երևի մտածում էր, թե հրատարակչությունը կարող է առարկել: Երբ փարատեցի կասկածները, ժպտաց բարի ու բավական:

* * *

«Վարդանանքը» գրելու տարին Դեմիրճյանի մոտ հաճախ էի լինում: Պատերազմական ահեղ օրեր էին: Դեմիրճյանը տանից դուրս էր գալիս հազվադեպ: Նստած գրում էր օրն ի բուն: Սեղանի մոտ նստելու սովորություն չուներ: Մի մեծ գիրք էր դնում ծնկանը, վրան թուղթ ու գրում տենդորեն: Գրում էր մատիտով: Պետք էր տեսնել, թե ինչ աներևակայելի արագությամբ: Էջեր էր, որ լցում էր: Ամեն ինչ գլխի մեջ պատրաստ՝ հանձնում էր թղթին՝ դեմքեր, դեպքեր, բախումներ, հերոսական դրվագներ, բնության տեսարաններ…

Մի օր հարցրի, թե ապա ե՞րբ է մտածում, ե՞րբ է խորհում գրելիքը: Ասաց գիշերը, երբ ամենքը քնած են, երբ շուրջը խաղաղ է, մտքի մեջ կառուցում է ամեն ինչ՝ դեպքերի հաջորդականություն, հերոսի վարքագիծ, հոգեբանության զարգացում, և առավոտյան դեմ, կանուխ ժամերից մեկին, նստում է գրելու: Իրեն թվում է, թե մեկը կողքին կանգնած թելադրում է, ինքը շարադրում: Թելադրում է այնպես փութաջան, որ ինքը հազիվ է հասցնում գրի առնել:

Պետք էր տեսնել Դեմիրճյանին ներշնչանքի ժամին: Նյարդային խառնվածքն այդ օրերին դարձել էր ավելի նյարդային, դյուրագրգիռ, անմիջապես բռնկվող: Ու երբեմն այնքան էր տարվում գործով, այնքան էր ենթարկվում սեփական երևակայությամբ ստեղծված իրականությանը, որ

մոռանում էր, թե կողքին մարդ կա, ձայներ էր հանում, տնքում, կամ, մեկ էլ տեսար մի բարակ ժպիտ ողողում էր նրա ոսկրացած, այդ օրերին դալկացած, սրված դեմքը։ Ասես հիվանդ լիներ, տենդի մեջ։

Ասացի, որ այդ օրերին տանից գրեթե դուրս չէր գալիս։ Այնպես եղավ, որ եթե ուզեր էլ՝ չէր կարող դուրս գալ։ Հիվանդացավ։ Բայց դա էլ չկասեցրեց նրան։ Շարունակում էր գրել։ Երբեմն թուլանում էր այն աստիճան, որ ձեռքն այլևս չէր կարողանում շարժել։ Այդ պահերին ընդհատում էր, մեջքը դեմ տալիս պատին, մի ցավագին ժպիտ դեմքին, որ նշանակում էր՝ «տե՛ս, թե ինչ օրն եմ ընկել», շունչ էր առնում և հետո կրկին շարունակում գրել առաջվա թափով, մինչև ուժասպառություն։ Ջերմաստիճանը բարձրանում էր, բայց գրելու տենդը չէր նվազում։ Երբեմն էլ հազն էր բռնում, խեղդող ու երկարատև, դարձյալ մատիտը վայր չէր դնում։ Սպասում էր մինչև հազը կտրվի, որ հարձակվելու հերթը իրեն գա, նորից վրա պրծնի ձեռագրին։

Նայում էիր ու մտածում, թե այդ նիհար, այդ սմքած մարդու մեջ որտեղի՞ց այդքան ուժ, այդքան կորով։ Բավարարված էր, երբ գրում էր, երջանիկ, և, ընդհակառակը, տառապանքը ծայր էր առնում, երբ ստիպված էր ընդհատել, դադար տալ։ Գրում էր ինչպես ասացի, շատ, չափազանց արագ։ Երբ խոսք էի բացում, թե ինչո՞ւ է այդպես հևիհև աշխատում, ասում էր, թե դա իր մարտական պարտքն է, և ինչքան շուտ ավարտի՝ այնքան լավ։ Գրում էր համոզված, որ այդ վեպը սովորական գիրք չի լինելու ժողովրդի կյանքում, և երբեմն այնպես էր թվում, թե ինքն էլ հավատացած է, որ ինչքան շուտ գրի և ինչքան լավ, այնքան ավելի կմոտենա հաղթանակի օրը, այնքան մեծ ու վերջնական կլինի այդ հաղթանակը։

Հաճախ ասում էր։

— Ես ժամանակակից վեպ եմ գրում, եթե ճիշտը կուզես՝ պատմական վեպ, որը ժամանակակից հարցեր է դնում, թե չէ հիմի ինչ ժամանակն է պատմությամբ զբաղվելու, թե ինչը ինչպես է եղել շատ ժամանակներ առաջ։ Ես թանգարան չեմ, և պատմության հիշատակներ, ինչքան էլ

որբացան, պահպանողի դեր չեմ կամենում վերցնել վրաս։ Այսօրվա հարցերն են ինձ հուզողը, իսկ երբեմն լավ է դրանց լուծումը պատմության մեջ գտնենք, պատմական անցուդարձերի օգնությամբ։ Եթե ժողովրդի հոգեբանությանը նայենք, այն էլ մեր՝ ավելի ազդեցիկ։

Սկսեց գրել 1943-ի փետրվարին և նույն թվականի ամռանն ավարտեց։ Այդքան մեծ կտավը՝ մի քանի ամսում, աներևակայելի կարճ ժամանակում։ Զարմանալի է, անշուշտ։ Բայց ինքը չէր զարմանում։ Բնական էր համարում։ Եվ չուներ էլ այն համոզումը, թե մի օր, եթե նստի մի այլ վեպ գրելու, կգրի նույն արագությամբ։ Դա կուտակում էր, երկար տարիների կուտակում։ Տարիներ շարունակ մտածել էր, խորհել և այդ ամենը այժմ իր արտացոլումն էր գտնում վեպի մեջ, ձևի կողմից մի այնպիսի գրական ընդարձակության մեջ, որ ոչ մի տեսակետից չէր կաշկանդում, միշտ հակառակը՝ ծավալվելու ազատ ու լայն ասպարեզ էր բացել նրա համար։ Եվ նա պոռթկաց, հիացավ, հուզվեց, սիրեց, տխրեց, ատեց, զայրացավ, հերոսացավ։ Տարիներով ամբարված պատրանքի ու երազի թաքնված գանձեր, տարիներով լուռ մնացած վսեմ մտքեր, նվիրական ձգտումներ, անհանգիստ ապրումներ՝ հանկարծ ժայթքեցին, և ինչպես ժայռի գլխից գահավիժող մի ջրվեժ՝ թափ առած մի համիփա ընկան դեպի ընթերցողը, նրա միտքը գրավելու, իրեն ենթարկելու համար։ Դա պոռթկում էր, նման գարնանային գետին, որ մեկ գալիս է հորձանքով, տարածվելով, երբեմն հունից դուրս գալով, ընդգրկելով ափերն էլ, բայց մեկ էլ, հանկարծ, մի ինչ-որ տեղ անձկանալով, նվազում է, բայց հետևից անպայման խոր հետքեր է թողնում։ Հարթ չստացվեց։ Եվ չէր էլ կարող ստացվել։ Ինքն էլ գիտեր ու կարևորություն չէր տալիս դրան։

— Բնության մեջ ոչինչ հարթ չէ. հարթավայրի վրա մեկ էլ տեսար ահագին մի լեռ է բարձրանում, ժայռի կողքին՝ կիրճ է բացվում։ Նույնը և մարդը։ Ուզում ես արտաքինը վերցրու, ուզում ես՝ հոգին։ Գլխավորը հոգին է, շունչը, ներքին ներդաշնակությունը։ Մնացածը՝ ոչինչ, միշտ կարելի է անել։ Միշտ կգտնվի դրա համար ժամանակ։ Գլխավորը՝ գլխավորն է։ Եթե կա, ուրեմն վեպը փրկված է։

* * *

«Վարդանանքը» հնչեց, գտավ շոնդալից արձագանք։

Ամիսներ անց խնդրեցի բացատրել ինձ, թե ներքին ինչ մղումներ պատճառ դարձան՝ գրելու այդ վեպը։

— Դրդապատճառները շատ էին. մեր պատմական անցյալով շատ եմ ապրել, հետո՝ ունեցել եմ մտահոգություն, որ մեր ժողովուրդն իր պատմությանը պետք է անդրադառնա, ապրի նրանով, իմանա իր ծագումը, իմանա իր պատմական ճակատագիրը, առանց դրան՝ ինչ ժողովուրդ, անապատան զավակ անհայտ ծնողների։ Առանց անցյալով ապրելու, առանց անցյալն իմանալու, ժողովուրդը ներկան, իր քաղաքական-կուլտուրական կյանքը կառուցել չի կարողանա։ Ամեն մի ժողովուրդ գալիս է իր պատմությունից։ Պատմությունը նրան հետապնդում է շարունակ։

Համեմատենք առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմները. առաջին պատերազմում հայ ժողովուրդը պասսիվ եղավ, կռվող ուժերը կռվում էին իրենց նպատակների համար, որի մեջ հայ ժողովուրդը համարյա թե բաժին չունեցավ։ Նրան բաժին ընկան միայն աղետները։ Այս պատերազմում հայ ժողովուրդը հանդես եկավ որպես ակտիվ ուժ՝ պատմական դեր կատարելու համար։ Երբ վեպը սկսել էի, հայ ժողովուրդն արդեն մասնակից էր պատերազմին և դեռ հեռու էր վախճանը։ Բայց ես գիտեի, թե նա ինչպես դուրս կգա պատերազմից, որովհետև գիտեի նրա պատմությունը։ Սխրագործությունները, որ հանդես բերեց հայ ժողովուրդն այս պատերազմում, ինձ համար անսպասելի չէին։ Դրանք ունեին պատմական հիմքեր։

Կանգ առավ և ապա եզրակացրեց.

— Ուրեմն՝ իմ հաշվով գրում էի մի այժմեական վեպ։ Վեպի ոգին համընկնում է մեր ժամանակներին։ Ընդհանրություն անպայման կա։ Դա ազգային ինքնուրույնությունն ամրապնդելու խնդիրն է, լեզուն ու կուլտուրան պաշտպանելու խնդիրն է, ժողովրդական շարժումը, համաժողովրդական բնավորություն ունեցող սխրագործություններն են։ Անցյալի գրողները չէին կարող տեսնել այդ։ Սովետական

շրջանը տվեց մեր գրողներին այդ ըմբռնումը։ Այս ընդհանուր է։ Այս այն է, որ երկու տարբեր էպոխաներր մոտենում է իրար։

Եվ ժողովուրդը Դեմիրճյանի վեպն այդպես էլ ընկալեց։ Նրա արագ տարածումը, ձեռքից-ձեռք անցնելը, քննադատության տված բարձր գնահատությունը, ընթերցողների նամակները, զինվորների նամակներր ռազմաճակատից։ Եղան մարտիկներ, որ իրենց բարեկամներին գրեցին, թե այսօր երկու հաջողություն ունեցանք. Սևաստոպոլը գրավեցինք և ստացանք «Վարդանանքը»։

Ես հարցրի, թե ինչպես է գնահատում նա իր վեպի հաջողության փաստը։

— Վեպի գտած հաջողությունն ապացուցեց այն միտքը, թե ժողովուրդն իսկապես չի ուզում իր պատմությունը մոռանալ։ Որ ժողովուրդը ձգտում ունի պատմության, կամենում է իմանալ, սուրել և այլն։

Զրույցն ընդհատվեց։ Կինը՝ Մարիա Միխայլովնան սուրճ բերեց։ Դեմիրճյանի դեմքին դժկամ արտահայտություն կար։ Կինը գնաց, նա շարունակեց խոսքը։

— Ես վերջացրի «Վարդանանքը»։ Վեպի լավն ու վատը, ծուռն ու շիտակն այս րոպեին կատարված փաստ է։ Հանձնըված է արդեն ընթերցողի՝ այսինքն ժողովրդի դատաստանին։ Ոչինչ այլևս չպիտի կարողանամ ավելացնել։ Թերևս ժամանակն է, որ ես լռեմ։ Բայց մեկ-երկու խնդիր կա, որ թե վեպի հետ են կապված և թե վեպից դուրս էլ գոյություն ունեն։ Չգիտեմ, թե որքան տեղին կլինեին վեպից դուրս իմ լուսաբանությունները և փաստարկումները, բայց ինձ թույլ եմ տալիս մի-երկու խոսք ասել Վարդանի և Վասակի մասին։ Գիտեմ, որ Վարդանի մասին ավելի քիչ պետք է վեճ լինի, քան Վասակի։ Եվ գիտեմ. թե ինչ վեճեր պետք է առաջանան։ Ես այդ վեճերին իմ վեպով չեմ ուզել մասնակցել։ Եվ ահա թե ինչու։ Մեր հասարակայնությունը տարբեր շրջաններում հասարակական-պատմական խնդիրներ է առաջադրել և ջանացել է «պատմականորեն» լուծել։ Այսպես, օրինակ, մեր ազատամիտները և մասամբ էլ պահպանողականները 60—70—80-ական թվականներին,

կամենալով իրենց արդիական-պատմական-հասարակական խնդիրները լուծել զանազան օրինակների փաստարկումներով Վարդանի և Վասակի պատմական դերը հարմարեցրել են իրենց ժամանակի հասկացողություններին։ Իսկ ես ոչ մի ժամանակակից հարց չեմ լուծել Վասակով և Վարդանով, այլ ջանացել եմ նրանց պատկերը տալ այնպես, ինչպես կարող էին լինել պատմության մեջ։

* * *

Ոչ մի կերպ չէի հաշտվում «Վարդանանքի» ոճական ընդհանուր հյուսվածքի մեջ տեղ գտած մի քանի անհարիր բառերի հետ՝ տեմպ, կոմիկ, որոնք թեև շատ չեն, բայց խախտում են պատմականության պատրանքը։

Ասացի տարակուսանքս։

Չհամաձայնեց, նույնիսկ բարկացավ։ Հետո խորամանկ ժպիտ խաղաց դեմքին։

— Ինչի՞ Ֆեյխտվանգերը կարող է պատմական իր վեպում գործածել «սառը պատերազմ» արդիական ձևակերպումը, եթե ճիշտը կուզես՝ խստորեն ժամանակակից մի հասկացողություն, և ոչինչ չեք ասում, կուլ եք տալիս, իսկ իմ մի-երկու բառը չեք ուզում հանդուրժել։

Ֆեյխտվանգերի օրինակը ինձ համար անակնկալ էր։ Չէի հիշում։ Չէի հասկանում՝ Ֆեյխտվանգերի մոտ իսկապե՞ս այդպիսի բան կա, թե՞ հնարում է՝ հակառակորդին խեղճացնելու դիտավորությամբ։

Դեմիրճյանի ժպտուն հայացքը կարդում էր իմ մտքերը։

— Կարդացե՞լ ես։

Եվ նա իմ առջև դրեց «Իսպանական բալլադը»։ Ասացի, որ կարդացել եմ։ Բացեց մի էջ, ուր իսկապես կար այն արտահայտությունը, որի տակ Դեմիրճյանը մատիտով մի կոշտ գիծ էր քաշել, ասես մի այդպիսի վեճի համար վաղօրոք զինվելով։

Ես լուռ նստած էի։ Իմ լռությունը նա համարեց պարտության պերճախոս վկայություն. և չկամենալով այլևս շարունակել հարձակումը, խաղաղված ձայնով հարցրեց.

— Ինչո՞ւ Ձեյխունյանգերին կարդալիս չես նկատել, իսկ իմ վեպի մեջ իսկույն նկատել ես։

Ձայն չհանեցի։ Գիտեի, որ նրա հարցը միշտ չէ, որ հարց է, այլ հաճախ խոսելու ձև։ Հարց է տալիս, որ հետո ինքն էլ պատասխանի։ Եվ իսկապես, մի կարճ դադարից հետո շարունակեց.

— Բոլոր դեպքերում, երբ պատմական նյութի մասին գրում են ժամանակակից լեզվով, առանց ոճաբանության, ամենաժամանակակից արտահայտություններն անգամ հեշտությամբ մերվում են։ Ինչո՞ւ. որովհետև ոճական միասնության իմաստով օտար չեն կամ գոնե՝ չեն թվում։ Իսկ ստիլիզացիայի դեպքում նրանք օրգանական չեն երևում, դուրս են ընկնում ընդհանուր մթնոլորտից, աչքի են զարկում։

* * *

Դեմիրճյանին այցելողը իսկույն կնկատեր, որ նա կատու պահելու մի առանձին սեր ունի։ Մեկի տեղ մի քանիսը։ Սրանք մեծ մասամբ գրքի պահարանի գլխին էին, հավաքված միմյանց շուրջ, խաղում, գզվռտվում էին՝ մեծ բավականություն պատճառելով թախտի ծայրին նստած տիրոջը։ Սա այնպես էր խոսում կատուների մասին, ասես մարդիկ լինեին. սրտացավ հոգածությամբ։ Պատմում էր, թե այս մեկը քանի օր է իրեն վատ է զգում, անտրամադիր է, մյուսը՝ չգիտես թե ինչու չի ուտում։

— Մի տես է, ի՜նչ սիրուն են անիրավները։

Գալիս խնդրում էին, որ կատուներից մեկը գիջի իրենց։ Չէր մերժում, բայց անմիջապես չէր տալիս։ Մի քանի օր հարցուփորձ էր անում, և երբ համոզվում էր, որ ուզողը խնամքով կվերաբերվի կենդանուն՝ տալիս էր։

Մի անգամ սխալվել էր հաշիվների մեջ։ Պարզվել էր, որ խնդրատուն դաստիարակչական նկատառումներով կատվի նկատմամբ խստություններ է գործ դնում, նույնիսկ ծեծի է դիմում։ Եվ անձամբ գնում է կատվի ետևից, ընդհարվում, որ կատվի հետ վարվելու ձևը չգիտեն, բերում տուն ու, որպես տուժածի, մի քանի օր առանձնահատուկ խնամք և հոգատարություն ցույց տալիս նրան։

* * *

Մի օր հարցրի, թե ինչո՞ւ թվարկումները ստորակետերով տրոհելու փոխարեն, ինչպես ընդունված է, տրոհում է վերջակետերով։

Ժպտաց։

— Բոլոր թվարկումները չէ, որ տրոհում եմ վերջակետերով։ Նայած տեղին։ Հետո՝ ոչ թե քերականության քարացած կանոն, այլ մարդու կենդանի մտածողություն։ Ահա սկզբունքը։

**Նորից բացատրեց.**

— Երբ դու կնոջդ հետ խորհուրդ ես անում, թե վաղվա ճաշկերույթին ովքեր են կանչվելու, մի՞թե բոլորին հիշում ես նույն հաջորդականությամբ, բերան արած մարդու արագությամբ՝ Վարդանը, Պարույրը, Գուրգենը, Սարգիսը, Լևոնը, ասես մտքիդ մեջ իրար կողք շարված լինեն՝ մեկ, երկու, երեք, չորս, հինգ, որ ավելի հիշողության մեխանիկա է։ Սա քերականական սխեմա է։ Իրականում այլ կերպ է լինում։ Հիշում ես մեկին, հետո մյուսին, ապա միտքդ լարում ես՝ չլինի, թե մեկնումեկին հանկարծ մոռանաս, և հիշում ես մեկին էլ։ Ուրեմն՝ դադար, որը ստորակետերով չես արտահայտի։ Դրա համար էլ ստացվում է հետևյալ պատկերը՝ Վարդանը, Պարույրը, Գուրգենը։ Սարգիսը, Լևոնը։

Լռեց։ Տեսնելով, որ ձայն չեմ հանում, ընդհանրացրեց.

— Միտքս այն է, որ տրոհության նշաններն ավելի ճիշտ արտահայտեն մարդու մտքի ընթացքը։ Ռեալ ընթացքը։

Շեշտեց ռեալ բառը։

* * *

Մեր ընկերներից մեկը, իր ասպարեզում բավականաչափ փորձված մասնագետ, գիրք էր հրապարակել, ծավալուն մի մենագրություն։ Մամուլն այդ աշխատության մասին գովեստով արտահայտվեց։ Մեր գրական ամսագրի խմբագրությունից խնդրել էին, որ Դեմիրճյանը գրի։ Խոստացել էր։

Եվ, չնայած իր զարմանալի ճշտապահությանը, ձգձգեց և չգրեց։ Հիշեցրին՝ նորից ձգձգեց։ Ձգձգեց այնքան, որ այլևս այդ գրքին անդրադառնալը մի ուշացած արձագանք կլիներ։ Այդպես էլ չիմացվեց՝ Դեմիրճյանը չուզեց գրե՞լ, թե ուզում էր, բայց ժամանակ չգտավ։ Դա խիստ զարմանալի էր, որովհետև հեղինակին սիրում էր, գնահատում և հաճախ, գոնե զրույցների ժամանակ, իր պաշտպանության տակ էր առնում, երբ որևէ մեկը նրա մասին աննպաստ խոսք էր ասում։

Մի օր որոշեցի հարցուփորձ անել և իմանալ, թե ինչո՞ւ չգրեց։

— Գիրքը սրտովս չէր։

Զարմացա. ինչո՞ւ էր հապա խոսք տվել։ Ասաց, թե խոստացել էր առանց կարդալու, չկասկածելով գրքի արժեքի վրա։

— Բայց որ կարդացի՝ հուսահատություն իջավ վրաս։ Նյութ կա գրքում՝ հարուստ, աննգին։ Այդքանով էլ արժեքավոր է անպայման։ Չեմ ժխտում։ Բայց կոնցեպցիա չկա։ Կարդում ես և չես ըմբռնում, թե գրքի միտքը ո՞րն է, ինչի՞ համար է գրել, ի՞նչ է ուզում ասել հեղինակը։ Սա մի սև աշխատանք է առայժմ, հավաքչական, մի-փոքր ավելի՝ կարգ ու կանոնի մեջ դրած։ Այսքանն անելուց հետո նոր միայն պետք է գրեր։ Պետք է ընդհանրացներ ձեռքի տակ եղած նյութը։ Չի արել, մնացել է նյութի տակը ճկռած։

Լռեց մի պահ, հետո շարունակեց.

— Ինչի մասին էլ ուզում ես գրիր, մեկ է, պետք է ասելիք ունենաս։ Հավաքածը նյութը դրան է ծառայելու, որ ասես այն, ինչ անհանգստացնում, զբաղեցնում է քեզ և դու պահանջ ես զգում դրա մասին խոսելու։ Այդ ասելիքը չգտա գրքում, դրա համար էլ չգրեցի։

* * *

Չի կարելի ասել, թե Դեմիրճյանը շուտ էր հիանում, բայց երբ հիանում էր՝ անզուսպ իր ուրախության մեջ, ոչ միայն չափ չգիտեր, այլև մանկական դյուրաբեկությամբ առաջին հերթին ինքն էր ենթարկվում իրեն պաշարած հույզին։ Մարո Մարգարյանը, նուրբ, հոգեթով ու մտերմիկ բանաստեղծուհին, իր նոր լույս տեսած գիրքը տարել էր Դեմիրճյանին և նվիրել նրան։ Մի քանի օր հետո, երբ վերջինիս մոտ էի, պարզվեց, որ կարդացել է և այնքան ազդվել, որ նստել ու գրքի լուսանցքներում բանաստեղծություններ է գրել։

* * *

Մի օր, զրույցի ժամանակ, ասաց թե Նազարի կերպարը, թեև հայտնի հեքիաթից վերցրած, ունեցել է իր համար նախատիպ, որին նկատի է ունեցել պիեսը գրելիս։

— Սարիղամիշում, իմ մանկության օրերին, մի մարդ կար։ Ահա դրան եմ աչքի առաջ ունեցել։ Հակասական մի բան կար մեջը. արտաքուստ խոշոր էր, հաղթանդամ, բայց ծայրաստիճան վախկոտ։ Քայլում էր քաջարի հսկայի պես, իսկ ամենաչնչին վտանգի ժամանակ՝ մկան ծակին ունեցած-չունեցածը կտար։

* * *

Լույս էր տեսել «Քաջ Նազարը» իմ առաջաբանով։ Անցա մոտը։ Խոսք բացվեց նկարազարդումների, ինչպես և առաջաբանի մասին։ Մի դիտողություն արեց։

Առաջաբանում ասված է, թե հեղինակը հեքիաթը նոր և ինքնատիպ կերպով է վերջացրել, բոլորովին տարբեր Թումանյանից, Ծովվրդականից ընդհանրապես։

— Այդ՝ իհարկե, ճիշտ է, բայց պետք է վերապահությամբ խոսեիր այդ մասին։ Անկեղծ ասած՝ այդ լուծումը ինձ էլ չի համոզում։ Համաձայն եմ, որ ավելի լավ է, քան

նախորդ արածներս։ Բայց արհեստական է թվում ինձ, նույնիսկ, եթե ճիշտն ուզում ես իմանալ, հակառակ հեքիաթի ոգուն։ Բնավ կարիք էլ չկա, որ ես նոր լուծում գտնեի, քանի որ ժողովուրդը ինքը արել է այդ և չի սխալվել։ Քաջ Նազարը մնում է գահի վրա և քեֆ է քաշում մինչև օրս։ Սա է միակ լուծումը։

* * *

Մի օր, դա «Վարդանանքի» երկրորդ հատորը գրելուց և լույս տեսնելուց հետո էր, հարցրի, ստեղծագործական ինչ ծրագրեր ունի։

— Ուզում եմ շարունակել մանրապատումները։ Ունեմ նովելների ծրագրեր։ Մի վիպակ արդիական կյանքից։ Այս բոլորը արդիական կյանքից, այժմեական նյութ, խորացրած, գերազանցապես խոհերի բնույթ պետք է ունենա, խոհական։ Դա մի տեսակ հանգիստ է լինելու մեծ վեպից հետո, մինչև նորից կձեռնարկեմ մի նոր վեպի։ Դա է լինելու իմ առաջիկա ստեղծագործական կյանքի գլխավոր առարկան։

Խոսքը վերաբերում է «Քաջ Նազարին»։

— Ուզում եմ դուրս գալ ֆոլկլորային նյութի սահմաններից և որոշ սատիրական էլեմենտներ մտցնել մեջը։ Խստորեն չեմ հետևելու կոմեդիայի ֆարսային։ Եթե այդպես անեմ, դա կդառնա կոմեդիայի արձակ շարադրանքը։ Ինչ որ ուզում եմ անել՝ անհնարին էր կոմեդիայի 60—80 էջի սահմաններում։ Մինչդեռ նյութը շատ է առատ։ Եվ հետո՝ կոմեդիան իբրև դրամատիկական երկ՝ շատ հարմարություններ չունի նյութը բանալու, խորացնելու, դեպքերը լցնելու այն կենսափիլիսոփայությամբ, որ «Քաջ Նազարի» նյութը վերցնում է։

Մի փոքր անց։

—Ինձ համար «Քաջ Նազարը» լինելու է ամենատխուր հասկացողությունը։ Դա լինելու է մարդկային սատիրա։ «Քաջ Նազարը» պետք է հիշեցնի աշխարհի բոլոր բախտախնդիր տիրողներին։ Վեպն իր լայն ու մեծ կտավով հնարավորություն կտա ավելի մեծ չափով դուրս բերելու հերոս-

ներ, ինչպես և գլխավոր հերոսի հետ շրջել գյուղեր, քաղաքներ, զանազան միջավայրեր ընկնել։ Այտինքն՝ ֆաբուլան ընդարձակել, ծավալել։

* * *

Չեմ հիշում առիթը, բայց լավ միտս է, որ ասաց.

— Քաջ Նազարը հավիտենական նյութ է, բոլոր մարդկանց մատչելի, ինչ ազգի էլ լինեն, ինչ ժամանակի էլ պատկանեն։ Տարբեր ձևերով, տարբեր չափերով նույն հոգեբանությանը ամեն մարդ էլ անդրադառնում է։ Ինչքան ազգային գրեմ, համամարդկային կստացվի, ինչքան էլ համամարդկային՝ մեկ է, ազգայինը կա ու կա։

Քիչ հետո.

— Հեքիաթի սահմանները նեղ են, նյութը բացվելու տեղեր շատ ունի։

Լռեց.

— Թե իմանաս՝ ինչ բավականությամբ եմ գրելու վեպը. շրջելու է Նազարս, Սաքոն էլ հետը։ Ո՛ւր ասես, որ չի գնալու, ի՛նչ ասես, որ չի տեսնելու, ի՛նչ ասես, որ չի լսելու։

Նորից լռեց։

— Մեծամտություն չհաշվես. եթե ես չգրեմ, էլ ոչ ոք դրան ձեռք չի տա։ Ես լավ եմ տեսնում դրա չորս բոլորը։ Հանդարտ ժամանակ է պետք։ Երկու, ամենաշատը երեք տարի, ու վեպը սեղանի վրա կլինի։

* * *

Գնացել էինք Դեմիրճյանի մոտ. Մարո Մարգարյանն էր, Բայանդուրը և ես։ Գիտեինք, որ հիվանդ է, ուզում էինք տեսնել։ Բացի այդ, միտք ունեինք խնդրելու, որ մի փոքրիկ հոդված գրի Աբովյանի մասին՝ հոբելյանի կապակցությամբ։

Պառկած էր, թեև տրամադրությունը վատ էր, նույնիսկ հուսահատ, բայց միտքն անդուլ աշխատում էր, կատակում. երբեմն նույնիսկ խայթում։ Երբ խոսք բացվեց հոդված գրելու մասին՝ հրաժարվեց.

— Նաղարն էլ կռիվ գնացողը չի՞…

Շատ ծիծաղեցինք, ինքն էլ մեզ հետ։

Հետո խոսեցինք հիվանդության մասին։ Ասաց, թե բոլոր հիվանդությունները մի աղբյուր ունեն՝ նյարդերը։ Տարիներ առաջ իրեն մի բժիշկ խորհուրդ է տվել՝ խնայել ջղերը, ապա թե ոչ՝ կզղջա։ Ինքը բանի տեղ չի դրել, իսկ այժմ ուշ է։ Եվ ասաց, խելքի է եկել, երբ արդեն ուշ է։

Ես հետո տարել էի Դրամբյանի դիսերտացիայի ավտոռեֆերատը, որը նվիրված էր Եղիշե Թադևոսյանի ստեղծագործության գնահատության հարցին։ Շատ ուրախացավ, թերթեց, աչքերը փայլեցին, դեմքը պայծառացավ։

— Լա՜վ նկարիչ էր, մե՛ծ, իսկակա՜ն։ Ափսո՜ս։ Շա՛տ մեծ էր։ Ո՞վ կարող էր հետը ոտք գցել։ Ես չգիտեմ։ Գուցե Սուրենյա՞նցը։ Բայց Թադևոսյանն ուրիշ էր։ Բնության ի՛նչ զգացում ուներ, գույների ճաշակ։ Բայց արի տես, որ շատ անտաղանդ էր կյանքում, չգիտեր իր կյանքը կազմակերպել։ Ջղայն էր, մի քիչ էլ վախլուկ։ Հայաստան չտեղափոխվեց, մնաց Թիֆլիսում և այն պատճառով միայն, որ նրան թվում էր, թե դա մի մեծ հոգս է, և չէր պատկերացնում, թե ինչպես պետք է հրաժարվի իր արվեստանոցից, որ նրան պատկերանում էր իբրև իրենից անբաժանելի մի էություն։

Ծիծաղեց քթի տակ և պատմեց հետևյալ դեպքը.

—Մի անգամ գնացել էի մոտը։ Տանը մենակ էր։ Կինը գնացել էր շուկա։ Շատ ուրախացավ։ Ասաց, թե պետք է ինձ բան ցույց տա։ Տարավ իր սենյակը, և գրասեղանի դարակից, երկար որոնումներից հետո, հանեց մի ծալմաշ թուղթ։ Խնդրեց, որ կարդամ։ Ոտանավոր էր, նյութը՝ բնության վեհությունը։ Տխուր, ձախողակ մի գործ։ Հասկացա, որ ինքն է գրել։ Ինչպե՞ս է, հարցրեց։ Ասացի՝ վատ չէ, կարծեմ նույնիսկ ասացի, թե լավ է։ Դեմքը հրճվանքից փայլեց։ Հարցրեց, թե ուղղելու կարիք չունի՞։ Ասացի, թե ունի։ Խնդրեց, որ անեմ։ Չգիտեմ ով էր ինձանից առաջ ձեռք խաղացրել թղթի վրա. հասկացա, որ նույնը խնդրել է և ուրիշներին։ Ես էլ իմ հերթին մի-երկու ուղղում արի, որ, իհարկե, չէր կարող փրկել ոտանավորը։ Ասաց. գրել է

նաև դրա երաժշտությունը։ Հանեց նոտաները, դրեց ֆիսհարմոնի վրա ու նվագեց։ Ճնշող մի գործ էլ դա էր, սակայն պետք էր տեսնել նրա դեմքի արտահայտությունը նվագելիս. հուզված էր, ծայրաստիճան զգացված։ Ի՞նչ ասել, ի՞նչ խորհուրդ տալ, հո չէի կարող ասել թե նկարչությունը թող ու դրանով զբաղվիր, բայց նա ոգևորված, կարծես դրան էր սպասում։ Ես նայեցի շուրջս, պատերից կախված նրա նկարներին ու հիացա, հիացա և դուրս եկա...

* * *

Դեմիրճյանը սիրում էր լեզվից խոսել։ Սովորականի մեջ անսովորը տեսնող նրա միտքը ինչ ասես, որ չէր հնարի։

Մի օր բողոքեց։

— Ինչպիսի՜ անարդարություն. տրոհության նշաններից բութն է լեզվի ամենանուրբ փոխանցումներն արտահայտում, իսկ անունը հանիրավի դրել են այդքան կոպիտ։

* * *

Դեմիրճյանի հանդիպումն էր թատերական աշխատողների հետ։ Շատ խոսք եղավ այն մասին, որ հեռացել է թատրոնից։

Իր պատասխան-խոսքի մեջ ասաց.

— Թատրոնն ուղտ է։ Մի ծիծաղեք, այդպես է։ Ուղտից ձին տարբերվում է նրանով, որ եթե տերը վրայից ընկնի՝ ձին կանգ կառնի, իսկ ուղտը՝ կանգնել չունի։ Գնում է։ Այդպես է, չէ՞։ Վրայից բեռ ընկնի՝ կշարունակի գնալ, տերն ընկնի՝ դարձյալ կշարունակի։ Թատրոնն էլ այդպես է։ Գիրքը լույս է տեսնում և տարածվում, մենք անմիջապես ականատես չենք նրա հաջողությանը կամ անհաջողությանը։ Քննադատության միջոցով պետք է իմանանք այդ, բայց նրան էլ, ինչպես գիտենք, առանձնապես չենք հավատում։

Դրամատուրգիայի, մանավանդ խաղացվող պիեսի արձագանքն անմիջական է։ Պիեսը ստուգվում է մինչև ներկայացումն էլ։ Եթե դեսարանը չսիրեց պիեսդ՝ կորած ես, նշանակում է չի համակրում, չի հավատում, բայց ամենամեծ ստուգարքը ներկայացումն է։ Մի անգամ խաղացին, երկրորդ անգամ, և եթե երրորդ ներկայացմանը դահլիճում մարդ չկա, մի՞թե պարզ չի պիեսի բախտը։ Էհ, դա գիրք չէ, որ գրադարանի դարակում մնա։ Պարզապես չեն խաղա։ Թատրոնն էլ անողոք անմիջականությամբ հարցը լուծում է տեղն ու տեղը։

Դեմիրճյանը կանգ առավ, մի ստուգող հայացք գցեց դահլիճի կողմը և ապա, մի խորամանկ ժպիտ խաղացնելով շուրթերին՝ ասաց.

— Ինչ վերաբերում է ինձ՝ ապա ես ուղտի մեջքից ժամանակին իջա, ավելի շուտ՝ քան ինքը կգցեր իր վրայից։

* * *

Հոբելյանների շատ եմ եղել, բայց քիչ եմ հիշում դեպքեր, որ հոբելյարի խոսքն ուժեղ տպավորություն գործի։ Որքան էլ դա տարօրինակ է, բայց փաստ է, որ երբ ձայնը տրվում է հոբելյարին, դահլիճը նրան շատ ավելի ջերմ ու բուռն է ընդունում, քան հետո ճանապարհում։ Եվ պարզ է, թե ինչու. հոբելյարը մի տեսակ չի արդարացնում սպասելիքը։ Եվ դա էլ հասկանալի է։ Մինչև հոբելյարի ամբիոն բարձրանալը դահլիճն այնպիսի գովեստներ ու մեծարանք է լսում և դրա համեմատ էլ տրամադրվում հոբելյարի նկատմամբ, որ երբ վերջինս նախապես, տանը պատրաստած շնորհակալական խոսքը կարդում է, մի խոսք, որ այդ երեկոյի անմիջական ծնունդը չլինելով՝ չի համակված այն կենսաթրթիռ հույզով, որ թելադրում էր հոբելյարին հենց այդ երեկոյի մթնոլորտը, պարզ չէ՞, որ դահլիճը հեշտությամբ պետք է կորցնի ջերմանալու իր հատկությունը։ Բացառություն է կազմում Դեմիրճյանի հոբելյանը, որ տեղի ունեցավ 1945-ի դեկտեմբերի 26-ին։

Դեմիրճյանը հիվանդ էր, և անկողնուց եկավ հոբել-

յանական երեկոյին։ Այնքան թույլ էր, որ հոբելյարի վերջին խոսքը նրա փոխարեն կարդացի ես։ Դահլիճը լուռ էր։ Ոչ մի ձայն, ոչ մի ծպտուն։ Դեմիրճյանը կանգնած էր։ Սև կոստյում էր հագին, որ ավելի էր շեշտում նրա նիհարած, առանց այն էլ գունատ դեմքը, իսկ ամբիոնից, ուրիշի ձայնով, լսվում էին նրա խոսքերը։

Դա սովորական խոսք չէր, այլ կարծես հրաժեշտ խոսք։ Հրաժեշտի խոսք էր ասում ընթերցողներին, գրչակից ընկերներին, հասարակությանը։ Կարոտով հիշում էր երիտասարդական տարիները, ճեմարանի երազկոտ պատանուն, որ հույսերով լի նայում էր կապույտ հեռուներին։ Սրտագին խոստովանության շեշտով պատմում էր, որ տարիների ջանք է պահանջել իրենից՝ սեփական ժողովրդի ճանաչումը, թե ինչպես այդ ջանքերը տվել են իրենց պտուղները, և հայ ժողովրդի մեջ նա գտել է համամարդկայինը, մի համամարդկայնություն, ասում էր նա, որ ակիզբ է առել իր արմատից և ճյուղեր արձակել հավիտենական երկնքի մեջ։

Եվ գուցե ոչ ոքից, մինչև այդ, ես չէի լսել այնպիսի ոգեորված խոսք հայ ժողովրդի ուժի, նրա հոգեկան անսպառ կարելիությունների մասին, ինչպես այդ օրը Դեմիրճյանից։

Ասում էր, թե ինքը սիրել է իր հայրենիքը, ծառայել իր ժողովրդին և եթե ուրախ է այս հոբելյանի համար, ապա այն պատճառով, որ սա ցույց է տալիս, թե իր սերը նկատվել է ու զգացվել։

Ասում էր, թե շատ կուզեր, որ այս հիսուն տարիները անցած չլինեին։ Բայց այդպես է բնության օրենքը. գալիքը պիտի գա և անցնելիքը պիտի անցնի։ Ասում էր, որ ինքը ժողովրդին տվել է ոչ մեծ բան, այլ ցանկացել է մի բան տալ, և դրանով է իր հոգին հանգիստ։

— Ես էլ եմ եղա այն հացահատիկը, որ ընկնելով հողին՝ մեռնում է, որպեսզի գա հացը կենդանի։ Եվ մի ձգտում ունեմ. հեռանալ աշխարհից այնպես, որ նա ինձ մնա պարտ, և ոչ՝ ես նրան։

## ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ

*Այսօր ամբողջ ժամանակ միտքս Իսահակյանի հետ է։ Ինչու է այդպես՝ չգիտեմ։ Հաճախ եմ հիշում, բայց այսօր առանձնապես. չկա այնպիսի ժամ, նույնիսկ պահ, որ չանդրադառնամ, չմտածեմ նրա մասին։ Մոտենում եմ գրապահարանին, հանում նրա երկհատորյակը, բացում, ինչ-որ էջ ու կարդում, երկար դիտում եմ Սարյանի մատիտանկարը՝ ուղտերի քարավան և դրա ֆոնին՝ բանաստեղծի գլուխը։*

*Իրիկուն է արդեն։ Լուսամուտի մոտ եմ։ Միայն հատ ու կենտ մարդիկ են երևում փողոցում։ Շուրջս լռություն է ու դրսի մութը կարծես ամփոփում է օրը, իրար բերում առավոտվա, ցերեկվա ու երեկոյան անցուդարձի տարբեր ծայրերը և փակում այդ օրն ապրած, հետևապես՝ վաստակած, իսկ այժմ երեկոյան թեյասեղանի շուրջ բոլորած մարդկանց հաշիվներն օրվա հետ։*

*Մոտենում եմ օրացույցի թերթիկը պոկելու։ Այսօր հոկտեմբերի 30-ն է։ Այն օրը և այն ժամը, երբ մոտ քսան տարի շարունակ ես և, իհարկե, շատ ուրիշներ, եղել ենք բանաստեղծի տանը, նրա սեղանի շուրջը, բաժակները ձեռներիս։ Եվ անկախ նրանից, թե ով ինչ է ասել բարձրաձայն, բայց բոլորս մեր մտքում օրհնել ենք նրա աշխարհ գալու օրը։*

*Տիկնոջս՝ Նելլիի հետ շտապում եմ Իսահակյանի տուն։ Ահագին բազմություն է հավաքվել։ Մի տարի է, որ չկա բանաստեղծը։ Բոլորը հավաքվել են բարի խոսքով հիշելու իրենց նահապետին։*

*Մարտիրոս Սարյանը մի կարճ խոսք ասաց։ Հուզված նկարչի ընդհատած խոսքը շարունակեց Աշոտ Հովհաննիս-*

յանը։ Արամ Ինճիկյանը խոսքն ավարտեց վարպետի բանաստեղծությամբ։ Եվ այլևս ոչ մի ճառ չասվեց։ Մեկը սկսում էր, մյուսը շարունակում։ Սկզբում ռուսերեն, ապա անգլերեն (իր թարգմանությամբ) Իսահակյան կարդաց Վլադիմիր Ռոգովը, մի ռուս երիտասարդ, որը հետո շատ սիրվեց Երևանում։

Ամենքի շրթներին իսահակյանական տողեր էին։

Իսահակյանը բոլորի հետ էր, բոլորի մեջ։

Ուշ գիշեր էր, որ տուն դարձանք։ Տանը բոլորը քնած էին, անցնում եմ իմ սենյակը և ինձ հետ՝ բանաստեղծի անմահացած ոգին։

Մոտենում եմ գրապահարանին և հանում այն թղթապանակը, որի վրա գրված է «Ավետիք Իսահակյան»։ Բացում եմ և մեկ-մեկ աչքի անցկացնում նրա մեջ եղած թերթիկները՝ նամակներ բանաստեղծից, նրա ձեռագրերն ու լուսանկարները և տարբեր ժամանակ արված բազմաթիվ գրառումներս։

Ուզում եմ հիշել, թե երբ և ինչպես առաջին անգամ տեսա նրան։

* * *

1926 թվական։ Թիֆլիսում լուր տարածվեց, թե արտասահմանից եկել է Ավետիք Իսահակյանը։ Աշակերտ էի, 16-ամյա պատանի։ Շատ էի ուզում տեսնել, բայց որտեղ և ինչպես՝ չգիտեի։ Եվ մի օր տեսա պատահմամբ։ Դպրոցից վերադառնում էինք տուն։ Ընկերս, որ նույնպես գրականության սիրահար էր, ասաց.

— Շիրվանզադե՛ն, Իսահակյա՛նը։

Փողոցում կանգնած խոսում էին։ Շիրվանզադեին տեսել էի, այն էլ մի քանի անգամ, իսկ Իսահակյանին՝ ոչ։ Ես այդպես չէի պատկերացնում նրան։ Ռոմանսների, մասամբ էլ նրա մասին լսածիս ազդեցության տակ իմ երևակայությանը նա ներկայանում էր ճամփորդական ցուպը ձեռին, քաղաքից քաղաք անցնելիս, ճանապարհների փոշին վրան։ Եվ չնայած նրա կոկ հագուստ-կապուստին,

դեմքի առույգ արտահայտությանը՝ տարիքով թվաց, թեև այն ժամանակ պետք է որ հիսունից ավելի չլիներ։

Հիմա անդրադառնում եմ իմ այդ տպավորությանը և մտածում, որ այնքան մեծ է եղել նրա ստեղծագործության ներգործությունը իմ ու շատերի հոգեկան կյանքում, որ մի պատանու համար դժվար էր նրա մեծ համբավը ամփոփել մի հիսնամյակ ապրած մարդու մեջ։

* * *

Իսահակյանի հետ ծանոթացա նկարագրածս դեպքից բավական ուշ, մոտ 12 տարի անց, երբ նա թողեց արտասահմանը և, վերջնականապես, հաստատվեց Երևանում։

1938-ին էր։ Այն ժամանակ վարում էի Պետհրատի գեղարվեստական գրականության բաժինը։ Բոլոր գրողների հետ գործ ունեի։ Եվ մի օր հարկավոր եղավ շտապ հանդիպել Իսահակյանին։ Զանգահարեցի և նրա նշանակած ժամին մոտն էի։ Մենակ չէր։ Այնտեղ էր գյուղատնտես Աշոտ Աթանասյանը, որը մի ժամանակ Սալ-Ման ստորագրությամբ ֆելիետոններ է տպագրել «Մշակ»-ում։

Ասացի, թե ինչ հարցով եմ եկել։

— Գործը հետո, նախ ծանոթանանք։ Ի՞նչ եք անում Պետհրատում։

Ասաց ու հետաքրքրասեր հայացքը հառեց վրաս։

Պատասխանեցի։ Նրա հայացքի մեջ շատ արագ միմյանց հաջորդեցին զարմանքը և անվստահությունը. նայում էր ինձ և երևի տարակուսում, որ Չարենցի վարած գործը վստահվել է մի անփորձ երիտասարդի։ Բայց դա մի պահ էր միայն, իսկ հետո նրա հայացքը առաջվա պես խաղաղ էր, բարյացակամ ու հետաքրքրասեր։

Հետո ասացի, թե ինչի համար եմ եկել, ու երբ ստացա համաձայնությունը՝ ոտքի ելա, որ գնամ։

— Նստեք, ինչի՞ եք շտապում։

Թեև մնալը սրտովս էր, բայց, չգիտեմ, ինչու, ասացի, թե շտապ գործ ունեմ։

— Գործը չի փախչի։ Նստեք, մի քիչ զրուցենք։

Ու ես մնացի։ Սկսվեց հարց ու փորձ. որտեղի՞ց եմ, ովքե՞ր են ծնողներս, որտե՞ղ եմ սովորել։

— Ավետի՛ք,— բացականչեց Աթանասյանը,— Վարոսի տղան է։

Իսահակյանը չէր հիշում։

— Միտդ չէ՞։

Աթանասյանը երկու դեպք հիշեց կապված Ղարսի և Ալեքսանդրապոլի հետ և Վարպետն ասաց, թե մտաբերում է։

Դա իմ առաջին այցելությունն էր։

Հասկանալի է, որ փափագում էի նորից լինել մոտը։ Մի երկու անգամ ներկայացավ առիթ, բայց բավականացա հեռախոսային զանգով։ Մի օր փողոցում հանդիպեցի Վարպետին։ Հարցրեց, թե ինչու չեմ երևում, չեմ լինում իր մոտ։ Երբ բաժանվում էինք՝ ասաց.

— Ժամանակ կունենաք՝ անցեք, մի սպասեք, որ անպայման գործ լինի։ Կխոսենք։

Ու սկսեցի գնալ։ Սկզբում ամսվա ընթացքում մեկ, ամենաշատը երկու անգամ։ Հետո շաբաթը մեկ։ Իսկ մի այնպիսի շրջան եղավ, որ շաբաթվա ընթացքում մի քանի օր մոտն էի լինում։ Տանուտղա էի դարձել,— ինչպես ասում էին տիկին Սոֆիկն ու Վարպետի հարսը՝ Բելլան։ Եվ այսպես սկիզբ դրվեց իմ բարեկամությանը Վարպետի հետ, որ ամրացավ այն օրերից, երբ սկսեցինք տպագրության պատրաստել նրա երկերի երկհատորյակը։

* * *

Իսահակյանի տանը միշտ էլ սովորականից ավելի մարդ էր լինում։ Շատերն էին գնում։ Մի քանի տարի անց, երբ բանաստեղծի համար կառուցվեց առանձնատուն և 1947-ին, որքան հիշում եմ, խոր աշնանը, ընտանիքը Ղուկասյան փողոցից փոխադրվեց իրենց նոր բնակարանը, Իսահակյանի տունը ձգողական ավելի մեծ ուժ ձեռք բերեց։ Չկար երեկո, որ մի 5—6 մարդ չլինեին նվազագույնը։ Ցերեկով էլ գալիս էին։ Նախաճաշի ժամին հազարից մեկ է պատա-

հել, որ սեղանի շուրջը գոնե մի-երկու հյուր չլինեին։ Իսկ վերջին տարիները, պարզապես, ուխտատեղի դարձավ։

Ո՞վ չէր լինում, ո՞վ չէր գալիս։

Գալիս էին գործով, գալիս էին առանց գործի, գալիս էին Իսահակյանին տեսնելու, այո՛, այո՛, մի պարզ հայացք ձգելու աշխարհի շատ ճամփաներով անցած ու ամեն տեղ իր հետքը թողած այդ իմաստուն մարդու վրա։ Եվ նա ոչ ոքի չէր մերժում։ Հրավիրում էր նստել և՛ մեծին, և՛ փոքրին ու սկսում մի քաղցր զրույց։

Զրույցը նրա տարերքն էր։

Չկար մեր երկրը՝ հայոց աշխարհը եկած մի հյուր Մոսկվայից կամ Լենինգրադից, Կիևից կամ Թիֆլիսից, իսկ հաճախ էլ արտասահմանից՝ Գերմանիայից, Ֆրանսիայից, Հնդկաստանից և ուրիշ երկրներից՝ Ֆինլանդիա, Ճապոնիա, որ, Երևան հասնելով, ցանկություն չհայտներն տեսնելու, ինչպես իրենք էին ասում, Վարպետին։ Գալիս էին, գալիս և ամեն մեկի համար խոսք ուներ Իսահակյանը։ Չկար խնդիր ու հարց, որի շուրջը չխոսեր, լիներ դա աշխարհագրական «քաղաքացիությունը» կորցրած երկիր՝ Բաբելոն, Ասորեստան, լիներ Պարթենոնի նման ճարտարապետական մի կոթող, լիներ Նիցշեի կամ Ֆրեյդի փիլիսոփայությունը, լիներ գրականություն՝ Հոմերոսից մինչև մերօրյա գրողները։ Դատում էր, խորհրդածում։

Եվ ո՞վ չէր ունկնդրում նրան գերված։ Նրա անհելի հիշողությունը տասնամյակների ընթացքում կուտակել էր փաստերի աներևակայելի քանակություն՝ դեպք, թվական, քաղաք, անուն, իսկ միտքը կարողանում էր բարձրանալ փաստերից, իմաստավորել, ընդհանրացնել։

Ինչպես պոեզիայում, այնպես էլ մարդկանց հետ ունեցած հարաբերությունների մեջ զարմանալի մարդկային էր։ Մեծի հետ մեծ էր, փոքրի հետ փոքր, գյուղացու կամ արհեստավորի հետ՝ նրանց պես, գիտնականի հետ՝ գիտնական։

Վարպետը ոչ ոքի չէր փաթաթում իր միտքը։ Իր եզրահանգումները երբեք որպես կտրուկ և անբեկանելի համոզմունքներ չէր ներկայացնում։ Մտածում ու դատում էր հան-

գիտ։ Երբ վիճում էիր հետը, կամ չէիր համաձայնում՝ լսում էր ուշադիր, միշտ պատրաստակամ հասկանալու, թե որն է այն առողջ հատիկը, որ մի ուրիշ միտք շարժել է մի այլ ուղղությամբ։

Հետաքրքրվում էր ամեն ինչով, անծանոթ գրքի անուն տայիր՝ կնշեր, որ ձեռք բերի ու կարդա անպայման, իսկ եթե վեճի ընթացքը նրա մասնակիցներին հանկարծ տանում էր այնպիսի կողմ, որ ոչ ինքն էր հիշում թվականը կամ անունը, ոչ էլ նրանք, չէր ծուլանա, կգնար աշխատասենյակ, կբերեր հանրագիտարան, գրքեր ու թերթեր։ Մինչև չգտներ՝ չէր հանգստանա։ Եվ այդպես՝ եթե մի երեք-չորս ժամ մարդ մնում էր մոտը, ապա գիրք գրքի ետևից փոխադրվում էին մի սենյակից մյուսը և ծանրաբեռնում սեղանը։

Վարպետն ընդունում էր մարդկանց հավասար անկեղծությամբ։ Լինեին ծանոթ թե անծանոթ, մոտ թե հեռավոր բարեկամներ։ Առաջին հայացքից ոչ մի տարբերություն չէր դնում, եկել են՝ լավ են արել, ուրեմն, իր պարտքն է սիրալիր լինել հյուրընկալի դերում, իր պարտքն է ուշադրության բաժին հանել ամենքին։ Ուժեղ ինքնատիրապետում ուներ։ Ու եթե հանկարծ դռներից ներս մտնողների մեջ հայտնվեր մի չսիրված դեմք, երբեք հոնքերը չէր կիտի, չէր մռայլվի, թեկուզ և մյուսների տրամադրությունը չգցելու համար, պահպանի սեղանի զվարթ ու տաքուկ մթնոլորտը։ Նա այն համոզման էր, որ ներկա եղող 10—12 հոգին ոչ մի պատասխանատվություն չեն կրում իր և այդ չսիրված մարդու փոխհարաբերության համար։ Իսկ երբեմն էլ այն միտքն էր պաշտպանում, որ եթե մարդը, շատ լավ իմանալով, որ սիրված չէ և, այնուամենայնիվ, եկել հասել է դուռդ՝ նշանակում է չարությունից մի բան կորցրել է, նշանակում է ունի քո կարիքը։

Ընդհանրապես և ըստ էության նա, իհարկե, մարդկանց միատեսակ չէր վերաբերում և չէր էլ կարող։ Բացառիկ սեր էր տածում իր հասակակիցներից դեպի Դերենիկ Դեմիրճյանը, իսկ երիտասարդներից՝ Արամ Ինճիկյանը։ Շատերին էր սիրում, շատերի հետ էր մտերմությամբ կապված, ամեն մեկի թե՛ գրական, թե՛ հասարակական, թե՛ մարդկային

գնահատությունն ուներ իր մտքում, ամեն մեկն էլ իր տեղը՝ նրա կյանքում։ Եվ մեծ մասամբ ճիշտ, հազարից մի դեպք է եղել, որ սխալվել է, հիասթափության հազիվ մի երկու օրինակ կարելի է հիշել։

Նրա դուռը բաց էր ամենքի առաջ, ամեն ոք, ով կամենար, մուտք ուներ իր տուն, որ, դարձել էր հոգևոր կենտրոն։ Երևի սխալ չի լինի, եթե ասվի, որ ամենաժողովրդական տունը Երևանում Վարպետինն էր։ Ինչպես, երևի, եղել է Տիֆլիսում Թումանյանինը։

Որքան մոտիկից ճանաչեցի նրան և ավելի լավ հասկացա բանաստեղծին, մարդուն, քաղաքացուն, այնքան ավելի էի զարմանում, երբ լսում էի, թե բոլորել է Իսահակյանի վաթսուն, յոթանասունհինգ կամ ութսուն տարին։ Մի՞թե այդքան է։ Կամ ավելի ստույգ՝ մի՞թե ընդամենը այդքան է։ Ես չկայի՝ նա կար և կար որպես հռչակված բանաստեղծ։ Երեխա էի՝ Իսահակյանի անունը զրնգում էր։ Աշակերտ էի և նրա անունը տրվում էր այն բանաստեղծների հետ, որոնց իմ սերունդը չտեսավ։ Նույնը՝ ուսանողական տարիներին։ Իսկ հետո, երբ կյանք մտա՝ միահեծան տիրություն էր անում գրական աշխարհին, ու եթե կար մի անուն, որ բոլորի շուրթերին հնչում էր անխառն սիրով՝ Իսահակյանի անունն էր։ Մեր գրականության նահապետն էր։ Որտեղ էլ լիներ՝ նստում էր սեղանի գլխին, ավելի ճիշտ՝ որտեղ էլ նստեր, դառնում էր սեղանի գլուխը։ Բոլորում էինք շուրջը՝ իրեն, միա՛յն իրեն լսելու կարոտով։ Ու նրա զրույցները մեզ տանում էին տարբեր երկրներ, տարբեր դարեր։ Ե՛վ այդ պահերին, և՛ հետո, առանձնության ժամերին, մտովին Իսահակյանին անդրադառնալիս՝ ինձ նա թվում էր մի մարդ, որ անհիշելի ժամանակներից եկել հասել է մեզ՝ իբրև բախտ, խիղճ, իմաստություն։ Դրանից հետո դժվար էր, անհնար էր նրան, ավելի ճիշտ՝ այն երևույթին, որ մենք Իսահակյան էինք կոչում, մի թվաբանական հասկացողության մեջ դնել։

* * *

Թղթապանակի միջից հանում եմ առաջին թերթիկը՝ ժամանակին ճերմակ, իսկ հիմա՝ դեղնած թղթի մի կտոր։ Կարճ գրառում է դա. ընդամենը վեց տող, աբեղյանական ուղղագրությամբ։ Մատիտագիր է, մանրատառ և այսօր արդեն հազիվ ընթեռնելի։

Թվականը՝ 1938։

Ահա՝

Վարպետի տանն ենք։

Շրջապատված երիտասարդներով՝ իրեն լավ է զգում։

Հարցրինք, թե ռուս բանաստեղծներից ո՞ւմ է ամենից ավելի սիրում։

— Լերմոնտովին։

Մի փոքր հետո.

— Այդքան շահել և այդքա՜ն մարգարեական։

* * *

Մի օր նորից անդրադարձավ Լերմոնտովին։ Ձեռքն առավ բանաստեղծի միհատորյակը, թերթեց, գտավ իր սիրած ստանավորը և խնդրեց, որ կարդանք բարձրաձայն։

Արամ Ինճիկյանը, բացեց մի այլ էջ ու կարդաց.

Վարպետի դեմքին ափսոսանքի արտահայտություն իջավ.

— Ձեռ իմացել շահել ժամանակս, թե չէ սիրային նամակներից մեկը դրանով կվերջացնեի։

* * *

Մի օր հարցրի, թե Թումանյանը փիլիսոփայական պատրաստություն ո՞ւներ, օրինակ՝ Կանտ կարդացե՞լ էր։

— Չէ՛, եվրոպական լեզուներ չգիտեր, ռուսերենի մեջ էլ շատ հմուտ չէր, բայց հազվագյուտ ինտուիցիա ուներ, դրա համար կարդացած մի էջի հիման վրա ավելի շատ բան էր ասում, ավելի խորն էր զգում ու հասկանում, քան

հաստափոր հատորներ կարդացածը, մի քանի լեզու իմացողը։

Մի փոքր հետո ավելացրեց.

— Այդպես էր նաև Ջոհրապը։ Միշտ կասեր՝ «Ձեղավ քիչ մը Կանտմանտ կարդայինք»։

* * *

Զրույցը Շևչենկոյի շուրջն էր։ Բոլորն էլ համարյա նույնն էին ասում։

Վարպետն ամփոփեց.

— Ճորտություն, կռիվ, ցասում, երգ ու ազատություն. այս է Շևչենկոն, այս է նաև Ուկրաինայի պատմությունը։ Իսկական բանաստեղծը ծնվում է ժողովրդի պատմությունից։

* * *

Մի օր նորից խոսեց Շևչենկոյից.

— Մեծ մարդիկ երկու գերեզման ունեն, մեկն այն է, որ բոլորն են ունենում, հողաթումբ, մի քար էլ վրան, մյուսը՝ ժողովրդի սիրտը...

* * *

Սևանի հանգստյան տանն էինք։ Այնտեղ էր նաև Վարպետը։ Նստած ծովահայաց պատշգամբում՝ երազում էր հեռուն։ Գրողներից մեկի երեխան, հիմա չեմ հիշում, թե որի, անկարգ պահեց իրեն։ Հայրը վրա հասավ և մի լավ թակեց չարաճճիին։ Վարպետը դեմքը խոժոռել էր, բայց ձայն չէր հանում։ Երբ մայրը ամուսնու ձեռքից ազատելով երեխային տուն տարավ, վերջինիս կարգի կոչող հայրը, դեռևս չհանգստացած, ետ ու առաջ էր քայլում։ Իսահակյանը տեղից վեր կացավ, մոտեցավ նրան.

— Երեխայի վրա էլ ձեռք չբարձրացնես։ Համոզիր, բարկացիր, բայց մի ծեծիր։ Հայրս մի անգամ է ինձ ծեծել և

այդ օրվանից հոգիս անհաշտ մնաց նրա հետ։ Սեծից օգուտ չկա, իսկ վնաս՝ գուցե աննկատելի, բայց շատ կա։ Մեծը երեխային կտրում է և ոչ թե կարգի հրավիրում։

* * *

Երբ Տյուտչևի մասին խոսք եղավ, ելավ տեղից, գնաց բերեց նրա հատորյակը և խնդրեց կարդալ իր սիրած ոտանավորը՝ «Վերջին սեր»։

* * *

Բացեցի թղթապանակը և աչքովս ընկավ Վարպետի մի նամակը՝ որ ստացել էի Ծաղկաձորից։

Ուղարկել էի նրան Վրթանես Փափազյանի երկհատորյակը՝ իմ խմբագրությամբ և առաջաբանով։

Շնորհակալության նամակ էր դա, որտեղ արված էր մի էական դիտողություն։

Իմ առաջին հոդվածը, տպագրված «Գրական թերթում», հեղեղված է օտար բառերով, նեղ-մասնագիտական տերմիններով, նախադասությունները երկար են, ծանրաբեռնված, երբեմն էլ խճճված։

Ժամանակին սրա համար ինձ կշտամբել են Չարենցը և, որքան էլ տարօրինակ թվա, Գյուլիքևխյանը։ Բայց ամենամեծ հարվածը հասավ ինձ Հովհ. Թումանյանից, որի «Հորիզոնում» լույս տեսած հոդվածներին առաջին անգամ ծանոթանալով, տեսա, թե ինչպես է բանաստեղծը ամենախոր մտքերի համար արտահայտության ամենապարզ ձևեր գտնում։

Դա 1937-ին էր։

Ես, գուցե առաջին անգամ, ճաշակեցի պարզության հմայքը։ Ընկնելով Թումանյանի ազդեցության տակ, սկսեցի թոթափել արտահայտչաձևի մութ, բարդացված ձևերը։ Բայց, իհարկե, հասկանալը կարենալ չէ և ոչ էլ կամենալը բավական՝ նպատակին հասնելու համար։

Թումանյանի ազդեցությունն այնքան ուժեղ էր, որ ես

ոչ միայն վերջնականապես համոզվեցի, թե պետք է պարզ, ամենքին մատչելի լեզվով գրելու ձգտել, այլև սկսեցի նրա ոճական մի քանի ձևերը գործածել, որոնք միանգամայն բնական իր հոդվածներում, անբնական էր ինձ համար։ Բայց այդ արվեստականությունը այն ժամանակ չէի զգում։ Փափազյանի գրքի առաջաբանում, օրինակ, մեկի փոխարեն գրում էի մին, աշխարհի փոխարեն՝ աշխարք, բացահայտի տեղ՝ ափաշքարա և այլն։

Իսահակյանն իր նամակում իմ ուշադրությունը հրավիրում էր ժողովրդական այդ ձևերի անտեղի գործածության վրա, նկատելով, որ դրանք իմ լեզվում կարկատանների տպավորություն են թողնում։

* * *

«Վերք Հայաստանի» վեպի մասին գրած առաջաբանս Վարպետը հավանել էր։ Ու դրա տպավորության տակ ասաց, թե ինքն ուզում է, որ իր երկհատորյակի առաջաբանը ես գրեմ։

Մեծ պատիվ էր ինձ համար։ Տրամադրությունս բարձր էր ու անչափ հպարտ էի զգում ինձ։ Նստեցի գրելու։ Ուզում էի, որ լավ լինի, շատ լավ լինի, որ Վարպետը գոհ մնա։ Գրեցի մի անգամ՝ չստացվեց։ Երկրորդ փորձն արի, երրորդ և միշտ անհաջողություն։ Իրեն ասել, թե չի ստացվում՝ չէի կարող։ Ի՞նչ անել, ինչպե՞ս դուրս գալ այս ծանր վիճակից։ Խորեն Սարգսյանին հարցրի, թե չի կամենա՞, արդյոք, Իսահակյանի երկհատորյակին առաջաբան գրել։ Սիրով հանձն առավ։ Եվ մի շաբաթից հետո հինգ-վեց էջանոց մի առաջաբան սեղանիս վրա էր, գրված սիրով և իմացությամբ։ Առաջաբանը իսկապես լավ էր գրված, կարելի էր ու հարկավոր արդեն գաղտնիքը բանալ։ Պայմանավորվեցի Խորեն Սարգսյանի հետ, որ երեկոյան գնանք Իսահակյանենց տուն։ Ճանապարհին ավագ ընկերոջս պատմեցի ամեն ինչ։ Մնում էր դժվարը՝ Վարպետը։

— Վարպետ,— ասացի ես,— առաջաբանը բերել եմ։ Կարդա՞մ։

Կարդում էի ու աչքի մի ծայրով հետևում Վարպետին։ Դեմքը քանի գնում պայծառանում էր։

— Լա՛վ է, շատ լա՛վ, ապրե՛ս։

Բացականչեց Վարպետը հուզված։

Կարևորն այն էր, որ առաջաբանը կար, ավելի կարևորն այն էր, որ առաջաբանը ստացվել է և Վարպետի սրտովն է ու ես պատմեցի ամբողջ պատմությունը։

Վարպետը զարմացած, մի փոքր շփոթված հայացքով նայեց ինձ, ապա ոտքի ելավ ու պինդ սեղմեց Սարգսյանի ձեռքը, ի նշան սրտագին շնորհակալության։

* * *

Վարպետին պատմեցի մի դեպք։

Երեք ընկեր գնում են թատրոն։ Ներկայացվում է կոմեդիա, զվարթ մի պիես։ Առաջին ընդմիջմանը ճեմասրահում մի ծանոթից իմանում են, որ թոքախտով տառապող իրենց ընկերը վախճանվել է։ Նրանց վրա շատ է ազդում, և թեև երրորդ զանգից հետո անցնում են օթյակ ներկայացման շարունակությունը դիտելու, բայց կեսից հեռանում են. նրանց տարօրինակ ու վիրավորական է թվում բեմում կատարվող զավեշտախաղը, դահլիճի պոռթկուն ծիծաղը։

Թատրոնից դուրս գալով՝ երկար թափառում են, վերհիշում իրենց ընկերոջ կյանքից դեպքեր։ Բաժանվելիս պայմանավորվում են մյուս օրը հանդիպել ու նամակ գրել հանգուցյալի քրոջը, վշտակցել նրան ու կսկիծն ամոքող մխիթարանքի խոսքեր գտնել։

Մյուս օրը պայմանավորված ժամին հավաքվում են։ Սկզբում մտածում են, թե ինչ գրեն, հետո, թե ինչպես պետք է գրեն, մեկը գրելու է, իսկ մյուսները ստորագրելո՞ւ են։ Թե գուցե մեկը նստելու է և գրելու է սկիզբը, հետո երկրորդն է նստելու և գրելու շարունակությունը, երրորդը՝ վերջացնելու է նամակը։ Երկար չեն կարողանում համաձայնության գալ, և վեճը ծիծաղելի ձևեր է ընդունում։ Ի վերջո մոռանում են, թե ինչ նպատակով են հավաքվել և, առանց նամակը գրելու, ցրվում են։

Երբ վերջացրի, Վարպետն ասաց.

— Չեմ կարդացել. այդ ո՞ւմ նովելն է։

Պատահել էր դեպք, որ ես Վարպետի հետ չէի համաձայնել գրականի այս կամ այն հարցում, երբեմն էլ վիճել էի, ու թեև երես տված տղայի նման էի իր մոտ, բայց չեմ հիշում, որ ես նրա հետ կատակած լինեի։ Ու չեմ հասկանում թե ինչպես պատահեց, ինչ սատանա մտավ մեջս, որ ես, այնպես անլուրջ, ասացի.

— Անատոլ Ֆրանսի։

Վարպետի հայացքը լարվեց։

— Չեմ հիշում։ Ես ամբողջ Ֆրանսը կարդացել եմ, բայց այդպիսի նովելի չեմ հանդիպել։

Եվ նա չարչարում էր հիշողությունը, որ գուցե նրա մի ինչ-որ ծալքում հանկարծ հայտնաբերի իմ պատմած նովելը։ Ոչ մի արդյունք։ Եվ ի՞նչ արդյունք կարող էր լինել, երբ պատմել էի կյանքում պատահած մի դեպք։

Ես ձայն չեմ հանում։

—Պատմելով դժվար է արվեստի մասին դատել, բայց իմաստով, թե վիշտն ու ծիծաղը միմյանցից բաժանված են ընդամենը մի կոցաչափ տարածությամբ, մոտ է Ֆրանսին։

Ես դարձյալ ոչինչ չասացի։

Տանեցիները շրջապատեցին թեյասեղանը։ Զրույցի նյութը փոխվեց, շատ ուրիշ հարցեր մեջտեղ եկան։ Բայց նա մեկ-մեկ նորից հիշում էր պատմածս և զարմանում, թե այդ ինչպես է պատահել, որ այդ նովելն իր աչքից վրիպել է։ Եթե կարդար՝ անպայման կհիշեր։

Ոչինչ չասացի ու գնացի տուն։

Մյուս օրը, որ եկա, նա նորից նույն խնդրին անդրադարձավ, ասաց, որ իր մոտ եղած ամբողջ գրականությունն աչքի է անցկացրել, տակն ու վրա է արել գրադարանում եղած Ֆրանսի ժողովածուները՝ ռուսերեն, ֆրանսերեն, և այդպիսի նովելի չի հանդիպել։

Ես վատ էի զգում ինձ։ Հասկացա, որ արածս անելու բան չէր։ Երեկվանից այդ մեծ մարդուն դրել եմ այդպիսի դրության մեջ։ Տատանվեցի՝ ասե՞լ, թե չասել, ու վերջն ասացի։

Ես երբեք չեմ մոռանա նրա հայացքը. մի պահ աչքերն

ուրախ փայլեցին, հայացքի մեջ թեթևություն նկատեցի։ Դեմքի լարվածությունն անցավ, ընդունեց իրեն հատուկ հանգիստ արտահայտությունը։

— Ախր, գիտեի, չէ՞ որ Ֆրանսն այդպիսի նովել չունի։

Մի փոքր անց կշտամբող ձայնով ասաց.

— Ա՛յ, դու չարաճճի, ի՛նչ օյին բերիր գլխիս։

Երկու օր անց մի անուն հանած գրողի մոտ առաջարկեց ինձ պատմել վերոհիշյալ նովելը։

— Անատոլ Ֆրանսի նոր հայտնաբերած պատմվածքներից է,— դարձավ նա դեպի գրողը։— Պատմիր, Ռուբեն։

Պատմեցի։ Գրողը ուշադիր լսում էր, իսկ Վարպետը խորամանկ մի ժպիտով հետևում էր նրան։

Երբ գրողն ասաց, թե ինքը վերջերս կարդացել է այդ պատմվածքը, Վարպետը ձայն չհանեց և լռչացավ, իսկ նրա գնալուց հետո կուշտ ծիծաղեց։ Եվ որովհետև դա նրան իսկապես զվարթություն պատճառեց՝ իմ մեղքը քավված համարեցի։

* * *

Դրա հաջորդ օրը Վարպետը հիշեց երեկ իրեն այցելած գրողին ու ժպտաց.

— Միշտ պետք է մարդը ճիշտն ասի. կարդացել է՝ լավ, չէ՝ չէ։ Ի՞նչ կա-որ։

Ու այդ կապակցությամբ մի դեպք պատմեց իր աշակերտական կյանքից։

Բարձր դասարանի աշակերտները սովորություն ունեն իրենց նոր ուսուցիչների իմացության չափը ստուգել. որևէ, իհարկե, իրենց ծանոթ, բայց բարդ մի հարց են տալիս և նայած ուսուցչի պատասխանին, սահմանվում է նրանց հեղինակության աստիճանը աշակերտների աչքում։

Դեպքը պատահել է Գևորգյան ճեմարանում։ Ուսումնական տարվա սկիզբն է՝ առաջին, թե երկրորդ օրը։ Մի ուսուցիչ, որի անունը բաց եմ թողնում, մտնում է դասարան։

Աշակերտները վերոհիշյալ ուսուցչին ստուգելու նպատակով մի բառ են հորինում և հարցնում, թե ինչ է նշանակում։ Ուսուցիչը, որ չգիտեր և չէր էլ կարող իմանալ, թե ինչ է

նշանակում, ասում է, թե այդ բառը սանսկրիտ ծագում ունի և դրա շուրջը երկար-բարակ, մոտ կես ժամ խոսում է։ Աշակերտները հազիվ են զսպում իրենց ծիծաղը։ Մյուս ժամին դասարան է մտնում մի այլ նոր ուսուցիչ՝ Մանուկ Աբեղյանը։ Նրան էլ են հարցնում թե ինչ է նշանակում։ Սա կարճ է կտրում։

— Այդպիսի բառ չկա։

Բայց հետո, երևի մտածելով, թե ինքը բոլոր բառերը չգիտե, ասում է.

— Եթե կա էլ՝ չգիտեմ։

Ու չկամենալով այլևս ժամանակ կորցնել, անցնում է դասի։

Այս պատմությունը լսել էի վաղուց, ուսանողական տարիներիս գերմաներենի դասատու Սարգիս Մանուկյանից։

* * *

Վարպետը եկավ Պետհրատ։ Սեղանիս վրա ձեռագիր էր դրված։

— Ի՞նչ ես անում,— եղավ նրա հարցը։

— Մի ոտանավոր կարդա՞մ։ Գլխով հավանության նշան արեց։ Ու ես կարդացի։

Ա՜խ, ես ի՞նչ անեմ, որ չնեղանան
Ոչ Նյուտոնը խիստ, ոչ Հայնե՛ն հպարտ,
Անթիվ թվերի թակարդը ընկած,
Ախ, ես ի՞նչ անեմ, որ չնեղանան.

Երգեր եմ գրում՝ Նյուտոնն է պատժում,
Սեխիայի՝ Հայնեն է իմ մեջ նստած,
Ա՜խ, ես ի՞նչ անեմ, որ չնեղանան,
Ոչ Նյուտոնը խիստ, ոչ Հայնե՛ն հպարտ...

— Լավ է, երևակայիր, լավ է։ Հեղինակն ո՞վ է։

— Պոլիտեխնիկ ինստիտուտի ուսանող։

Վարպետը կարծում էր կատակ եմ անում։

— Մասնագիտությո՞ւնը։

— Հիդրավլիկ։
— Ազգանո՞ւնը։
— Կարլեն Մուրադյան։
— Մի ոտանավոր էլ կարդա։

Կարդացի ես երեք բանաստեղծություն։ Վարպետը լսում էր ուշադրությամբ։

— Չէ՛ բանաստեղծ է տղան։ Մկրտիր մի ուրիշ անունով ու ասպարեզ դուրս բեր։

— Օրհնո՞ւմ եք։
— Անպայման։

Մի քանի ամիս անց Կարլեն Մուրադյանի գիրքը լույս տեսավ «Նախաշավիղ» վերնագրով։ Գրականություն ոտք դրեց մի նոր բանաստեղծ՝ Գևորգ Էմին։

* * *

Մեր գրողներից մեկի հետ, որի ազգանունը հարմար չեմ գտնում տալ, կանգնած զրուցում էինք, որ փողոցով անցնող Իսահակյանը մոտեցավ մեզ։

— Որտե՞ղ էիր, Վարպետ,— հարցրեց գրողը։
— Թալինում։
— Է՛, լա՞վ էր։
— Շա՛տ։

— Իսկի չգիտեմ էլ, թե Թալինը որտեղ է.—ասաց գրողն ու հարցրեց,— ի՞նչ ճանապարհով, ո՞ր կողմով պետք է գնալ։

— Հիմիկվա գրողներդ,— ասաց Վարպետը,— Հայաստանը չեք ճանաչում, չգիտեք երկիրը, չեք լինում գյուղերում։

— Ես գյուղը չեմ սիրում,— արդարացավ գրողը։

— Մեր ժողովրդի արմատը գյուղացին է. պետք է տեսնել, թե ինչպես է ապրում, կենցաղը, լսել նրա ոճերը, դարձվածքները։

— Չէ՛, չեմ սիրում,— վրա էր բերում գրողը նույն կատակ տոնով, չնկատելով Իսահակյանի դեմքի մռայլը։

— Դե՛, դուք ինչ գրողներ եք, գրում եք առանց ժողո-

վորդի մեջ լինելու։ Մի հինգ գիրք կարդում եք և դրանց հիման վրա գրում մի նորը՝ վեցերորդը։

— Ես գերադասում եմ քաղաքի ժխորը։

Տեսնելով, որ դրությունը լրջանում է, մթնոլորտը մեղմելու նպատակով, ասացի կատակով.

— Ուրբանիստ է։

— Սա ուրբանիստ չէ, այլ թումբանի՛ստ,— վրա բերեց Վարպետն ու շարունակեց ճանապարհը։

* * *

Հավաքվել էինք Վարպետի տանը։ Մեկը հարցրեց, թե поддержка բառը ինչպես կարելի է թարգմանել հայերեն։

Ոչ ոք պատասխանել չկարողացավ։

Վարպետը, իհարկե, ոչ առանց հումորի, ասաց, թե հայերը իրար поддержка չեն անում, դրա համար էլ կարիք չի զգացվել հայերենում այդ հասկացողությունը որևէ բառով ձևակերպելու։

Խորեն Սարգսյանն ասաց, թե հնում ասում էին սատարել։

Վարպետն ասաց, թե, այո, հնում ասում էին սատարել, որովհետև իրար поддержка անում էին։ Հիմա էլ մեկ-մեկ, շատ հազվադեպ սատարել բառը գործածվում է, որովհետև կարծես թե իրար поддержка անելու անհրաժեշտության գիտակցությունը մուտք է գործում նաև մեր մեջ։

* * *

Մի օր խոսք բացվեց գերմանացիների մասին։ Խոսեց հիացմունքով։ Ասաց, թե ճշտապահ ու ազնիվ մարդիկ են։ Բերեց օրինակներ, պատմեց զանազան դեպքեր։ Հիշողությանս մեջ մնաց հետևյալը.

— Սրճարանումն էի. դիմացս նստեց մի մարդ, կարծես թե հրեա էր։ Խոսեց հետս և շատ ուրախացավ, որ Ռուսա-

տանից եմ։ Ասաց, որ ռուսներին շատ է սիրում, որ Ռուսաստանից վաղուց հեռացել է, շատ կարոտել է և այլն։ Կպչուն մարդ էր, ավելի շատ խոսում էր, քան լսում։ Ճիշտն ասած՝ դուրս չեկավ, ոչ էլ մտածում էի հետը ծանոթությունս շարունակել, թեև ինքը մտերմության նշաններ էր ցույց տալիս։ Այդ պահին երեք գերմանուհիներ անցան, երիտասարդ, մեկը մյուսից գեղեցիկ։ Հրեա հարևանս առաջարկեց հրավիրել նրանց։ Ես չհասկացա միտքը, ասացի՝ չէ, բայց եռանդով չհրաժարվեցի և քիչ հետո աղջիկները մեր սեղանի մոտ էին նստած։ Ես հյուրասիրեցի նրանց կակաո, թխվածքներ և որոշ ժամանակից հետո, վճարելով բոլորի ծախսը, ասացի, թե պետք է գնամ, որովհետև շտապում եմ։ Հրեան առաջարկեց երեկոյան հավաքվել և ամրապնդել սկսված ուրախ մտերմությունը։ Ոստի և ուզեց հասցես իմանալ։ Ես մի պատահական հասցե տվի։

Հաջորդ օրը փողոցում հանդիպեցի աղջիկներից մեկին։ Ճանաչեց, մոտեցավ ինձ։

— Պարո՛ն,— ասաց նա,— Դուք ի՛նչ խելոք մարդ եք։

—Ինչ իմացաք, որ խելոք եմ։

— Խելոք եք, որովհետև Ձեր իսկական հասցեն չէիք տվել։ Այդ մարդն ասում էր, թե դուք հարուստ ռուս եք և առաջարկում էր երեկոյան հանդիպել, խմել ձեզ հետ, հարբեցնել ու կողոպտել ձեզ։

— Իսկ դուք հիմա ինչ շահ ունիք, որ այդ բոլորն ասում եք ինձ։

— Ես պոռնիկ եմ, բայց գերմանուհի։

* * *

Խոսում էինք այն մասին, թե մեր բանաստեղծներից ով է ամենից ավելի ձայնագրված։ Պարզվեց, որ հայ բանաստեղծներից ոչ մեկը Իսահակյանի չափ չի ձայնագրվել։ Ռախմանինով, Կյուի, Իպոլիտով-Իվանով և ուրիշ ռուս ու եվրոպական կոմպոզիտորներ, ինչպես և հայ հին ու նոր երգահաններ։ Երբ ասաց, թե իր երգերից մոտ 160-ը ձայնագրված է՝ մնացինք զարմացած։

Կոմպոզիտոր Աչվազյանը, որ նույնպես ներկա էր՝ տարակուսած նայեց Վարպետին։

— Մի՞թե...

Ծիծաղեց ու ասաց.

— Մարդ պետք է մի քիչ սուտ խոսի, որ հավատան։

Չհասկացանք նրա ասածը։

— Հարյուր վաթսունը շատ մեծ թիվ է, դրա համար էլ զարմացաք. իսկ եթե ասեի՝ մի հարյուր հատ, որ էլի շատ շատ է՝ գուցե հավատայիք։ Պատմեմ մի օրինակ. 1941-ին վրացիները Թիֆլիսում տոնեցին իմ հոբելյանը։ Գեղարվեստական բաժնից առաջ հարցրին, թե երգերիցս քանիսն են ձայնագրված։ Ասի՝ շատ։ Թե մի 15-ը կլինի, հարցրեց մի վրացի բանաստեղծ։ Ասի՝ չէ, ավելի շատ։ Թե՝ քա՞ն հատ։ Ասի՝ ավելի շատ։ Հետո մեկն ասաց, թե իրենց բանաստեղծներից ամենից ավելի երգվում է Ծերեթելին։ Նրա ձայնագրված ռոմանսների թիվը քառասունհինգն է։ «Մի՞թե Ձերն ավելի է»,— հարցով վերջացրեց իր խոսքը։ Ի՞նչ ասեի. ճի՞շտ թիվը, մեկ է չէին հավատա, փչոցի տեղ կընդունեին։ Մտածեցի պակաս ասեմ՝ գուցե հավատան։ «Առնվազն հարյուր հատ»,— ասացի։ Դրա համար եմ ասում՝ թե մարդ պետք է մի քիչ էլ սուտ խոսի, որ հավատան ասածին։ Բայց էլի զարմացած մնացին, կարծես թե չհավատացին։

Ասաց Իսահակյանը ու հիշեց գյումրեցիների խոսքը. «ղորդ կսես՝ չեն հավտա, սուտ կսես՝ էլի չեն հավտա» ու ծիծաղեց։

Հետո հիշեց Ռավեննայում իր տեսած Թեոդորոս կայսեր դամբարանի կափարիչը, որը մի ամբողջական քարից է և շատ ծանր։

—Ինչքան լինի դրա քաշը՝ որ լավ լինի, —հարցրեց նա։

Մեկը թե՝ «մի հարյուր փութ»։

Իսահակյանը ծիծաղեց.

— Տասներեք հազար փութ։ Որ ասում եմ՝ չեն հավատում։ Դրա համար էլ մի քանի հարյուր եմ ասում. երկուերեք, բայց էլի չեն հավատում։

* * *

Իսահակյանի հետ ուղևորվեցինք Դեմիրճյանի մոտ։ Ճանապարհին հիշեցինք անցած գիշերը։

— Հա՛,— ասաց Իսահակյանը,— որ տուն գնացի, գըրքերիս մեջ նայեցի Թեոդորոս կայսեր ղամբարանի մասին. քաշը ճիշտ չէի ասել. ոչ թե տասներեք հազար, այլ տասնութ։

Դեմիրճյանի դռան մոտ ենք.

Այն միտքը հայտնեցի, որ եթե Դեմիրճյանին մի բան պատահի՝ ողջ տունը փուլ կգա։

Ասածս հաստատեց, մի փոքր հետո ասաց.

— Կյանքի ամբողջ փիլիսոփայությունը հիմնված է մի փոքրիկ հույսի վրա. երեկ նա, այսօր դու, վաղը ես. ոչ ոք չի ասում՝ այսօր ես, վաղը դու։ Մարդ միշտ իրեն ետ է գցում։ Դա նրան և մխիթարում է, և պահում։

* * *

Վարպետը վերադարձել էր Վրաստանից և բավական երկար ժամանակ իր կատարած շրջագայության տպավորության տակ էր։ Երբ էլ գնայիր՝ կխոսեր վրացական գյուղերի բարեկարգությունից, պաշտամունքի հասնող այն սիրուց, որ ամեն մի վրացի ունի դեպի իր երկրի անցյալը, այն ոգևորությունից, որով նրանք խոսում և արտահայտվում են իրենց երկրի, բնության և մարդկանց մասին։ Ու մի օր պատմեց հետևյալ դեպքը.

— Գնում էինք Մցխեթ։ Մի վրացի բանաստեղծ, ինչպե՞ս էր ազգանունը... չեմ կարողանում հիշել, մոտս կա գրված։

Կանգ առավ մի պահ ու հետո շարունակեց.

— Մի խոսքով՝ ինձ նա էր ուղեկցում։ Ահա այդ բանաստեղծը մի ինչ-որ միտք հաստատելու համար հիշեց Ռուսթավելուց մի քառատող։ Վերջին տողը չստացվեց։ Չէր հասկանում, թե ինչու չի ստացվում։ Ես լուռ ու մունջ լսում էի, ձայն չէի հանում, որովհետև, լեզու չիմանալով,

չէի ըմբռնում, թե ինչն է չստացվելու պատճառը։ Երբ բանաստեղծը մի քանի անգամ անհաջող կրկնեց նույն քառատողը, շոֆերը շրջվեց դեպի բանաստեղծը և ինչ որ բան ասաց վրացերեն ու հետո արտասանեց վերոհիշյալ քառատողը։ Բանաստեղծը մի թեթև շիկնեց, հետո հաղորդեց նրա ասածը. «Չի ստացվում, որովհետև բաց եք թողնում մի բառ»։

Պատմեց Վարպետը և ժպիտն ավելի աչքերի մեջ, քան, դեմքին, ասաց.

— Տեսնո՞ւմ եք։

Մյուս օրը անցա Վարպետի մոտ։ Մտնելուս պես ասաց.

— Իրակլի Աբաշիձե։

Չհասկացա։

— Վրացի բանաստեղծն է, որի մասին երեկ պատմում էի։

Ասաց և ուրիշ հարցերի անցավ։

* * *

1940-ի հոկտեմբերին էր, թե նոյեմբերին, լավ չեմ հիշում, նշանակվեցի «Սովետական գրականություն» ամսագրի խմբագիր։ Գործի անցա երիտասարդական եռանդով, մտքումս դրի խստապահանջ լինել, աշխատեցի ամսագրի շուրջը համախմբել գրականության և բանասիրության ականավոր դեմքերին։ Երիտասարդը միշտ էլ վստահ է լինում իր ուժերին, ավելի ճիշտ՝ պարզապես գերագնահատում է իր հնարավորությունները և իրավունքները, մանավանդ, երբ պաշտոն ունի։

Մի օր խնդրեցի Ավետիք Իսահակյանին, որ ամսագրի հերթական համարին անպայման մի պատմվածք տա։ Խոստացավ ու բերեց։ Պատմվածքը կոչվում էր «Դևոնդ աղան»։ Զգուշացրեց, որ սա նոր չի գրված, գրել է Փարիզում, 1931-ին։

— Նայիր, տես, եթե հավանես՝ տպիր։

Իսահակյանի գնալուց հետո անմիջապես կարդացի։ Չեմ կարող ասել, թե հիացած էի։ Որոշեցի չտպել։ Հետո մտա-

ծեցի, թե ինչ էլ լինի՝ Իսահակյան է, արդեն դասական հեղինակ և մի թե երկու, տող կրճատելով, ուղարկեցի տպարան։ Միաժամանակ անց, սրբագրաթերթերը աչքի անցկացնելիս, նորից կարդացի և որոշեցի «հավատարիմ» մնալ ինձ և խստապահանջ լինելու մատղրությունս տարածել նաև... Իսահակյանի վրա։

Մյուս օրը Իսահակյանին հայտնեցի որոշումս։ Մտքով ինչ անցավ՝ չգիտեմ։ Ասածս ընդունեց անտրտունջ։ Ընդհանրապես պահեց իրեն այնպես, կարծես ոչինչ չէր եղել։

— Քո գործն է, խմբագիրը դու ես, իրավունքը քոնն է։

Ու ժպտաց, ժպտաց այնպես, ինչպես միշտ՝ բարի ու, ինչպես հիմա է թվում ինձ, ներողամիտ։

Ապա ավելացրեց.

— Ձեռագիրը վերադարձրու։ Կամ՝ ուզում ես պահիր, միայն թե չկորչի, ուրիշ օրինակ չունեմ։ Եթե պետք լինի՝ կվերցնեմ։

Այդ ժամանակը չեկավ ու պատմվածքի ձեռագիրը մնաց ինձ մոտ։

Ես հավատացի Իսահակյանի ասածին, միամտաբար հավատացի, թե իսկապես իմ իրավունքն է, կարող եմ մերժել ում ասես, այդ թվում և իրեն՝ Վարպետին։ Քառորդ դարը բավական ժամանակ է, որ մարդ կարողանա հասկանալ իր արած քայլերի լավն ու վատը։ Ու հիմա, երբ մտաբերում եմ անցածը՝ մեղավոր եմ զգում ինձ։ Թեև շատ ժամանակ էր անցել՝ ուզեցի մեղքս քաված լինել։ Որոշեցի նույն ամսագրում, որի խմբագիրն եմ եղել մի ժամանակ, հրապարակել Իսահակյանի պատմվածքը, որի մատիտագիր օրինակը պահվում է իմ թղթերի մեջ։

* * *

Մի օր խոսք բացվեց «Ուստա Կարոյի» շուրջը։ Կշտամբում էին Վարպետին, թե մի կես տարի, մի տարի, ինչքան որ պետք է, ժամանակ չի գտնում, որ վեպը մշակի և մեջտեղ բերի։

Վարպետն ասաց.

— Ինձ պետք է մի տարի ժամանակ, այնպիսի ազատ տարի, որ ոչ մի օրս ոչնչով զբաղված չլինի։ Որտեղի՞ց այդպիսի ազատ ժամանակ։

Եվ հետո ավելացրեց.

— Շատ մտքեր ու ասացվածքներ եմ լսել, դրանց մի մասը գրի եմ առել, մի մասը մտքիս մեջ է, պետք է հերոսներիս խոսքը դրանցով համեմվի։ Երբ զգացողություն է պահանջվում՝ ով ասի կամ այնպես չպատահի, որ մեկն ասի չասելիքը։ Ու եթե այս նորերով պիտի եղածը փոխարինեմ, որի՞ց հրաժարվեմ, ո՞րը թողնեմ։ Հեշտ խնդիր չկարծեք։

Մի պահ լուռ մնաց ու հետո ասաց.

— Մորիցս լսած մի խոսք՝ զրկողը չի ապրի, զրկվողը կապրի։ Կամ մի ուրիշը, միտս էլ չէ, թե երբ եմ լսել. վայելած մարդը աշխարհից ավելի հեշտ կգնա, քան կյանք չտեսածն ու չվայելածը։

Մի պահ լուռ մնալուց հետո.

— Ժողովրդական մտածողություն է։

Հետո ծայր առավ վեճը՝ վայելածը հանգիստ կբաժանվի՞ կյանքի՞ց, թե՞ կյանքի համը չիմացողը։

Վարպետը ժպիտը դեմքին լսում էր։

* * *

Մի օր ասաց, թե ժնևում շատ է զբաղվել «Ուստա Կարոյով»։ Այն կարծիքին էր, թե դա իր գլուխ-գործոցն է, «Դոն Քիշոթի» պես մի բան։ Ուստա Կարոն, ինչպես ասում էր նա, ժողովրդի ծոցից դուրս եկած, ինքնուս, խորամանկ, զվարճախոս, գյուղական շրջանների մեջ ամենագետ, մի խոսքով հայ ժողովրդական փիլիսոփայության մարմնացումն է։

* * *

Գարեգին Պեշկեոթուրյանի «Սրինգը» շատ էր սիրում։

— Ես սիրով մի հատոր իմ բանաստեղծություններից կտայի «Սրինգի» տակ ստորագրելու համար։

* * *

Վարպետին զբաղեցնում էր իր վեպի ֆինալը. չգիտեր, թե ինչպես վերջացներ, որտեղ և ինչպես դնել ավարտակետը: Երեք վարիանտ նրան մտատանջություն էին մատնել և իրը հոգս տարիներով գալիս էին հետը:

Վեպի երեք հերոսները՝ Կարոն, Զատիկը և Օրթե Հարությը, գալիս հասնում են այն լեռնաշղթան, որ բաժանում է մի Հայաստանը մյուսից: Սկսվում է զրույց: Օրթե Հարութը իր սովորության համաձայն ամեն ինչ ժխտում է կյանքում: ժխտում, և միակ արդար տեղը համարում է հողը: Իսկ մնացածը՝ հայտարարում «հե՛չ»: Հեչ է հայտարարում նաև երկինքը: Կարոն սաստում է: Նա վախենում է, որ ամենակարողը հիմա կպատժի Օրթե Հարութին, նրա հետ և իրենց: Բայց Օրթե Հարութը անվախ ու անդրդվելի, շարունակում է բացասել և ամեն ինչ, բացի հողից, հայտարարել.

— Հե՛չ, հե՛չ, հե՛չ...

Այդպես էլ ավարտվում է վեպը ըստ մի վարիանտի:

* * *

Մեկը գանգատվեց, որ իրեն այսինչ գրողը անտեղի վիրավորել է: Վարպետը, որ չէր սիրում գժտությունների խառնվել, անախորժ մի զգացում ունեցավ, բայց և հուզվեց, ըմբռնեց զրուցակցին համակած վիրավորանքը և խոստացավ պախարակել վերոհիշյալ գրողին՝ անտեղի հարձակումների համար: Նա ասաց, թե երեկոյան այդ գրողն իր մոտ է լինելու և ինքը կխոսի հետը, կասի ինչ որ պետք է:

— Խոսեք հետը, Վարպետ, թե չէ ինչի նման է, բավական չէ ինձ վիրավորել է, հիմա էլ ուր նստում է, պատմում է մեր ընդհարումը, ստորացնում ինձ ուրիշների աչքին:

Վարպետի դեմքը խստացավ, հայացքը սառեց ու թեև նայում էր ընկերոջը, բայց այլևս չէր լսում նրան:

Երբ նա գնաց և մնացինք մենակ, ասաց.

— Ոչ էլ կխոսեմ։ Այդ մարդը, պարզվում է, պատվի հասկացողություն չունի։ Նա վիրավորված է ոչ թե այն պատճառով, որ իրեն անարդարացի վիրավորել են, այլ որովհետև դրան տեղյակ են դարձել ուրիշները։ Արժանապատվության ինչպիսի՜ անկում։

* * *

Միտս չէ, թե ինչո՞ւ խոսք բացվեց Սերգեյ Գորոդեցկու մասին։

Սողոմոն Տարոնցին հարցրեց, թե Վարպետն առաջներում ճանաչե՞լ է նրան։

Ասաց, թե հանդիպել է Թիֆլիսում, երբ նոր էր եկել Վանից ու հիացած էր Վանա գեղեցկությամբ, ասում էր, թե ինչ անպատմելի գեղեցկություն է Աղթամարի վանքը, ճարտարապետությունը, քանդակները...

* * *

Խնջույքի էինք։ Նստած էի Վարպետի կողքին։ Ինչ որ կենաց առաջարկվեց և մեկը «Զախորդ օրերը» երգեց։

Ասաց.

— Գլուխ գործոց է։ Այստեղ Ջիվանին Սայաթ-Նովայի կողքին է։ Ոգին ժողովրդական է, միտքը՝ առույգ, հայացքը՝ լայն։

Լռեց։

— Բանաստեղծություն կա, որի առաջին տողը մի ամբողջ ոտանավոր արժե։ Սա էլ դրանցից է. մի խոր ու մեծ իմաստի խտացում։ Հավիտենական կյանք ունի։

* * *

Խոսք բացվեց ռուսական արձակի մասին։ Ամեն մեկն ասում էր, թե որն է իր սիրած գրողը։ Ներկա գտնվողների մի մասի աչքում Տոլստոյից մեծ հեղինակ չկար, մյուսի պաշտամունքը Դոստոևսկին էր։ Մեկն ասաց, թե ինքն ընդունում է Տոլստոյի և Դոստոևսկու մեծությունները, բայց ամենից շատ սիրում է Չեխովին։

Վարպետն ասաց.

— Չեխովը նուրբ հեղինակ է և չի կարելի չսիրել։ Բայց Տոլստոյը և Դոստոևսկին անհավասարելի մեծություններ են, ասես հսկա լեռներ լինեն, մեկը մյուսից բարձր։ Նրանք համաշխարհային գրականության մեջ էլ մրցակիցներ չունեն։

Մեկը ավեց Բալզակի անունը։

— Բալզակն էլ հսկա է, բայց ոչ Տոլստոյ է, ոչ էլ Դոստոևսկի։

Մենք որոշեցինք, այնուամենայնիվ, պարզել, թե այդ երկուսից նրա համար որն է նախընտրելի։

— Առաջ և երկար ժամանակ Դոստոևսկին, իսկ հետո և հիմա, իհարկե՝ Տոլստոյը։

Ծունչ քաշեց։

— Մի անգամ գնացի Պոռշյանի մոտ։ Երիտասարդ ժամանակս էր, նոր էի Գերմանիայից վերադարձել, ուր Դոստոևսկու պաշտամունքը ոչ մի չափի տակ չի ընկնում։ Տեսնեմ Տոլստոյ է թարգմանում։ Ի՞նչ էր թարգմանում։ Հա՛, կարծեմ «Մանկությունն» էր։ Ոգևորված խոսում էր Տոլստոյի մասին, ասում էր, որ երկրագունդը ավելի մեծ գրող չի տվել։ Ես ասացի, թե ինձ համար Դոստոևսկին ավելի մեծ է։ Գրիչը վայր դրեց, աչքի թուղթը մի կողմ հրեց ու ինձ այնպես նայեց, կարծես թե էս է պիտի կռվի հետս. «Գլխիցդ հանիր, մի կողմ դցիր դրան»։ Ես ոչինչ չասացի, բայց մտքումս ծիծաղեցի, մտածեցի, որ պարզապես չի հասկանում։ Բայց հետո, ավելի հասուն տարիներիս նորից ու նորից կարդացի Տոլստոյին, հասկացա Պոռշյանին։

* * *

Մի օր ասաց.

— Զարմանալի է աշխարհը. մարդը ծնվում է մաքուր, հասարակությունը նրան փչացնում է, հետո էլ նույն հասարակությունը զբաղվում է նրա դաստիարակությամբ։ Էհ, ավելի լավ չէ, որ ո՛չ փչացնի, ո՛չ էլ հետո չարչարվի, թե ինչպես փրկի և ուղղի։

* * *

Խոսք բացվեց ստեղծագործական հոգեբանության շուրջը, այն մասին, որ ամեն մի գրող իր անհատականության, խառնվածքի համեմատ ուրույն դրսևորումներ ունի։

Դեմիրճյանը, որ եկավ զրույցի կեսից, անմիջապես ներգրավվեց խոսակցության մեջ։ Նրա սուր մտքից դատողությունները, մեկը մյուսից ինքնատիպ, հորդում էին։ Իսահակյանը, թեև քննադատաբար էր վերաբերվում Դեմիրճյանի խոսքի ոչ այնքան հստակ ընթացքին, բայց սիրով էր լսում, ուշադիր հետևում նրա մտքի խաղերին։

Երբ բոլորն արտահայտվեցին՝ առանց, իհարկե, հարցը լուծելու, Վարպետը, ժպիտը քթի տակ, դարձավ Դեմիրճյանին.

— Հիշո՞ւմ ես «Վերնատան» վեճը։

— Ո՞րը, —հարցրեց Դեմիրճյանը.— էնքա՜ն ենք վիճել որ,— բացատրեց նա մեզ։

— Օհանեսի ու քո վեճը։ Պատմե՞մ։

Դեմիրճյանը լռչացավ։

— Ուզում ես պատմիր. անցած, գնացած բան է։

Վարպետը դարձավ մեզ.

— Մի օր «Վերնատանը» խոսք բացվեց այն մասին, թե գրողը, երբ գրում է, պե՞տք է ուրիշներին ասի, թե ինչ է գրում։ Ամեն մեկն ասում էր, թե ինքն ինչպես է վարվում։ Ես մի բան ասի, Շանթը մի ուրիշ։ Հիմի չեմ հիշում, թե ինչ։ Հերթը հասավ Դերենիկին։ Սա թե՝ «ես ոչ ոքի ոչինչ չեմ ասում. նախ՝ դա կարող է ցրել, զրկել կենտրոնացումից. երկրորդ՝ կարող են կանխել, ինձնից լսել, գրել ու ինձնից էլ առաջ հրատարակել»։ Թումանյանը, որ չէր խոսել, Դերենիկին առարկեց. «Ես քո էդ գաղտնապահությունը չեմ հասկանում։ Մարդ էդքան էլ վախկոտ չպիտի լինի. գողանալս ո՞րն է. իմ պատմածը ուրիշը ուզում է՝ թող գրի. սյուժեն կարող է վերցնել, բայց էն հոգին, էն շունչը, որ ես պիտի դնեմ մեջը, հո չի՞ կարող վերցնել. պիտի դնի իր հոգին, իրա շունչը. ուրեմն՝ դարձավ ուրիշ գործ»։ Այսպես առարկեց Դերենիկին, հետո դարձավ մեզ ու բացատրեց,

*թե իր կարծիքով ինչի է լավ, որ գրողը ասում ու պատմում է. «Երբ ես մի պոեմ եմ գրում, ավանդություն կամ հեքիաթ եմ մշակում, Դերենիկին հակառակ, պատահած առիթը չեմ փախցնում ու պատմում եմ։ Պատմելիս էլ հետևում եմ, թե լսողը ինչպես է լսում, որտեղ՝ լարված ու հետաքրքրությամբ, որտեղ՝ ձանձրույթով, որտեղ՝ չհավատալով, տարակուսած կամ կասկածելով։ Ու հետո, աշխատելիս, աչքի առաջ եմ ունենում։ Դա ինձ շատ է օգնում»։*

*Դեմիրճյանը լսում էր Վարպետի պատմածը չէի ասի խաղաղ, բայց մի այնպիսի ժպիտով, որը առաջին հայացքից թույլ չէր տա հասկանալու այն անբավականությունը, որ ապրում էր նա անցած-գնացած այդ պատմությունը վերհիշելիս։*

* * *

*Ես հարմար չեմ դատում տալ այն գրողի անունը, որ, վիճելով Վարպետի հետ մի հարցի շուրջ, որից ինքը բոլորովին անտեղյակ էր, գնաց։*

*— Մարդ լավ է խելոք մեռածի հետ խոսի,— ասաց Վարպետը և մի հեգնական ժպիտ խաղաց դեմքին,— քան հիմար ողջի։*

* * *

*Վարպետն ասաց.*

*— Շատ տարիներ առաջ էր։ Այն ժամանակ Փարիզ էի։ Փայլոն մրցանակ խոստացան նրան, ով մի բառով կարտահայտի ամենանվիրական հասկացողությունը։*

*Մի պահ լուռ մնաց և ապա շարունակեց խոսքը.*

*— Շատերը մասնակցեցին. մեկն ասաց՝ սեր, մի ուրիշը՝ հայրենիք, երրորդը՝ կյանք, մեկն էլ թե՝ ազատություն, ուրիշները՝ կարոտ, ձգտում, հմայք և այսպես շարունակ։*

*Լռեց։*

*— Եվ ինչ եք կարծում, ո՞վ շահեց մրցանակը։*

*Նայեց շուրջը նստածներին։ Ոչ ոք ձայն չհանեց։*

— Շահեց նա, ով որ ամենադժվարին հասկացողությունը հայտարարեց ծերությունը։

Բոլորս էլ անակնկալի եկանք։ Վարպետը ժպտաց և ապա, հայացքը կենտրոնացնելով մեկի վրա, որը նայում էր իրեն տարակուսանքով, բացատրեց.

— Հապա, սիրելի՛ս, այդպես է. ծերությունը իր մեջ ամփոփում է մնացած բոլոր հասկացողությունները։

* * *

Իսահակյանի հետ փողոցի մի մայթից անցնում էինք մյուսը։ Տեսնելով, որ տրամվայ է գալիս, Վարպետը կանգ առավ, ինձ էլ ձեռքով նշան արավ, որ չշտապեմ։ Վագոնավարը, տեսնելով բանաստեղծին կանգնած, տրամվայն անմիջապես կանգնեցրեց ու դռնակը բացեց.

— Խնդրեմ, Վարպե՛տ։

Իսահակյանը, որ թեև տրամվայ նստելու միտք չուներ, և մեր ճանապարհն էլ բոլորովին այլ կողմ էր, անհարմար զգաց չընդունել առաջարկը։ Դարձավ ինձ։

— Բարձրանա՛նք։

Վագոնը լի էր մարդկանցով։ Անմիջապես տեղ պատրաստեցին նրա համար։ Ես, որ կանգնած էի մնացել, նայում էի Վարպետի դեմքին։ Իրեն լավ էր զգում։ Մի փոքր ժամանակ անց կողքի տեղն ազատվեց։ Նստեցի։

— Երբ քեզ բարի են ուզում՝ առ, մի մերժիր, թեկուզ և այդ բոպեին դրա կարիքը չունենաս էլ։

Մի որոշ տարածություն անցնելուց հետո իջանք։ Վարպետը շնորհակալություն հայտնեց վագոնավարին։ Ես երբեք չեմ մոռանա նրա աչքերի արտահայտությունը. այդ համբավավոր մարդը մի հեզ հայացքով ուղեկցում էր Վարպետին, երջանիկ այն գիտակցությամբ, որ գեթ մի անգամ իրեն բախտ վիճակվեց «պատվել» իր մեծ ժամանակակցին։

* * *

Խոսք բացվեց Շիրվանզադեի մասին։

— Իրան երբեք չեմ սիրել։ Մենք հակապատկերներ էինք։ Ուշադրությո՞ւն դարձրել ես, որ կյանքում մտերմա-

նում են ոչ այնքան իրար նման, որքան բնավորությամբ միմյանցից տարբեր մարդիկ։ Օրինակ՝ Գյոթեն ու Շիլլերը։ Գրականության մեջ էլ դեպքեր կան. քեզ օրինակ՝ Պեպոն ու Կակուլին։ Ես ու Շիրվանը ոչ թե տարբեր էինք, այլ իրար հակառակ։ Տարբեր բնավորությունների մերձեցումը հնարավոր է, իսկ հետո նաև անհրաժեշտություն է դառնում միմյանց լրացնելու բնազդից։ Իսկ հակասական գծերը միմյանց ժխտելու, բացասելուն են հանգում վերջապես։

Կանգ առավ։

— Երբ իրանից հեռու եմ եղել, միշտ մտածել եմ, թե, իհարկե, հնարավոր է հետը բարեկամություն անել, բայց հանդիպման ամեն մի առիթ հակառակն է ապացուցել. ինքնավստահություն ուներ. բոլորին վերևից էր նայում։ Դա էլ մարդկանց վանում էր նրանից։ Զարրեցի այդ։

Նորից կանգ առավ։

— Որպես գրող բարձր է աչքիս։ Լեզվից աղքատ է, մի քիչ էլ թափթփված, նրբությունների մեջ թափանցելու գլուխ չունի, բայց ստույգ է ու ճիշտ։ Պատկերացումները կոնկրետ են, նյութականության ուժեղ զգացողությամբ հագեցած. ինչ որ ասում է՝ անմիջապես տեսնում եմ, աչքիս առաջ պատկերանում է, ասես ձեռքով շոշափում էր։ Լիրիկ չէ, թեև ներքին ջերմությունից զուրկ չէ։ Սիրում է դատողություններ անել, մտքեր հայտնել, բայց մտածող չէ։ Թույն այն պատճառով, որ փիլիսոփայական հոսանքներին ծանոթ չէր։ Ծանոթ էլ լիներ՝ էլի այդպիսին կլիներ։ Փիլիսոփայորեն մտածելու հակում չուներ։ Չէ՛, չէ՛, շատ լավ հեղինակ է. խսկական եվրոպական տիպի գրող։ «Քաոսի» մեջ անզուգական էջեր կան, բայց ես ամենից շատ սիրեցի «Արտիստը»։ Ո՞վ չէր ուզենա այդպիսի գրվածքի հեղինակ լինել։ Ա՛յ քեզ բյուրեղացում։

* * *

Մի երեկո զանգ տվեց, թե գնում է Դեմիրճյանի մոտ։

— Եթե ազատ ես՝ արի։

Գնացի։

Խոսք բացվեց Չարենցի մասին։ Իսահակյանը պատմեց հետևյալը.

— Մի օր մոտս էր։ Ասաց, թե ուզում է ինձ կարդալ «Նավզիկեն»։ Երկար ու կրկնությունններով լի գործ էր, տեղ-տեղ էլ մթամած։ Կարդում էր ոգևորված, իրեն դուր եկած քառատողը երբեմն կարդում էր երկրորդ անգամ, ասելով «մի լսիր, է՞, Ավո՞»։ Երբ վերջացրեց հարցրեց. «Ինչպե՞ս է»։ Չգիտեի՝ ինչ ասել։ «Լա՛վ, լա՛վ, կարող ես ոչինչ չասել, տեսնում եմ չես հավանել»։

* * *

Պատերազմը նոր էր սկսվել։ Մի օր խոսք եղավ այն մասին, որ հայ բանաստեղծները շատ են անդրադարձել հայրենիքին։ Գտանք և դրա պատմական հիմքերը։ Ես ասացի, թե, ճիշտ է, շատ շատ է գրվել, բայց բացարձակ արժեքները սակավաթիվ են, երևի մի քանի հատ։ Անմիջապես ուզեց իմանալ, թե որոնք են։ Ասացի, որ չափածո գրականությունից չորս գործ միայն բացարձակ իմաստով լավն են։

— Խիստ չե՞ս։

Նկատեցի, որ լավ գործերի թիվը այնքան էլ փոքր չէ, բայց եթե բացարձակ չափանիշը աչքի առաջ առնվի, միայն իմ ասած չորսը կմնան թեկուզ դարեր էլ անցնեն, որովհետև բոլորն էլ խտացած ձևով արտահայտում են հայ ժողովրդի պատմության փիլիսոփայությունը։

Հետաքրքրվեց, թե որոնք են։

Ես թվեցի. Թումանյանի «Հայոց լեռներում», Իսահակյանի «Ռավեննայում», Տերյանի «Տեսա երկիրն իմ հայրենի» և Չարենցի «Ես իմ անուշ Հայաստանի»։

Մտածեց։ Սկսեց բանաստեղծություններ հիշել և ինքն էլ տեղն ու տեղը առարկում էր, ասում, թե ինչի այս կամ այն գործը չի կարող այդ չորսի շարքը դասվել։

— Ինձ դու դրանց շարքը դասեցիր համոզվա՞ծ, թե ինձ չվշտացնելու համար։

Ասում է ու կասկածոտ նայում աչքերիս մեջ։ Ես բռնում եմ նրա թևը։

— Լա՛վ, լա՛վ, մի նեղանա։

Հանգստացնում է ինձ, բայց ինքը դեռ հանգիստ չէ։

— Բայց չէ՞ որ այդ ոտանավորը մարդու անցողիկ ճակատագրի փիլիսոփայությանն է նվիրված։

Հասկանում եմ, որ շարունակում է ստուգել ինձ։ Մինչև չհամոզվի՝ չի հանգստանա։

Ես տալիս եմ իմ հիմնավորումը. այդ բանաստեղծությունն արտահայտում է Հայրենիքի հավիտենականության հասկացողությունը և դրա համեմատ մարդու անցողիկ լինելը։

Ժպտաց։ Նշանակում է հավատաց։ Մի փոքր հետո.

— Ես չգիտեմ, թե դու ինչ կարծիքի ես, բայց բոլորից լավը, իհարկե, Չարենցինն է։ Այդ մի հատիկ ոտանավորը բավական էր, որ նա անմահների շարքն անցներ։ Այստեղ նա մրցում է ամենքի հետ, ոչ ոքից հետ չի մնում, երբեմն կանգնում է հավասար, երբեմն էլ գերազանցում է։

* * *

Իսահակյանն ու Լեոնյանը ընկերներ էին։ Երկար տարիների փոխադարձ սերը մոտեցրել էր, ստեղծել այնպիսի հարաբերություն նրանց միջև, որ միմյանց հաճախակի հանդիպելը, զրուցելը և ընդհանրապես միասին ժամանակ անցկացնելը երկուսի համար էլ դարձել էր բնական անհրաժեշտություն։

Լեոնյանը ապրում էր այն փողոցում, որտեղ և ես։ Այդ փողոցը հիմա էլ առանձնապես կարգավորված չէ, իսկ այն ժամանակ, խոսքը վերաբերում է պատերազմի տարիներին, քար ու քանդ վիճակի մեջ էր։ Մի օր, երեկոյան ժամին, Վարպետը ճանապարհվում է Լեոնյանի տուն։ Լուսաքողարկման հետևանքով քաղաքը կորել էր մթության մեջ։ Փողոցը, որտեղ ապրում էի ես, անթափանց մութ էր և սարսափելի ցեխոտ։ Մեր տան մոտով անցնելիս՝ Վարպետի ոտը կպչում է մի քարի, ընկնում է ցած, այտոսկրը դիպչում է քարին

ու քերծվում, մի ոտից էլ կրկնակոշիկը թռչում կորչում է ցեխերի մեջ։ Փողոցով անցնողները անմիջապես օգնության են հասնում։ Վարպետը նայում է շուրջը, ճանաչում մեր մուտքը։ Խնդրում է բարձրացնել իրեն մեր տուն։ Մեզ մոտ հյուրեր կային, երբ Վարպետին ներս բերին՝ շատ վախեցանք, բայց ինքը շտապեց հանգստացնել, որ մի առանձին բան չի պատահել։ Մեր տանը մի երիտասարդ սիրունադեմ բժշկուհի կար։ Երբ Իսահակյանի վրան ու գլուխը կարգի բերին՝ բժշկուհին բամբակը ձեռն առած փորձեց նրա այտից հոսող արյունը կանգնեցնել։ Եվ դա բավական երկար տևեց, որովհետև ոչ տանը, ոչ էլ հարևանների մոտ, յոդ չգտնվեց։

Վարպետը պատմում էր իր ուղևորության նպատակը, պատահարի մանրամասնությունները։ Ու թեև կարծես ասածը մեզ էր ուղղված, բայց աչքը չէր կտրում բժշկուհուց։ Հայացքի մեջ երանություն կար։ Տպավորությունն այնպես էր, ասես, գոհ էր եղածից և դժգոհ, որ վնասվածքը չնչին է, այլապես գեղեցկադեմ բժշկուհու խնամքն այդպես շուտ չէր վերջանա։

Երբ բժշկուհին հայտնեց, թե արյունն արդեն կանգնեցված է, Վարպետը շնորհակալության փոխարեն ասաց.

— Ափսո՜ս… .

Բժշկուհին չհասկանալով կամ չհասկանալու տալով՝ զարմացած նայեց բանաստեղծին։

— Չկա չարիք առանց բարիքի,— ասաց Վարպետը։

Բժշկուհին հարցական նայեց նրան։

— Չլիներ այս դեպքը, չէր լինի և ձեզ հետ ծանոթանալու առիթը։

* * *

Երկու շաբաթից ավելի էր, որ չէի եղել Վարպետի մոտ, ոչ էլ ինքն էր Պետհրատում երևացել։

Զանգահարեցի ու գնացի։

— Ի՞նչ կա-չկա։

—Մի նոր բանաստեղծ է հայտնվել։

— Ո՞վ է։

—Պարույր Ղազարյան։
— Չեմ հանդիպել։
— Դեռ չի տպագրվել։
— Շնորհքո՞վ է։
— Տաղանդավո՛ր։
— Չե՞ս ոգևորվում, արդյոք։
— Թվում է, որ ո՛չ։
—Քանի տարեկա՞ն է։
— Տասնութ։
— Իսկական ժամանակն է։
— Որտեղի՞ց է։
— Զանախչի գյուղից է։
— Լավ է, որ գյուղից է։ Սար, ձոր, դաշտ, ծաղիկ կզգա։
— Գուցե տարօրինակ է, բայց գյուղից ոչինչ չկա մեջը։
— Ինչպե՞ս թե։
— Նյութը քաղաքն է, զգացողությունը քաղաքային է։ Տպավորությունն այնպես է, որ քաղաքում է աչք բացել։
— Տարօրինակ է։
Մի պահ լռելուց հետո.
— Կարո՞ղ ես ինձ բերել մի երկու բան այդ տղայից։
Մյուս օրը մի տաս-տասնհինգ ոտանավոր տարա։
Կարդում էի, Վարպետը լսում էր, ոչ մի ձայն չէր հանում։ Նայում էի դեմքին հասկանալու համար նրա տպավորությունը, բայց արտահայտությունն անթափանց էր։ Երբ վերջացրի, գլուխը բարձրացրեց.
— Շատ հետաքրքիր մի բան է այդ տղան։ Ազգանունն ինչպե՞ս ասացիր, Պարույր Ղազարյա՞ն, լավ չէ, մի ուրիշ ազգանուն թող ընտրի։ Մի գլանա, օգնիր այդ տղային, բանաստեղծական խորք ունի։ Միտքը թռիչքներով է գործում, երևակայությունն էլ զորավոր է։ Մտածողության մեջ անսպասելի բաներ կան և ինքն է, ինքը և ուրիշ ոչ ոք։ Արժե օգնել։ Այնքան էլ հստակ չի մտածում, մեկ էլ միտքը զգացմունքից առաջ է ընկնում։
Լռեց։
— Սա կարող է հաճելի անակնկալ լինել բոլորի համար։ Աչքդ վրան պահիր։ Ինչ-որ ձեռքիցդ գա՝ արա։

Մի առ ժամանակ հետո «Սովետական գրականություն» ամսագրում տպագրեցի Պարույր Ղազարյանի մի բանաստեղծությունը՝ «Անխորագիր», հաջորդ համարում էլ՝ երեք գործ Ասպարեզ բերի Պարույր Սևակ ստորագրությամբ։ Հարձակումներ եղան վրաս և քննադատեցին ինձ որպես անխոհեմ քայլեր անող խմբագրի։

Այդ օրերին Վարպետի մոտ հաճախ էի լինում և նա տեղյակ էր պատմածիս։

— Տրամադրությունդ մի գցիր։ Այդ տղան իսկական բանաստեղծ է, հարձակումներ էլի կարող են լինել։ Դու պիտի այնպես անես, որ այս աղմուկի մեջ տղան հուսախաբ չլինի ու չկորչի։

* * *

Դեմիրճյանի «Բժիշկը» աղմուկ հանեց և նրանք, որ իրենց ուղղափառ գաղափարականներ էին համարում, հարձակվեցին նախ հեղինակի վրա, որ գրել է և ապա իմ՝ որ տպագրել էի։ Ես այն ժամանակ «Սովետական գրականություն» ամսագրի խմբագիրն էի։ Այդ պատմության օրերին Վարպետը անդրադարձավ այդ աղմուկին և ասաց, որ ինքը հիացած չէ Դեմիրճյանի պատմվածքով, բայց չի հասկանում, թե ինչի համար է այս ամբողջ աղմուկ աղաղակը։ Եվ հետո պատմեց հետևյալ դեպքը.

— Հորն ու մորը կորցրած մի պատանի մեծանում է պապի մոտ։ Պապը շատ սիրում է նրան։ Երիտասարդը ոտանավորներ է գրում։ Ուր տանում է գրածները՝ մերժում են։ Համոզված, որ իրեն չեն գնահատում, նախանձում են՝ գանգատվում է պապին, լաց է լինում։ Տանջվում է, ծանր ապրումներ է ունենում, վերջապես՝ հիվանդանում է թոքախտով։ Պապը, որ, ունևոր մարդ էր, որոշում է թոռանը, փրկել։ Մի մարդ է վարձում, որը հրատարակիչ ձևանալով՝ ներկայանում է հիվանդ պատանուն և առաջարկում իր ծառայությունները։ Պատանին կյանք է առնում, այնքան ուժ ու ոգևորություն ստանում, որ ոտքի է կանգնում, ընտրում իր լավագույն էջերը և տալիս հրատարակչին։ Մի ամիս

անց գրքույկը լույս է տեսնում։ Պատանի բանաստեղծը անցնում է գրախանութները և իմանում, որ իր գիրքը սպառվել է և նմուշի համար մի հատ էլ չի մնացել։ Միաժամանակ հետո հրատարակիչը նորից է գալիս բանաստեղծի մոտ և առաջարկում նոր գիրք պատրաստել հրատարակության համար։ Նոր գիրքը կարճ ժամանակից լույս է տեսնում և սպառվում ավելի արագ, քան առաջինը։ Նույն պատմությունը կրկնվում է երրորդ և չորրորդ գրքույկների հետ։

Եվ այն պահին, երբ պատանին իրեն հռչակված բանաստեղծ էր կարծում, նույնը և բոլոր ազգականներն ու հարևանները, հիվանդությունը սրվում է և կարճ ժամանակից վրա է հասնում մահը։ Հուղարկավորներն ասում են, թե դագաղում պառկած պատանու դեմքը իր կոչմանը ծառայած մարդու երանելի արտահայտություն ուներ։ Մի քանի ամիս հետո վախճանվում է պապը։ Ազգականներն ու հարևանները նրա տան ներքնահարկում գտնում են թոռան բոլոր գրքերի լրիվ տպաքանակը։

* * *

Քաղաքում լուր տարածվեց, որ Մահարին, Ալազանը, Նորենցը և Մկրտիչ Արմենը վերադարձել են, գտնվում են Մոսկվայում և շուտով կլինեն Երևանում։ Այդ լուրը Վարպետին շատ էր ուրախացրել։ Ենթադրելով, թե չգիտեմ՝ հայտնեց։ Երկար խոսեց նրանց մասին, մի առ մի հիշեց բոլորին։ Մի փոքր անց ասաց, թե ինքը շատ կուզեր նորից աչքի անցկացնել նրանց գրքերը։ Իսկ սեղանի վրա դրված էր Մահարու գիրքը։ Կարծում էի, թե նոր է սկսել, բայց հետո պարզվեց, որ կարդացել է «Մանկությունը», այնքան է հավանել, որ որոշել է մի անգամ էլ թերթել, բացել է իրեն շատ դուր եկած մի էջ՝ նորից մի հատված կարդալու համար և այնպես է տարվել, որ ինքն էլ չի նկատել, թե ինչպես շարունակել է ընթերցել։

Վարպետը հիացմունքով էր խոսում «Մանկության» մասին։ Եվ ինչպես միշտ՝ անկեղծ ոգևորությունից կակազում

էր, բայց որոշ ու հաստատ ասում, թե դա մի այնպիսի չքնաղ ստեղծագործություն է, այնպիսի փայլատակում, որ ամեն հեռավորությունից էլ լույս կտա։

Շատ էր հավանել գրվածքի այն էջը, որտեղ նկարագրված է մուրացիկ Քինոն, հատկապես այն հատվածը, ուր պատմվում է, թե ինչպես նա մի օր գալիս է իրենց տուն, ինչպես միշտ կերակրվում է և դուրս գալիս լսում դռան բախոց։

«— Վո՞վ ի...— ճչաց Քինոն։

— Աղքատ ի,— լսվեց դրսից։

— Գնա՛, գնա՛,— ճղրթաց Քինոն,— աստված տա»։

Կարդաց մի քանի անգամ։

— Աղքատը աղքատին ասում է՝ աստված տա... Ինչպե՞ս է գտնված։ Ի՞նչ լավ է դիտված։

Լռեց և մի պահ հետո.

— Ի՞նչ չէի տա, որ այս մի հատվածը իմը լիներ, իմ գրածը։

* * *

Հանգստի գնալուց առաջ անցա Վարպետին հրաժեշտ տալու։

Տիկին Սոֆիկն ասաց.

— Ավետիք, գիտե՞ս, սիրով կգնայի Սևանա կղզին, գոնե մի շաբաթով։

Վարպետը զարմացավ։

— Դու կարող ես նայել Սևանի նվազած ջրերին և հանգիստ քնե՞լ այնտեղ։

Քիչ հետո.

— Զարմանո՛ւմ եմ քեզ վրա։

* * *

Այդ այն օրերին էր, երբ Դերենիկ Դեմիրճյանը գրում էր «Վարդանանքը»։ Մի հանդիպման ժամանակ Վարպետը արտանչաց.

—Ինչի՞ է գրում, չեմ հասկանում։

— Ես զարմացա։ Ճիշտն ասած՝ բոլորովին այլ վերաբերմունք էի սպասում։

— Գիտեմ, որ նյութը նրան հուզում է։ Ի՛նչ անենք։ Երկու անգամ արտահայտվելու, այդ մասին ասելու, խոսելու առիթ ունեցավ։ Տարիներ առաջ պիես գրեց, վերջերս էլ՝ հետազոտություն։ Էլ ի՛նչ է ուզում։

Ես չէի կարող հաշտվել նրա ասածի հետ և հարցրի, թե մի՞թե այդ բոլորը երաշխիք չեն, որ լավ կգրի։

— Ընդհանրապես, իհարկե, այդպես է։ Բայց, տես թե ինչից եմ վախենում։ Դեմիրճյանի ոճը անհանգիստ է, նյարդային, կցկտուր, իսկ պատմական վեպը պահանջում է էպիկական հանգստություն։

Ես ասացի, թե ծանոթ եմ վեպի առաջին երկու գլխին, որ Դեմիրճյանը տվել է ինձ ամսագրում տպագրելու համար և այնքան լավ է, որ մտավախության համար հիմք չկա։

— Հավատում եմ. լավ, նույնիսկ փայլուն էջեր էլ կարող են լինել, բայց մի մոռանա, որ դա հատված է։ Դերենիկը վեպ գրելու փորձ չունի։ Եվ հարց է, կկարողանա՞ ամբողջացնել, ծայրը ծայրին բերել։

Երբ վեպը լույս տեսավ՝ հիվանդ պառկած էի։ Ամսագրում տպագրված հատվածներին ծանոթ էի, ամբողջին ոչ։ Դեռ ոչ մի արձագանք չէի լսել։ Մի երեկո Վարպետը տիկին Սոֆիկի հետ, մի աման յուղով (այն ժամանակ մթերք դժվար էր ճարվում) հիվանդատես եկավ։ Հարց ու փորձ արեց, թե ինչպես է առողջությունս, ինչ են ասում բժիշկները։ Մի փոքր անց ասաց.

— Կարդացի։

— Ի՞նչը։

— «Վարդանանքը»։

— Հետո՞։

— Ցնցված եմ։ Վախս բոլորովին իզուր էր։ Գերազանցեց մե՛ր բոլոր պատմական վեպերին։ Մի խոսքով լավն է, սքանչելի։ Դա կուտակում է, երկար ժամանակ լուռ մնացած մարդու խոսք։ Ժայթքում է. տեղ-տեղ գուցե անհարթ, բայց

ամբողջության մեջ աղոտ և գեղեցիկ։ Գյուտեր շատ կան, նուրբ էջեր ինչքան ասես, համարձակ հղացումներ՝ նույնպես, երևակայության չտեսնված թռիչք, խոր փիլիսոփայություն։ Եվ գլխավորը՝ հայրենաշունչ գործ է։

Կարճ դադար։

— Դերենիկի համար շատ ուրախ եմ։ Անմահացա՜վ։

Ես հարցրի, թե լավ չի լինի, եթե մի հոդվածով հանդես գա։ Տպավորված լինելով, որ վեպը լավ գնահատվի և այն էլ մի այնպիսի բացարձակ հեղինակության կողմից, ինչպիսին Իսահակյանն է, ես միաժամանակ ուզում էի, որ նրանց մտերմության մեջ վերջերս նկատվող սառնությունը վերանա։

— Տեսնեմ,— ասաց Վարպետը։

Նույն օրը զանգ տվի Հրաչյա Քոչարին, որ այն ժամանակ «Սովետական Հայաստան» թերթում էր աշխատում, վարում էր գրականության և կուլտուրայի բաժինը, պատմեցի ու խորհուրդ տվի խնդրել Իսահակյանին «Վարդանանքի» մասին հոդված գրել։

Մի քանի օր հետո «Սովետական Հայաստանում» լույս տեսավ վարպետի հոդվածը «Վարդանանքի» մասին։

Հիվանդությունս խորանում էր։ Իսահակյանն ինձ մոտ բերեց մի բժիշկ՝ Ռաֆայել Մանվելյան։ Բժիշկը քննեց ինձ, ասաց ինչ որ պետք էր և գնաց, իսկ Իսահակյանը մնաց։ Բժիշկը նոր էր գնացել, որ Դեմիրճյանը եկավ։ Եվ տարօրինակ բան. ասում, խոսում է և ոչ մի խոսք հոդվածի մասին։ Ես ու Իսահակյանը իրար ենք նայում և չենք հասկանում։ Ես այլևս չհամբերեցի և դարձա Դեմիրճյանին.

— Ձե՞ք կարդացել։

— Ի՞նչը։

— Վարպետի հոդվածը։

— Ինչի՞ մասին։

— «Վարդանանքի»։

Դեմիրճյանը նայեց Իսահակյանին. շրթունքներին ժպիտ կար և ժպիտի մեջ ուրախ զարմանք։

Ես թերթը տվի նրան։ Առանձնացավ, նստեց լուսամուտի մոտ և սկսեց կարդալ։ Երբ վերադարձավ, աչքերը վառվում

էին երիտասարդական կրակով։ Շրթունքները շարժվեցին, որ մի բան ասեն, բայց չկարողացան։ Իսահակյանը ոտքի կանգնեց։ Երկու ընկեր՝ հին ու վաղեմի բարեկամներ՝ փարվեցին ու երկար այդպես ողջագուրված մնացին։

* * *

Վարպետը հիացած էր «Վարդանանքով» և համոզված, որ ինքն իրավացի է, բայց չգիտեր, թե վեպը միջին ընթերցողին մատչելի կլինի՞ և ընդհանրապես ժողովրդականություն կգտնի՞ թե չէ։ Երբ վեպը ժողովրդական ճանաչում գտավ՝ մի այսպիսի խոստովանություն արեց.

— Մի հետաքրքիր բան եմ ուզում ասել. լսիր ու մտածիր ասածիս վրա։

Լռեց և հետո շարունակեց.

— «Քաջ Նազարը» միշտ էլ հավանել եմ։ «Ավելորդը»՝ նույնպես։ Գուցե մի երկու քաղյակ էլ։ Էլ ի՞նչ չգիտեմ։ Շատ որ անկեղծ լինեմ՝ էլ ոչինչ։ Բայց «Վարդանանքից» հետո մի իրիկուն որոշեցի նորից կարդալ Դերենիկի գործերը։ Մի քանի գործ կարդացի, մի երկուսը աչքի անցկացրի, մի խոսքով՝ բավական բան կարդացի։ Եվ երևակայում ես՝ «Վարդանանքի» ազդեցության տակ մի ուրիշ աչքով էի տեսնում այդ բոլորը, այլ կերպ գնահատում, քան առաջ և գտնում այնպիսի արժեքներ, որոնց վրա առաջ ուշադրություն չէի դարձրել։ Ավելին, զարմանում էի, թե Դերենիկը խելոք ու ճաշակով մարդ, ինչի՞ է այդ բոլորը մեջտեղ բերել ու տպել։

Լռեց մի պահ, ինչ էր մտածում, չգիտեմ, բայց բավական ժամանակ լուռ մնալուց հետո ասաց.

— Այդպես է, այո՛, զարմանալի է, բայց այդպես է։ Այսինքն՝ բոլորովին էլ զարմանալի չէ։

Կանգ առավ, ուզեց միտքը ձևակերպել։

— Արժեքը կա, բայց այնքան չէ, որ կարողանա ինքնուրույնաբար աչքի ընկնել։ Դրա պատճառով էլ չենք տեսնում, չենք գնահատում, իսկ երբ ստեղծված է գլուխ գործոցը, նրա արձակած լույսը գալիս տարածվում և ընկնում է

ստեղծագործության նաև այն կետերի վրա, որոնք առաջ մեզ համար մութ են եղել։

Մի փոքր հետո.

— Այստեղ մի նրբություն կա։ Գլուխ գործոցը հեղինակություն է բերում նրան, ով մինչ այդ հեղինակություն չէր։ Պետք է կարողանալ, և դա, իհարկե, դժվար գործ է, տարբերել չնկատված արժեքը այն գրվածքներից, որոնք, լավ չլինելով, այնուամենայնիվ թվում են լավ միայն նրա շնորհիվ, որ դուրս են եկել այդ հեղինակի գրչի տակից։

* * *

Պատերազմը նոր էր վերջացել։ Ես դեռ շարունակում էի աշխատել Պետհրատում։ Անահիտ Սահինյանն էլ մեզ մոտ աշխատանքի էր անցել, մանկա-պատանեկան գրականության բաժինն էր վարում։ Պետհրատումն էր նաև Մարգարիտ Քաջազնունին։ Վերջինս մի օր ասաց, թե լավ կլինի, եթե մեր պատանեկության հնարավորություն տրվի «Ուլենշպիգելին» ծանոթանալու։ Հրաշալի միտք։ Լույս կտեսնի պատանեկության համար, կկարդան նաև մեծերը։ Եվ լավ կլինի։ Սահինյանն ու ես գնացինք դիրեկտորի մոտ։ Դիրեկտորը Հարություն Մկրտչյանն էր։ Երկար ժամանակ պետք չեղավ համոզելու նրան։ Ուրեմն՝ Շառլ դը Կոստերի գիրքը լույս է տեսնելու։ Թարգմանությունը ստանձնեց Վահե Միքայելյանը, որ այդ գործն անելու ցանկությամբ վաղուց էր խանդավառված։

Այդ օրերին հրատարակչություն եկավ Իսահակյանը։ Ու ես ասացի, թե մտադիր ենք «Ուլենշպիգելը» հայերեն հրատարակել։

— Շատ լավ եք անում։

Ու անդրադարձավ վեպին։ Մտորում էր։ Նրա հայտնած մտքերը շատ հետաքրքիր էին։ Ուշադիր լսում էի նրան։ Ու նա, որ հանգիստ դատողություններ էր անում, ասես ոգևորվեց և ընդհանրացրեց.

— Ժողովրդին ազգ դարձնող գրքեր կան։ «Ուլենշպիգելը» դրանցից է։ Նույնն է նաև մեր «Վերքը»։

Նրա այդ միտքը առիթ տվեց մտածելու, թե լավ չէր լինի, արդյոք, եթե Վարպետը համաձայներ այդ գրքի համար մի առաջաբան գրել։ Հրաժարվեց, ասաց, թե ինքը մասնագետ չէ, որ դա իր ուժերից վեր է։ Իսկ ես պնդում էի, համոզում, որ այն բոլորը ինչ քիչ առաջ ասաց, արդեն բավական է մի լավ առաջաբան գրելու համար։ Համոզված էի, որ Սահինյանը ոչ միայն չի սրտնեղի, որ առանց իրեն գործ եմ բռնում, այլ նույնիսկ կուրախանա, որ այդ հրատարակության հետ կկապվի Վարպետի անունը։ Վարպետը համաձայնեց։ Այդպես էլ եղավ։ Բոլորն էլ ուրախ էին, որ Վարպետը տվել է առաջաբան գրելու համաձայնություն, բայց կասկածում էին՝ կանի՞, թե չէ։

Վարպետը դժվար էր խոսք տալիս, բայց եթե տալիս էր, պարտաճանաչ էր։ Երկու շաբաթ էլ չէր անցել, որ բերեց առաջաբանը։

— Տե՛ս, մի բանի նմա՞ն է։

Դա կեղծ համեստություն չէր։ Հաճախ էր պատահում, որ նա գրում էր և չգիտեր՝ ինչպես լա՞վ է, թե չէ։ Եվ միշտ կարիք էր զգում, որ մեկն ու մեկը գնահատության խոսք ասի։ Մի օր չանցավ, և նրա առաջաբանի մատիտագիր էջերը հրատարակչության մի սենյակից մյուսն անցան։ Բոլորն էլ ոգևորված էին։ Երկու օր հետո եկավ հրատարակչություն՝ ամեն ոք իր պարտքն էր համարում առանձին մոտենալ և իր հիացումը հայտնել։ Իսկ նա, չնայած տասնամյակների վաստակին և ունեցած փառքին, ուրախանում էր առաջին անգամ տպագրվողի հրճվանքով։

* * *

Տերյանի արխիվը նայելիս նրա թերթերի մեջ հանդիպեցի մի անավարտ կամ գուցե ավելի ճիշտ կլինի ասել սևագիր բանաստեղծության։ Երկու օր հետո Վարպետի մոտ էի՝ կարդացի։

Մի խառնեք մեզ ձեր արջի վայրի ցեղերին

Ուշադիր լսեց։ Հետո ձեռիցս առավ, կարդաց մտքի մեջ, նայեց և բարձրաձայն.

Շատ է տեսել երկիրն իմ ցավ ու արհավիրք,—
Լաց է այնտեղ ամեն երգ և ողբ ամեն գիրք։

Երկրորդ տողը նորից կրկնեց։ Դուր էր եկել։ Այլևս ոչ մի ձայն չհանեց։ Նայում էր հեռուն, ոչ ինձ էր տեսնում, ոչ դիմացի պատը՝ վրան Սեդրակ Առաքելյանի նկարած մեծադիր պատկերը։ Միտքը Տերյանի հետ էր։ Ու հետո, բավական ժամանակ անց, շատ հանդարտ դարձավ ինձ.

— Հա՛, դու փոքր ես, Վահանին տեսնել չէիր կարող։

Մի փոքր հետո դիմեց տիկին Սոֆիկին և խնդրեց, որ թեյ տա մեզ։ Ես պատմեցի, թե Տերյանի այդ ոտանավորը գտնելու օրը ինչ խաղ եմ խաղացել ընկերոջս գլխին. թե ինչպես ընկերոջս, գրականություն հասկացող մի մարդու, կարդացել եմ Տերյանի անհայտ բանաստեղծությունը, ասելով, թե հեղինակը ես եմ։ Եվ նա, Տերյանի ոտանավորը լսելուց հետո, ինձ խորհուրդ է տվել այլևս ոտանավոր գրելու փորձ չանել, քանի որ դրա մեջ բանաստեղծական մի հնչյուն կայծ անգամ չկա։ Ասել է նաև, որ ոչ ոքի չկարդամ, թե չէ ինձ կարող են ազգայնականություն վերագրել։ Պատմեցի նաև այն, թե ինչպես, մի երկու ժամ հետո, երբ ասել եմ, թե բանաստեղծությունը Տերյանինն է, նա այդ համարել է ընտիր գործ, հայրենաշունչ ստեղծագործություն և այլն։

Ժպտաց։

— Մի՛ զարմանա։ Մեզանից ամեն մեկը այդ վիճակում լինում է՝ առանց իմանալու, որ այդ վիճակումն է։ Եվ որովհետև լուրջ է պահում իրեն, ապա անխուսափելի է լինում դրա կոմիկական բնավորությունը։ Նախապաշարմունքի ուժը մեծ է։ Ոչ ոք մտքի բացարձակ անկախություն չունի։ Ո՞վ է մեզանից Պուշկին կամ Գյոթե կարդում, մտքի և ճաշակի անկախ զգացումով։ Ոչ ոք։ Կարդում ենք իմանալով, որ մեկը Պուշկինն է, մյուսը Գյոթեն, ուրեմն՝ նախատրամադրված։

* * *

Երվանդ Քոչարի մոտ էինք։ Մոսկվայից եկել էր թարգմանիչ Հակոբ Խաչատրյանը։ Կանչել էին ինձ։ Իսկ ես Նաիրի Զարյանի մոտ էի։ Այնտեղ էր նաև Իսահակյանը։ Առաջարկեցին միասին գնալ։ Գնացինք։ Հետո եկան և ուրիշները։

Խոսք բացվեց կնոջ մասին։ Իսահակյանը հիշեց ժողովրդական մի ասացվածք.

— Եթե մի գործ ես ուզում բռնել՝ խորհուրդ արա հորդ հետ։ Եթե կենդանի չէ, փափախդ դիր ու նրա հետ միտք արա։ Իսկ եթե փափախ էլ չունես, խորհուրդ արա կնոջդ հետ, բայց արա նրա ասածի ճիշտ հակառակը։

Խոսքը կենտրոնացավ խաղացած խոսքի շուրջը։ Ամեն մեկն ասում էր իր իմացած ասացվածքը։ Իսահակյանը բոլորից շատ գիտեր և նրա բերած ասացվածքները նոր էին, թարմ, և շատերն առաջին անգամ էին լսում։

— Մինչև թանը բերին՝ հացը գնաց, մինչև հացը բերին՝ թանը գնաց։ Մինչև երկուսը եղավ՝ ես գնացի։

Ես ասացի, թե դրա ավելի սեղմ ձևը կա։

— Աստված երկու էրնեկ միասին չի տալիս։

Վարպետը ժպտաց։

Ասացի ու հիշեցի, որ այդ ասացվածքը Իսահակյանից եմ լսել։

* * *

Բերին ինձ Լեոյի «Անի» անտիպ աշխատության ձեռագիրը։ Ծանոթանալս ու հիանալս մեկ եղավ։ Պարզ էր, որ պետք է տպագրել։ Բայց վախենում էի, թե կարող են տարրկել, ասել, թե պատմություն է, այն էլ՝ Անի։ Չեմ թաքցնում՝ աչքս վախեցած էր։ Այդ տարվա ամռանը մի առիթով գաղափարական դասեր առել էի արդեն։ Մի օր, երբ այս մտորումների մեջ էի՝ Վարպետը Պետհրատ եկավ։ Ասացի մտքինս։ Խնդրեց Լեոյի ձեռագիրը։ Մյուս օրը զանգահարեց և ասաց, թե կարդում է մեծ հաճույքով։ Մի օր, դարձյալ հեռախոսով, ասաց, թե կեսից անցել է, եթե երեկոյան մարդ չգա և չխանգարեն՝ կվերջացնի։ Եվ իսկապես, մյուս օրը մտավ սենյակս և Լեոյի ձեռագիրը դրեց սեղանիս.

— Զապագրելը մեղք կլինի։

Շատ էր հավանել, խոսում էր ոգևորված, նրան հատկապես դուր էին եկել Վահրամ սպարապետին նվիրված էջերը։ Շարունակ դրա մասին էր խոսում։

— Ինչպե՞ս է գրել։

Խնդրեցի, որ գրախոսի, մտածելով, թե Վարպետի հեղինակությունը կարող է դեր խաղալ։ Սիրով հանձն առավ։ Հաջորդ օրը տիկին Սոֆիկը հեռախոսով հայտնեց, որ Վարպետը տկար է և խնդրում է ժամանակ գտնել և անցնել իր մոտ։ Անմիջապես գնացի։ Ասաց, թե մրսել է, իրեն լավ չի զգում և չգիտե, թե երբ ոտքի կկանգնի։ Գործը չհետաձգելու համար լավ կլինի մի ուրիշին, գուցե Դեմիրճյանին առաջարկել, որ գրի։ Ինձ ծանոթ է՛ր նրա բարեխղճությունը և գիտեի, որ եթե գրի, պետք է հիմնավոր, հանգամանորեն գրի, իսկ հիվանդ վիճակում, դա, իհարկե, հնարավոր չէր։ Համաձայնեցի։ Այնուամենայնիվ խոստացավ կարճ նամակով հայտնել իր կարծիքը, թերևս դա էլ օգտակար լինի։

Երկու օր չանցած ուղարկեց ինձ այդ նամակը, որը ես ցույց տվի Հայպետհրատի այն ժամանակվա դիրեկտոր Հայկ Դոնոյանին։ Վերջինս ասաց, թե Իսահակյանի նամակում տրված գնահատականը բավական է և Լեոյի գործը անհապաղ ուղարկվեց տպարան։

Նույն օրը երեկոյան գնացի Վարպետին հիվանդատես։ Պատմեցի։ Շատ զգացվեց, իմանալով, իր խմբիչիալյոց արված միջամտության այդպիսի կտրուկ ազդեցությունը։

* * *

1946-ին էր, հունվար ամսին։ Գիտությունների ակադեմիան նշում էր ականավոր բանասեր Երվանդ Տահազիզի ծննդյան 90-ամյակը։ Հանդեսը դեռ չէր սկսվել։ Հոբելյանական երեկոյի նախագահության անդամները հավաքվում էին։ Այստեղ էին շատ նշանավոր դեմքեր, նաև Իսահակյանը։ Ես էլ էի այնտեղ, որովհետև զեկուցումը հանձնարարված էր ինձ։ Նստած զրուցում էինք, որ Տահազիզը ներս մտավ։

Վարպետն ասաց.

—Ոտքի կանգնենք՝ դարն է գալիս։

* * *

Վարպետն անտրամադիր, ավելի ճիշտ՝ մտահոգ նստած էր։ Կամենալով փարատել տրտմությունը՝ ասացի, թե վերջերս կարդացած մի գրքում հանդիպեցի մի մտքի, որ ճիշտ նույնությամբ, անգամ նույն ձևակերպումով անցել էր իմ մտքով։

— Պատահում է, շատ է պատահում, որ նույն բանը երկու տարբեր մարդու մտքով անցնի։

Լռեց։

— Հիմի ես քեզ պատմեմ զարմանալի մի բան, աներևակայելի և անբացատրելի։ Երեկ գիշեր մի ոտանավոր գրեցի, հինգ տուն։ Ուզեցի մերոնց կարդալ՝ քնած էին։ Դրի այ այս գզրոցն ու քնեցի։ Այսօր ցերեկը ժամը 12-ը կլիներ Շիրազը եկավ. «Վարպետ,— ասում է ինձ,— մի ոտանավոր եմ գրել երեկ գիշեր, կարդամ լսիր, կարծիքդ եմ ուզում իմանալ»։ Ու, պատկերացնո՞ւմ ես, վերջին տունը, չորս տող, համարյա նույնն էր, ինչ որ ես էի գրել երեկ գիշեր։ Եթե ես մեկն ու մեկին, թեկուզ մերոնց կարդացած լինեի ոտանավորս, չէի հավատա, թե Շիրազին չեն ասել, դե՛ արի ու հասկացիր, ինչ բան է, սա ինչ զարմանահրաշ զուգադիպություն է. նո՛ւյն տողերը, նո՛ւյն պատկերները...

* * *

1946-ին տեղի ունեցավ Հայաստանի Գրողների միության երկրորդ համագումարը։ Այդ առթիվ որոշվեց լույս ընծայել «Ընտիր էջեր» անթոլոգիան, որը պետք է ամփոփեր հայ գրականության լավագույն նմուշները սկզբից մինչև մեր օրերը։ Կազմվեց խմբագրական մարմին։

Չարենցը նույնպես պետք է տեղ գրավեր «Ընտիր էջերում»։ 1937-ից հետո չէր տպագրվել և սա առաջին փորձն էր լինելու մեծ բանաստեղծի ժառանգությունը վերադարձնելու ընթերցողին։ Որոշվեց այսպես. բոլորս կկարդանք, ամեն մեկս ընտրություն կկատարենք և հետո խմբագրու-

թյան նիստում ընդհանուր համաձայնությամբ եզրակացության կգանք, թե ինչ լույս ընծայել։

Դա մի շաբաթ առաջ էր։

Այն օրը, որ նշանակված էր Չարենցին նվիրված նիստը՝ մեքենայով գնացի Վարպետի ետևից։ Գրողների տուն հասանք ավելի վաղ, քան նշանակված ժամը։ Մինչև խմբագրության մյուս անդամները կգային, մտքեր փոխանակեցինք Չարենցի շուրջը։

— Ի՞նչ տպավորության ես։

Դժվարացա անմիջապես պատասխանել։ Որոնում էի մի կարճ ձևակերպում։ Ըստ երևույթին, հասկանում էր, թե ինչ է կատարվում ինձ հետ, պատրաստակամ համբերությամբ սպասում էր։

— Չհաշված մի քանի գործից,— ասացի ես,— ինչով առաջ ոգևորված էի՝ գունատ տպավորություն ստացա և ընդհակառակը՝ շատ բան, որ առաջ չէի հավանում, այժմ ցնցող տպավորություն թողեցին վրաս։

Ժպտաց։

— Հիշո՞ւմ ես, վիճում էիր հետս, չէիր համաձայնում։

Նորից լռեց. կարծես մտքերն էր հավաքում։

— Ժամանակը, ամեն ինչ ժամանակն է որոշում։ Ժամանակը, եթե նրա ազդեցության տակ ես, մոլորեցնում է, բայց հետո հաջորդող ժամանակները ճշտում են արժեքները, մաղից անց են կացնում և ինչ որ կապված է միայն ժամանակի հետ՝ մաղից անցնում է, որպես իր դերը կատարած, որպես պատմական արժեք միայն, իսկ այն, որ ժամանակի հետ կապված լինելով, նաև ընդհանրական է՝ մնում է մաղում և շարունակում իր կյանքը նաև հետո. երբեմն շատ երկար, անգամ դարերով։

* * *

Երևանի կինոստուդիան Ավետիք Իսահակյանին նվիրված մի կինոակնարկ էր պատրաստել։ Տեքստը գրել էր նկարի ռեժիսոր Հայկազյանը։ Ժիրայր Հակոբյանը, որն այն ժամանակ ղեկավարում էր ստուդիան, գոհ չէր տեքստից, թեև նկարն արդեն պատրաստ էր ցույց տալու։ Նա խնդ-

րեց նոր տեքստ կազմել, արդեն պատրաստ նկարը նկատի ունենալով։ Թեև շատ էի զբաղված, չմերժեցի, որովհետև Վարպետի հետ էր կապված։

Երբ տեքստն արդեն պատրաստ էր՝ սկսվեց նրա ինչպես և երաժշտական հատվածների հնչյունագրումը։ Մի քանի գիշեր ստիպված եղա ստուդիայում անցկացնել, պետք եղած փոփոխությունները կատարել, կրճատել, կամ հավելում անել, նայած տվյալ կադրի տևողությանը։ Գործը նոր էր ինձ համար և, անկասկած, հետաքրքիր։ Մեկ ռեժիսորի կողքին էի, մեկ հնչունագրող օպերատորի, որ գտնվում էր հարևան սենյակում։ Հնչունագրող օպերատորը ռուս էր, հրավիրված մի այլ նկարի համար, բայց օգտագործվում էր այս ակնարկում նույնպես։

Մի քանի երգի համար հրավիրված էր Ցողիկ Մկրտչյանը։ Միշտ չէ, որ նրա երգը կամ դիկտորի խոսքը հնչունագրվում էին հարթ, սկզբից մինչև վերջ համընկնելով։ Պատահում էր, որ դիկտորի խոսքի ոգևորված պահին կամ Ցողիկի երգի կեսին ռեժիսորն հանկարծ ասում էր «СТОП»։ Ստիպված էին լինում նորից սկսել։ Երբեմն պատահում էր, որ այդ չարաբաստիկ «СТОП-ը կրկնվում էր մի քանի անգամ և Ցողիկը ստիպված էր լինում միևնույն երգը ընդհատել և նորից սկզբից սկսել։ Այդպես եղավ «Սիրեցի յարս տարան» երգի հետ։ Մի անգամ երգեց, երկրորդ, երրորդ։ Չէր ստացվում։ Եվ նա ստիպված էր նորից սկսել։ Ես հնչունագրողի մոտ էի նստած։ Երբ Ցողիկն այդ երգն առաջին անգամ երգեց, մեր ռուս ընկերը, որը, ինչպես երևաց, առաջին անգամն էր լսում, ասաց.

— Гениально! Это же гениально!

Չեմ հիշում, թե որերորդ կատարումն էր, թերևս երրորդ, Ցողիկը երգեց արտակարգ։ Ձայնը նույնն էր, բայց հույզը գալիս էր սրտի խորքից և ազդու հնչյունների փոխակերպված, մտնում մեր մեջ, տակն ու վրա անում մեր հոգին։ Թվում էր, թե Ցողիկը չի երգում, այլ դիմացս, անհա այնտեղ, ձորի մեջ, մի քարի վրա, նստած է նա, որի յարին փախցրել են, «յարս տվել ու տարել»։ Դա այլևս երգ չէր, այլ իրականություն, ու ես տեսնում էի մի տանջահար հոգի, որ տոչորվում է կսկիծից։

Ականջիս ինչ որ շշուկներ էր հասնում։ Նայեմ տեսնեմ՝ հնչունագրող մեր ռուս ընկերոջ աչքերը խոնավ են, իսկ ինքը շշնջում է.

— Гениально, гениально...

Ահա այդ ժամանակ էր, թե փոքր ինչ անց, որ երգը չվերջացրած, լսվեց ռեժիսորի «СТОП»-ը Դրանից հետո Տողիկը մի քանի անգամ էլ երգեց և չեմ հիշում հինգերորդ, թե վեցերորդ կատարումը լիովին համընկավ տեղադրման ընթացքի հետ, բայց ոչ հինգերորդ և ոչ էլ վեցերորդ անգամ նա այլևս չհասավ ներգործության նախկին չափին։ Ու թեև կիսատ, բայց այդ կատարումը շատերի հիշողության մեջ մնաց, որպես հոգեկան կյանքի անհամեմատելի բռնկում։

Միաժամանակ անց, երբ աշխատանքը լիովին ավարտված էր, Իսահակյանն էլ նայել էր նկարն ու գոհ մնացել, Վարպետի մոտ էի։ Նստած ռադիո համերգ էինք լսում. Տողիկը երգեց «Սիրեցի յարս տարան»։ Ինձ վրա տպավորություն չգործեց, ես դեռևս ու նաև հիմա, այն կատարման տպավորության տակ էի։

Վարպետը լսում էր աչքերը փակ և դեմքն արտահայտում էր մի հոգեզմայլ բավականություն։ Երբ Տողիկը վերջացրեց, կմկմաց.

— Լավ է երգում։

Ձայն չհանեցի։

— Այդպես չէ՞։

Հարցին պատասխանելու փոխարեն, պատմեցի կինոստուդիայում պատահածը։

— Պատահում է, պատահում է։

* * *

Սեղանի վրա մեքենագիր թերթեր էին դրված։ Վարպետը կարդում էր։ Տեսա, որ բանաստեղծություններ են, բայց չհարցրի թե ումն են։

Գլուխը բարձրացրեց.

— Տիրադինն են։ Բերել է թե՝ նայիր։ Նոր ժողոված է։

— Ինչպե՞ս է։

Չպատասխանեց։

— Այ, օրինակ, էս մեկը լավն է։ Ու կարդաց.

Ախ, սերը այնպես է սրտե սիրտ մտնում,
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

Գտնում է մանուկն ստինքը միշտ մոր՝
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

Դու էլ կգտնես բախտդ հեռավոր՝
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

Սրբազան սերը կգտնես մի օր,
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

Սիրտ իմ, կգտնես սերդ բախտավոր,
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

Ա՜խ, բախտը այդպես է սրտե սիրտ մտնում՝
Ինչպես կույր գառն է իր մորը գտնում։

— Լավ է, չէ՞։

— Լավ է, բայց մի քիչ ձգած է։

Նայում էր ինձ, բայց չէր տեսնում։ Մտածում էր։ Հասկացա, որ համաձայն է։ Ժպտաց. պարզ է, գտել էր։ Վերցրեց մատիտը ձեռը, նորից աչքի անցկացրեց ոտանավորը և հետո արագ ջնջեց երկրորդ, չորրորդ և վեցերորդ տները։

Կարդաց ոտանավորը կրճատված։

— Արդեն լավ է, չէ՞։

— Լավ է։

Էջի տակը Վարպետը գրեց «Շիրազ ջան, թողեցի վեց տող։ Դարձավ զուսպ։ Ավ. Իս.»։

* * *

Գրողներից մեկը մոտեցավ Իսահակյանին.

— Ինչպե՞ս ես, Վարպետ։

Վարպետը նայեց նրան երկար, խոր հայացքով ու ասաց.

— Անիի եկեղեցին քանդում են. լսե՞լ ես։

Ու առանց պատասխանի սպասելու հեռացավ։

* * *

Մի երեկո ասաց.

— Պիես կարդալ չեմ սիրում, բայց «Համլետը» մի տասն անգամ կարդացած կամ։ Մեկ էլ «Լիր արքան» եմ ձեռքս առել հաճախ։

* * *

Մի օր ասի, որ ինձ հանձնարարված է առաջաբան գրել Դեմիրճյանի «Քաջ Նազարի» նոր հրատարակության համար։

— Գրի, անպայման գրի։ Չլինի, թե ծուլանաս ու չանես։

Մի պահ հետո.

— Ես էլ եմ գրել, Օհանեսն էլ։ Հա՛, Շանթն էլ։ Իսկ նրանից առաջ Սիպիլը։ Եթե Օհանեսի գրածից փիլիսոփայություն է բխում, ապա Դերենիկը ամբողջապես փիլիսոփայությամբ է ներծծված։

Ես ասացի, թե մի ժամանակ մտքիս դրել էի հավաքել այդ հեքիաթի բոլոր պատումները, ոչ միայն նրանք, որ ստեղծել են հայերը, այլև նրանք, որ ծնունդ են առել տարբեր ազգերի ժողովրդական երևակայությամբ, ու գրել մի բաղդատական ուսումնասիրություն։ Մի տասը տասներկու պատում հավաքեցի և հետո էլ չշարունակեցի։

— Զուր, շատ հետաքրքիր գործ կստացվեր։ Բոլոր ժամանակների համար, ինչպես հիմա են ասում, իր նշանակությունը պահպանող հեքիաթ է «Քաջ Նազարը»։

Հետո նորից վերադարձավ Դեմիրճյանին։

—Եթե Դերենիկի կոմեդիան թարգմանվի եվրոպական լեզուներով՝ մեծ տարածում կգտնի. կոլորիտով ազգային, փիլիսոփայությամբ համամարդկային է։

Լռեց.

— Չգիտեմ, թե երբ կլինի այդ, բայց որ «Քաջ Նազարը» Դերենիկին մի օր քաշելու է դեպի գրականության միջազգային ոլորտները, չեմ կասկածում։

* * *

Մտա առանձնասենյակը՝ գրում էր։ Ասաց.

— Վերջացրի։

Ես հարցական նայեցի։

— Ոտանավոր էի գրում։

Ու կարդաց «Շուշենի մահվան քայլերը»։

— Ինչպե՞ս է։

Ասացի, որ վերջվածքը լավ է։

— Վերջի համար եմ գրել։

Ասացի, որ լավ կլինի, «Ինձ հետը» դարձնել «Ինձ համար»։

Մտածեց։

— Ճիշտ ես ասում։

Ուղղեց։

— Էլ ի՞նչ դիտողություն ունես։

Առաջարկեցի «մտասույզը» դարձնել «մտազբաղ»։ Համաձայնեց։ Մի փոքր հետո առարկեց.

— Չէ, «մտասույզը» ավելի լավ է։ Չե՞ս կարծում. «մտազբաղ» լավ է հանգի համար, բայց մեքով «մտասույզն» է տեղին։ Համաձա՞յն ես։

Եվ վերականգնեց։

* * *

Վարպետին տարել էի «Արովյանի կյանքի» նոր հրատարակությունը։

Ձեռն առավ, թերթեց.

— Լավ չեն հրատարակել. կարելի էր ավելի ճաշակով անել։

Մի փոքր հետո.

— Այս ո՞րերորդ հրատարակությունն է։

— Չորրորդ։

— Լավ է, լավ։

Մի քանի օր հետո ասաց, որ կարդացել է։ Ես հարմար

չեմ դատում այստեղ մեջ բերել նրա կարծիքը, բայց կհիշեմ այդ կապակցությամբ նրա տված խորհուրդը։

— Ուզում եմ մի խորհուրդ տալ։ Մշակիր այս գործդ՝ ընդարձակիր, մեծացրու։ Փառք աստծո՝ հարուստ նյութ է, դու էլ ձեռքիդ տակ շատ բան ունես։ Կարելի է լավ գրել։ Ինձ թվում է, որ դու այդ լավ կանես։

Ես ասացի, թե վերջերս շատ գրվեց Աբովյանի մասին։

— Անմիջապես անելու կարիք չկա։ Թող միառժամանակ անցնի։ Հետո՝ իմ ասածն ուրիշ է. ես ուզում եմ, որ ժողովուրդը նրա կյանքի ընդարձակ, համով գրված պատմությունն ունենա։ Դա շատ պետքական գիրք կլինի՝ հայրենասիրական, միաժամանակ մարդկային տրագիկ հանգամանքներով լի։ Դու պետք է անպայման անես։

* * *

Գարեգին Լևոնյանի այրին այն տպավորության էր, թե իր ամուսինը մոռացված է, չի հիշվում։ Խնդրել էր Իսահակյանին միջամտել։ Նա էլ ինձ հետ խոսեց, ասաց, թե հարկավոր է ինչ-որ բան անել։

Որոշվեց մի ժողովածու կազմել։ Այդ գործը հանձնարարվեց ճարտարապետ Միքայել Մազմանյանին։ Նա պատրաստեց ժողովածուն։ Կինը շատ էր ուզում, որ գիրքը լույս տեսնի Իսահակյանի առաջաբանով։ Վարպետը դեմ չէր, բայց դժվարանում էր գրել։ Հիվանդությունից հետո գանգատվում էր, թե չի կարող գրիչը ձեռն առնել, աշխատել։ Բայց դժվարանում էր և չանել, Լևոնյանի հետ երկար տարիների մտերմությամբ էր կապված։

Որոշեցինք, որ առաջաբանը կլինի շատ կարճ, մի էջից ոչ ավելի։ Երբ գրված պատրաստ էր՝ նստեցինք միասին նայելու։ Առաջաբանում այն միտքն էր արտահայտված, թե Լևոնյանը մի որևէ բնագավառի նվիրվելու, խորանալու փոխարեն ցրվել է, հազար գործի է ձեռք զարկել։

— Այս ճիշտ է։ Ճիշտ է, իհարկե, բայց կարիք չկա թողնել, դե սա հո ամենակողմանի գնահատություն չէ, ոչ էլ գիտական բնորոշման փորձ, ավելի հիշատակի խոսք է։ Ուրեմն՝ ի՞նչ կարիք կա։

Ուզում էր փոխել, բայց չգիտեր ինչպես։

Գրիչը վայր դրեց։

— Հանճարը նպատակասլացությունն է, մի ուղղություն, մի սևեռուն կետ։ Գյոթեի կարծիքով հանճարի առաջին հատկանիշը կենտրոնացումն է։

Մի փոքր հետո.

— Հանճարի միտքը մի ուղղությամբ է լարվում, այլևս ոչինչ չկա և գոյություն չունի նրա համար։ Դրա համար էլ հանճարը արտաքին աշխարհի նկատմամբ ցրված է։ Նկատված է, որ հանճարները մոռացկոտ են լինում, չեն մոռանում ինչ որ պետք է հիշեն իրենց գործի համար, իրենց նպատակի համար։ Գալիլեյը հարսանեկան գիշերը, հյուրերի գնալուց հետո, բարձրանում է իր աշխատասենյակը և մինչև արշալույս աստղեր է դիտում։ Երբ հոգնած իջնում է ննջարան և տեսնում իր անկողնում մի կնոջ պառկած, մնում է զարմացած։ Կանչում է սպասավորին ու հարցնում, թե ո՞վ է։ Երբ սպասավորն ասում է թե իր կինն է, նոր է միայն հիշում, որ երեկ երեկոյան ամուսնացել է։

Հետո ավելացրեց.

— Իհարկե, բացառություններ կան։ Ես միայն երկուսը գիտեմ. Միքելանջելո և Լեոնարդո դա Վինչի։ Անջելոն նկարիչ էր, քանդակագործ, ճարտարապետ։ Ոտանավորներ էլ էր գրում։ Դա Վինչին ավելի բազմազան էր։ Շեքսպիրն էլ նրանց չափին է պատկանում, թեև հայտնի է գրականությամբ միայն։ Ի՜նչ բազմազան իմացություն. նրա մասին խոսելիս պետք է թվել ոչ թե այն, ինչ գիտեր, այլ այն, թե ինչ չգիտեր, եթե, իհարկե, կա մի բան, որ նա իմացած չլիներ։

* * *

Նոր էր լույս տեսել Չարենցի միհատորյակը։ Մի օրվա մեջ գրախանութներում գիրք չմնաց։ Ընթերցողները հերթ էին կանգնում, երբեմն մեկի փոխարեն գնում երկու-երեք օրինակ։

Չարենցի երկրորդ ծնունդն էր։

Չարենցը կյանք մտավ ոչ միայն առաջվա պես ոգևորությամբ շրջապատված, այլև գլխին նահատակի լուսապսակ։ Չկար տուն, ուր նրա հիշատակին բաժակ չբարձրացվեր։ Եվ այդպես երկար ժամանակ, մոտ մի տարի շարունակ։

Շտապեցի Չարենցի գրքից մի օրինակ տանել Վարպետին։

Շատ ուրախացավ, շնորհակալ եղավ։

Գիրքը ձեռն առավ, աչեն փայփայեց ու սկսեց թերթել, տեղ-տեղ կանգ առնելով, կարդալով պատահած տողերը։

Տիկին Սոֆիկն ասաց, թե հեռախոսի մոտ են խնդրում ինձ։ Երբ վերադարձա՝ տեսա Վարպետին գլուխը Չարենցի գրքին դրած, լճացած աչքերով, արցունքի երկու կաթիլ գրքի բաց էջի վրա։

* * *

Չարենցի մասին հաճախ ենք խոսել։ Տարբեր ժամանակ տարբեր կարծիքներ էր հայտնում։ Ավելի ճիշտ՝ միշտ էլ մի հաստատ համոզում ուներ, բայց տրամադրության համեմատ ըմբռնման երանգները փոխվում էին։

Վաղուց չէի եղել մոտը, երևի ավելի, քան մի ամիս։ Գնացի։ Ասաց, որ կարդացել է Չարենցին սկզբից մինչև վերջ։

— Կարծիքս ընդհանրապես չեմ ասում։ Վախենում եմ ճիշտ չհասկանան և սխալ բացատրություններ տան։ Եվ հետո, Եղիշեն արժանի է ոգևորության, նույնիսկ կրկնակի չափով, և՛ որպես բանաստեղծ, և՛ մանավանդ իր դժբախտ ճակատագրով։ Դե՛, դու լավ գիտես, ի՛նչ ասեմ։

Մի կում ջուր առավ բերանը և շարունակեց.

— Գլուխ գործոցներ ունի, որոնք հայ գրականության ամենափառահեղ էջերի կողքին կարող են դասվել։ Թույլ գործերը շատ են. երկարախոս է, հաճախ կրկնվող, չմշակված։ Խտացում չեմ տեսնում. ինչ որ կարելի է կարճ ասել՝ ձգձգում է։ Զարմացնում է ինձ նրա ինքնասիրահարվածությունը. մարդ էլ իրեն էդքան գովի՞։ Մի տեղ իրեն հսկա պոետ է անվանում, մի տեղ՝ չգիտես ինչ։

Թերթեց գիրքը, բացեց մի էջ ու կարդաց.

Դարերից եկած անհուն մի պոետ
Եղիշե Չարենց—
Նաիրի երկիր, քո երգիչը վառ,
Օրհներգուն պայծառ
Ու ղավակը մեծ...

— Դե՛, տա՛, տա՛, տեսնեմ, ինչպե՞ս կարելի է։ Եվ այս բոլորը Հեղափոխության թեժ օրերին։ Կամ ինչի՞ նման է, երբ ասում է, որ իրեն ձիրք Իրանն է տվել, խոսք՝ Նաիրին հնամյա, «բայց Հոկտեմբերը կոչեց քեզ հանճարեղ բանաստեղծ»։ Մարդ էլ ինքն իրեն հանճար անվանի։ Տեսնված բա՞ն է։

Լռեց։ Մի փոքր դադարից հետո.

— Չե՛մ սիրում, չե՛մ հասկանում, չե՛մ ընդունում։

* * *

Վարպետը նորից անդրադարձավ «Աբովյանի կյանքին»։ Ասաց, որ Դեմիրճյանը եղել է իր մոտ, ասել է, որ հավանում է, ուզում է գրել։

Մի փոքր լռելուց հետո, ասաց.

— Գրքույկիդ որպես բնաբան կսազեր Ուայլդի հայտնի խոսքը. «Հանճարս շռայլեցի կյանքում, տաղանդս՝ գրականության մեջ»։ Աբովյանը դա ասելու զույգ ավելի իրավունք ուներ, քան սալոնից սալոն անցնող իր պարադոքսներով ու սրամտություններով փայլատակող Ուայլդը։

* * *

Մի օր էլ խոսք բացվեց «Ուստա Կարոյի» մասին։ Արամ Ինճիկյանը, թե՝

— Դա կլինի մեր առաջին փիլիսոփայական վեպը։

Վարպետը տարկեց։

— Առաջ՝ հա, հիմի՝ չէ։

Հարցական հայացքով նայեցինք նրան։

— Դերենիկի վեպը կանխեց։

* * *

Վարպետն ասում էր.

— Շատ զգուշանալն էլ մի բան չի։

Եվ պատմեց, թե ինչպես մի մարդ իրեն ներշնչել է, որ եթե փողոց դուրս գա՝ անպայման տրամվայի կամ մեքենայի տակ ընկնի։ Ու դուրս չի եկել։ Մի օր, մի շաբաթ, ամիսներ։ Երկյուղը սրտում՝ մնում է տանը։ Մի տարի է անցնում, թե ինչքան, որոշում է դուրս գալ։ Դուրս գալն ու մեքենայի տակ ընկնելը մեկ է լինում։

* * *

Մի օր Վարպետը հարցրեց, թե նկատե՞լ եմ, արդյոք, որ որոշ բառեր արևելահայերն ու արևմտահայերը երբեմն տարբեր են ըմբռնում։ Օրինակ՝ «ոչինչ» բառը. մենք ոչինչ ասելով հասկանում ենք միջակ, վատ չէ, բավարար և այլն, իսկ արևմտահայերը՝ վատ է, մի բան չի և այլն։ Այդ տարբերությունը հաճախ թյուրիմացությունների առիթ է տալիս ու քթի տակ ծիծաղելով՝ պատմեց հետևյալ դեպքը.

— Մի օր ինձ մոտ եկավ հայրենադարձ գրողներից այսինչը։ 1947-ին էր, մի երկու ամսվա եկած կլիներ։ Բերել էր ինձ իր մի վիպակը, որ կարդամ։ Կարդացի, միջակ գործ էր։ Մի տասը տասնհինգ օր հետո եկավ կարծիքս իմանալու։ Սկզբում դեսից դենից խոսեցինք, բայց տեսնում էի, որ, իբր հեղինակ, անհամբեր է իմանալու կարծիքս։ Ես այն է ուզում էի խոսակցության նյութը փոխել, անցնել վիպակին, երբ նա հարց տվեց. «Կարդացի՞ք, Վարպետ»։ Պատասխանեցի՝ «Այո, կարդացի»։ Ջհամբերեց, հարցրեց. «Է՞, ինչպե՞ս է»։ Մի փոքր լռելուց հետո ասացի. «Ոչինչ»։ Նա ապշած նայեց դեմքիս. աչքերի մեջ հուսահատություն կար։ Ես ծիծաղեցի։ «Սիրելի՛ս, մեր ոչինչը,— ասացի նրան,— ձեր ոչինչը չէ»։

* * *

Հիմա չեմ հիշում ոչ օրը, ոչ էլ այն, թե ովքեր կային: Միտս է միայն, որ խոսում էինք այն մասին, թե անկեղծությունն ինչ դեր է խաղում ստեղծագործելու պահին: Վարպետին տարօրինակ էր թվում, որ կարելի էր այդ հարցի շուրջը վիճել, քանի որ դա ստեղծագործական հոգեբանության նախապայմանն է: Այդ միևնույն է, ասում էր նա, որ մեկը վիճի, թե մարդ առանց հացի կարող է ապրել: Եվ երբ ներկաներից ամեն մեկը ինչ որ հեղինակություն էր մեջ բերում, մեծ մասամբ Տոլստոյին, ոմանք էլ դեպքեր էին պատմում, օրինակներ հիշում, Վարպետը հետևյալ պատմությունն արեց.

Մի մարդ ոտանավորներ է գրում: Գրում է գիշեր ու ցերեկ: Ըստ երևույթին անհաջող, որովհետև ոչ ոք հանձն չի առնում տպագրել նրա գրածից գոնե մի տող: Չի ընկճվում և շարունակում է գրել: Եվ դարձյալ նույն անհաջողությունը: Ամեն տեղ մերժում են, երբեմն նույնիսկ ծաղրում: Ոչ միայն չի հուսահատվում, այլև համոզված, որ սխալվում են, պարտքի տակ ընկնելով, մի կերպ փող է հավաքում և հրատարակում իր բանաստեղծությունների մի փոքրիկ ժողովածու: Մի քանի օր անց գնում է գրախանութ և իմանում, որ ոչ մի օրինակ չի ծախվել: Մի ուրիշ խանութ է մտնում՝ այնտեղ էլ նույնը: Գրախանութից գրախանութ է անցնում և ամեն տեղ նույն պատմությունը: Մի շաբաթից հետո գնում է իմանալու վաճառվել է, թե չէ, նույնն են ասում՝ չի ծախվել: Վերջապես իմանում է, որ մի օրինակ առել են: Ուրախանում է: Մյուս օրը քաղաքային թերթում ոչնչացնող հոդված է լույս տեսնում: Պարզվում է, որ վաճառված այդ մի օրինակը հոդվածի հեղինակն է գնել: Հոդվածից հետո ծաղրում են նրան: Երբ փողոցով անցնում է՝ ի՜նչ ծաղրական խոսք ասես, որ չեն ասում, իսկ երեխաները խմբերով վազում են ետևից, կոչում «սուտ բանաստեղծ», նույնիսկ քարկոծ անում: Երբեմն պատահել է, որ ստիպված է եղել վազել, մտնել տուն և փակվել՝ դրանց հետապնդումից ազատվելու համար: Գալիս է տուն, ընկնում սեղանին ու

լաց լինում։ Անիծում էր իր ծնված օրը, նզովում աշխարհը, մարդկանց, որ այդքան չար են։ Անցնում են տարիներ և նա մեռնում է։ Այդ ժամանակ էլ գտնվում են մարդիկ, որ դագաղի ետևից ծաղրական բաներ են պատմում նրա մասին։

Մահից հետո ազգականները անհաջողակ բանաստեղծի թղթերի մեջ գտնում են նրա հիշատակարանը։ Նա օր օրի գրել է իր կյանքը, նկարագրել այն տառապանքը, որ քաշում է մարդկանց ձեռին։ Հիշատակարանում գանգատվում է, որ իրեն հասկացող չկա, որ ինքը շրջապատված է չար նախանձով։ Նկարագրում է այն ապրումները, որ ունեցել է, երբ ամեն անգամ տուն է դարձել մերժված, ծաղրված, ոչնչացված։ Նա հասկանում է, որ շրջապատի համար ինքը ոչինչ չի ներկայացնում և տանջվում է այդ մտքից, չարչարվում, պղտորվում։

Ազգականներից մեկը ավելի հումորիկ ձևով, քան լուրջ, առաջարկում է ծախծխել հանգուցյալի գույքը և հավաքված դրամով իր կյանքը դրականության նվիրած և հաջողություն չգտած բարեկամի հիշատակարանը լույս ընծայել ու մի-մի օրինակ բաժանել ազգականներին, որպես հիշատակ։

Այդպես էլ անում են։

Հիշատակարանը լույս տեսնելուն պես սպառվում է։ Մամուլում լույս են տեսնում հիացական հոդվածներ, որոնք ավետում են ընթերցողին, թե ի դեմս հիշատակարանի հեղինակի՝ իրենց երկիրն ունեցել է, բայց չի իմացել, որ կորցրել է իսկական մի գրող։ Մի տասնամյակի ընթացքում այդ հիշատակարանը հրատարակվում է մի քանի անգամ։

Ամենքը Վարպետի պատմածի տպավորության տակ էին։ Եվ նա մի ընդհանուր հետևություն արեց և դրանով սկված վեճն ամփոփեց։

—Անկեղծությունը բավական չէ։ Ճիշտ պիտի որոշվի, թե ինչի է ընդունակ մարդը։ Եթե ստույգ է որոշվում ասպարեզը, անկեղծությունը կա և մարդը պատմելու բան ունի, այն ժամանակ արժեքը ստեղծվում է անկախ նրանից, թե նա այդ ուզում է, թե չէ։

Ես այս դրվագը ժամանակին գրի չեմ առել։ Պատմում

եմ հիշողությամբ։ Ուստի և Վարպետի պատմածը չվստահեցի առաջին դեմքով շարադրել։ Եվ հետո՝ ամենագլխավորը՝ մտքիս մեջ չի մնացել հիշատակարանի հեղինակի անունը, որի համար շատ ցավում եմ։

* * *

1955-ին լրացավ Իսահակյանի ծննդյան 80-ամյակը։ Հոբելյանական օրերին Գրականության ինստիտուտը կազմակերպեց երկօրյա գիտական նստաշրջան։ Վերջին նիստում, դա հոկտեմբերի 27-ին էր, շնորհակալության խոսք ասելու համար ամբիոն բարձրացավ բանաստեղծը։

Ես գրի առա նրա խոսքը։ Այժմ աչքի եմ անցկացնում գրառումը և մի անուն անընթեռնելի է։

Ահա այդ խոսքը.

— Շատ գովեցին ինձ։ Ասացին նույնիսկ հանճար։ Չափազանցություն է։ Հանճարներ քիչ կան, երևի 20—30 հատ ամբողջ աշխարհում, իմ կարծիքով, իհարկե, Գյոթեն, Շեքսպիրը։ Ֆրանսիացիներն ասում են, թե իրենք հանճար չունեն։ Ասում են, իսկ Հյուգո՞ն։ Ասում են՝... բայց ոչ, էն չի։ Մի փոքր հակված են Մոլիերին հանճար կարծելու։ Պուշկինը, որ հսկա է, եվրոպացիները չեն ճանաչում հանճար։ Տոլստոյին համարում են։ Հիմի ինձ ասում են, թե դու հանճար ես։ Արի ու հավատա։ Ես ո՞ւր, դրանք ո՞ւր։ Բայց շատ որ ասում են՝ հավատում ես, դուր է գալիս։ Լսում ենք և, իհարկե, տարան հանում ենք։

Ես շատ ուրախ եմ, որ իմ ժողովուրդը իմ երգի համն առնում է։ Ներեցեք, որ ինքս եմ այդպիսի բաներ ասում։ Հարմար բառեր չեմ գտնում։ Հոգնած չեմ։ Հուզված եմ, հուզված եմ, որ ժողովուրդը գնահատում է, սիրում ինձ։

Աշխարհից գնացողը ոչ թե հետը պետք է տանի, այլ մի բան թողնի։ Ես գիտեմ, որ քիչ եմ արել, նույնիսկ՝ շատ քիչ։ Կյանքս վատնել եմ թափառումների, ընթերցանության, զրույցների և սիրահարությունների մեջ։ Բայց գրել եմ այն դեպքում, երբ չեմ կարողացել չգրել, երբ ասելիքս բուկս է հասել, այստե՛ղ։ Երբեմն գրել եմ թափառումների

*ժամանակ, ձիու վրա: Դրա համար էլ գրածներիս տակը շատ տեղերի՝ քաղաքների և գյուղերի անուններ կան, իսկ երբեմն էլ չկան. դրանք ձիու վրա գրածներն են:*

*Ես գիտեմ, որ մի բան թողնում եմ: Թող քիչ լինի, բայց թողնում եմ:*

*Հուզված եմ այն վերաբերմունքից, որ տեսնում եմ վրացիների մեջ, ուկրաինացիների, ադրբեջանցիների և, իհարկե, ռուսների մեջ:*

*Շատ ուրախ եմ, շա՜տ ուրախ եմ:*

* * *

*Զրուցում էինք: Ասացին, թե նրան հեռախոսի մոտ են խնդրում: Վարպետը դժկամությամբ գնաց: Վերադարձավ զվարթ տրամադրությամբ:*

*— Տղաներն էին:*

*Մի փոքր հետո:*

*— Հրաչիկն էր, մեկ էլ Համոն:*

*Հրաչյա Հովհաննիսյանի և Համո Սահյանի մասին է խոսքը:*

*—Մի շիշ գինի են դրել սեղանին երկուսով նստել, խոսել են գրականությունից ու խմել: Մեկն առաջարկել է իմ կենացը, մյուսն էլ թե՝ արի զանգ տանք: Լավ տրամադրության մեջ էին:*

*Դադար:*

*— Լավ տղաներ են: Լավ էլ բանաստեղծներ: Համոն ինչքան առաջ կգնա՝ չգիտեմ, թե նույնը մնա, ինչ որ հիմա է՝ արդեն լավ է: Հրաչը տեխնիկայից անփույթ է, բայց միտքը լավ է գործում:*

*Նայեց հեռուն:*

*— Լավ բանաստեղծներ են, լավ էլ տղաներ:*

* * *

Հանդիպեցի ակադեմիայի դռների մոտ։ Մտահոգ էր։ Հարցրի, թե ինչի է եկել։

— Մկրտչի մոտ։

Խոսքը Մկրտիչ Ներսիսյանի մասին էր։ Այդ ժամանակ նա Ակադեմիայի վիցե-պրեզիդենտն էր։

— Ինչ է, դարձյա՞լ միջամտության համար,— հարցրի ես։

Ձայն չհանեց։ Լուռ նայում էր ինձ. հայացքի մեջ տխրություն կար, ավելի ճիշտ՝ մի այնպիսի արտահայտություն, որ թույլ էր տալիս մտածելու, թե եկել է ակամա, ստիպված, հարկադրված։

Պատմեց։

Ակադեմիայի գրավաճառ կինը մի տարվա ընթացքում ավել է քսանյոթ հազար ռուբլու պակասորդ։ Պահանջում էին գումարը, և, բացի այդ՝ սպասվում էր պատիժ։

Ես ծանոթ էի այդ պատմությանը։

— Եկել եմ խնդրելու, որ հավաքեն պակասած գումարը և թեթևացնեն կնոջ վիճակը։ Մի երկու հազար ես կտամ։ Թող իրանք էլ տան, բոլորն էլ որ քիչ-քիչ դնեն, աննկատելի գումարը կհավաքվի։ Ունենայի՝ ամբողջը ես կտայի և հարցն էլ կփակվեր միանգամից։

Ասացի, թե մի երկու հազար կարող էր պակասել և չնկատվել, բայց մի տարվա մեջ քսան յոթ հազար ռուբլի՝ անկարելի բան է։

— Ես էլ գիտեմ, որ մեջտեղը գողություն կա։

Դեմքին դժգոհություն կար։ Ես չհասկացա իմ ասածից է դժգոհ, թե ինքն իրենից։

— Ինչ անեմ, եկավ մոտս, լաց եղավ։ Իմ սիրտն էլ, գիտես էլի, փափուկ է։ Որպեսզի հանգստանա, խոստացա միջամտել։

Ես նկատեցի, թե փող կարելի է հավաքել, բոլորն էլ ընդառաջ կգնան, բայց դե գողությունը մնում է գողություն։

— Ես իրեն ասացի, թե բարի մարդիկ շատ կան, բայց հիմարներ՝ քիչ։

* * *

Ցերեկով գնացել էի մոտը։ Ինձ հետ էին երկու երաժըշտագետ ընկերներ։ Ես խնդրել էի, որ Կոմիտասի ակադեմիական հրատարակության համար մի փոքրիկ առաջաբան գրի։ Համաձայնել էր։ Խնդրել էր անցնել իր մոտ առաջաբանի հիմնական դրույթները ճշտելու համար։ Պարզվեց, որ իր մտքինը լիովին համընկնում է նրա հետ, ինչ որ մենք կուզենայինք տեսնել առաջաբանում։

Փոխադարձ ըմբռնումով ստեղծված այս խաղաղ մթնոլորտը, սակայն, հաճախ խախտվում էր հեռախոսազանգերով և այլ այցելուներով։ Նրա ամենահեռավոր ծանոթներն անգամ իրենց պարտքն էին համարում պարբերաբար այցելել նրան, մի որոշ ժամանակ զբաղեցնել։ Դրա մեջ թեև փոքր ինչ նաիվ, բայց մի սրտագին բան կար։ Իսպառ չմտածելով, որ նրանից ժամանակ են խլում, հաճախ պարապ զրույցներով հոգնեցնում էին, համոզված, որ եթե իրենք չայցելեն՝ նա կարող է վշտանալ։

Վարպետը դժգոհում էր, իսկ երբ ընկերներս գնացին և մնացինք մենակ, գանգատվեց, թե պարզապես ժամանակ չունի գրականությամբ զբաղվելու համար։

— Գործ չեմ անում, բայց գործից էլ չեմ պրծնում։

Ի՞նչ խնդրով ասես որ նրան չէին դիմում։ Ծանոթ-անծանոթ գալիս էին մոտը, ոմանք էլ չէին համարձակվում աչքին երևալ՝ գրում էին, խնդրում միջամտել։

— Բանտարկված ունեն՝ գալիս են մոտս, դպրոցից հեռացրել են՝ ինձ են դիմում, մնացել է անգործ՝ խնդրում է միջամտել։ Բնակարան չեն տալիս՝ ես պետք է գնամ խնդրեմ։

Ասացի, թե ինքն այնպիսի ժողովրդականություն է վայելում, որ բոլորն էլ իրավունք ունեն դիմելու իրեն։

Ժպտաց։ Ինքն էլ գիտեր, որ այդպես է, բայց երբ ուրիշն է ասում՝ այլ է։

* * *

Գնացի այցելության։ Սառն ընդունեց, ավելի շուտ՝ անտրամադիր։ Հասկացա, որ անժամանակ եմ եկել. ուզեցի

գնալ՝ չթողեց։ Փափուկ սրտի տեր լինելով՝ իրավունք չէր համարում իր վատ տրամադրությունը դիմացինին հաղորդել։ Ժպտաց, նույնիսկ փորձեց կատակ անել, բայց չէր ստացվում։ Պարզ երևում էր, որ ջանք է գործ դնում իր վրա։

— Ինչ կա չկա, —դիմեց ինձ.

Սկսեցի նորություններ պատմել, զբաղեցնել նրան, միտքը շեղել, գուցե ցրվի։ Մեկ-մեկ նայում էր ինձ, բայց մտազբաղ էր, անարձագանք։ Հասկացա որ չի լսում ինձ։

— Երեկ Թումանյանների մոտ էի. Օհանեսի ծննդյան օրն էր։ Մուշեղի հետ վիճեցինք։

Ասաց, ու լռեց։

Ձայն չհանեցի։ Բնավորությունն արդեն գիտեի։ Վստահ էի, որ մի փոքր հետո կբացվի, կասի ամեն ինչ ու կհանդարտանա։

— Եվ ինչի՞ մասին. Կոմիտասի։ Չի հասկանում. ընդունում է, որ հանճար է, իսկ երբ բացատրում է՝ Կոմիտասը փոքրանում է, անշքանում։ Ես ասում եմ, թե Կոմիտասի մեծությունն այն է, որ հայտնագործեց հայ երգը, ապացուցեց, որ հայ ժողովուրդն էլ իր երաժշտությունն ունի։ Ասում է չէ, նա աքանչելի կատարող էր։ Ասում եմ դա ինչ նշանակություն ունի. կարող էր և վատ կատարող լինել, բայց մեծ՝ իր հայտնագործության մեջ։ Ասում է՝ չէ ու միտքն ուրիշ ուղղությամբ է տանում։ Դե արի ու վիճիր։

Ես հասկանում էի, որ նա իր ասածի հաստատման կարոտըն է քաշում։ Եվ ես չվլացա այդ անել, մանավանդ, խորապես համոզված էի, որ ճշմարտությունը Վարպետի կողմն է։

Ժպտաց։ Իմաստության հասած լինելով, նա պահել էր, սակայն, մանկական իր պարզությունը, այն, որ մի ուրիշն էլ է հաստատում իր ասածը, բավական էր նրան։ Թեև շարունակում էր խոսել ոչ պակաս կրքով, բայց ձայնի մեջ արդեն վրդովմունքի շեշտեր չկային։

— Կոմիտասին համեմատում են Թամանյանի հետ։ Սխալ է. ես սիրում եմ Թամանյանին, դու այդ լավ գիտես։ Գրել

եմ նրա մասին։ Բայց տարբեր են, տարբեր դերով, ըստ էության։ Թամանյանը հայոց ճարտարապետությունը մղել է առաջ, բայց չի կարելի ասել թե հայտնագործել է։ Դրա կարիքը չկար, որովհետև հայտնագործված էր, այնքան բացարձակ, որ օտարներն էլ էին ընդունում։ Հայ երգը մինչև Կոմիտասն էլ կար, իհարկե, թեև շատերը մերժում էին, բայց որն էր՝ ոչ ոք չգիտեր, ոչ ոք չէր կարողացել ասել, թե ա՛յ սա հայկական է, ազգային, իսկ սրանք՝ ո՛չ, քրդական, տաճկական, վրացական են, բայց ոչ հայկական։ Կոմիտասը կարողացավ, որովհետև զգում էր ժողովրդին, ուստի և հասկանում էր, թե որն է հայկական երկրի բնությա՛ն մեջ կյանք առել և որը, թեև հայ շինականի շրթունքներից լսված, բայց դրսից եկած, օտարամուտ։ Կոմիտասը բախտավոր էր, որ ոչ միայն իր հանճարի ուժով զգում էր դա, այլև ուներ տեսական լուրջ պատրաստություն զգացածն ապացուցելու համար։

Ասաց, ապա շեշտակի նայեց ինձ ու վրա բերեց.

— Այդ է Կոմիտասի պատմական սխրագործությունը։

Ես խորհուրդ տվի գրել դրա մասին, արտահայտվել, ասելով, որ նրա արժարժածը սկզբունքային իմաստ ունի։ Ոչինչ չասաց, բայց հայացքի մեջ հավանություն կարդացի։

* * *

Աշոտ Հովհաննիսյանը հրաժեշտ տվեց ու գնաց։

Մարտիրոս Սարյանը նկատեց.

— Կաղնի էր մի ժամանակ, իսկ հիմի...

Դեմիրճյանն ասաց.

—Ծերացավ։

Վարպետը ժպտաց.

— Դո՞ւ ես այդպես ասում, մի իրեն էլ հարցրու, մարդը չի կարծում, թե ծերացել է, ուրիշներն են նրան այդպես համարում։

— Ինչո՞ւ։

Հարցապնդեց ներկաներից մի երիտասարդ։

*—Երիտասարդը կյանքի հետ խաղ է անում։ Կյանքի արժեքը գալիս է տարիքի հետ։ Մարդը, որ ծերանում է՝ ուզում է ապրել։ Է՜հ, ուրեմն, պիտի հավատա որ երիտասարդ է...*

* * *

*Ակադեմիայում որոշել էինք Թադևոսյանի հիշատակին նվիրված երեկո կազմակերպել։ Գիտեի, որ Իսահակյանը սիրում է նրա նկարները և միշտ հիացմունքով է խոսում։ Խնդրեցի հուշերով հանդես գալ։*

*— Չեմ կարող,— ասաց նա,— ես սիրում եմ նրա նկարները՝ Կոմիտասը, Վաղարշապատի փողոցը, խաչի երկրպագումը, պեյզաժները։ Ընտիր նկարիչ է, նուրբ, ներշնչված։ Իսկական բանաստեղծ է։ Հուշ պատմելու համար անձնական մոտիկություն է պետք։ Իսկ ես քիչ եմ հանդիպել նրան, մի երկու անգամ միայն։ Ես արտասահման էի, նա այստեղ։ 26-ին, որ եկա, երկու անգամ միայն տեսնըվեցինք, որովհետև Թիֆլիսումն էր ապրում, իսկ հետո, երբ բոլորովին եկա՝ արդեն չկար։ Հիշում եմ, նազելի մարդ էր, կիրթ, բայց մոտիկից չեմ ճանաչել։ Հիշատակը հարգելու համար կգամ, ներկա կլինեմ երեկոյին, սիրով կլսեմ հուշ պատմողներին, իսկ ինքս հանդես գալ չեմ կարող։*

*Հարցրի Աղաջանյանի մասին։*

*— Սրան ավելի լավ գիտեի։ Ինձ փեսա էր ասում. կնոջս հեռավոր ազգականներից էր։ Ասում էր՝ «փեսա», արի քեզ մի նկարեմ, մուզեյը գցենք»։ Գնացի մի օր. կտավը դրեց առաջը, բայց չնկարեց, երկու ժամ նստեց-նստեց։ Ուսումնասիրում էր։ Մյուսը օրը գնացի, ածխով գծեր քաշեց, հետո ջնջեց։ Նույնը և երրորդ օրը։ Էլ չգնացի։ Շատ էր ասում արի, ասում էի կգամ ու չէի գնում։*

*— Ափսոս որ չի նկարել։*

*— Ես էլ եմ ափսոսում։ Բայց դե մարդն էդպես է. կարծում է, թե էս կյանքը վերջ չունի։*

*Լռեց, հետո ավելացրեց.*

*— Մեր լավագույն դիմանկարիչն եմ համարում նրան։*

* * *

*Մոսկվայից նոր էի վերադարձել։ Երկար ժամանակ մոտը չէի եղել։ Գնացի։ Խոսեցինք տարբեր հարցերից։ Հետո հիշեց, հետաքրքրվեց, թե ինչպես էին անգլիացիները «Համլետ» խաղում. պատմեցի։ Լսում էր մեծ ուշադրությամբ։*

*Ասաց, որ ինքը շատ Համլետներ է տեսել ռուսական, եվրոպական, բայց ոչ մեկն իր վրա այն տպավորությունը չի գործել, ինչ որ Մոսինն։ Եվ ապա անցավ Թատրոնին, սկսեց հիշել թե ինչ է տեսել.*

*— Վենետիկում տեսել եմ Ցակոնիի Օթելլոն։ Արդեն մեծ էր, մազերը ճերմակած, բայց ինչպե՜ս էր խաղում։ Մինչև հիմա էլ միտս է նրա խաղից մի տեսարան։ Հիշում եմ, թե ինչպես, այլևս չկարողանալով հոգեկան ցավին դիմադրել, ընկնում էր գետին, կարծես մի սար փուլ գար։ Ընկնում էր գետին և այդ վիճակում լսում Յագոյին։ Չեմ կարողանում մինչև հիմա մոռանալ։*

*Ասում էր և աչքերը փայլում, վառվում էին, կարծես հիմա էլ աչքերի առաջ նույն տեսարանն էր։*

*—Տեսել եմ նաև Սառա Բերնարին. երկու անգամ, մեկ 1900-ին էր հուլիս—օգոստոս ամսին, խաղում էր Արծվիկ։ Մնացել էի զարմացած։ Մեկ էլ, երբ արդեն ծեր էր, ոտքն էլ փայտացած, դարձյալ նույն դերում։*

*— Տպավորություն թողնո՞ւմ էր։*

*— Տպավորությո՞ւն։ Այո, իհարկե, բայց ավելի ցավագին։*

*Հետաքրքրվեցի, թե էլեոնորա Դուզեին չի՞ տեսել։*

*—Ինչպե՜ս չէ, տեսել եմ, տեսել եմ Նորան։ Նուրբ կին էր, դեմքի վշտահար արտահայտությամբ. մինչև հիմա էլ հայացքիս առջևն է։*

* * *

*Իսահակյանի սեղանին միշտ գրքեր կային, բոլորը նոր և մեծ մասամբ հեղինակների մակագրությամբ։ Դրանց մեջ էր նաև մի պոետի նվիրած գրքույկը, որը չէի տեսել։*

*— Կարդացե՞լ եք։*

*— Չէ, նոր է բերել, բայց կկարդամ։ Դե՛, ես ամեն ինչ*

կարդում եմ, բայց հեղինակի նկատմամբ հավատք չունեմ։ Ինքը գրողը պետք է հավատա իր ասածին, որ իր հավատն էլ անցնի ընթերցողին։ Ձեռքից եկածն անում է։ Գրում է վրաց, հափշտակ, որ չլինի թե մի ուրիշից ետ մնա։ Գործամոլ է, делец։ Ականջ է դնում, թե որտեղ ինչ կարելի է անել և անում է։

Լռեց։

— Էն օրը մի միտք շատ դուրս եկավ։ Հիմի չեմ հիշում, թե որտեղ եմ կարդացել։ Հիշեմ՝ կասեմ։ Վերջապես, դա կարևոր չէ։ Հա՛, ասում է, թե հղացումը տեղի է ունենում կայծակի արագությամբ, բայց կատարումը՝ համդարտությամբ։ Նույնը Էդիսոնն է ասել, բայց ուրիշ կերպ։ Նա ասում է, թե մեծագույն գործերի մի տոկոսն է միայն ստեղծագործություն, մնացած 99 տոկոսը աշխատանք է։ Եվ ճիշտ է դա։ Ուշադրություն դարձրու բնության օրինաչափություններին. միթե նույնը չէ։ Վերցրու երեխայի ծնունդը, հղացումը մի վայրկյան է, իսկ հասունացումը ինն ամիս։ Փղերի մոտ՝ 8 տարի է տևում։

Նորից ձեռն առավ գրքույկը։

— Ա՛յ եթե աշխատել իմանար, թեկուզ և կոչված չլիներ, գուցե մի արդյունքի հասներ. հավաքեր, կուտակեր, ճշտեր, ստուգեր։ Թող չլինի էն մի տոկոսը, բայց մյուս 99-ը հո կլինի։ Շատերն են աշխատանքով բանի հասել։

Ասացի, թե վատ է նաև հակառակը, երբ մարդն ունի էն մի տոկոսը, առանց մյուս 99-ի։

— Էդ արդեն տրագեդիա է, մեծագույն դժբախտություն։

* * *

Նոր գիրքս՝ «Սիրանույշը», տարա Իսահակյանին։ Մենակ էր։ Թերթեց։ Բնականաբար խոսք բացվեց դերասանուհու շուրջը։

— Առաջին անգամ տեսել եմ 90-ի սկզբներին։ Պատանի էի, հափշտակված, երազներով տարված։ Ներկայացումներից հետո երիտասարդներս գնում էինք և թատրոնի դռների մոտ սպասում նրա դուրս գալուն։ Երբ երևում էր շեմքին՝

ծափահարում էինք, գոռում-գոչում։ Երբեմն Շիրվանզադեն լինում էր հետը։ Սիրանույշը ժպտում էր, գլուխ տալիս ու անցնում, իսկ Շիրվանզադեն, հպարտ, չէր էլ նայում մեր կողմը և եթե նայում էլ էր, արհամարհական հայացքով։ Երբ Շիրվանզադեն Սիրանույշի հետ չէր լինում, մենք գնում էինք ետևեց, լուռ անխոս, ասես նրա թիկնապահները լինեինք։ Նա գնում էր հանդարտ քայլերով, հաճախ չիմանալով, որ հետևում ենք իրեն։ Իսկ մենք նրան տեղ էինք հասցնում, և հանգիստ վերադառնում մեր տները, համարելով, որ մեր գանձը, ինչպես համարում էինք նրան, պաշտպանված է չար վտանգից։

Լռեց, հետո շարունակեց.

— 90-ական թվականների վերջերին էր։ Սիրանույշը Ալեքսանդրապոլ էր եկել։ Գնացի մոտը և տարա նրան իմ առաջին գիրքը՝ «Երգեր ու վերքերը»։ Մի քանի օր հետո կանչեց մոտը։ Կարդացել էր, գովեց, ասաց, թե երգերդ սրտաբուխ են, անկեղծ, ջերմ։ Լավ ես գրել, ապրես։ Ասում էր՝ «Դու իմ մեծ մանչս ես»։

Գիրքս նորից ձեռն առավ, թերթեց, մի քանի նկար աչքի անցկացրեց։ Կանգ առավ Հովհաննիսյանի նկարի վրա։ Երկար նայեց, ասես զննում էր։

— Տեսել եմ։ Շատ դերերում եմ տեսել։ Հետագայում հաճախ եմ հանդիպել կյանքում, զրուցել հետը, մոտիկից շփվել։ Գեղեցիկ չէր, բայց հմայք ուներ, ասես ներքուստ ճառագում էր։ Աչքերը լավն էին։ Նրան հանդիպելիս մի զարմանալի զգացում էր համակում ինձ, ոչ միայն ինձ, շատերին։ Մի պատկառանքի զգացում կար մեր մեջ Սիրանույշի նկատմամբ, որ մեզ պահում էր միշտ տարածության վրա։ Թեև կանացի հրապույրով լի, նա մեզ կին չէր թվում։ Կարծես եթերային լիներ, ավելի կնոջ սիմվոլացում, քան կին։ Վիրավորվում էինք, երբ նրա մասին մեկն ու մեկը արտահայտվում էր որպես կնոջ։ Նա վեր էր այդ ըմբռնումից։ Նույնը չեմ կարող ասել Օլգա Մայսուրյանի, Արուս Ոսկանյանի մասին։ Սրանք երկրային էին, իսկ Սիրանույշը թվում էր մի բարձր էություն անշոշափելի, ոչ թե անմատչելի մեկի կամ մյուսի համար, այլ ընդհանրապես։

* * *

Մի քանի օր հետո նորից Իսահակյանի մոտ էի։ Անդրադարձավ «Սիրանույշին»։

— Ասում են լավ գիրք ես գրել։ Մերոնք կարդացել են։ Ես դեռ չեմ հասցրել աչքի անցկացնել։

Ասի՝ լավ ծառայություն չեն մատուցում ինձ։

Զարմացավ, թե ինչու եմ այդպիսի բան ասում։ Ասացի, թե երևի գիրքը վատ չէ, բայց երբ շատ են գովում, չկարդացած մարդն մի այնպիսի վառ պատկերացում է կազմում, որը հետո, ընթերցանության ժամանակ ոչ միայն չի արդարանում, այլև հիասթափություն է բերում։

Ժպտաց.

— Ճիշտ ես ասում։

Մի փոքր հետո ասաց.

—Գիտես, որ շատ երկրներ եմ եղել, միշտ էլ նշանավոր պատմական վայրերը չեն թողել սպասածս տպավորությունը։ Օրինակ՝ Նոտր-Դամը։ Կարդացել էի գրքերում, երևակայությունս ճոխ պատկերացում էր կազմել և հանկարծ... Միայն Վեզուվն էր, որ ցնցեց ինձ, գերազանցեց ու անցավ։ Մի տեսակ մարդու թշվառության զգացում ապրեցի բնության ահեղ ուժի առաջ։

* * *

Երբ Դեմիրճյանի մահվան լուրն առա, շտապեցի նրա տուն՝ կնոջը, քրոջը տեսնելու։ Իսահակյանն արդեն այնտեղ էր։ Թաշկինակն աչքերին հեկեկում էր։

— Ախպե՛ր ջան...

Նրա վիշտն այնքան մեծ էր և ապրած ցավն այնքան խոր, որ ամեն մի նոր եկողի թվում էր, թե հանգույցյալի հարազատը նա է և ոչ թե կինը կամ քույրը, որոնք, կարծես մխիթարված այդ մեծ մարդու լացով, ազնիվ շփոթմունքի մատնված, անհանգիստ էին նրա համար։

* * *

Մի քանի հոգով Իսահակյանի մոտ էինք։ Խոսք բացվեց երջանկության մասին։ Ամեն մեկն իր կարծիքն էր հայտնում։ Վարպետը լուռ էր։ Ձայն չէր հանում և, ինչպես թվաց ինձ, ոչ մեկիս հետ համաձայն չէր։ Երբ դարձանք նրան և ուզեցինք իմանալ կարծիքը, ասաց.

— Ի՞նչ երջանկություն, եթե մահ կա։

* * *

Վարպետը վախենում էր մահից։ Եվ չէր թաքցնում։ Ամեն մի հասակակցի մահ նա ընդունում էր կրկնակի հարվածով։ Աբեղյանը մահացավ, և նա վշտացավ ոչ միայն ընկերոջ և մեծագույն հայագետի կորուստով, այլև այն պատճառով, որ ընկերոջ մահվան փաստը վկայում էր և իր մահվան մերձավորությունը։ Նույնը Մանանդյանի ժամանակ, ինչպես և Աճառյանի մահվան օրերին։

Մի օր ասաց.

— Մոտենում է հերթս։

Ամենից շատ վրան ազդեց Դեմիրճյանի մահը։ Դա նույն կսկիծը չէր, ինչ որ մյուսների մահվան ժամանակ։ Իսահակյանի և Դեմիրճյանի մտերմությունը հնից էր գալիս. բայց վերջին մի քանի տարին այնքան մոտեցան, ընտելացան այն աստիճան, որ ցավ էին ապրում, երբ մի օր միմյանց չէին տեսնում կամ գոնե հեռախոսով չէին խոսում իրար հետ։ Դեմիրճյանը նրա համար և ինքը Դեմիրճյանի համար դարձավ այն մարդը, որից այլևս գաղտնիք չէր պահում։

Դեմիրճյանի մահը կոտրեց նրան. շարքից դուրս եկավ ոչ միայն սերնդակից մի մարդ ընդհանրապես, արժեքավոր մի անձ մեր մշակույթի համար, այլ մի այնքան մոտ ու հարազատ մարդ, որ լցնում էր նրա շրջապատը և որի կորուստով ամայացավ շուրջը։

Վարպետի ներկայությամբ խուսափում էինք Դեմիրճյանի մահվան մասին խոսել։ Եվ եթե պատահում էր, որ մեկը,

*անգիտակ նրա ապրումներին, խոսք էր բացում, Վարպետը, որ խոսելու սիրահար էր, մի տեսակ շրջապատից վախենում էր, ֆիզիկապես մնում մեզ հետ, իսկ մտքով ու հոգով դեպի սիրելի ընկերը։*

* * *

*Մի երեկո ասաց.*

*— Խեղճ Դերենիկը շատ տառապեց։ Ի՞նչ էր նրա կյանքը վերջին երկու տարին։ Տանջանք։*

*Մի կարճ դադարից հետո.*

*— Երբ լսում եմ, թե այսինչը ոտքով հիվանդ է, այնքան չեմ մտածում, թե պիտի մեռնի, դա անխուսափելի է, որքան էն, որ չարչարվելու է։*

*Թեյի բաժակը մոտ քաշեց, բայց չխմեց։*

*— Մի ցանկություն ունեմ, իղձ, փափագ՝ մեռնեմ այնպես, որ ոչինչ չզգամ։ Քնեմ ու չարթնանամ։*

* * *

*Մի առիթով ասաց.*

*— Հարստությունը կուլտուրա չի ստեղծում։ Սպանում է ձգտումը, հոգեկան թուլություն մտանում։*

*Մի փոքր լռելուց հետո.*

*— Երկրների ու ժողովուրդների հետ էլ է պատահում նույնը։ Երբ բնությունը հարուստ է ու շռայլ և կյանքը հեշտ է տրվում, ժողովուրդը անհոգ է մեծանում։ Եվ հակառակը. այն ժողովուրդը, որ քարից հաց է քամում, արժեքներ է ստեղծում։*

* * *

*Գարնան կողմը կլիներ։ Ինչ որ գործով Վարպետի մոտ գնացի։ Տիկին Սոֆիկն ասաց, թե պարտեզումն է։ Վարպետին գտա բահը ձեռին։ Զարմացած հարցրի, թե ինչու է ինքը զբաղվում այդ գործով։*

*Ժպտաց։*

— Ամենից առաջ, ասեմ, որ ֆիզիկական աշխատանքը լավ է ազդում վրաս։ Հենց որ բահը ձեռս եմ առնում, մի տաս տարով ջահելանում եմ։

Բահը դրեց մի կողմ, տեղավորվեց քարե նստարանին։

— Հետո, գիտե՞ս ինչ, ապահով տան զավակները, նկատել եմ, ծույլ արարածներ են լինում։ Ուշադրություն դարձրե՞լ ես. մոծակը սրված կերպարանք ունի. ընդունել է այդ ձևը, որ կարողանա թռչել, ապահովել իրեն, իր տեղը գտնել բնության մեջ։ Իսկ տզրո՞ւկը. տափակ է, անձև։ Մտածե՞լ ես թե ինչի. որովհետև գործ չի անում, ապրում է ուրիշի հաշվին. նեղություն չի քաշել և ինչպես կա, այնպես էլ մնացել է։ Նույնը և մեծամեծների զավակները, ունևոր տան երեխաները. կուշտ և անկարիք կյանքը մղումներից դուրս է պահում նրանց, և մեծ մասամբ մարդ չեն դառնում...

* * *

Մի քանի հոգով Վարպետի մոտ էինք։ Հետաքրքրվեցինք, թե ինչ նոր բանաստեղծություն է գրել։ Սեղանի վրայից վերցրեց մի թերթիկ, հայացքը սահեց նրա վրայով։ Մի տեղ աչքերը փայլեցին. երևում էր, որ հավանած տողերն էին։ Մեկին խնդրեց, որ կարդա։ Նա արագ աչքի անցկացրեց, ապա կարդաց. սկզբում հանգիստ, հետո, ոգևորվելով, կարդաց շեշտով և հանդիսավորությամբ։ Վարպետը կանգնեցրեց նրան.

— Լավ չես կարդում։

Ու թերթիկը վերցրեց նրանից։ Սկսեց կարդալ իրեն հատուկ կմկմոցով։ Ներկաները իրար նայեցին։ Երբ Վարպետը վերջացրեց և մյուսներն իրենց հիացմունքն էին արտահայտում, ես մտածում էի, թե ինչու Վարպետն այդպես վարվեց։ Նա կարդում էր արտաքուստ վատ, ինչպես ասացի, կմկմոցով, բայց զգացումով՝ ներքին մի ջերմությամբ։

* * *

Խոսք բացվեց այն մասին, որ մարդ արարածը մեծ վշտին ավելի է դիմանում, քան մեծ ուրախությանը։

Ես արի վերջերս լսած մի պատմություն։

Մեկին անսպասելի ժառանգություն է հասնում, պատկերացումից դուրս հսկայական մի գումար։ Հարազատները չգիտեն, թե ինչպես հաղորդեն այդ ուրախալի լուրը, որովհետև ժառանգորդը սրտից հիվանդ է լինում։ Իր վրա է վերցնում բուժող բժիշկը, հաղորդում է հիվանդին աստիճանաբար, երբ բանը հասնում է փնկական գումարին, բժիշկը հարցնում է՝

— Ի՞նչ կտաք ինձ, եթե այդպիսի մի մեծ գումար ժառանգելու լուրը բերեմ ձեզ։

— Կեսը ձեզ։

— Իսկապե՞ս։

— Այո։

«Իսկապես» լինում է բժշկի վերջին բառը, ուրախությունից սիրտը պայթում է։

Վարպետն ասաց, թե իրեն հայտնի է մի այլ դեպք. մեկը կորցնում է հսկայական մի գումար, չգիտեմ քանի միլիոն ստերլինգ և այդ վշտից մեռնում է։ Մի ուրիշը գտնում է այդ գումարը։ Սա էլ ուրախությունից է մեռնում։

* * *

Զրույցի ժամանակ հիշվեց մի կին, որը բավական կարդացած է և միշտ աշխատում է ի ցույց դնել իր զարգացածությունը։

Վարպետն ասաց, թե ինքը վաղուց մի տեղ կարդացել է, թե կինն իր խելքն օգտագործում է ձեռքի ժամացույցի պես, որ մարդիկ տեսնեն, հիանան։

* * *

Վարպետը հիվանդ էր։ Գնացի տեսության։ Հետս Անահիտ Սահինյանն ու Լևոն Հախվերդյանն էին։ Այնտեղ ուրիշներն էլ կային։

Խոսք բացվեց այն մասին, թե կյանքում ինչն է շա՜տ լա՜վը, թե վատը։

Մեկը թե.

— Վատը։

Ջհամաձայնեց.

— Լավը։

Ասաց ու լռեց, իսկ հետո շարունակեց.

— Վատը, որ շատ լիներ, մարդիկ վաղուց իրար կերած կլինեին։ Լավն է պահում աշխարհը։

Մեկը թե.

— Գուցե ձգտումը դեպի լավը։

Վարպետը ժպտաց.

— Էն, որ մարդ ձգտում է՝ արդեն լավ է։ Դե որ լավին է ձգտում՝ հո լավ է ու լավ։ Լավով է աշխարհը կանգուն։

* * *

Վարպետի մոտ մարդ կար, հիմա չեմ հիշում, թե ով։ Գործով էր եկել և ես հարմար չգտա վկա լինել նրանց խոսակցությանը։ Մոտեցա գրակալին, ինչ որ գիրք վերցրի, թերթեցի և, ինչպես հաճախ է պատահում նման դեպքերում, առական զբաղմունք չգտած՝ նայում էի շուրջս, դիտում այն, ինչ տեսել էի շատ անգամ։ Եվ հանկարծ՝ սենյակի մի անկյունում նկատեցի տիկին Սոֆիկի կիսանդրին։ Քանդակագործը, որ այն պահին չգիտեի, թե ով է, կարողացել էր տիկնոջ բնավորությունն արտահայտել։ Երբ Վարպետի հյուրը գնաց՝ դարձա նրան.

— Լավ է, չէ՞։

— Ի՞նչը։

Մատնացույց արի տիկին Սոֆիկի կիսանդրին։ Ջայն չհանեց։ Դժկամություն կար դեմքին։ Տիկին Սոֆիկը թեյ բերեց ու ինքն էլ սեղանի մոտ տեղ գրավեց։ Մի կարճ պահ լուռ մնալուց հետո, նայեց կնոջ կողմը և ժպտալով, միայն իրեն հատուկ մի ժպիտ դեմքին, ասաց.

— Շա՜տ էի գոհ մեկից, որ գոհ լինեմ երկուսից. մեկը բավական չէր, հիմի երկուսը։

* * *

Խոսք եղավ երազի մասին։ Վարպետը պատմեց իր կյանքից մի դեպք.

— Մի ամառ գնացել էի Ղազարապատ։ Շոգ օր էր, տանը մնալ չէր լինի։ Դուրս եկա, տեսնեմ, թե որտեղ ստվեր կա։ Մեր դիմացի պատը ահագին ստվեր էր գցել։ Պառկեցի, գլուխս էլ քարին դրի ու քնեցի։ Թե ինչքան ժամանակ էի քնած՝ չգիտեմ, մեկ էլ երազումս տեսնեմ, պատը, որի տակ պառկած եմ, քանդվում է։ Արթնացա։ Սարսափահար ինձ մի կողմ գցեցի։ Իմ փախչելն ու պատի իսկապես փուլ գալը մեկ եղավ։

Կարճ դադարից հետո.

— Ի՞նչ կասես սրան։

* * *

Չեմ հիշում տարին. մի օր խոսեց Ռուբեն Սևակի մասին։ Մի քանի դատողություններ անելուց հետո ասաց.

— Լսիր, պատմեմ քեզ հետևյալը։ Դու, իհարկե, գիտես, որ Սևակն էլ մյուսների հետ զոհ գնաց։ Բայց գիտե՞ս, որ նա ազատվելու միջոց ուներ։ Ճանապարհին, դեռևս Չանղըր չհասած, ուր պետք էր նրանց սրի քաշեին, նահատակների քարավանը ուշ գիշերով կանգ է առնում մի տեղ, մինչև առավոտ հանգիստ առնելու համար, որ հետո լուսածեգին շարունակի ճանապարհը։ Իմանալով այդ, տեղի շեյխը մարդ է ուղարկում իմանալու, թե մեջները բժիշկ չկա՞, արդյոք։ Պարզվում է, որ շեյխի աղջիկը հիվանդ է։ Իսկ Սևակը բժիշկ էր, անմիջապես գնում է։ Արևը դեռ չելած քարավանը շարժվում է, իսկ Սևակը մնում է հիվանդի մոտ։ Մի օր հետո ծանր, մահամերձ հիվանդը սկսում է լավանալ։ Երբ շեյխը աղջկա ժպիտը տեսնում է և հասկանում, որ նրա կյանքը փրկված է, բժշկին կանչում է իր մոտ. «Հայ,— դիմում է շեյխը նրան,— գիտե՞ս որ քեզ ու ընկերներիդ մահ է սպասում»։ Սևակը պատասխանում է. «Գիտեմ»։ Շեյխը հարցնում է նրան. «Դու իմ աղջկան փրկեցիր. ի՞նչ պարգև

ես ուզում», Սևակը ոչ մի ձայն չի հանում: «Ինչ որ մտքովդ անցնում է, ասա՛, ասա՛, մի վախենա»: Սևակը դարձյալ ձայն չի հանում: «Մեղք է, որ քեզ նման մարդը սրի քաշվի,— ասում է շեյխը:— Ուզում ես մի նժույգ տամ քեզ և ուր աչքդ կտրի, գնա»: Սևակը շարունակում է լուռ մնալ: «Ուզում ես մնա ինձ մոտ, աղջիկս քեզ. իրա կյանքով քեզ է պարտական՝ հալալ է քեզ: Իմ հարկի տակ քեզ ոչ ոք չի համարձակվի ձեռք տալ»: Սևակը նայում է շեյխին և ասում. «Ես ոչինչ չեմ ուզում. միայն մի ձի, մի մարդ, որ ինձ հասցնի ընկերներիս. որտեղ նրանք, այնտեղ էլ ես»:

Այս պատմությունը մի անգամ էլ է արել:

* * *

Մի օր ասացի, թե որոշել եմ արտասահման գնալ, շրջել, գոնե մի երկու երկիր այցելել, աշխարհ տեսնել: Հարցրեց, թե ո՞ւր եմ ուզում գնալ: Ասացի՝ Իտալիա կամ Ֆրանսիա, եթե հաջողվի՝ երկուսն էլ:

— Եթե մի տեղ գնալու լինես՝ անպայման Իտալիա: Ֆրանսիան հետաքրքիր է, բայց Իտալիան նախ և առաջ: Թե հաջողվի, գնա նաև Հունաստան, գնա այնտեղ, որտեղ սկիզբ է առել քաղաքակրթությունը: Դա առաջին աստիճանն է, երկրորդը Իտալիան է:

Խորհուրդներ էր տալիս, ոգևորված այնպես էր խոսում, կարծես արդեն որոշված և վերջացած հարց էր իմ գնալը: Թվեց, թե ուր է եղել, որտեղ և որքան ժամանակ: Ես հետաքրքրվեցի, թե ինչպես է եղել, որ Անգլիա չի գնացել:

— Լոնդոն գնալու առիթներ եղել են, բայց միշտ հետաձգել եմ, մտածելով, թե երբ էլ լինի, կգնամ ու կտեսնեմ: Հետո էլ տարիք առա, դժվար եղավ ու այդպես չգնացի:

Կանգ առավ:

— Զարմանալի բան է մարդ ասածդ: Երբ կարող ես, քեզ թվում է միշտ կարող ես՝ հնարավորությանն արժեք չես տալիս: Երբ արդեն չես կարող, նոր սկսում ես գնահատել բաց թողած ռեալ հնարավորությունը: Զղջում ես, ցավում. բայց արդեն ուշ է և ոչինչ չես կարող անել:

* * *

Իսահակյանի մոտ էին Աշոտ Հովհաննիսյանը և Այծեմիկ Ուրարտուն։ Վարպետն ասաց, թե շուտով Ռուբենը գնալու է Հունաստան, հետո դարձավ ինձ։

— Այդ ավելի լավ է, քան Եվրոպայի շուրջ ուղևորությունը։ Ժամանակդ կարճ է, մի տասնհինգ օր, բայց գոնե մի բան կտեսնես, երկիրը կզգաս, կհասկանաս։ Թե չէ, ինչ, օրը մի քաղաք մտնելն ու դուրս գալը ինչի նման է։ Մեկ է, թե քթիդ առջևով մի համեղ ճաշ տանեն և դու հոտն առնես։

Ու սկսեց թվել քաղաքները, որ հնարավոր է շրջել, տեսարժան վայրերը հիշել։ Ասում էր մեզ, բայց մտովին տեղափոխված Հունաստան, ուր եղել էր շատ տարիներ առաջ։

— Անպայման կգնաս գերեզմանատուն։ Այնտեղ մի շիրիմ կա. վրան մի հսկա բրոնզե ցուլ։ Ամերիկացիները իր քաշով մեկ ոսկի էին առաջարկում, հույները չէին տալիս։ Գնա տես և ինձ մի լուր բեր, տեղո՞ւմն է, թե արդեն տարել են։

* * *

Վարպետն այսօր նորից անդրադարձավ Հունաստան գնալուս։ Շատ ուրախ է, որ ինձ հաջողվում է, վերջապես, արտասահման գնալ և այն էլ մի այնպիսի երկիր, ինչպիսին Հելլադան է։

— Երիտասարդ լինեի հետդ կգայի։

Մի քիչ հետո.

— Մի անգամ եմ այնտեղ եղել, ընդամենը մեկ և կես ամիս։ Տասնհինգ օր հիվանդ պառկած էի. բժշկին ասում էր մի բան արա, լավացրու, հետո այնտեղ, որտեղից եկել եմ, փոխարենը մի տարի կպառկեմ։ Միայն թե այստեղ ոտի վրա լինեմ, տեսնեմ։

Ու ընկավ հիշողությունների գիրկը։

— Կանգնած եմ Պարթենոնի առաջ, անցնում եմ հին ավերակների մոտով, և մտքով արդեն Պերիկլեսի հետ եմ,

Սոկրատեսի մոտ, ուշք ու միտքս ամբողջապես տեղափոխվել է հին ժամանակների Աթենքը։ Բայց ահա մի ձայն՝ ճղան ու անախորժ. «Սոկրատե՞ս»։ Սրան հաջորդում են բառեր ու խոսքեր, որ չեմ հասկանում, բայց անեծքի շեշտ ունեն։ Շուռ եմ գալիս՝ տեսնեմ մի մայր ծեծելով տուն է քարշ տալիս իր փոքրիկ ցեխակոլոլ Սոկրատեսին։ Չքանում է պատրանքը։ Չկա Պերիքլեսը, չկա Սոկրատեսը, ու ես վերստին վերադառնում եմ իմ ապրած ժամանակը։

* * *

Հունաստան գնալուցս առաջ էր։
Վարպետը պատմում էր.

— Բարձրացա Ակրոպոլիս։ Հիացած կանգնած եմ Պարթենոնի առաջ. պտտվում եմ չորս կողմը, մտնում եմ ներս, նայում անկշտում։ Ուզում եմ մի քար, մարմարի մի կտոր վերցնել։ Գիտեմ, որ չի կարելի, գիտեմ, որ հետևում և հրսկում են։ Բայց ցանկությունս մեծ է։ Եվ ինչքան ժամանակ է անցնում, այնքան ավելի եմ ցանկանում, գուցե պատճառն այն է, որ արգելված է։ Անցնում էի ցածր սյունաշարի մոտով, ոչ թե մուտքի, այլ ետևի, կգնաս՝ կտեսնես։ Նայեմ և ի՜նչ տեսնեմ՝ գետնին ընկած է մարմարի փոքրիկ, հողապատ մի կտոր։ Ու, երևակայո՞ւմ ես, գլխարկս ցած գցեցի, ուղիղ մարմարի վրա, իբր թե այնպես, պատահմամբ ձեռիցս ընկավ։ Կռացա, բարձրացրի գլխարկս, հետն էլ մարմարի կտորը։ Ու պատկերացնում ես։ Դեռ չեմ համարձակվում նայել, վախենում եմ բռնվել, բայց գնում եմ հպարտ, մի տեսակ՝ ուժ առած, ոչ միայն երջանիկ, այլև աստվածացած։ Հյուրանոց հասա, մտա իմ համարը և տեսա, որ ոչ ոք չկա շուրջս, հանեցի գրպանիցս, նայեցի, երկար նայեցի, համբուրեցի քարի այդ կտորը և հետո ընկա մահճակալի վրա ու լացի, երկար, շատ երկար արցունք թափեցի։

* * *

Հունաստան մեկնելու օրը որոշել էի գնալ Իսահակյանի մոտ և հրաժեշտ տալ նրան։ Չկարողացա, որովհետև ուշ տուն եկա։ Կայարան գնալուս մնում էր հազիվ քառասուն րոպե։ Որոշեցի զանգ տալ։ Հեռախոսը վերցրեց հարսը՝ Բելլան։ Ես ասացի, որ այսօր մեկնում եմ և Վարպետը, եթե պառկած չէ, թող մոտենա հեռախոսին, ուզում եմ հրաժեշտ տալ։ Բելլան խնդրեց մի քանի րոպեով անցնել։ Ես ասացի, որ, դժբախտաբար, չեմ կարող։

Բելլան պնդեց.

—Լավ կլինի գաք, կյանք է, վաղը, ով իմանա, ինչ կլինի։

Ասացի, որ շատ քիչ ժամանակ է մնացել կայարան գնալուս։

—Դուք գիտեք,—վրա բերեց Բելլան։

Մի փոքր հետո հեռախոսը վերցրեց Վարպետը։

— Օրհնում եմ ճանապարհդ։ Իմ աչքով էլ նայիր այդ հեքիաթ երկիրը։ Մի ծուլանա և գրի առ տեսածդ. պետք կգա, թե չէ հետո ուշ կլինի, կզղջաս, որ չես արել։ Է՛հ, ինչ ասեմ. լավ գնաս, լավ գաս։ Թող աստծո աչքը վրադ լինի։ Գաս թե չէ՝ անցիր, չլինի թե ուշացնես։ Ուզում եմ իմանալ, թե ինչ ես տեսել։ Բրոնզե ցուլը չմոռանաս։

* * *

Այլևս նրան չտեսա։ Վերադարձա հոկտեմբերի 16-ին։ Հաջորդ օրը պետք է գնայի իր մոտ։ Եվ ցերեկը քաղաքով մեկ տարածվեց Վարպետի մահվան բոթը։ Շտապեցի Իսահակյանների առանձնատունը։ Դուռը բաց էր։ Առաջինը հանդիպեց Բելլան։

—Բա որ ասո՛ւմ էի։

Հիշեց նա։

Շատ մարդ կար։ Մի մասը նստած էր, մի մասը կանգնած։ Բոլորն էլ գլխահակ էին, կսկծի մեջ։ Ոչ ոք չէր եկել մի ուրիշին ցավակցություն հայտնելու։ Բոլորն իրար էին

ցավակցում։ Եվ դա հասկանալի էր։ Կորուստը ամենքինն էր, վիշտն էլ, սուգն էլ համաշխարհային էր։ Իսկ իմ ականջին հնչում էր նրա ձայնը, այնպես, ինչպես լսեցի վերջին անգամ, ինչպես լսել եմ շատ անգամներ, ինչպես լսել են շատերը, միշտ բարի, միշտ հայրական...

* * *

Վարպետի դագաղը դրված էր Հայֆիլհարմոնիայի փոքր դահլիճում։ Երբ բազմության հետ մտա դահլիճ, ապա միացա պատի տակ շարված գրողներին, հիշեցի Իսահակյանի հետ նրա տանն անցկացրած մի երեկոն։

Երաժշտության մասին էր խոսք բացվել մի օր։ Ներկաներից յուրաքանչյուրը դատողություններ էր անում, ասում, թե ինքը ինչ է սիրում։ Վարպետը ասաց, թե ինքը գերադասում է սիմֆոնիկ երաժշտությունը։ Ամեն մեկն իր նախասիրությունն էր պաշտպանում։ Վարպետը երկար ժամանակ լուռ էր, մի տեսակ ամփոփված ինքն իր մեջ։ Ընկղմված էր հիշողությունների մեջ։

— Մի անգամ, շատ տարիներ առաջ, ուսանող ժամանակս, լսել եմ Բեթհովենի, Յոթերորդ սիմֆոնիան։ Անջնջելի տպավորություն է թողել։ Դրան ոչինչ այլևս չհասավ՝ ինչպե՞ս է գրված և ինչպե՞ս էին նվագում։

Լռեց։

—Չես հավատում, որ մարդ է գրել։ Մարդկային ուժից վեր է, թվում է թե մարդ չի ստեղծել, այլ միշտ էլ եղել է, ինչպես բնության հրաշալիքները՝ երկինքը, լուսինը, աստղերը։

Մոտեցրեց թեյի բաժակը, մի երկու ումպ բերանն առավ։

— Վախճանվել էր համալսարանի փիլիսոփայության պրոֆեսորը։ Բոլորը սիրում էին նրան, մեծ ցավ էր բոլորիս համար նրա մահը։ Համալսարանը ասես միանգամից կորցրեց իր հմայքը։ Նրա հոգեհանգստին էր, որ լսեցի Յոթերորդ սիմֆոնիան։ Հիշո՞ւմ եք երկրորդ մասը՝ մահվան քայլերգը։

Ձեռքը բարձրացրեց. Թվում էր թե ուզում է կամացուկ երգել. շրթունքները շարժվեցին, բայց ձայն չհանեցին։ Աչքերը փակեց, իսկ դեմքը մե՜ղմ ու բարի ժպտաց։ Ինքն իր մեջ երգում էր։

— Հանճարի էն աստիճանն է դա, երբ վերացնում է քեզ, ստիպում մոռանալ, թե որտեղ ես, համակում է քեզ իրմով, տանում հետևից։

Նորից լռեց.

— Ես չգիտեմ մի ուրիշ ստեղծագործություն, որ այդպես արտահայտի մահվան կսկիծը, բայց այնքան խոր, որ միաժամանակ հեռացնի հոգեկան ցավից, մոռացնել տա մի պահ պատահած դժբախտությունը, բարձրացնի, դարձնի փիլիսոփա։ Այստեղ է, որ կյանքը հաղթում է մահվան։

Ու հետո ասաց.

— Ես ինձ երջանիկ կզգայի, եթե իմանայի, որ հոգեհանգստիս ժամանակ երաժշտությունը գեթ մի վայրկյան կարողանա մոռացնել տալ, որ մեռած եմ։

Բոլորը կշտամբեցին Վարպետին, ասացին, թե նրան մահ չկա, ջանացին խոսակցության նյութը շեղել։

Վարպետը ժպտաց.

— Ինձ չհասկացաք. ես էլ մեռնել չեմ ուզում, ոչ էլ ասածս մի քմահաճ կատակ է։ Իմ ասածը ցանկություն է՝ տեսնել մահը հաղթված։ Եթե կսկծի ծանր պահին, երգ լինի թե երաժշտություն, մեկ է, մոռացնել տվեց մահը, գերեց դագաղը շրջապատողներին իրմով, նշանակում է հաղթում է կյանքը։

Երբ համոզվեցին, որ Վարպետի ասածը մի փիլիսոփայական խոհ է, սկսեցին վիճել հետը, հաստատել, թե երբ կսկիծը մեծ է, կորուստը իսկապես ծանր, ոչինչ չի կարող մեզ վշտից կտրել։ Եվ գուցե այս անօգուտ վեճը երկար տևեր, եթե դրությունը չփրկեր տիկին Սոֆիկը, հրավիրելով բոլորին սեղանատուն՝ մի բաժակ թեյի։

Ես չգիտեմ, թե ներկաներից ով ինչպիսի մանրամասնությամբ է հիշում այդ երեկոն, բայց չեմ կարծում, որ նրանք, անխտիր, Իսահակյանի թաղման օրը՝ հոգեհանգստի ժամին, երբ սիմֆոնիկ նվագախումբը Փարիզից նոր եկած

Օհան Դուրյանի ղեկավարությամբ նվագում էր Բեթհովենի Յոթերորդ սիմֆոնիայի երկրորդ մասը, հիշեհին Վարպետի պատմածը, տեսնելով նրա ցանկությունը կատարված։

Արցունքն աչքերին, հարազատները խմբված էին մի կողմում։ Դրոշներն ու արվեստագետները գլխահակ շարված էին պատերի տակ։ Անվերջանալի բազմությունը անցնում էր համրաքայլ։ Դագաղի չորս դին սգո պահակները հաջորդում էին միմյանց։ Չկար անտարբեր հայացք։

Ժողովրդական գործիքների անսամբլն էր նվագում։ Վարպետի երգերն էին երգում։ Սրանց փոխարինեց սիմֆոնիկ նվագախումբը՝ երգչախմբի հետ միասին։ Պուլտին մոտեցավ Օհան Դուրյանը։ Երբ հասավ երկրորդ մասը ու նվագի հնչյունները գալիս մտնում էին մարդու հոգու խորքերը, զարկում սրտի լարերին, հեռանում, հետո կրկին վերադառնում ու նոր ուժով զարկում, ես մտածում էի, որ եղավ այն, ինչ երազում էր Վարպետը։

Մարդիկ հարցնում էին, թե ով է անծանոթ դիրիժորը։ Ոմանք նվագի չափի տակ օրորում էին իրենց գլուխները։ Նվագը համակել էր։ Բոլորի կեցվածքը փոխվել էր, աչքերի արտահայտությունը նույնպես։ Մարդիկ, ես չգիտեմ թե որքան ժամանակ, նվագի հետ էին, ամբողջապես նրա ողբերգական թովչանքին հանձնված։ Այդպես էր գոնե մի կարճ ժամանակ։ Դա Վարպետի ասած կյանքի հաղթանակն էր։ Դա Վարպետի հաղթանակն էր։ Բացահայտ հաղթանակը։ Այլևս ոչ ոք չէր վիճում նրա հետ։

Այդպես են իմաստունները, նրանք հաղթում են նաև մեռած ժամանակ...

* * *

Վերջին գրառումն է ձեռքիս։ Դնում եմ թղթապանակի մեջ ու մտածում, թե մեծ մեղք է ընկնում վրաս. ինչո՞ւ այնքան կամք ու հետևողականություն չունեցա, որ գրառեի ամեն մի այցս։

Փակում եմ թղթապանակն ու դնում մի կողմ։

... Բարձրացնում եմ գլուխս, նայում լուսամուտին։ Եվս

մի ժամ՝ և լույսը կբացվի։ Ի՞նչ է սպասում այսօր մեզ. ո՞վ կծնվի, ո՞վ կմեռնի, ո՞վ ում հետ կգժտվի և ինչքան տղաներ հավիտենական սիրո երդում կտան կամ ինչ մեծ հայտնագործություն կկատարվի՝ ոչ ոք չգիտե։ Կիմանանք հետո։

Ես մոտենում եմ օրացույցին և պոկում հոկտեմբերի 30-ի թերթիկը ու նայում երկա՜ր-երկար։ Երեկ նա այսօր էր, այսօր արդեն անցյալ, ուրեմն և՝ հուշ, հիշողություն։ Հիշողություն, որ ներկայի ուժ ունի։

## ՍՏԵՓԱՆ ԶՈՐՅԱՆ

*«Երևան, Գնունի փողոց, № 37, Ստեփան Զորյանին»— նորից աչքի անցկացրի ծրարի վրա եղած հասցեն և մտա բակը։ Պարզվեց, որ պատշգամբում կանգնածը հենց նա է, ում փնտրում եմ։ Ճանաչեցի ոչ միայն այն պատճառով, որ առաջին անգամն էի տեսնում. պարզապես աչքերին չկար այն պենսնեն, որով պիտի լիներ իմ պատկերացումով Զորյանը, քանի որ այդպես էի տեսել նրան «Տխուր մարդիկ» գրքի լուսանկարում։*

*Հանձնեցի երկտողը, որ գրել էր Պահարեն իր անվանի բարեկամին, իբրև հանձնարարական՝ համալսարանական կրթություն ստանալու ցանկությամբ Թիֆլիսից Երևան եկած գրաբերի մասին, ասելով թե իր երիտասարդ ընկերն է և խնդրում է նրա բարյացակամ ուշադրությունը։*

*Զորյանն առաջարկեց նստել, և սկսվեց զրույց մի բաժակ թեյի շուրջ։ Ըստ էության դա ոչ այնքան զրույց էր, որքան հարց ու փորձ, որի նպատակն էր՝ պարզել իմ ով և ինչ լինելը։*

*Երբ բավական ժամանակ էր անցել՝ տեղիցս վեր կացա և հրաժեշտ տվի։ Զորյանն ինձ օգտակար լինելու պատրաստակամություն հայտնեց և առաջարկեց մեկ-մեկ անցնել իր մոտ։*

*— Կզրուցենք, կխոսենք։*

*Բայց ես այլևս չգնացի։ Չգնացի նաև, երբ նրա կարիքը զգում էի չափազանց։ Համալսարանական քննություններ տալիս, քննվելու էի նաև մաթեմատիկայից։ Չէի հասկանում՝ բանասիրական ընդունվելու համար մաթեմատիկան ինչ գործ ունի։ Չգիտեի, թե ինչ եմ անելու, երբ այդ առարկայից բոբիկ էի։ Միջամտության կարիքն անխուսափելի էր,*

իսկ իմ միակ հեղինակավոր ծանոթը Ստեփան Զորյանն էր։ Զգնացի և չխնդրեցի։ Առաջին հանդիպմանը Զորյանն ինձ թվաց քաղաքավար, նույնիսկ ուշադիր, բայց փոքր-ինչ սառն ու պաշտոնական։ Եղած վերաբերմունքն էլ բացատրում էի պարտադրված, քանի որ ընկերը նամակով դիմել էր իրեն։

Ու ես ցավում էի դրա համար։ Այն էլ շատ։ Հենց թեկուզ այն պատճառով, որ Զորյանին իբրև գրողի սիրում էի, նրա պատմվածքները կարդացել էի հաճույքով, իսկ մի քանիսը՝ մի քանի անգամ։

Ես հետո միայն հասկացա, թե Զորյանն ինչքան նման է իր պատմվածքներին։ Զխորացած ընթերցողին Զորյանը կարող է սառը և անգամ անտարբեր հեղինակ թվալ, մինչդեռ նա ջերմ է, միայն թե այդ ջերմությունը թաքնըված է։ Երբ առաջին անգամ զրուցում էր ինձ հետ, այնպես թվաց, որ նա թեև հարց է տալիս, լսում է պատասխանը, բայց մնում է չեզոք։ Մի խոսքով, նրանցից չէ, որ միանգամից են մտնում կյանքիդ մեջ կամ առաջին իսկ հանդիպումից քեզ առնում են իրենց կյանքի մեջ ու թվում է՝ դա քո առաջին այցը չէ նրա տուն։

Տարիներ անց ավելի ճանաչեցի Զորյանին և, մտերիմ հարաբերությունների մեջ լինելով, հասկացա, որ առաջին հայացքից է այդպես, արտաքին տպավորություն միայն, իսկ իրականում սրտագին բարեկամ է ու ընկեր։

* * *

Իմ առաջին այցը Ստեփան Զորյանին 1932-ին է եղել, աշնանը։ Դրանից հետո Գրողների տանը, որ Լենինի հրապարակի վրա էր, մեկ-մեկ հանդիպում էինք, նա ինձ հարցնում էր՝ «Ինչպե՞ս եք» և վերջ։ 1933-ին, դարձյալ Գրողների տանը, երևի դարձյալ աշնան կողմը կլիներ, նա ինձ հարցրեց, թե ինչո՞ւ չեմ այցելում իրեն։ Եվ առաջարկեց ժամանակ գտնել և անցնել։

Գնացի։ Եվ սկիզբ առավ մի բարեկամություն, որ ինձ համար միշտ թանկ է եղել։

* * *

Փոխադրվեցի բանասիրականի երրորդ կուրսը և համալսարանը թողի։ Պետք էր աշխատել։ Ինձ ասել էին, թե կրտսեր գիտաշխատակցի տեղ կա գրական թանգարանում, որը գլխավորում էր Խորեն-Սարգսյանը։ Ասել էին նաև, որ Զորյանը և Սարգսյանը լավ բարեկամներ են։ Խնդրեցի Զորյանին՝ միջամտել։ Խոստացավ, բայց հարկ համարեց զգուշացնել.

— Խոսելը խոսեմ, բայց ճի՞շտ է, արդյոք, ուսումը կիսատ թողնել։

Ես բացատրություն տվի։

— Ես հասկանում եմ, սիրելիս, բայց մարդ պետք է կրթություն ստանա անպայման։ Երիտասարդ ես, նշանակություն չես տալիս, հետո, տես՝ կզղջաս, և կարող է ուշ լինել։

Ես ասացի, թե հիմա աշխատել եմ ուզում, իսկ հետո կշարունակեմ։

— Այդ լավ է։ Եթե դրությունն այդպես է, որ պետք է աշխատես՝ աշխատիր, բայց հետո, հենց որ հնարավոր համարես՝ շարունակիր ուսումդ։

Ես մի տարի աշխատեցի թանգարանում՝ Խորեն Սարգսյանի ձեռքի տակ։ Եվ քիչ բան չսովորեցի։ Մի օր Զորյանին հայտնեցի՝ վերադառնում եմ համալսարան, և միասին դասընկերներիս։ Ուրախացավ, բայց մի բան ասաց, որ այն ժամանակ գնահատել չկարողացա, հիմա եմ հասկանում և ինքս եմ առիթ ներկայացած դեպքում երիտասարդներին հաճախ ասում.

— Լավ է, իհարկե, խելոք բան ես անում, բայց իմացիր, որ էն մի տարին կորավ-գնաց։

Ես չհասկացա։

— Էդպես է։ Ամեն բան իր ժամանակն ունի։ Կրթությունը, սիրելիս, այն էլ բարձրագույն, սիստեմ է։ Բաց թողածիցդ ինչ-որ բաներ գուցե լրացնես, բայց շատ բան էլ կմնա չլրացված։

Ժամանակն անցավ ու ես հասկացա, թե որքան ճիշտ էր Զորյանը։

* * *

Մի օր խոսեց Շիրվանզադեի մասին.

— Ինչպես է իրեն թույլ տվել հեգնել Սունդուկյանի նման հեղինակին, թե իբր չի իմացել ինչպես գրի՝ «ես սիրում եմ Ձեզ», թե՞ «ես Ձեզ սիրում եմ»։ Ինչպես չի հասկացել, որ ռիթմի խնդիր է։ Ամեն մի հեղինակ խոսքի իր ռիթմն ունի։

Մի անգամ էլ անդրադարձավ Շիրվանզադեին՝ Պռոշյանի կապակցությամբ.

— Ես կողմնակից չեմ մեմուարների, որտեղ մարդը, թեկուզ և մեծ, իդեալականացվում է, հեղինակը կոծկում է նրա մարդկային թուլությունները։ Բայց ինչպես կարելի է գրչակից ընկերոջը ծաղրել։

* * *

Նոր էի անցել Հայպետհրատ աշխատանքի, որ պատմվածքի մրցանակաբաշխություն հայտարարվեց։ Զորյանին հարցրի՝ մասնակցելո՞ւ է։

— Ոչ։

Զարմացա, որովհետև, որպես պատմվածքի վարպետ, կարող էր շահել։

— Չեմ մասնակցում սկզբունքով։

Եվ բացատրեց.

— Մասնակցողը որպես կանոն շահելու հույս ունի։ Այդպես էլ պետք է լինի, այլապես չի մասնակցի։ Եվ այդ հույսից էլ ծնվում է մի ամբողջ հոգեբանություն ոչ միայն շահելու, այլև շահելու դեպքում ինչը ինչպես է լինելու։ Ու հանկարծ... չի շահում։ Հույսերի կործանում։ Եվ մարդը պարզ չէ՞ որ ծանր է տանելու իր անհաջողությունը, քանի որ իրեն նախապատրաստել և հուսադրել էր հակառակ ոգով։

Մի փոքր հետո.

— Եվ ընդհանրապես, սիրելիս, եթե մի լավ բան է սպասվում իմ կյանքում, ինձ տրամադրում եմ բացասա-

բար՝ չի՛ լինելու, չի՛ հաջողվելու։ Եթե գլուխ է գալիս՝ շատ լավ, եթե ո՛չ՝ ոչինչ, մանավանդ որ ինձ տրամադրել էի պատրաստ լինելու բացասական լուծման։

* * *

Հայպետհրատը ձեռնամուխ եղավ Ստեփան Զորյանի ժողովածուի հրատարակությանը չորս հատորով։ Եվ քանի որ բոլոր գործերը չէին ընդգրկվելու՝ առաջարկեցի կոչել «Ընտիր երկեր»։ Դիմադրեց, ասաց, թե լավ չէ։ Ես պնդեցի և նա, դժկամելով, համաձայնեց։ Երբ առաջին հատորը լույս տեսավ, եկավ ու ասաց, թե ինքը լավ չի զգում իրեն, որ ժողովածուն լույս է տեսնում այդ հավակնոտ խորագրով։ Փորձեցի նորից համոզել, ասելով, թե ընդունված է և շատերը, հատկապես բանաստեղծներն այդպես են վերնագրում։ Ռուս ժամանակակից գրողներից մի երկուսի անունը տվի, որոնք այդպես էին կոչել իրենց ժողովածուները, մերոնցից մի երկուսին հիշեցի։

— Շատերի հետ գործ չունեմ։ Դու ինձ լսիր, գենացվալե։

Վրացերեն այս խոսքը, որ նշանակում է սիրելիս՝ հաճախ էր գործածում։

Ասաց, որ գրքի լույս տեսնելու առաջին գիշերը չի քնել, մտածել է, մտածել, մեղադրել իրեն, որ գիջեց, չպնդեց իրենը։

Ասացի՝ Իսահակյանը չառարկեց, որ իր երկհատորյա ժողովածուն նույն այդ վերնագրով լույս տեսնի։

— Իսահակյանը Իսահակյա՛ն է, սիրելիս, նա կենդանի կլասիկ է. ինչ նրան թույլատրելի է, չի նշանակում, թե ինձ ներելի է։

Խնդրեցի բացատրել։

— Ժողովածուն կոչել ընտիր երկեր՝ նշանակում է անհամեստ լինել։ Ինչպե՞ս կարող է հեղինակն ընթերցողին ներկայանալ, ասելով, թե ժողովածուի մեջ ընդգրկված երկերն ընտիր են։ Ընթերցո՛ղը պետք է որոշի՝ ընտի՞ր է թե ոչ, մամու՛լը, քննադատությո՛ւնը, բայց ոչ հեղինակը։ Ա՛յ, ուրիշ բան է, երբ հեղինակը արդեն չկա և նրա գործերից

ընտրություն են կատարում և լույս ընծայում։ Ուրիշը՝ հասկանալի է, բայց ինքը հեղինակը ուղղակի, թե անուղղակի իրեն գնահատական տա, տեսնվա՞ծ բան է։

Եվ նա այնպիսի համառությամբ պնդեց, որ հրատարակչության պատմության մեջ եղավ երևի չեղածը. «Ընտիր երկեր» վերնագիրը երկրորդ հատորից իր տեղը զիջեց «Երկերի ժողովածուին»։

* * *

Զորյանի զրույցների ժամանակ հայ գրողներից երկուսի անունը հաճախ էի լսում։ Մեկը Թումանյանն էր, մյուսը՝ Տերյանը։ Թումանյանի մասին խոսում էր հպարտությամբ, իսկ Տերյանի հանդեպ ուներ սիրահարվածի քնքշություն։ Նա այն համոզման էր, թե հայկական բանաստեղծությունը եվրոպական կատարելության հասավ Տերյանի չափածոյում։ Թումանյանը նրա համար իդեալ էր։ Եվ այդ հանգիստ ու հավասարակշռված մարդուն խիստ վրդովում էր Հովհաննես Թումանյանի հասցեին ուղղված ամեն մի քննադատություն։

* * *

Մի օր հետաքրքրվեցի, թե արևմտահայ բանաստեղծներից որի՞ն է սիրում։

— Դանիել Վարուժան... մեծ բանաստեղծ է։

Հիացմունքով տվեց երկու անուն ևս՝ Դուրյան, Մեծարենց։

Հարցրի Սիամանթոյի մասին։ Ասաց, թե իր վրա տպավորություն չի թողնում։ Լավ հիշում եմ, որ նկատեց, թե նրա հայրենասիրությունը դեկլարատիվ է։

* * *

Գրաքննադատներից բարեկամություն էր անում Խորեն Սարգսյանի հետ։

Զորյանի երկերի ժողովածուի առաջին հատորն արդեն

պատրաստ էր տպագրության։ Հարցրի, թե ինչ կարծիքի է, եթե մի առաջաբան գրվի։ Ասաց, որ դեմ չէ։ Հետաքրքրվեցի՝ իբրև հեղինակ ո՞ւմ է առաջարկում։

— Խորեն Սարգսյանին։

Մի պահ կանգ առավ, բայց ավելի վճռական, քան քիչ առաջ՝ ասաց.

— Միայն նա, ուրիշ ոչ ոք։

Զորյանի գործերի առաջին ընթերցողն էր Խորեն Սերգեևիչը և խորհրդատուն միաժամանակ։ Անվերապահությամբ չէ որ ընդունում էր գրականագետ ընկերոջ դիտողությունները, բայց նրա նկատմամբ ավելի հավատ ուներ, քան մեկ ուրիշի։

Մի օր այսպես խոսեց Խորեն Սերգեևիչի մասին.

— Գուցե թռիչքը մեծ չէ, բայց ունի ամենագլխավորը՝ գրականության զգացողություն։ Քչերին է տրված։ Եվ հետո՝ ազնիվ է գրականության նկատմամբ։ Սա նույնպես շատ կարևոր է և գնահատելի։ Ես հավատում եմ նրան։

* * *

Սիրում էր Գեղամ Սարյանին։ Նրա մի քանի ոտանավորները անգիր գիտեր։ Գեղամն էլ Զորյանին էր սիրում, բարձր էր գնահատում որպես գրողի և բարեկամություն էր անում նրա հետ։

* * *

Պատերազմից առաջ էր։

Գրականության և լեզվի ինստիտուտը հանձն առավ պատրաստելու հայ գրականության պատմության դասագիրք միջնակարգ դպրոցների 8,9 և 10-րդ դասարանների համար։

Այդ դասագրքի հեղինակներից էի։ Գրել էի Հարություն Ալամդարյանին, Մեսրոպ Թաղիադյանին և Խաչատուր Աբովյանին նվիրված գլուխները։

Ստեղծվեց խմբագրական կազմ։ Ընդգրկվեց նաև Ստեփան Զորյանը։

Խմբագիրները կարդացել էին դասագիրքն և իրենց դիտողություններն էին անում հեղինակներին, խորհուրդներ տալիս։

Հիշողությանս մեջ մնացել է Զորյանի դիտողությունը՝ բնաշխարհ բառի սխալ գործածության վերաբերյալ։

Գրել էի, հիմա բառացի չեմ հիշում, թե ինչպես, որ Աբովյանը բնաշխարհը լավ է զգում։ Միտքս այն էր, թե Աբովյանն ունի հայկական բնության զգացողություն։

Զորյանն ասաց.

— Բնաշխարհ բառն այլ իմաստ ունի, քան գործածված է։ Խոսքը բուն երկրի, այսինքն՝ հայրենիքի մասին է։ Հայաստանը բնաշխարհ է Հայաստանից դուրս ապրողների՝ համար։

Միտքս մնաց և այլևս չմոռացա։ Հիմա, երբ հանդիպում եմ բնաշխարհ բառի գործածությանը նույն իմաստով, ինչպես ես էի գործածել, հիշում եմ Զորյանին։

* * *

Գևորգ Էմինի «Նախաշավիղը» դեռ լույս չէր տեսել։ Կարդացի Իսահակյանին, կարդացի նաև Զորյանին։ Հավանեց, ասաց, թե անպայման շնորհք ունի տղան և պետք է գրական ասպարեզ բերել։ Պետք է օգնել, որ ոտքի կանգնի։

Երբ գիրքը լույս տեսավ, ես «Սովետական գրականություն» ամսագրի խմբագիրն էի։ Հարցրի՝ չէ՞ր կամենա, արդյոք, գրախոսական գրել։ Համաձայնեց, գրեց և, ինչպես այդ վայել է ավագին, շնորհավորեց նոր բանաստեղծի մուտքը գրականություն։

* * *

Լրացավ Ավետիք Իսահակյանի ծննդյան 65-ամյակը։ Զորյաններն այդ առթիվ 1941-ին հունվարի 19-ին ճաշկերույթ տվին։ Գրական աշխարհից շատ մարդ կար։

Իսահակյանը, որին ուղղված էին բոլոր կենացները, խնդրեց մի թուղթ և մատիտով գրի առավ «Բինգյոլ» բանաստեղծությունը։ Պատրաստվեց, որ կարդա։ Բոլորը լսեցին։ Վարպետը խնդրեց, որ մի ուրիշը կարդա։ Բոլորին շատ դուր եկավ Իսահակյանի գործը։

Աղմկալի ծափերի մեջ կորան ոտանավորի վերջին բառերը։ Վարպետը ձեռագիրը նվիրեց Զորյանին։ Նորից ծափահարություն բարձրացավ։

Խորեն Սարգսյանը, որ թամադայություն էր անում, առաջարկեց հրապարակել ամսագրի առաջին իսկ համարում ու նայեց վարպետին։ Վարպետն էլ հարցական նայեց ինձ։

— Հիանալի առաջարկ։

Արձագանքեցի ես։

Խորեն Սերգեևիչը ամփոփեց, ասելով, թե որոշումն ընդունվում է միաձայն, մանավանդ որ ամսագրի խմբագիրը համաձայն է, խմբագրական կոլեգիայի անդամներից չորսը ներկա են, մյուսներն էլ, հուսանք, որ դեմ չեն լինի։

* * *

Կարդացի Պարույր Սևակի առաջին ոտանավորներից՝ շոգնորվեց.

— Դատողական է, երկար է գրում, հատակ չի մտածում։

Մի այլ անգամ կարդացի «Ռեքվիեմ» շարքը, որը հաջորդ օրն ուղարկելու էի տպարան ամսագրի հերթական համարում լույս ընծայելու համար, բայց խանգարողներ եղան և լույս չտեսավ։ Ինչպես միշտ՝ ուշադիր լսեց, մի երկու տեղ հուզվեց, խնդրեց որոշ հատվածներ վերակարդալ։

— Թռիչք ունի, թափ, բայց խառն է, մի քիչ էլ մութ։ Հուսանք, որ ժամանակին կհստակվի։

Որդին՝ Լևոնը պատմեց, որ հոր հիվանդանոցում եղած ժամանակը տարել է «Անլռելի զանգակատունը»։ Հայրն առաջարկել է կարդալ։ Լևոնն ասում է, որ ամբողջի մասին ոչինչ չասաց, բայց որոշ հատվածներից ազդվել էր։

* * *

Լրագրերը հաղորդեցին, որ Ստեֆան Ցվայգը մահացել է, Ավելի ճիշտ՝ ինքն ու կինը անձնասպան են եղել։

Պատանեկության տարիներից շատ էի կարդացել Ցվայգի նովելները, կենսագրական ակնարկները և միշտ հաճույքով, հետաքրքրությամբ, տարվելով։ Որոշեցի խմբագրածս ամսագրում հեղինակի մահվանն անդրադառնալ, տպագրել նրա նովելներից գոնե մեկը։ Կանգ առա «Անծանոթ կնոջ նամակի» վրա։ Խնդրեցի Վահե Միքայելյանին թարգմանել։ Մինչ այդ, որքան հիշում եմ, Ցվայգ հայերեն չէր թարգմանվել։

Զորյանին խնդրեցի ամսագրի համար մի փոքրիկ հոդված գրել Ցվայգի մասին։ Հրաժարվեց։ Նրա կարծիքով, լավ կլիներ հայերեն թարգմանել ու տպագրել Կոնստանդին Ֆեդինի այդ առթիվ գրած շատ լավ հոդվածը, որը կարճ է, սեղմ և այնքան լավ է, որ դժվար է գերազանցել։

Մտածեցի, որ լավ կլինի եթե Ցվայգի նման հեղինակը ներկայացվի հայ ընթերցողին ավելի լայն։ Այսինքն՝ հրատարակվի նովելների մի ժողովածու, ընտրելով լավագույնները։ Զորյանը հավանություն տվեց մտքիս։ Կազմեցի թարգմանելի նովելների ցանկը և ցույց տվի Զորյանին։ Ասաց լավ է, բայց ավելացրեց «Լեպորելլան», խոստանալով, որ ինքը կթարգմանի։ Անմիջապես կապվեցի թարգմանիչների հետ՝ Երվանդ Տեր-Մինասյան, Համբարձում Մազմանյան, Արշավիր Խոնդկարյան։ Որոշվեց, թե ով ինչ է թարգմանելու։ Խնդրեցի Զորյանին հանձն առնել խմբագրությունը։ Ասաց սիրով՝ և կարճ ժամանակից սեղանիս դրեց «Լեպորելլայի» թարգմանությունը և խմբագրված ժողովածուն։

— Քիչ գրողների է կնոջ հոգեբանությունն այնպես հայտնի, ինչպես Ցվայգին։

* * *

Եկավ Պետրատ և հարցրեց ծանոթ չեմ, արդյոք, Յանի «Չինգիզ խան» վեպին։

Չէի կարդացել։

Գիրքը թողեց մոտս և ասաց, թե ինքը տրամադիր է թարգմանելու, եթե հրատարակչությունը վեպին ծանոթանալուց հետո համոզվի, որ արժե տպագրել։

Եվ հետո անհարմար զգացումով ավելացրեց.

— Դրամի կարիք ունեմ։

Ես ասացի, թե ինչո՞ւ է անհարմար զգում, մենք բավական մոտ մարդիկ ենք, կարող է անկեղծորեն ասել, որ իրեն փող է հարկավոր։

— Մոտ ենք, դրա համար էլ չեմ ասում։ Հանկարծ չմտածես, թե չարաշահում եմ մոտիկությունը։

Հարցրի՝ ավելի լավ չի լինի՞, եթե հրատարակչությանը ինքնուրույն գործ առաջարկի։

— Պատրաստ ոչինչ չունեմ։

Մի փոքր հետո.

— Ավելի լավ է թարգմանեմ։ Շատ եմ թարգմանել, սովոր եմ։

Հաջորդ օրը պայմանագիր կնքվեց նրա հետ՝ Յանի վեպը թարգմանելու համար։

* * *

Աղջիկս նոր էր ծնվել։ Հետաքրքրվեց, թե անունը ինչ եմ դրել։ Ասացի։

— Լավ է, մանավանդ տարածված էլ չէ։

Հետո խորհուրդ տվեց, որ գրի առնենք նրա հարցերը, պատասխանները, որպես անմիջական տրամաբանության արտահայտության օրինակներ։ Զարմանալի հետաքրքիր բաներ են ասում և անսպասելի։

— Մեր Լևիկը, որ փոքր էր, մի օր հարցրեց, թե ինչպես է այս թռչունի անունը։ Պատասխանեցինք՝ այսպես։ Անմիջապես հարցրեց՝ իսկ ինչպե՞ս է ազգանունը։

* * *

Նար-Դոսի երկերի ժողովածուի հերթական հատորն էր ստացվել տպարանից։ Զորյանը հատորը թերթելուց հետո ասաց․

— Տիրվանզադեի ընդգրկումը չունի, բայց մշակված հեղինակ է։ Հավանում եմ լեզուն։ Ոչ մի դիտողություն չես անի։ Բառի ճաշակ ունի։ Հետո, նուրբ հոգեբան է։

Ես նրա միտքը վերադարձրի դեպի Շիրվանզադեն։

— Մեծ խնդիրներ է դնում, ընդգրկումը լայն է, մասշտաբը մեծ, մեծասլան վեպի կարողության տեր։ Հետո՝ թափ ունի։ Բայց չունի Նար-Դոսի գրական կուլտուրան, լեզվի խնամքը, հոգեբանական թափանցման նրբությունը։

* * *

Մի օր խոսեց Վահրամ Փափազյանի մասին։

— Արտիստ է։ Ոտից-գլուխ արտիստ։

Մի փոքր հետո.

— Բոլորը դերասաններ են, իսկ Փափազյանը արտիստ է։ Ես նկատի չունեմ նրա գեղեցկությունը, որ իսկապես արտակարգ է, նկատի ունեմ նրա էությունը՝ միտքը, հոգին, հայացքը, շարժումը, ամեն ինչ արտիստական է։

Մի կարճ դադար։

— Չեմ հավատում, թե մեր թատրոնը մեկ էլ այդպիսի ծնունդ ունենա։ Դարը մեկ են այդպիսիները աշխարհ գալիս․ Իսկական հրաշք է։ Արվեստի հրաշք է Փափազյանը։ Եվ նրանով հպարտանալու փոխարեն՝ փայտն առած հետևից ենք ընկել, չիմանալով, որ Փափազյաններն այն արտակարգ անհատականություններն են, որոնք չեն հաշտվում կյանքի ընդունված կանոնների հետ՝ ամենաընդարձակ առումով։

* * *

«Վարդանանքի» (առաջին գիրքը) և «Պապ թագավորի» հրատարակությունները համարյա թե համընկան։ Ավելի շուտ՝ ամիսների տարբերությամբ հաջորդեցին միմյանց։ Նոր էր լույս տեսել առաջինը, երբ վաճառքի հանվեց երկ-

բորդը։ Համեմատությունը դարձավ անխուսափելի։ Կարծես այդ երկու պատմավեպերը մրցության էին դուրս եկել միմյանց հետ։ Կարծիքները բաժանվեցին, մի կողմից՝ դեմիրճյանականներ, մյուս կողմից՝ զորյանականներ, մանավանդ որ վեպերի ոճաբանությունը տարբեր էր միմյանցից։

Ես երկու վեպի էլ հրատարակիչն էի, երկու հեղինակի էլ բարեկամը։ Եվ վեճերի ժամանակ, հատկապես թեյասեղանների շուրջը, պաշտպանում էի «Պապ թագավորի» կողմնակիցներից «Վարդանանքը» և հակառակը։

Ես ո՛չ դեմիրճյանական էի, ո՛չ էլ զորյանական, ավելի ճիշտ՝ և մեկն էի, և մյուսը, համարելով, որ այդ ստեղծագործությունները համեմատելի չեն, երկուսն էլ գրական գոյության տարբեր իրավունքներով են գրականություն մտել։

«Սովետական Հայաստան» լրագրում լույս տեսավ իմ հոդվածը «Պապ թագավորի» մասին։ Բավական ընդարձակ քննախոսական էր դա, որը նույն գործի մասին Ակադեմիայում կարդացած դասախոսության համառոտագրությունն էր։

Ես բարձր էի գնահատում վեպը, գտնում, որ, իր գեղարվեստական արժանիքներից բացի, այս երկը պատմագիտական նոր ըմբռնում է արծարծում։ Եվ դա ոչ միայն պատմական առանձին մանրամասերի լուսաբանության առումով։ Նաև հիմնական հարցի՝ Պապ թագավորի կերպարի մեկնաբանության տեսակետից՝ ընդդեմ Փավստոս Բուզանդից եկող և դարերի ընթացքում ավանդական ուժ ձեռք բերած միտումնավորության։ Հոդվածի վերջին մասը վերաբերում էր վեպի գեղարվեստական արժանիքներին ու թերացումներին։

Ես նկատեցի մի բան, բայց եզրակացություն չկատարեցի։ Հոդվածը լույս տեսնելուց հետո բավական ժամանակ անց, հրատարակչությունում, համենայն դեպս ինձ մոտ, ո՛չ Զորյանը երևաց, ո՛չ էլ Դեմիրճյանը։ Եվ դա այն դեպքում, երբ օր չկար, որ Դեմիրճյանը չհայտնվեր, իսկ Զորյանը երկու-երեք օրը մեկ անպայման գալիս էր, թեկուզ մի կարճ ժամանակով։

Գրողների տանը հանդիպեցի Դեմիրճյանին, ինչ-որ հարց տվի՝ պատասխանեց կարճ։ Այդ դեռ ոչինչ։ Հեռացավ անմիջապես, այդ էլ կարծես ոչինչ, բայց, ինչպես ինձ թվաց հարցիս պատասխանելիս ձայնը կտրուկ էր, սառը և անբավական։ Չհասկացա պատճառը, և բնականաբար, վերագրեցի տրամադրության հանկարծակի փոփոխության՝ չմտածելով անգամ այդ վերաբերմունքը ու ինձ մոտ չգալը միմյանց հետ կապելու մասին։

Գրողների տանը, մի այլ օր, Զորյանին տեսա։ Նիստ էր։ Ուզեցի բարևել՝ գլուխը շրջեց։ Ինձ թվաց, որ չնկատելու է տալիս։

Հետո պարզվեց, որ Դեմիրճյանի և Զորյանի վերաբերմունքն իսկապես փոխվել է, և պատճառը իմ հոդվածն է։ Ո՛վ մեկն է նեղացած, և՛ մյուսը։

Զորյանը չէր սպասում, որ իր վեպի շուրջ մամուլում լույս տեսած դրվատական հոդվածների կողքին կարող է հրապարակվել այնպիսին, ուր լինեն նաև քննադատական դիտողություններ։ Եվ հանկարծ հոդվածի հեղինակն էլ՝ իր բարեկամը։ Չեմ կարծում, թե նա թույլ տար իրեն դիտավորություն վերագրել, բայց երևի այն համոզման էր, որ գոնե այդ ժամանակ, երբ ընթերցողները տաք-տաք վիճում էին և տարբեր գնահատականներ տալիս իր և Դեմիրճյանի վեպերին, չարժեր ընթերցողի ուշադրությունը հրավիրել իր գրքի պակասությունների վրա, մանավանդ որ հակված չէր ընդունելու, թե դիտողություններս արդարացի են։

Դեմիրճյանը ոչ մի նշանակություն չէր տալիս հոդվածիս քննադատական մասին։ Նրա համար կարևոր էր հոդվածի բուն՝ առաջին մասը, ավելի ճիշտ՝ հոդվածի պաթոսը։

Նախ, ասաց, թե ավելի բարձր կարծիք ուներ իմ գրական ճաշակի մասին։ Երկրորդ՝ նա շատ զարմացած էր, թե ինչպես «Վարդանանքով» հիացողը կարող է «Պապ թագավորը» հավանել։ Եվ կամ՝ հակառակը։ Կամ-կամ։ Եվ, վերջապես, շատ էլ երկու վեպի հրատարակիչն էի, չէ որ մասնակից էի իր վեպի ծնունդին։ Իսկ երբ մի մարդ մի գաղափար պաշտպանում է դեռ նրա աշխարհ գալուց առաջ— խրատաբանում էր նա,— պետք է առավել ևս պաշտպան կանգնի

լույս աշխարհ գալուց հետո, մանավանդ որ իր իսկ խոստովանությամբ ստացվել է ավելին, քան ինքը սպասում էր։

Դեմիրճյանի հետ հաշտվեցինք։ Եվ նա այլևս դրան չանդրադարձավ։

Զորյանի սառնությունն ավելի երկար տևեց, երևի մի ամսի չափ։ Մի օր էլ նրա հետ հաշտություն կնքվեց։ Գրողների և գրականագետների մի մեծ խումբ մեկնում էր Դսեղ՝ Թումանյանի տուն-թանգարանի բացմանը։ Խորեն Սարգսյանը, Զորյանն ու նրա որդին՝ ու ես հայտնվեցինք մի կուպեում։ Հետո պարզվեց, Խորեն Սերգեևիչն է տոմսերն այդպես վերցրել։ Ճանապարհին, գիշերով, երբ Սարգսյանը քուն մտավ, բացատրվեցինք։

Արևի ճառագայթ ընկավ սառույցի վրա...

Զորյանը նույնպես այլևս չվերադարձավ այս միջադեպին, նույնիսկ այն դեպքում, երբ խոսք էր բացվում իր վեպի մասին կամ էլ «Վարդանանքի», որի գնահատությանը երբեմն-երբեմն անդրադարձել ենք և վիճել, ունենալով տարբեր տեսակետներ։

* * *

Լույս էին տեսել Օլգա Գուլազյանի «Հուշերը»։ Մի քանի օր հետո Զորյանն ասաց.

— Եթե ուզեր՝ գրող կդառնար։

Մի փոքր հետո.

— Այդ ինչ լավ է գրել մանկությունը։ Թաղը, թաղի մարդիկ, դպրոցը, չէ՛, շատ լավ է գրված։ Եվ մեկ էլ՝ ի՜նչ համեստություն։

Լռություն և հետո.

— Վատ է հրատարակված։ Մի՞թե չէր կարելի ավելի լավ թղթի վրա տպագրել։ Հետո ասաց, թե գուցե գրի այս գրքի մասին։

* * *

Մի օր եկավ ու սեղանիս դրեց ոտանավորների տետր։

— Կարդա, հետո կխոսենք։

Տետրը տարա տուն և նույն օրը երեկոյան կարդացի մեծ

հաճույքով։ Հեղինակն անպայման բանաստեղծ էր։ Երկու կարծիք չէր կարող լինել այդ մասին՝ կազմակերպված չափածո, խոսքի կուլտուրա, թարմ պատկերներ, մտքի անսեթևեթ, կասեի անպաճույճ արտահայտություն, միաժամանակ անմիջական տպավորությունների ուժգնություն, անկեղծ հուզականություն։ Տեսրի վրա անունը չկար։

Երկու օր հետո հանդիպեցինք։ Իմ տպավորությունն ասացի։

— Չէի կասկածում, որ կհավանես։ Հեղինակը Բաքվում ապրող մի երիտասարդ՝ է՝ Համո Սահյան։ Շատերից, որ արդեն անուն ունեն, լավ է։ Հավատացած եմ, որ առաջ կգնա։ Պետք է օգնել, պետք է տեր կանգնել։

Ու ասաց, թե ինչպես կարելի է կապվել բանաստեղծի հետ և խնդրեց մտածել նրա գրքույկը հրատարակելու մասին։ Խոստացավ գրքույկի խմբագիրը լինել։

Ես նամակ գրեցի հեղինակին։ Մի որոշ ժամանակ անց լույս տեսավ Համո Սահյանի առաջին գրքույկը՝ «Որոտանի եզերքին»։ Զորյանը այնքան արժեք էր տալիս Սահյանին և նրա հետ հույսեր էր կապում, որ մի օր էլ զեկուցում կարդաց։ «Գրական թերթում» լույս տեսավ Նաիրի Զարյանի հոդվածը. ոգևորված էր ասպարեզ եկած նոր բանաստեղծով։

* * *

Մի օր բավականին անախորժ վեճ տեղի ունեցավ իմ ու Զորյանի միջև։

Նյութը «Վարդանանքն» էր, ավելի ճիշտ՝ վեպի մի մանրամասնությունը, որով հիացած, անզգուշություն ունեցա շեքսպիրյան ոգով գրված համարել։

Խոսքը վերաբերում է հետևյալ տեսարանին. պարսիկներից որպես հայ անիրավված Կոդակը իր վրեժխնդրությանը հագուրդ տալու համար, գիշերվա մի ուշ պահի, երբ իր իշխանը խոր քուն էր մտել, միջելով հանդգնում է ատրուշանը։

Ես պարմացած էի, թե այդպիսի տեսարան հորինելու

համար գրողի միտքը որքան հանդուգն պետք է լինի։ Երկրորդ, համոզված չէի, թե տվյալ հոգեվիճակն արտահայտելու համար կարելի էր գտնել մի ավելի ազդեցիկ մանրամասն, քան դա է։ Եվ, վերջապես, գեղարվեստական կատարումը՝ ցուցք, խորը, քչով շատ ասված և այլն։

Զորյանը համաձայն չէր։ Ես մեղմ եմ ասում, նրան պարզապես վրդովում էր իմ հիացումը։ Նա հնարավոր էր համարում, որ գրական հարցերի շուրջ մոտիկ մարդիկ կարող են տարբեր տեսակետներ ունենալ։ Բայց այս դեպքում նա չէր հասկանում ու ոչ մի կերպ չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ կարելի է հավանել մի տեսարան, որ պարսավելի պիտի համարվի։

Զորյանը վեճերի ժամանակ պահում էր իրեն հանգիստ, առարկում էր առանց կրքի, ավելի տրամաբանելով, համաշխարհային գրականությունից օրինակներ բերելով։ Այս անգամ այդպես չէր։ Վրդովված էր։

— Գրականությունից դուրս բան է այդ տեսարանը։ Միզե՜լ...

Նա չէր հասկանում, չէր պատկերացնում, որ միզելը կարող է գեղարվեստական պատկերացման առարկա դառնալ։ Չէր հասկանում, զարմանում էր և միանգամայն անկեղծ։

Ես էլ ասում էի, թե ամեն ինչ էլ կարող է պատկերացվել ու պատկերվել։ Հիշում էի Շեքսպիրին, օրինակ էի բերում Ռեմարկի վեպից։ Նայած ինչի համար է արվում, և գլխավորը, ինչպես է արվում։

— Նատուրալիզմ է դա։ Հակաէսթետիկական...

Եվ նայում էր ինձ հիասթափված հայացքով։ Ես այն տպավորության էի, որ հարցը ոչ «Վարդանանքին» է վերաբերում, ոչ էլ Դեմիրճյանին, այլ գեղագիտական ելակետին։ Տարիների ընթացքում ճանաչելով ինձ, նրան թվում էր, որ իր նման՝ ես նույնպես չպիտի հավանեմ։ Մինչդեռ խնդիրն ավելի խոր արմատներ ուներ՝ արվեստի առարկան սահմանափակվա՞ծ է, թե անսահմանափակ։

Վեճը տեղի էր ունենում Թեյասեղանի շուրջը։ Եվ տանեցիք, թեև լուռ էին, բայց անհանգիստ հետևում էին խոսք ու

պատասխանին։ Լավ հիշում եմ, որ տիկին Սաթենիկը, կամենալով վերջ տալ անախորժ վեճին, ասաց.

— Այդպես էլ կլինի, այնպես էլ, դուք ինչո՞ւ եք արյուն պղտորում։

Եվ առաջարկեց ինձ թուզի մուրաբա վերցնել, և այդ պահին նայեց ինձ, հասկացնելով, թե լավ կլինի խոսակցության նյութը փոխել։ Ու հակառակ իմ խոր հարգանքին դեպի տիկին Զորյանը և միաժամանակ անկեղծ ցանկությանը՝ վերջ տալու վեճին, չկարողացա շեղել հունը։ Դա իմ ուժերից վեր էր։

Զորյանների տանը ես մնում էի երկար, երբեմն մինչև գիշերվա ժամը մեկը, նույնիսկ երկուսը։ Եթե փորձ էի անում գնալու՝ տանտերն ասում էր.

— Ինչո՞ւ ես շտապում, դեռ վաղ է։ Նստիր, նստիր, նոր ենք խոսքի ծերը բացել։

Տեսնելով, որ չեմ կարողանում փոխել նյութը, որոշեցի գնալ և օգտվելով դադարից՝ բարձրացա աթոռից ու ասացի՝ «արդեն ուշ է, գնամ», թեև դեռ տասնմեկն էլ չկար։

Զորյանն այս անգամ ինձ պահելու փորձ չարեց։

Երբ տուն էի գնում՝ Զորյանները, այդ թվում և Ստեփան Իլյիչը, միշտ խմբվում էին միջանցքում՝ հյուրին ճանապարհելու համար։ Դա նրանց տան սովորությունն էր, ով էլ լիներ հյուրը։ Ստեփան Իլյիչն ամեն անգամ կրկնում էր նույնը.

— Զուշացնես գալդ։

Այս անգամ ոչինչ չասաց։

Տարիներ են անցել, Զորյանը չկա։ Ես էլ արդեն փոքր չեմ, երևի ավելի տարիք ունեմ, քան Զորյանը հիշածս վեճի ժամանակ, ու թեև այն կարծիքի չեմ, թե իրավացի չէի, բայց, անկեղծ ասած, կկամենայի, որ այդ վեճը եղած չլիներ ու ես իմ ավագ ու թանկագին ընկերոջ խաղաղ հոգին վրդոված չլինեի։ Ու եթե հիմա պատմում եմ, ապա նրա համար միայն, որ այդ վեճը պարզում է Զորյանի գեղագիտության ինչ-որ կողմեր։

* * *

Մի օր ավագ որդին՝ Լևոնը, պատմեց «Պապ թագավորի» հետ կապված մի դեպք։

— Անցնում էի բուլվարի մոտով, տեսա բազմություն է հավաքված մեկի գլխին։ Մի մարդ, երևի ուսումնին արդեն մոտ, գիրք էր կարդում, ընդհատում էր ընթերցանությունը, բացատրություններ տալիս լսողներին, հետո նորից շարունակում կարդալ, կրկին բացատրություններ տալ։ Ավելի մոտ կանգնեցի, որ իմանամ, թե ինչ գիրք է կարդում. «Պապ թագավորն» էր։

Զորյանը հուզվեց։ Վեպը մուտք էր գործել ընթերցող լայն շրջանները։ Նշանակում է հասել է նպատակին։

* * *

Ասում էր, թե ինքը հաճախ է անդրադառնում Պուշկինին։

— Պուշկինը խաղաղություն է բերում հոգուս։ Ահա քեզ ներդաշնակության իդեալ։

Մի օր ձեռին տեսա Աննա Ախմատովայի բանաստեղծությունների նոր լույս տեսած ժողովածուն։

* * *

Մի օր ասաց.

— Ժամանակ որ ունենամ՝ գրելու եմ իմ գրքերի պատմությունը։ Գոդեինը կարդացե՞լ ես։ Ա՛յ, մի այդպիսի գիրք էլ ես միտք ունեմ գրելու։ Երբեմն դրանք շատ-շատ հետաքըրքիր կողմեր են ունենում։

Այդ կապակցությամբ խոսք բացվեց գրողի ստեղծագործական կյանքի, նրա խիստ անձնական յուրահատկությունների, նախասիրությունների և հակումների մասին և այդ առթիվ հիշեց, որ Բակունցն իրեն ասել է, թե պատմվածք կամ վեպ գրելիս իր ամենասիրելի զբաղմունքն արդեն գրված երկը արտագրելն է։

* * *

Զորյանի ծննդյան 60-ամյակը նշվեց։ Երեկոն տեղի ունեցավ ռուսական թատրոնի շենքում։ Դահլիճը լիքն էր, բայց իրեն արժանի ջերմություն չկար։ Ես այդպես էլ չհասկացա, թե ի՞նչն էր պատճառը, լավ չէի՞ն կազմակերպե՞լ, թե՞ մի այլ բան։ Վերջը խոսքը տվին Հոբելյարին, նա էլ գործը բոլորովին փչացրեց։ Ասաց, որ ինքը գրականությամբ զբաղվել է իր ազատ ժամերին, երբեք չի մտածել, թե հասարակական գործ է կատարում կամ ժողովրդին ծառայություն է մատուցում, ոչ էլ այն կարծիքի է, թե ինքը մեծ վաստակներ ունի, որ իրավունք համարեր մի այսպիսի հանդեսի, և այս երեկոն էլ կազմակերպվել է հակառակ իր կամքի։

Ոնց որ բռնես ու քեզ համար եկած հարգող մարդկանց գլխին սառը ջուր լցնես։

Ներկաները դժգոհ մնացին։ Ըստ երևույթին գտան, որ համեստությունն էլ մի չափ ունի, որին հասնելիս պետք է կանգ առնել։ Չափի զգացումով աչքի ընկնող Զորյանն այդ օրը խախտեց՝ ծայրահեղության հասնելով։

Երկու օր հետո մոտն էի։ Անդրադարձանք հոբելյանին։

— Ինձ սխալ հասկացան,— ասաց Զորյանը,— ուզում էի ասել, թե ես ավելի թարգմանությամբ եմ զբաղվել, քան գրականությամբ։

Մի պահ լռելուց հետո.

— Ոչ մի հոբելյան, այլևս ոչ մի հոբելյան։

Ու նա չէր հասկանում, թե այդ ինչպես կարողացան համոզել իրեն, որ հոբելյան անի։ Նա հոբելյանների գնում էր, մասնակցում եթե պետք էր, սիրով խոսք էլ էր ասում։ Բայց չէր պատկերացնում իրեն հոբելյարի վիճակում։ Ուշադրության բացարձակ կենտրոնում գտնվելը հակառակ էր նրա բնույթին։ Եվ նա շատ էր զարմանում ու չէր ներում իրեն, որ ուրիշների խելքով ընկած՝ համաձայնել է։

— Ոչ մի հոբելյան այլևս։

Կրկնեց իր քիչ առաջ ասածը՝ երդում տվողի լրջությամբ։

— Այ՝ կտեսնես։

Եվ փոխեց խոսակցության նյութը։

* * *

Սարգիս Մելիքսեթյանի «Հովհաննես Աբելյան» աշխատությունն էր լույս տեսել։ Մոտն էի, թերթում էր գիրքը։ Հարցրի, թե շա՞տ է տեսել Հովհաննես Աբելյանին և ի՞նչ կարծիքի է։

— Շատ եմ տեսել։ Մեծ դերասան էր անպայման, բայց կոպտություն ուներ և ինչ-որ տեղ էլ անմշակ էր։ Հողի տարերքը ուժեղ էր մեջը, նրան կարելի էր համեմատել մեր լեռների հետ։ Ոչ առաջ, ոչ էլ հետո մեր դրամատիկ դերասաններից ոչ մեկի խաղում այդքան հայկականություն չեմ տեսել։

Մի պահ լռեց, մտածեց կարծես և շարունակեց.

— Գիտե՞ս, եթե մշակվեր՝ մի բան գուցե և կորցներ։ Գուցե և այն չլիներ։

Հարցրի, թե ինչ դերեր է հավանել։

— Էլիզբարովը։ Հոյակապ էր, բայց ոչինչ չէր հասնի Բարխուդարին։ Կոթող էր։

Հարցրի, թե իր կարծիքով ով է հիմա շարունակում Աբելյանին։

— Հրաչյա Ներսիսյանը։ Բայց սա կարծես ավելի մշակված է, քան նա, թեև նրա թափը չունի։ Աբելյանը ինձ վրա ջրվեժի տպավորություն է թողել միշտ։

Դադարից հետո.

— Չափազանց հուզական էր, անմիջական, անկեղծ, երբեք անտարբեր չեմ նայել։ Դրամատիկ պահերին արցունքները վազում էին աչքերից. լալիս էր և լացացնում։ Ասում են, թե դերով այնպես էր ապրում, որ փորձերին էլ էին աչքերն արցունքոտվում։ Հա՛, այս էլ ասեմ, որ ոչ մի հայ դերասան չուներ առնականության և քնարականի Աբելյանի ներդաշնակությունը։ Աբելյանից հետո մեկ էլ Հրաչյան։

Հարցրի, թե անկախ կերպարից, ինչ խաղում էր Աբելյանը, ունե՞ր հոգեկան աշխարհի մի անկյուն, որ իրենն էր. միայն իրենը, իր անվան հետ կապված։

— Դժվարանում եմ ասել։ Մասնագետ չեմ։

Մի պահ լուռ մնաց։

— Գուցե... Չէ՛, չէ՛, դժվար է ասել։

Մի շաբաթ հետո մոտն էի և նա ասաց.

— Դա՝ անարդար կերպով հալածվածի ճնշվածության դրաման։

* * *

Լույս էր տեսել Դեմիրճյանի «Քաջ Նազարը»՝ իմ առաջաբանով։

Ասաց, որ կարդացել է առաջաբանը, բայց կարծիք չհայտնեց։ Դա մեծ մասամբ նշան էր չհավանելու։

Մի փոքր հետո ասաց, թե իր խոր համոզմամբ «Քաջ Նազարի» մշակումներից լավագույնը, այնուամենայնիվ, մնում է Թումանյանինը։ Նա հարազատ է ժողովրդական մտածողությանը, ոգուն։ Իսահակյանի մշակումն էլ առանձնապես սրտովը չէր, թեև գտնում էր, որ հետաքրքիր է։

Հետո հարցրեց՝ իսկ ծանո՞թ է ինձ Շանթի մշակումը։ Չէր կարդացել, լսել էր դրա մասին։ Հետաքրքիր է, թե ի՞նչ ուղղությամբ է տարել, հեքիաթի ո՞ր կողմերին է ավելի ուշադիր եղել։

* * *

Ժամանակին գրառում չեմ արել և այդ պատճառով զգուշանում եմ Զորյանի խոսքը բերել բառացի։ Չեմ հիշում առիթն ինչ էր, բայց նա այն միտքը հայտնեց, թե ինքը հիանում է գրողի թափով, բայց հաճախ գրողը հենց իր թափից դառնում է անհավասար, և նկատեց, որ հեղեղն իր հետ ինչ ասես չի բերում։ Գնահատելով հանդերձ՝ ասաց, թե ինքը գերադասում է այն գրողներին, որոնք կարևորություն են տալիս մշակմանը, բառի սաույգ ընտրությանը, ներքին տրամաբանությանը, կառուցվածքին, մասերի համաչափու-

թյանը, մանրուքների նկատմամբ ուշադիր լինելուն, որի բացակայությունը հաճախ բերում է աններելի վրիպումներ, թափթփվածություն։ Վերջապես, երբ հեղինակը գրում է այնպես, ասես, ինքը չկա։

Եվ հետո, հիշում եմ, որ ավելացրեց, թե շատերը զարմանում են, թե ինչու ինքը չի հավանում այսինչ կամ այնինչ համբավի հասած գրողին։ Դա նրան ժխտելու փորձ չէ, այլ գրական նախասիրություն։

* * *

Ուզեցի իմանալ, թե ինչ կարծիքի է Շանթի մասին։

— Ահա մի հեղինակ, մի դրամատուրգ, որ ներկայանալի է նաև այլ ժողովուրդների համար ավելի, քան մեր շատ և շատ գրողներ։

Հարցրի, թե պիեսներից ո՞րն է հավանում, արդյոք «Հին աստվածնե՞րը»։

— Հաջողության բաժինն ընկավ «Հին աստվածներին»։ Ի՞նչ էր կատարվում հայ մտավորականության հետ «Հին աստվածների» առաջին ներկայացումների ժամանակ... Երևի հայ թատրոնն այդպիսի օրեր չի ունեցել։ Գուցե մեկ էլ Պետրոս Ադամյանի ժամանակ։ Շանթին գալիս էին նայելու վրացիներ, ռուսներ, ադրբեջանցիներ։ Թարգմանվեց ռուսերեն, այն էլ երկու անգամ։ Նաև իտալերեն...

Կարճատև լռություն։

— Բայց ըստ իս՝ գլուխ-գործոցը, «Կայսրն» է։ կուռ կառուցվածք։ Ոչ մի ավելորդ տեսարան։

Մի պահ կանգ առավ։

— Ինչպիսի՜ Օհան Գուրգեն էր Փափազյանը։ Երևի չես տեսել։ Այդպես էլ կարծում էի, դու այն ժամանակ փոքր էիր, իհարկե։

* * *

Մի օր խոսք բացվեց Գուրգեն Մահարու մասին։

— Մահարու բանաստեղծությունները չեմ սիրում։ Ար-

ձակը հավանում եմ։ Իմ կարծիքով նա բարձր է ուրիշ արձակագիրներից, որ ավելի մեծ անուն ունեն։

Հետաքրքրվեցի, թե ի՞նչն է նրան գրավողը։

— Նախ՝ բնական է։ Ու երկրորդը՝ գուցե մեզանում միակն է, որի հումորը վշտախառն է։ Դա ես համարում եմ մաքուր հայկական առանձնահատկություն։

* * *

Ես մի ժամանակ տառապում էի բառաստեղծության ցավով։ Գրական թանգարանում աշխատած ժամանակս ավտոգրաֆ բառի թարգմանությունը գտա՝ ինքնագիր։ Երբ ասի ինձ հետ աշխատող ընկերներիս՝ ուրախացան, ոգևորվեցին։ Իմ «հայտնության» օրը Զորյանի մոտ էի։ Նրան էլ ասացի, նա էլ հավանություն տվեց, գովեց։ Բոլորիս սպասում էր հիասթափություն։ Ես հեծանիվի գյուտը նորից անողի վիճակումն էի։ Այդ բառի հայտնությունն արվել էր վաղուց, դեռևս անցյալ դարի 90-ական թվականներին։ Թանգարանային զբաղմունքիս կապակցությամբ անհրաժեշտ եղավ թերթել Ռափայել Պատկանյանի՝ Գևորգ Խալաթյանի խմբագրությամբ հրատարակված երկհատոր ժողովածուն, որի առաջաբանում էլ այդ բառը կար։ Եվ հենց այն իմաստով, ինչ առաջարկում էի ես։

Սառը ջուր մաղվեց բոլորիս վրա։

Երեկոյան նորից Զորյանի մոտ էի։ Ասացի, հանդըստացրեց.

— Շատ մտածելու պետք չկա։ Ստեղծվել է, բայց կիրառում չի գտել։ Հիմա պիտի գործածել։

Մի քանի տարի անց, Պետհրատում եղած ժամանակ, հրատարակության էի պատրաստում Հովհաննես Հովհաննիսյանի ընտիր երկերի մի փոքրիկ ժողովածու։ Ռուսական հրատարակություններից ինձ ծանոթ էր վերնագրային հասկացողությունը։ Մտածեցի, որ լավ կլինի, եթե մենք էլ ունենանք նույն վերնագիրը՝ Հատընտիր։ Հրատարակչությունում առարկողներ կային, խորհուրդ չէին տալիս, ասում էին, թե ճիշտ կլինի ռուսական Избранное-ն հայերեն

արտահայտել ու մեկ բառով՝ երկերի հատընտիր ժողովածու։

Զորյանը և Սարյանը եկել էին հրատարակչություն։ Ասացի նրանց։ Զորյանը հաստատեց։ Սարյանը թե՝ այդ բառը չունե՞նք։

Զորյանը թե։

— Ունենք, բայց ոչ խորագրի հասկացողությամբ։ Մի վախենա, դիր։ Կանցնի և կտարածվի։

Ասացի հրատարակիչ ընկերներիս խորհուրդը։

— Վայ թե ճիշտ են ասում,— դարձավ Սարյանը Զորյանին։

— Կարծում եմ, որ ոչ։ Գործածիր, մի վախենա։ Կարճ ժամանակից կերևա՝ ճիշտ է, թե ոչ։

Եվ հետո ավելացրեց.

— Մի խորհուրդ տամ քեզ. առիթ որ լինի՝ մի ուրիշ գրքի վրա էլ դիր նույն վերնագիրը, թող հաստատվի։

Հետևելով Զորյանի խորհրդին մի տարի էլ չէր անցել նույն վերնագիրը դրի Մայակովսկու ժողովածում հրատարակելիս։ Մի քանի տարի անց, չեմ հիշում 1945-ին էր, թե 1946-ին, այդ վերնագրով հրատարակեց իր ժողովածուն նույնիսկ Գեղամ Սարյանը։ Հետո նաև Հովհաննես Շիրազը։

Եվ այսպես, «Հատընտիրը» մտավ գործածության մեջ։

Տարիներ անցան։ Թատերական մի հավաքույթի, որին ներկա էր և Զորյանը, գործածեցի մի բառ՝ ընդերել։ Նա ուշադրություն դարձրեց դրա վրա։ Ես ասացի, որ внедрить բառն եմ հայերենի թարգմանել, բոլորը գործածում են արմատավորել, այսինքն՝ укоренить։

Զորյանը մտածում էր։

— Երևակայիր, ինձ դուր է գալիս։ Բայց վախենում եմ արմատ չձգի։ Լեզուն զարմանալի բան է, մեկ էլ տեսար՝ չընդունեց։

Զորյանի կասկածն անհիմն չէր։ Իմ ուսանողներից մեկը գործածեց մի քանի անգամ, հետո դադարեց։ Վերջերս դարձյալ հանդիպեցի մի ուրիշ ուսանողի հոդվածում։ Չեմ հասկանում՝ չի մտնո՞ւմ, թե դժվար է անցնում։ Ճիշտ ու հաջող գտնված բառը միանգամից է գործածություն գտնում, և այնպես՝ ասես առաջին անգամ չէ որ գործածվում է։

* * *

*Մի անգամ էլ, զրույցի ժամանակ, անդրադարձանք բառաստեղծությանը։*

*— Նոր բառ ստեղծելը այնքան էլ հեշտ գործ չկարծես։ Լեզու իմանալը քիչ է և ցանկություն ունենալն էլ բավական չէ։ Բայց նորաստեղծ բառը գնահատել կարողանալն էլ հեշտ գործ չէ։*

*Ու բերեց երկու օրինակ։*

*— Ելույթ բառը ստեղծել է Թադևոս Ավդալբեկյանը։ Աբեղյանը սկզբում չէր հաշտվում, նույնիսկ ծաղրում էր։ Կամ էլ, օրինակ,* образ*-ը օբրազ էինք գրում, կամ՝ պատկեր, վերջը Տիգրան Հախումյանը գտավ՝ կերպար, բայց արի տես, որ Լևոն Քալանթարը չէր ընդունում, ասում էր երկար է և առաջարկում էր կերպ։*

*Լռեց։*

*— Հիմա որ ժամանակ է անցել ու այդ երկու բառն էլ սովորական են դարձել, մարդ նախ զարմանում է, որ դրանք չեն եղել ու վաղուց չեն ստեղծվել, երկրորդն էլ՝ զարմանում ես, որ Աբեղյանի ու Քալանթարի նման մարդիկ միանգամից չկարողացան ընկալել։ Եվ այն դեպքում, երբ Աբեղյանը բառաստեղծման փորձ ուներ։ Գիտե՞ս չէ, որ ռազմական տերմինների բառարան է կազմել, նաև բժշկական տերմինները մշակողներից է։*

* * *

*Մի օր ասաց.*

*— Օտար բառերի առատ գործածությունը չի կարող կասեցնել լեզվի զարգացումը, եթե միայն ծայրահեղության չհասցվի, ինչպես նաև օտար բառերից խուսափելու միակողմանիությունը։*

*Լուռ մնաց։*

*— Լեզվի պահպանման ամենակարևոր ազդակը մտածողությունն է։ Սրա խախտման առաջն է հարկավոր առնել, պետք է այնպես անել, որ մտածողությունը պահպանի իր*

ազգային-ժողովրդական հիմունքները, երբեմն-երբեմն թարմանալով այլ լեզուներից փոխառումներ անելով։ Բայց դա պետք է արվի շատ զգույշ, չափն իմանալով։ Տարահյուսությունն է գլխավորը, դա որ հայկական եղավ, մնացածը վախենալու չի։

Մի պահ կանգ առավ։

— Այս ասպարեզում դեղագործի զգուշություն է պետք. եթե դեղագործը սխալվի և մի միլիգրամ ավել տա դեղը՝ ճակատագրական կլինի հիվանդի համար։ Այստեղ էլ չնչին անզգուշությունն իր հետ անուղղելի ավերումներ է բերում։

Հայացքը կենտրոնացավ։

— Զգարմանաս, եթե ասեմ, որ լեզուն պահպանում են մեկ նրանք, որ մի այլ լեզու չգիտեն, մեկ էլ նրանք, որ շատ լեզուների են տիրապետում, բայց հայերենը հիմնավոր գիտեն։ Այդպիսին էր, օրինակ, Հովհաննես Հովհաննիսյանը։ Հայ գրողներից ոչ մեկը հայերենի նրա զգացողությունը չուներ։ Գրաբար գիտեր։ Գիտեր նաև բարբառներ։ Գիտեր օտար լեզուներ՝ ֆրանսերեն, գերմաներեն, անգլերեն։ Գիտեր հին լեզուներ՝ լատիներեն, և հունարեն։ Իսկ ռուսերեն գիտեր այնպես, որ ռուս գրողները նրա մոտ խորհրդի էին գալիս։ Ա՜յ ումից պետք է իսկական հայերեն սովորել։ Հա՜, այս էլ ասեմ, եթե չգիտես։ Հովհաննիսյանը իրավաբանական տերմինների ստեղծման հանձնաժողովի մեջ էր։ Եվ եթե մենք հիմա ունենք այդ ասպարեզից օրինակելի տերմիններ, ապա, իհարկե, Հովհաննիսյանի շնորհիվ։

* * *

Մի օր ասաց, թե գրականագետներից իր վրա միշտ լավ տպավորություն է թողել Վահրամ Թերզիբաշյանը։

— Լավ գրականագետ է, ես նրա հոդվածները հաճույքով եմ կարդում։ Ճաշակ ունի, շատ բան գիտե, մոտեցում ունի, հետաքրքիր մտքեր, դատողություններ ունի, նաև սուր աչք, դիտողականություն։ Բայց ափսոս, որ թափթփված հեղինակ է, գրածը մշակելու, կատարյալ դարձնելու սեր չունի։

* * *

Մի օր ցերեկով, ժամը երկուսը կլիներ, գնացի՝ առանց զանգահարելու։ Շտապ գործ ունեի։ Այն ժամանակ Զորյանները ապրում էին Աբովյան փողոցում։

Հարցրի՝ չե՞մ խանգարում։

— Բա դու չգիտե՞ս, գենացվալե, որ ես մինչև մեկն եմ աշխատում։

Ու ձեռքը տարավ դեպի սեղանը, որի վրա թանաքաման էր դրված, գրիչ և մեկ էլ գրելու պատրաստ թուղթ, կողքին՝ ձեռագիր։

Հարցական նայեցի իրեն։

— Աղայանի մասին գրածս հուշն է։ Վաղը ակսելու եմ արտագրել։ Դե՛, այսինքն՝ մշակել, լավացնել։

Հետո նկատեցի, որ չգրված թղթի վրա գրել էր վերնագիրը՝

«Ղազարոս Աղայան»։

Այդ ժամանակ նա տպագրության էր պատրաստում հուշերի գիրքը։

* * *

«Սիրանույշ» գրքից մի օրինակ տարա Զորյանին, թերթեց, մի երկու լուսանկարի վրա կանգ առավ, երկար նայեց։ Հասկացա, որ միտքը գնաց հեռու, դեպի Սիրանույշի ժամանակները։ Բայց ձայն չէր հանում։

Հարցրի՝ տեսե՞լ է բեմում։

— Շատ։

— Իսկ կյանքո՞ւմ։

— Մի երկու-երեք անգամ։

Ու հետո ասաց.

— Փայլում էր բեմում, կախարդում հանդիսատեսին, իսկ կյանքում համեստ էր, վերին աստիճանի համեստ, պահում էր իրեն շատ սովորական, չընդգծելով իր ով լինելը։ Չեմ հիշում, որ հավաքույթների ժամանակ իր անձը կենտրոն դարձներ։

* * *

Զորյանի ելույթները գրական մեծ հավաքույթներում՝ համագումար, պլենում, ընդհանուր բնույթի էին՝ լեզվի մաքրության խնդիր, վարպետության հարցեր, կլասիկներից սովորելու անհրաժեշտություն և այլն։ Այդ մասին խոսում էին, ասում, թե ինչու ասածը չի մասնավորեցնում մեր գրականության օրինակներով։ Ես ուզեցի, որ նա իմանա դա և մի օր հաղորդեցի իրեն, ասացի, թե դժգոհում են, բայց անուններ չտվի։

Նախ՝ չհամաձայնեց, ասաց, որ դա այնքան էլ այդպես չէ ու հիշեց, թե ինչպես է ինքն իր ելույթներում գնահատել նոր, շնորհալի բանաստեղծների և արձակագիրների առաջին գործերը և հետո գրական առանձին երկերի քննարկումների ժամանակ քննադատական դիտողություններով ելույթներ ունեցել։ Եվ ասես, իբրև ապացույց, իր ասածների՝ գրասեղանի գզրոցից հանեց ու դրեց իմ առջև մի հոդված, բավական ընդարձակ, որ, ինչպես ինքն էր ասում, գրել էր 1950-ին, բայց հետո հրաժարվել տպագրելու մտքից։ Նա ասաց, որ այդ հոդվածը գրական մանրուքների մասին է՝ դիտողական, հոգեբանական, տրամաբանական, համեմատությունների, լեզվական թերացումների։

Ասաց, թե մեր գրողները գրական մանրուքին կարևորություն չեն տալիս, մինչդեռ անցյալում քննադատությունը Տոլստոյի նման հեղինակին կշտամբել է «Պատերազմ և խաղաղություն» վեպի մի արտահայտության համար՝ «քսանութերկուամյա գեներալ», գրում էին՝ չի կարելի հասկանալ, թե ի՞նչ է ուզում ասել. գեներա՞լն է քսաներկու տարեկան, թե՞ քսաներկու տարվա գեներալ է։

Եվ նա ասաց, որ ինքը վերցրել է մեր վեց արձակագրի գրքերի առաջին էջերը, որպեսզի չմտածեն, թե ինքը տենդենցիոզ է և որոնել ու գտել է գրքի թույլ էջեր։

— Առաջին էջը,— նկատեց նա,— հեղինակները սովորաբար մշակում են ավելի խնամքով։

Բացի այդ՝ քննության էր առել նաև չորս բանաստեղծի նյութերը, հիմք ունենալով «Սովետական գրականության

անթալոգիան» մտածելով, որ, եթե արժանացել են տեղ գրավելու հոբելյանական հրատարակության մեջ, ուրեմն նրանք հեղինակների լավագույն էջերից են։

Ու նա պատմեց, որ հոդվածը տարել է «Սովետական գրականություն», Սողոմոն Սողոմոնյանին,— նա էր խմբագիրն այն ժամանակ։ Սա էլ հավանել է ու ասել, թե անպայման կտպագրի։ Մի օր էլ հավաքում է կոլեգիայի անդամներին, որ Զորյանը կարդա հոդվածը։ Ոչ ոք չի առարկում, բայց չի հրատարակել, հասկանալով, որ համատարած ու փոխադարձ գովեստների այդ շրջանում իր հոդվածը չի ներվի, և առաջին հերթին հենց այն գրողների կողմից, որ դժգոհում են, թե Զորյանն ընդհանուր է խոսում։ Ու այդպես, ահա քանի տարի է՝ հոդվածը մնացել է իր թղթերի մեջ։

* * *

Ի տարբերություն Դեմիրճյանի՝ գրական երկի մանրամասների մշակման սեր ուներ։ Ստորակե՞տ, թե բութ կամ բառերի դասավորությունը եւ թե առաջ՝ կարող էին նրան երկար զբաղեցնել։ Մի օր ասաց, թե ինքը եկել է այն եզրակացության, որ շեշտերով այդքան հաճախ կարիք չկա ծանրաբեռնել շարադրանքը։ Դեպք կա, երբ շեշտը դնես, թե չէ, ընթերցողը մեկ է կարդալու է շեշտով, որովհետև խոսքն ինքնաբերաբար վերցնում է շեշտը։ Օրինակ բերեց՝ «այդ օրը հուզված էին և ամուսինը, և կինը»։ Ինչո՞ւ ընթերցողի աչքը զբաղեցնել շեշտի նշանով, երբ լինի, չլինի, միևնույն է, ընթերցողը ինքնաբերաբար շեշտով է կարդալու։

* * *

Հուշերի գիրքը խմբագրելու օրերին հարցրի, թե այդ ինչպե՞ս է պատահել, որ Չարենցի մասին չի գրել։ Ես ունեի իմ բացատրությունը, բայց ուզում էի իմանալ, թե ինքն ինչ կասի։ Ինձ թվում էր, որ Չարենցի բուռն կյանքը, անհավա-

սարակշիռ խառնվածքը երևի չեն բռնում այն հանդարտ ոճին, որով Զորյանը գրում էր իր հուշ-դիմանկարները։

— Մտադիր եմ գրել։ Եվ կգրեմ անպայման, ուրիշների մասին էլ եմ գրելու՝ Թումանյանի, Կոչոյանի։ Մի սա հրատարակենք, հետո էդ էլ կանենք։

* * *

Նա մի օր անդրադարձավ բավական ժամանակ առաջ տեղի ունեցած մի խոսակցության։

— Հիշո՞ւմ ես, հետաքրքրվում էիր Չարենցի հուշերով։ Ուզո՞ւմ ես մի հատված կարդամ։

Եվ կարդաց սկիզբը։

Պատմում էր, թե ինչպես Չարենցի «Դանթեական առասպելի» մասին «Մշակ» լրագրում լույս է տեսել Գարեգին Լևոնյանի դրվատական գրախոսականը։ Չարենցը գալիս է «Մշակի» խմբագրատուն, համոզված, որ այնտեղ կտեսնի և կծանոթանա իր քննադատի հետ։ Լևոնյանը չի լինում։ Իսկ Զորյանն այդ ժամանակ աշխատում էր «Մշակում» որպես թարգմանիչ։ Այստեղ էլ տեղի է ունենում նրանց ծանոթությունը։

Ասաց, որ հիմա պատրաստում է շարունակությունը, որը նվիրված է Չարենցի և Արփենիկի հարսանեկան հանդեսին։

* * *

Մոսկվա էր մեկնում։ Գնում էին շատ գրողներ։ Բոլորի համար ինքնաթիռի տոմս էին վերցրել։ Զորյանը մեկնելու էր երկու օր շուտ՝ գնացքով։

Հետաքրքրվեցի, թե ինչու սավառնակով չի գնում։

— Ես մեր պապերի օրինակին եմ հետևում։ Ոտքս հողից կտրել չեմ սիրում։

Այսպես ասում էր և հաճախ կրկնում, թեև նա սավառնակ էր նստել դեռ 30-ական թվականներին, երբ դա երթևեկության տարածված ձև չէր։

* * *

Վահրամ Փափազյանի «Հետադարձ հայացքի» առաջին գիրքը խմբագրելիս հաճախ էի լինում Զորյանների տանը։ Եվ պատմում էի մեկ այս կտորը, մեկ այն։ Զորյանն էլ հաճույքով լսում էր։

— Դե՛, նա հարուստ կյանք է ունեցել, պետք է որ պատմելու շատ բան ունենա։

Շաբաթը մեկ լինում էի և ամեն գնալիս մի նոր բան պատմում։ Ինքս ոգևորվում էի և նրանց էլ ոգևորում։

Մի օր էլ հետս վերցրի մի-երկու հատված և պատմելու փոխարեն կարդացի։

Զորյանը հիացավ։

— Հաճելի անակնկալ։

Աչքերը հաճույքից փայլում էին։

— Ինչպիսի՜ գրող է։

Եվ դրանից հետո խմբագրածս մասից հատվածներ էի տանում և կարդում։ Զորյանն անհամբեր էր լսելու և խնդրում էր ավելի հաճախ լինել։

Ու մի օր ասաց.

— Հիմա մեր գրողներից ոչ մեկն այդպես գրել չի կարող։

* * *

«Հետադարձ հայացքի» առաջին գիրքը, ընթերցող հասարակության վրա ցնցող տպավորություն գործեց։

Գիրքն ուներ, մեղմ ասած, չհավանողներ, ավելի ճիշտ՝ հակառակորդներ և՛ թատերական աշխարհից, և՛, մանավանդ, գրական։ Զորյանն ու ես հաճախ ենք անդրադարձել և չենք կարողացել բացատրել այդ չարակամությունը։

— Ի հեճուկս դրանց,— մի օր ասաց Զորյանը,— կկազմակերպենք Փափազյանի գրքին նվիրված երեկո և կմեծարենք։

Զորյանը խոսեց ում հետ պետք էր, և տեղի ունեցավ այդ երեկոն՝ իր իսկ նախագահությամբ։ Եվ նա իր բացման խոսքում բարձր գնահատեց Փափազյանի գիրքը։

Ուրիշներն էլ խոսեցին։ Բոլորն էլ հիացմունքով էին արտահայտվում։ Բայց Զորյանը մի անակնկալ էր պահել ժողովականների համար։ Վերջում նա առաջարկեց Փափազյանին ընդունել Գրողների միության անդամ։

Ներկաները բուռն ծափահարությամբ ընդունեցին Զորյանի առաջարկը։

* * *

Ըստ պայմանավորվածության առաջաբան էի գրելու Զորյանի «Հուշերի գրքին»։

Մի օր հարցրեց.

— Քոնից բացի մի-երկու խոսք էլ ես, ինչպես ասում են՝ «Հեղինակի կողմից» գրե՞մ, թե չէ։

Այն կարծիքին էի, որ ոչ, նկատի ունենալով հրատարակվելիք գրքում ընդգրկված հուշերի վեճի առիթ չտվող բնույթը, բայց, միաժամանակ, այդ հարցի լուծումը կախում ուներ և այն բանից, թե ի՞նչ խնդիրներ է մտադիր արծարծել։

— Ես գրել եմ,— ասաց նա,— կարդամ ու նոր որոշենք։

Կարդաց։

Դա մի երեք, թե չորս էջ իր գեղեցիկ ձեռագրով գրված խոսք էր, որն ինձ անհավասար թվաց։ Սկզբում նա բացատրում էր, թե ինչու իր հուշերի մեծ մասի գործողության վայրը Թիֆլիսն է։ Բացատրությունը նորություն չէր և, ճիշտն ասած, արված էր երկար։ Հետո նա անդրադառնում էր, թե մեր մշակույթի հայտնի դեմքերից ում է հանդիպել Թիֆլիսի փողոցներում, հասարակական հավաքույթներում, թատրոնում։ Վերջում էլ շատ սեղմ, նշում էր, որ հուշը, անձնական ընկալումների ծնունդ լինելով, կարող է չհամընկնել նույն նշանավոր մարդուց մի ուրիշի ստացած տպավորության հետ։

Ես ասացի, որ այս երրորդ մասը թերևս արժե ընդլայնել և առաջաբանի գլխավոր առանցքը դարձնել։

Չհամաձայնեց։ Ասաց, որ իր համար կարևորը առաջին

երկու կետերն են։ Մի խոսքով, որոշեցինք նրա այդ խոսքը չդնել։

Հիմա, երբ նա չկա ու ես անդրադառնում եմ այդ օրվան, մտածում եմ, որ հուշերի վերահրատարակության ժամանակ կամ էլ հոդվածների հատորը կազմելիս, արժե տեղ տալ և դրան, մանավանդ որ կարճ, բայց լավ էր բնութագրել հատկապես Սունդուկյանին և Պարոնյանին։ Ըստ երևույթին, այդ խոսքը մասամբ էլ գրել էր այն նպատակով, որ թեկուզ մի-երկու խոսք ասի նրանց մասին, ում հետ այնքան չէր հանդիպել, որ հուշ գրի։ Որքան միտս է մնացել հիշվում էին նաև Աբելյանը, Սիրանույշը, Մայսուրյանը։ Եվ գուցե դարձյալ մի երկու դեմք։

* * *

Բոլորել էր Ավետ Ավետիսյանի ծննդյան 60-ամյակը։ Սունդուկյանի անվան թատրոնը հրատարակեց դերասանին նվիրված մի ալբոմ՝ իմ առաջաբանով։

Զորյանին տեսա ալբոմը թերթելիս։ Հարցրի՝ կարդացե՞լ է։ Ասաց.

— Ինչ-որ կարծես չի ստացվել։

Ասացի, որ ես էլ այդ կարծիքի եմ, որ չի ստացվել։ Եվ միաժամանակ ասացի, թե այդ մի քանի էջը գրել ու մշակել եմ մի քանի անգամ, աշխատել եմ շատ ավելի, քան մի այլ բան գրելիս։

— Ինչքան էլ աշխատեիր՝ չէր ստացվի։ Այս դեպքում քիչ ու շատի խնդիր չէ։ Ավետ Ավետիսյանը քո հերոսը չէ։

Եվ հետո ավելացրեց, թե ինքը լավ կարծիք ունի Ավետ Ավետիսյանի մասին, հատկապես Սունդուկյանի պիեսներում խաղալիս։

* * *

Ես միշտ տանում էի իմ նոր գիրքը՝ մակագրված։ Հաջորդ այցին՝ կասեր.

— Կարդացի։

Կհայտներ իր կարծիքը։ Եվ հետո կվերցներ գիրքը գրասե-

ղանի վրայից, կթերթեր ու էջ առ էջ կծանոթացներ, թե լուսանցքներին մատիտով ինչ նշումներ է արել, որոնք մեծ մասամբ սխալներ ու վրիպումներ էին՝ փոքր ու մեծ, մի դեպքում կասեր, որ իսկական բառը գտնված չէ, մի այլ դեպքում՝ մի բառի կրկնության վրա կհրավիրեր իմ ուշադրությունը։ Կամ էլ՝ շարադրանքի տրամաբանական սխալը ցույց կտար։ Կամ կասեր, որ այսինչ միտքը համոզիչ չէ։

Մի խոսքով, չափազանց ուշադիր էր և չէր սիրում, երբ իր բարեկամ հեղինակներն իրենց մտքերը անփույթ են ձևակերպում և մանավանդ՝ մութ։

— Չեմ հասկանում, թե ինչ ես ուզում ասել։

Մի փոքր հետո՝

— Պետք է կարողանալ միտքը արտահայտել պարզ, հստակ։

Չէր սիրում ածականախեղդ շարադրանք։

— Գավառականություն է։

Կասեր և միշտ օրինակ կբերեր Տոլստոյին։

— Ոչ մի ավելորդ բառ, ոչ մի պատահական բառ։ Ամեն ինչ մտածված է, ճիշտ գտնված և միաժամանակ՝ չափազանց պարզ։

Եվ տարիների ընթացքում գրքից-գիրք անցնում և կրկնվում էին նույն պահանջները՝ մտքի հետևողականություն, ներքին տրամաբանություն, անսեթևեթ ոճ, կուռ նախադասություն, լեզվի պարզություն, մտքի հստակություն։

Իսկ երբ բերածս գիրքը հավանած չէր լինում, ոչինչ չէր ասում, իբր ոչ բերել եմ, ոչ էլ ինքը կարդացել է, ոչ էլ այդպիսի գիրք գոյություն ունի ընդհանրապես։

* * *

Մի օր խոսք բացվեց Հակոբ Պարոնյանի մասին։

— Ես հիացած չեմ Պարոնյանով։ Նա ավելի ֆելիետոնիստ է, քան երգիծաբան։ Եվ, իսկապես, լավ ֆելիետոններ ունի։

Մի պահ կանգ առավ և հետո շարունակեց.

— Ա՛յ, ուրիշ բան է Երվանդ Օտյանը։ Երգիծաբանը նրա նման կլինի՝ հոգեբան է, խոր հեղինակ է։ Հիշիր «Ծապլըվարը», համեմատիր «Մեծապատիվ մուրացկանների» հետ։ Տե՛ս, թե ինչպիսի ընդգրկում է։ Գրական կատարելություն է, իսկական գլուխ-գործոց։ Սա, իհարկե, կարող է պատիվ բերել եվրոպական գրականությանն անգամ։ Կամ հիշո՞ւմ ես «Համբարձում աղան»։ Ի՞նչ գործ է։

* * *

Նկարչության մասին խոսք բացվեց։ Առիթը իր աշխատասենյակի պատից կախված մի բնանկար էր՝ «Մենավոր կաղնի», որ իրեն նվիրել էր Հակոբ Կոջոյանը։

— Մեծ նկարիչ է Մարտիրոս Սարյանը։ Ես մասնագետ չեմ, գուցե իրավունք էլ չունեմ տեսակետ հայտնելու, բայց, իմ համեստ կարծիքով, նա շատ առաջ մղեց մեր նկարչության զարգացումը։ Բայց ինձ մի բան անհասկանալի է. ինչո՞ւ, ոչ մի կերպ չեմ հասկանում, թե ինչու Կոջոյանը ստվերի տակ է մնացել։ Մարտիրոսից հետո նա է ամենացայտունը։ Եվ իր արմատներով ավելի է կապված ազգային իրականության և արվեստի հետ։

* * *

Հարցրի Շահխաթունու մասին, ասի, որ մեր դերասանները գովում են, համեմատում Փափազյանի հետ։

— Լավ դերասան էր, նույնիսկ շատ լավ։ Ինքն էլ գեղեցիկ տղամարդ էր՝ արծվատես, գույները շատ էին, տիպը արևելյան։ Փափազյանի հետ համեմատել չի կարելի։ Որտե՞ղ Շահխաթունին, որտե՞ղ Փափազյանը։ Ընդհանրապես ոչ ոքի չի կարելի համեմատել Փափազյանի հետ։

* * *

Խոսք բացվեց դերասանուհիների մասին։ Բարձր գնահատական տվեց Օլգա Գուլազյանին։

— Ա՛յ դերասանուհի։ Իսկական վարպետ է։ Նուրբ, հմուտ, պարզապես անթերի։

Հարցրի թե ինչ դերեր է հավանել։

— Նատալիա և Էփիմիա։ Մանավանդ առաջինը։ Երկուսն էլ անկրկնելի երևույթներ են, իսկական գլուխ-գործոցներ։

* * *

Թեյասեղանի շուրջը՝ ոգևորված խոսում էի Սարոյանի մասին։

Դեմքն անհաղորդ էր։

Ես չգիտեի, որ Զորյանը Սարոյանով հրապուրված չէ։ Շարունակում էի խոսել, իսկ նա ձայն չէր հանում։

Լևոնը, որ ներկա էր, չհամբերեց.

— Մեր Մահարին նրանից լավ գրող է։

Հայրը զսպեց որդուն, ասելով, թե կարիք չկա չափազանցությունների մեջ ընկնել։

* * *

Լսել էր, որ Հարություն Թուրշյանը Սարդարապատի ճակատամարտին նվիրված աշխատություն է գրել։ Հետաքրքրվեց, թե ե՞րբ է լույս տեսնելու, ինչո՞ւ է ձգձգվում։ Ու հետո.

— Մի բան պատմեմ քեզ։

Ասաց, բայց անմիջապես չսկսեց։

— 1918 թվականին թուրքական զորքերը մտել էին Ղարս, Ալեքսանդրապոլ և ուժեր էին կուտակում Երևանը գրավելու համար. պատրաստվում էին Սարդարապատ մտնել, որ հետո անցնեն Էջմիածին։ Հայոց զորքերի հրամանատար Նազարբեկովը գեներալ Սիլիկյանին ուղարկում է Գևորգ Հինգերորդ Ամենայն հայոց կաթողիկոսի մոտ՝ խնդրելու, որ միաբանության հետ քաշվի Սևան կամ գոնե Բյուրական։

— Ես ոչ մի տեղ չեմ գնա, գեներա՛լ,— պատասխանում է կաթողիկոսը։— Թող թուրքերն իմ դիակի վրայով մտնեն Էջմիածին։ Եթե դուք չեք կարող պաշտպանել մեր հայրենի սրբությունը, ես կպաշտպանեմ։

— Հա՛, այս էլ ասեմ քեզ,— հանկարծ ընդհատեց պատ-

մությունը Զորյանը,— որ կաթողիկոսը հայտնի չէր որպես քաջ մարդ։ Գեներալն ասում է, թե դա կաթողիկոսի կարծիքն է, իսկ ի՞նչ կասի միաբանությունը։ Կաթողիկոսը տեղնուտեղը կանչում է դիվանապետին և կարգադրում բոլոր միաբաններին անմիջապես հրավիրել Վեհարան։ Երբ միաբանները գալիս են, կաթողիկոսն ասում է, թե ինչո՞ւ է կանչել իրենց, ո՛րն է իր որոշումը և միաժամանակ ավելացնում, որ յուրաքանչյուրն ազատ է իր սեփական վճիռը կայացնելու։ Բոլորը թե՝ որտեղ կաթողիկոսը, այնտեղ էլ իրենք։

— Որ այդպես է, եղբայրներ, եղեք մի-մի Ղևոնդ Երեց, գնացեք և խրախուսեցեք զորքին, ոտքի հանեք գյուղերի և քաղաքների մարդկանց։ Գիշեր-ցերեկ զանգահարություն թող լինի, որ մեր ժողովուրդն իմանա, թե ինչ վտանգ է սպառնում հայրենիքին։

Այդպես էլ լինում է։ Զորս կողմը՝ զանգահարություն։

Թշնամու արշավող ուժերի համեմատ Սարդարապատի զորքը նվազ էր։

Սարդարապատ է գնում Գարեգին եպիսկոպոսը։ Տեսնելով, որ հուսահատության հասած զինվորները հռետորների խոսքին ուշադիր չեն, ինքն է խոսում։

— Հայրենիքը վտանգի մեջ է։ Ինչպես էլ լինի հարկ է դիմադրել թշնամուն, որ պաշտպանենք ձեր հայրենիքը, ձեր պատիվը։ Հին դարերում այսպիսի վտանգավոր ժամանակները զորքի հրամանատարները գնացել են Էջմիածին, համբուրել կաթողիկոսի աջը և առել նրա օրհնությունը։

— Հիմա վտանգն այնքան մեծ է,— ասում է եպիսկոպոսը զինվորներին, որ Ամենայն հայոց կաթողիկոսն ինքն է ուղարկել ինձ ձեզ մոտ։ Ես Էջմիածնից եկել եմ և համբուրում եմ բոլորիդ ձեռքերը և կոչ անում՝ փրկեցե՛ք հայրենիքը։

Այս ասելիս Զորյանը մի պահ կանգ առավ։ Հուզված էր։ Աչքերի մեջ արցունք երևաց։ Նրա ինքնատիրապետումն շատ ուժեղ էր և այդպիսի բան չէի հիշում, որը պատահած լիներ նրա հետ։ Մի-փոքր անց շարունակեց ընդհատած պատմությունը։

— Հրաշք կատարվեց, զորքը, ասես, ուժ առավ, որին

միացել էին գյուղերից, քաղաքներից եկած շատ մարդիկ, և ոգևորված սլացան թշնամու դեմ։

Ասաց ու կանգ առավ։

— Դե՛, հետո ինչն ինչպես է լինում՝ հայտնի է։

Մի փոքր դադարից հետո ասաց, թե այս պատմությունը ինքը լսել է Սարդարապատի ճակատամարտից մի տարի անց։

* * *

Հիվանդանոցում էր։ Գնացի տեսության։ Շնորհավորեցի «Վարազդատի» լույս տեսնելը։

Խոսք բացվեց Մահարու վեպի շուրջ։ Հետաքրքրվեց, թե այդ ի՞նչ աղմուկ է հանել վեպը։ Պատմեցի։

Ծայրահեղությունների կողմնակից չլինելով՝ գտավ, որ վեպը քննադատվում է հախուռն հայրենասիրության դիրքերից։ Գործածեց վերջին խոսքը և ավելացրեց, թե չի սիրում այդ բառը՝ «դիրքերից»։ Հետո ավելացրեց, թե ժամանակ կանցնի և մարդիկ այդ բոլոր հարցերին հանդարտ աչքով կնայեն։ Այն ժամանակ վեպի մասին կդատեն գեղարվեստական արժանիքների տեսանկյունով։

— Չեմ կարծում, թե քննություն բռնի։

Ափսոսաց, որ գրքի օրինակն իր մոտ չէ։ Որ լավանա և տուն վերադառնա՝ ցույց կտա Մահարու մեղանչումները մարդկային հոգեբանության դեմ։

Ես ասացի, թե գեղարվեստական անմոռանալի էջեր կան, լավ է գծված քաղաքի կերպարը, վեպը կարդալուց հետո սիրում ես Վանը, վերջապես, հետաքրքիր բնավորություններ։

— Օրինակ։

Հարցրեց։

— Օրինակ՝ Ախանես աղան։

— Քաղաքը խառնվել է իրար, մարդիկ խուճապի են մատնվել, իսկ նա իր հերոսին, ինչպես ինքը Մահարին կասեր՝ գործուղում է մեռած եղբոր կնոջ ծոցը։

Զղջացի, որ խոսակցություն եմ բացել այդ նյութի շուրջը։ Աշխատեցի փոխել նյութը, նրա միտքը շեղել ուրիշ ուղղությամբ։

* * *

Երկար տարիների բարեկամության ընթացքում չէի հիշում նրան հիվանդ, չէի տեսել անկողնում։ Ու երբ իմացա, որ հիվանդացել է՝ մի առանձին նշանակություն չտվի։ Ոչ էլ անհանգստացա, երբ իմացա, որ հիվանդանոց են փոխադրել։ Եվ հանկարծ լսում եմ, թե Մոսկվայից բժիշկ են հրավիրել, գուցե նա մի ճար գտնի։ Ուրեմն՝ լուրջ է վիճակը։ Եվ, այնուամենայնիվ, կարծում էի, թե ուր որ է վտանգը կանցնի, ապաքինված տուն կվերադառնա և կյանքը կընդունի իր առաջվա պատկերը։ Այսպես էի կարծում։ Որևէ, ավելի շուտ՝ այդպես էի ցանկանում։ Եվ հանկարծ... ծանր բոթ՝ Զորյանը չկա։ Որքան անհավատալի, նույնքան էլ դաժան։ Շտապում եմ Զորյանների տուն։

Գրականությունը մեծ կորուստ կրեց։ Ծանր հարվածի տակ ընկան հարազատները։ Ընկերները նույնպես։ Սրանցից մեկն էլ ես։

Կորցրի մի շատ հարազատ մարդ, որի մոտ հաճախ էի լինում։ Հատկապես նրա կյանքի վերջին մի քանի տարին։ Կորցրի մի ընկեր, որն ինձ համար չափի զգացման իդեալն էր։

Զորյանի ներկայությամբ ես անկեղծ էի, սրտաբաց։ Ոչ մի դիվանագիտություն չկար իմ մեջ նրա հանդեպ։ Ու ես հավատում էի,— գոնե ես այդպես էի կարծում,— որ նա էլ անկեղծ է ինձ հետ։ Դիվանագիտություն չէր անում։ Նրբանկատություն՝ այո, բայց ոչ դիվանագիտություն։ Ու ես հաճախ էի իր խորհրդի կարիքը զգում, ինչպես եղել են նաև դեպքեր, երբ արածս սխալ քայլը նրան եմ խոստովանել։

Զորյանի մեջ մի գիծ կար, որ չկար ոչ մեկի մեջ, նույնիսկ նրանց, որ ավելի մեծ էին, քան նա։ Ոչ ոք չի հիշում մի դեպք, որ ստիպեր Զորյանին գրել կամ ասել մի բան, եթե դա հակառակ էր նրա համոզմունքներին։ Ոչինչ չի արել նա ստիպված։ Ինչ որ գրել է, գրել է իր համոզմունքներին հավատարիմ։ Եվ նա չէր հարգում իր գրչակից ընկերների կյանքի այն դեպքերը, երբ նրանք տուրք տալով՝ գրել են մի բան, որի համոզումը չեն ունեցել։ Եվ իրավացի էր։ Անցնող

ժամանակների հետ անցել են բոլոր ժամանակավոր հովերը, իսկ տուրքը մնացել է գրողի կենսագրության մեջ։ Իր ավագ ընկերների հարկադրված քայլերին նա տալիս էր բացատրություն, և, հաճախ նպատակ ունենալով մեղմել կամ նույնիսկ արդարացնել, ասում էր, թե ինքը գրող է, միայն գրող, իսկ նրանք, գրականության նշանավոր դեմքեր լինելուց բացի, գրական-հասարակական գործիչներ են նաև։

Մի խոսքով, միշտ հարազատ էր մնում ինքն իրեն։

Իր մաքրությամբ նա մնաց անհամեմատելի։

Ասում են, ճանապարհ անցնողը ուզի չուզի՝ փոշոտվում է։ Զորյանն ինչպե՞ս կարողացավ անցնել այնքան երկար և փոշոտ ճանապարհ՝ և չփոշոտվեց բնավ։ Ինչպե՞ս կարողացավ այնքան դժվար տարիների միջից անցնել ու մնալ մաքուր։ Անհավատալի բան, որ, սակայն, փաստ է։ Ու երևի դա է պատճառը, որ ինձ համար նրա դատավճիռը թանկ էր։ Որքա՞ն է պատահել, որ պղտորված պահիս գնացել եմ մոտը, մնացել մինչև գիշերվա ուշ ժամը և խաղաղված տուն դարձել։

Մի վախ միշտ ապրել է մեջս. երբ գնում էի ծովափ ամառային հանգստի և կամ էլ երկար ճանապարհ՝ Մոսկվա, Ռիգա, Լենինգրադ և կամ արտասահմանյան շրջագայություն, կարծում էի, թե մի բան է պատահելու և այլևս տուն չեմ դառնալու։ Ու ես սովորություն էի դարձրել՝ ճանապարհվելուց առաջ գնալ և հրաժեշտ տալ Զորյանին։ Ինձ թվում էր, թե գնում եմ վերջին անգամ տեսնելու։ Ու ես գնում էի, ասես, նրա օրհնությունն առնելու։

Չկար հեռու ճանապարհ գնալու մի դեպք, որ չայցելեի Զորյանին, որին հայտնի էր իմ նախապաշարումը։ Ծիծաղում էր իմ այդ թուլության վրա, բայց երբ որևէ տեղ գնալուց առաջ գալիս էի մոտը, միշտ ասում էր.

— Ինչ լավ ես անում, որ գնում ես։ Քանի երիտասարդ ես՝ գնա, գնա աշխարհ տես։ Գնա տես ու արի պատմիր։ Տե՛ս, իմացիր, անհամբերությամբ սպասելու եմ վերադարձիդ։

*Ասում էր ամեն անգամ համարյա նույն խոսքերը։ Ու ես ինչ հաճույքով գնում էի, նույն հաճույքով էլ վերադառնալուց հետո առաջին տունը, ուր մտնում էի՝ Ջորյաններինն էր։*

*Հիմա նա չկա։ Չկա նրա մարդկային կիրթ ու ազնիվ հայացքը, որի կարիքն այնպես զգում էր իր բովանդակ շրջապատը։*

# ԹԱԴԵՈՍ ԱՎԴԱԼԲԵԿՅԱՆ

Տարբեր ժամանակներ հիշել եմ Թադեոս Ավդալբեկյանին, միտքս գնացել-հասել է 30-ական թվականների առաջին կեսերը ու պահանջ եմ զգացել գրիչ վերցնելու և գրելու։ Ու եթե չեմ արել, ապա այն պատճառով, որ միշտ մտածել եմ, թե երկու-երեք հանդիպումը բավարա՞ր է ընթերցողին քիչ թե շատ գոհացնելու, թե ասածս կցկտուր մի-երկու խոսք է լինելու այժմ քչերին հայտնի այդ նշանավոր մարդու մասին։

Երկար մտածեցի ու որոշեցի, այնուամենայնիվ, պատմել ունեցածս թեկուզ և մի քանի հանդիպման մասին, որ անջնջելի հետք էր թողել նոր-նոր գրիչ բռնող բանասերի հոգում։

* * *

Թադեոս Ավդալբեկյանը շաբաթվա մեջ մեկ կամ երկու անգամ գալիս էր Գրականության թանգարան, որտեղ աշխատում էի որպես կրտսեր գիտական աշխատակից։ Գալիս էր դստեր՝ աշակերտուհի Մայիսի հետ։ Թե ինչ հարց էր նրան բերում թանգարան՝ չգիտեմ, բայց որ նայում էր միջնադարյան ձեռագրերը, որոնք, բավական թիվ կազմելով, պահվում էին թանգարանի վարիչ Խորեն Սարգսյանի աշխատասենյակում՝ այդ ինձ հայտնի էր։ Բերում էին իր պատվիրած ձեռագիրը, նա զննում էր ուշի-ուշով և իրեն հարկավոր հատվածները հանձնարարում դստերը՝ արտագրելու։

Մինչև իր ուզած ձեռագիրը կբերեին, մոտենում էր թանգարանի աշխատակիցներիս, որ այն ժամանակ երեքն էինք՝ Արամ Ինճիկյանը, Նշան Մուրադյանը ու ես, և զրուցում էր։

Ավդալբեկյանը նման չէր մեկ-մեկ թանգարան եկող ավագ սերնդի մյուս դեմքերին, աստղ-խոսող մարդ չէր։

Այդպես էր գոնե թանգարանի աշխատակիցներիս տպավորությունը, մանավանդ որ սպասելիս մինչև ձեռագիրը կբերեն լուռ նստում էր, ինքն իր մեջ ամփոփված, մի փոքր էլ մռայլ։ Եվ նրա այդ պահվածքը խանգարում էր հարցեր տալ մեզ զբաղեցնող խնդիրների շուրջ։ Եթե ինքը խոսեր լավ, եթե չէ՝ ոչ։

Տարիներ անց, իմացա, որ ընտանեկան և ընկերական հավաքույթներում եղել է զվարթ մթնոլորտ ստեղծողներից՝ սրող, կատակող, սրամտող։

Ես արդեն երկու թե երեք հոդվածի հեղինակ էի։ Մի անգամ մոտեցավ իմ գրասեղանին ու հարցրեց ինձ՝ ի՞նչ եմ գրում հիմա։

Ես թեև համոզված չէի, թե նրան իսկապես հետաքրքրում է այդ հարցը և հարցումը համարում էի մի պարզ ուշադրություն միայն, շոյված զգացի նրա վերաբերմունքից։

Ասացի, որ հիմա ոչինչ չեմ գրում, համոզվել եմ, որ գրելու համար ինձ դեռ շատ գիտելիք է պակասում, և որոշել եմ կարդալ։

Ավդալբեկյանն անմիջապես չարձագանքեց ասածիս, նայեց ինձ երկար, կարծես ուզում էր հասկանալ՝ անկե՞ղծ էի, թե համեստ երևալու մի փորձ էր դա։ Հետո ասաց, որ դա ուրախացնում է իրեն. լավ է, որ ուզում եմ կարդալ, կարդալ ու լրացնել իմ գիտելիքները։ Բայց... Այստեղ նա կանգ առավ։ Ապա խոսքն առաջ տարավ. նախ՝ զարգացումը վերջ չունի, մարդ որքան կարդա, այնքան ավելի կհամոզվի, որ քիչ բան գիտե։ Կարդալու, զարգանալու ցանկությունը լավ է զուգակցել գրելուն։ Եվ հետո՝ միշտ պետք է հիշել, որ մարդ զարգանում է ոչ միայն կարդալով, այլև գրելով։ Կարդալը մարդուն գիտելիք է տալիս, բայց գրելիս մարդ բացվում է...

— Գրել պետք է անպայման։ Գրեցեք, մի հանձնեք տպագրության, թող մնա տանը։ Չգրելով մարդը կորցնում է գրելու վարժությունը։

* * *

Մի օր, այս անգամ խոսքն ուղղելով երեքիս, մի այսպիսի միտք արծարծեց.

Երիտասարդ տարիներից անհրաժեշտ է մշակել չշտապելու ընդունակություն։ Կան գրողներ, որ թանաքը դեռ չչորացած՝ հոդվածը տպագրության են հանձնում։ Մարդ պետք է գրի, գրածը նորից աչքի անցկացնի, ուղղի, շտկի։ Ինչ որ անելու է՝ անի, մի խոսքով, երբ իրեն կթվա, որ ավարտել է ու այլևս անելիք չունի, մի կողմ դնի։ Միաժամանակ՝ մի շաբաթ, մի ամիս, երբեմն նույնիսկ ավելի երկար ժամանակով։ Լավ կլինի, եթե մի այլ գործով զբաղվի, որ հեռանա նյութից և այն ժամանակ կտեսնի պակասություններ ու թերություններ, որ առաջ չէր նկատել։

Դառը ժպիտ գծվեց շրթունքներին, որն անմիջապես էլ անհետացավ։

— Ես քիչ եմ տպագրվում և հաճախ եմ համոզվել, թե որքան լավ է, երբ երկար ժամանակ անցնելուց հետո վերակարդում ես մի ամիս կամ մի տարի առաջ գրածդ։

Տեսնելով, որ ուշադիր լսում ենք, նա չընդհատեց խոսքը, թեև խնդրած ձեռագիրն արդեն բերել էին։

Նա ասաց, թե մեր աճելու, զարգանալու տարիներն են, որ վաղը մենք այն չենք լինի, ինչ այսօր ենք, ամեն մի օրը, ամեն կարդացած գիրքը մեզ փոխում է, դարձնում ավելի հասուն, քան առաջ էինք։ Եթե մեկ կամ երկու ամիս առաջ մեր գրածը հիմա կարդանք, դժգոհ կմնանք ու կզղջանք, թե ինչու ենք տպագրել, և այլևս ոչինչ փոխել չենք կարող։ Սակայն կատարյալ դարձնելու ցանկությունը սահման չունի և պետք է կարողանալ գտնել կանգ առնելու կետը, այլապես կառաջանա միշտ դժգոհ մնալու, սեփական գրածը երբեք չհավանելու մի հոգեբանություն, որ երբեմն հիվանդագին բնույթ է ստանում։ Մենք չենք կարող հիմա գրել այնպես, ինչպես ի վիճակի կլինենք գրելու մի տասը տարի հետո։

* * *

Մի անգամ հետաքրքրվեց, թե մեզանից ով ինչ օտար լեզվի է տիրապետում։

— Օտար լեզու սովորեք անպայման, ձեզ շատ բան կտա։

Մատների արանքով մի նայեք, ինչպես հիմա ընդունված է։ Տարիներ կանցնեն և դուք կզղջաք չիմանալու համար։ Չեմ ասում, թե մի քանի լեզու՝ թեև շատ լավ կլինի, ժողովուրդն ասում է՝ մարդը քանի լեզու գիտի, այնքան էլ մարդ է։ Բայց մի լեզու գոնե՝ անպայմա՛ն։

Կարճ դադարից հետո լրացրեց ասածը։

Գրականությամբ զբաղվողներին խորհուրդ են տալիս ֆրանսերեն սովորել։ Գուցե և ճիշտ է, բայց ինքը խորհուրդ է տալիս գերմաներեն իմանալ, գերմանացիք բանասիրական մշակված դպրոց ունեն, գրականագիտական զարգացած միտք։

Այդ օրը նա մենակ էր եկել և կարճ ժամանակով՝ ինչ-որ բան ճշտելու նպատակով։ Մենք դեռևս իր խրատի տպավորության տակ էինք, որ գնաց։

Հիմա չեմ հիշում, թե ով, բայց լավ միտս է, որ ասաց, թե Թադեոս Ավդալբեկյանն այնքան գիտե գերմաներեն, որ բնագրից թարգմանում է «Կապիտալը»։ Ինչ կարող էր լինել ավելի դժվար թարգմանելի։ Ըստ երևույթին նրան օգնում էր տնտեսագետ լինելը, մանավանդ որ ժամանակին այնքան էր ուսումնասիրել Մարքսի տնտեսական զարգացման տեսությունը, որ աշխատություն էր գրել դրա մասին։ Վերջապես, տնտեսագիտական հայերեն տերմինների բառարանի հեղինակ էր։

Ավելի զարմանալին այն էր, երբ իմացանք, չգիտեմ իհարկե, թե որքան ճիշտ, որ Ավդալբեկյանը Գեորգյան ճեմարանում սովորած գերմաներենը խորացրել է, կատարելության հասցրել ինքնուրույնաբար, ոչ միայն Գերմանիայում չլինելով, այլ նաև ամբողջ կյանքում Երևանից դուրս եկած չլինելով։

Մենք հնարավոր չհամարեցինք հաշվի նրա այցին

հարցնել, թե որքան է ճիշտ մեր լսածը, բայց մի խիստ կարևոր եզրակացության եկանք։ Եթե մարդ մի քանի խնկապես ձգտի ամբողջ հոգով, անկարելի է, որ նպատակին չհասնի։ Շատ տարիներ անցան, ամեն մեկս ինչ-որ մի բանի տեր դարձանք, գրքեր հրատարակեցինք և ուշադիր դիտելով կյանքը՝ շատ առիթներ ենք ունեցել համոզվելու, թե որքան ճիշտ է այդ՝ ոչ միայն մտքի հետևողականություն, այլև հետևողականություն մի բան ցանկանալիս, ձգտելիս։ Ուստի՝ անցնող տարիների հետ կրթվելու է ոչ միայն միտքը, այլև կամքը։

* * *

Ես գիտական երկու զեկուցում եմ լսել, որոնք ինձ վրա թողել են անջնջելի տպավորություն։ Մեկը Գևորգ Բաշինջաղյանի լեզվաբան որդու զեկուցումն էր, որ ուներ հետևյալ կառուցվածքը. դրույթ, դրույթը հաստատող փաստագրական նյութ, ընդհանրացնող եզրակացություն։ Մյուսը Թադևոս Ավդալբեկյանինը, որ ուղղված էր «Խորենացու առեղծվածի հարցի լուծումը» աշխատության դեմ, որի հեղինակ Հակոբ Մանանդյանը այն համոզմանն էր, թե Մովսես Խորենացին 9-րդ դարումն է ապրել։

Ավդալբեկյանը զեկուցմանն անցնելուց առաջ զգուշացրեց, թե ինքը խոսելու է գրքի մի գլխի մասին միայն, որ վերաբերում է Խորենացու բառապաշարին, բայց ի միջի այլոց նկատեց, թե ինքը դիտողություններ ունի նաև մյուս գլուխների վերաբերյալ։

Նա հանդես եկավ հեղինակի հիմնական դրույթի դեմ։ Զեկուցումը գրված չէր, խոսում էր բանավոր, մեկ-մեկ նայելով ձեռքի թերթիկներին։ Դա, ըստ երևույթին, կոնսպեկտ էր, մեկ-մեկ նայում էր, խոսում, հետո թերթերը վերցրած, կավիճը ձեռքին մոտենում էր գրատախտակին։ Զեկուցողը սկզբում գրատախտակին գրեց Խորենացու գործածած այն բառերը, որոնք, ըստ գրքի հեղինակի, չեն հանդիպում 9-րդ դարից առաջ ապրած հեղինակների գործերում։ Դրանից

էլ բխում էր գրքի հեղինակի այն հիմնական հետևությունը, թե Խորենացին 9-րդ դարի պատմիչ է։

Ավդալբեկյանը գրատախտակի վրա գրեց 8-րդ դար և դիմացը այդ նույն բառերը՝ ասելով, թե դրանք այդ դարի որ հեղինակների մոտ են հանդիպում։ Այնուհետև գրեց 7-րդ դար և դիմացը նշեց, թե այդ բառերից որոնք են գործածվել այդ դարից պահպանված գործերում։ Նույն ձևով մատնանշեց 6-րդ և 5-րդ դարերը։

Հեղինակի սխալը, ըստ զեկուցողի, եղել է այն, որ ավելի փտահել է հայկական լեզվի բառգրքին, քան սկզբնաղբյուրներին։ Եվ հետո ավելացրեց, թե հեղինակի բերած բառապաշարը հերքվում է ու եթե մի չնչին մասն անգամ ճիշտ համարվի, կարելի է ենթադրել, թե 6-րդ կամ 7-րդ դարու է, բայց ոչ 9-րդ։

Շատ գիտնականներ էին ներկա։ Ներկա էր և Աճառյանը, որը բարձրաձայն ծիծաղում էր, հենց որ Ավդալբեկյանը դարից-դար իջնելով, քարը-քարի վրա չթողեց, հերքեց գրքի հեղինակի բոլոր կռվանները, այսինքն ապացուցեց, թե հակառակ նրա պնդման, այդ բոլոր բառերը կան 9-րդ դարից առաջ ապրած հեղինակների մոտ։

Առարկությունն այնքան համոզիչ էր, որ ոչ ոք ավելացնելու բան չուներ, առարկելու մասին խոսք անգամ չէր կարող լինել։

Այնքան խորն էր Ավդալբեկյանի զեկուցման թողած տպավորությունն ինձ վրա, որ 1940-ին, թեև բավական ժամանակ էր անցել, նրա կառուցման սկզբունքը փոխ առա իմ մի զեկուցումն անելիս։ Աբովյանի ծննդյան թվականի հարցը քննելիս, հաստատելու համար, որ 1809 թվականն է ճիշտ, ես տվյալները բերում էի անհայտացման թվականից սկսած՝ 1848-ից ու տարի առ տարի իջնելով, հասա մինչև 1809 թվականը։ Ու ես էլ, նրա նման, կավիճը ձեռքիս, գրատախտակին մոտենալով, գրում էի թվականները և դիմացը նշումներ կատարում։

* * *

Կարդացի Նիկողայոս Ադոնցի մի փոքրիկ հետազոտություն, որ կոչվում էր «Վասակը պատմիչների դատաստանի առջև» («Васак перед судом историков»)։ Կարդալս ու Հովհ. Հովհաննիսյանի «Սյունյաց իշխանը» հիշելս մեկ եղավ։ Նորից աչքի անցկացրի պոեմը և համոզվեցի, որ բանաստեղծն ավելի վաղ է հասել Վասակի գնահատության վերանայմանը, քան ժամանակակից պատմաբանները, օրինակ՝ Գարագաշյանը, որի քննական պատմությանը ծանոթ էի ուսանողական առաջին տարուց։ Մտքովս անցավ մի հետազոտական ակնարկ գրել։ Իմ ակնարկի կենտրոնական հարցը լինելու էր, թե ինչպես գեղարվեստական գրականությունը հաճախ կանխում է պատմական գիտությունը։

Սկսեցի նյութեր հավաքել։ Երկու ուղղությամբ էի նյութ կուտակում. մի կողմից՝ համաշխարհային գրականության այն տվյալները, որոնք հնարավորություն էին տալու միտքս հաստատելու, մյուս կողմից, հիմնվելով Ադոնցի ու Գարագաշյանի վրա, պարզել, թե ինչպես մշակվեց ու ամրացավ Վասակին դատապարտող ավանդական պատկերացումը։

Որքան հեշտ էի հավաքում առաջին կարգի նյութերը և մտքումս ամեն մի նոր տվյալ անմիջապես գտնում էր իր տեղը, այնքան ավելի էի խճճվում, երբ հարցը վերաբերում էր հայոց պատմությանը։ Ես զգացի, որ պատմագիտական պատրաստությունս բավարար չէ։ Նախ՝ համալսարանում լավ չէինք անցել մեր պատմության ինձ այժմ հետաքրքրող ժամանակաշրջանը, և հետո՝ հիմա էի հասկանում, թե մի կուրս սովորելը և դրա հաջորդը բաց թողնելը, մի խոսքով՝ թռիչքներով ուսանելը ինչպիսի բացասական ազդեցություն է ունեցել ինձ վրա։

Մի երկու-երեք ամիս անցավ ահագին նյութ հավաքվեց, բայց շարունակում էի մթան մեջ խարխափել, հստակ չէի պատկերացնում Վասակի կերպարը, կամ, ավելի շուտ, չունեի այնքան պատրաստություն, պատմական այնպիսի

կազմակերպված մոտեցում, որ կարողանայի մեր ժողովրդի պատմության ընդհանուր ընթացքի մեջ տեսնել նրան։

Ու ես այնպիսի հուսահատ պահեր ունեցա, որ որոշեցի միաժամանակ դադարեցնել պարապմունքս, մտածելով, թե անցնող օրերն իրենց հետ կբերեն մտքի հստակություն ու ես նոր կանցնեմ շարադրելուն։

Ահա այդ օրերին լույս տեսավ Ավդալբեկյանի նոր գիրքը՝ «Հովհաննես Հովհաննիսյան»։ Շտապեցի մի օրինակ ձեռք բերել։ Ու թեև այդ գրքում ինձ հուզող հարցը չէր քննված, միայն ակնարկել ու անցել էր հեղինակը, բայց հենց այնտեղ գտա այն, ինչն ինձ համար պարզ չէր, իսկ գրքում ցույց էր տրված հասարակագիտական և պատմական հմուտ վերլուծությամբ։

Շարունակել հետազոտությունը այլևս միտք չուներ, և իմ այդ օրերի զբաղմունքից, որ տևեց մի կես տարուց ավելի, մնաց երկու բան՝ մեկ վերնագիրը, որ Ադոնցի ազդեցությամբ էլ ձևակերպել էի այսպես՝ «Պատմությունը բանաստեղծի դատաստանի առջև», երկրորդը՝ մի ուսանելի դաս։ Ու մի անգամ ևս համոզվեցի, որ, բացի այն բացառիկ տվյալներից, որ ուներ Ավդալբեկյանը, ինչ մեծ նշանակություն ունի հիմնավոր կրթությունը գիտությամբ զբաղվողի համար։ Ես չէի կարող ոչ այն ժամանակ, ոչ էլ հետո գրել այնպես, ինչպես գրել է Թադևոս Ավդալբեկյանը. նա իր մտքերն արտահայտում էր մի պարզությամբ, որին գիտնականը հասնում է, երբ նյութի խորքի թափանցումն ունի։ Ինձ մնաց մի մխիթարություն իմ և այդ պատկառելի գիտնականի մտքի զուգադիպությունը։

* * *

Ահա բոլորը ինչ հիշում եմ։ Այստեղ էլ պետք է վերջակետ դնեի, եթե այս դրվագները մեքենագրող Սիրուշ Գաբրիելյանը չհայտներ, որ «Կուսհրատում» աշխատելիս ինքն է մեքենագրել «Կապիտալի» հայերեն թարգմանությունը և չավելացներ միաժամանակ, որ թարգմանիչը սովորություն ուներ վերջին էջում հիշել աշխատանքն ավարտելու ոչ միայն

*թվականը, ամսաթիվը, այլև ժամը, նույնիսկ հոգեվիճակն ու տրամադրությունը։*

*Մայիս Ավդալբեկյանը, որին հաղորդեցի լսածս, հաստատեց և տրամադրեց «Կապիտալի» թարգմանության հետ կապված մի հիշատակագրություն, որ անհրաժեշտ համարեցի բերել ամբողջությամբ, քանի որ այդ հակիրճ խոսքն ավելի է բնորոշում մարդուն, քան բազմաթիվ էջեր։*

*«Հանրօգուտ մի նշանավոր նպատակակետի հասնողի ուրախությամբ գրանցում եմ, որ այսօր, 1937 թվականի հուլիսի 10-ին, առավոտյան ժամը 7-ին ու 20 րոպեին, թարգմանեցի պրծա «Կապիտալի» վերջին գրքի ամենավերջին երեսը։*

*Այսպիսով ահա համեստ ուժերով ավարտված է Կարլ Մարքսի «Կապիտալի» բոլոր 1-ին, 2-րդ, 3-րդ ա ու 3-րդ բ հատորների գերմաներենից հայերեն ամբողջական թարգմանությունը, որը սկսել էի 1931 թվականի հոկտեմբեր—նոյեմբերից։*

Исполнен долг!

*Լիահույս եմ, որ ոչ միայն նորահաս ու վերահաս սերունդները, այլև հասուն ժամանակակիցներն ըստ արժանվույն կգնահատեն իմ այս բոլորանվեր մասնակցությունն աշխատավոր մարդկության ազատագրման մեծ գործին»։*

* * *

*Միշտ չէ, որ մարդու վաստակն ու համբավը հավասարակշռում են միմյանց։ Պատահում է, որ հռչակն անցնում է սեղծված արժեքից։ Պատահում է և հակառակը. վաստակն արժանի է լինում ավելի լայն համբավի, քան այն, որին արժանացել է իսկապես։*

*Թադեոս Ավդալբեկյանը հենց նրանցից էր, որի արածն ավելի էր, քան նրա ճանաչումն էր և՛ այն ժամանակ, երբ նա կար, և՛ հիմա, երբ վաղուց չկա։ 1937-ին հիսունմեկու տարեկան էր, երբ ընդհատվեց նրա կյանքը։ Եվ մի բնատուր մեծ ձիրք մնաց կիսակատար։*

## ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂՅԱՆ

Իմ ծանոթությունը Մանուկ Աբեղյանի հետ տեղի է ունեցել ինքնասիրությունս շոյող այնպիսի պայմաններում, որ ինձ հաճելի է գրի առնել ու թղթին հանձնել։

1929—1932 թթ. ուսուցիչ էի Ախալքալաքում։ Երեք տարի աշխատելուց հետո փոխադրվեցի Երևան։ Եկա սովորելու։ բայց կես տարուց թողեցի համալսարանը։ Դժվար տարիներ էին։ Մեկնեցի Թբիլիսի, որտեղ մայրս ու եղբայրս էին ապրում։ 1933-ին նորից տեղափոխվեցի Երևան։ Այս անգամ՝ վերջնականապես։ Պետք է շարունակեի կրթությունս։ Թբիլիսիի ավագ ընկերներս, լուրջ ու փորձված մարդիկ, խորհուրդ էին տալիս, թե ում դասախոսություններին հատկապես հետևեմ։ Մեկը-մյուսի հետևից շարվում էին անուններ՝ Մանուկ Աբեղյան, Հրաչյա Աճառյան, Հակոբ Մանանդյան, Յոլակ Խանզադյան։ Եվ էլի ուրիշ անուններ, բոլորն էլ հայտնի։

Հասա Երևան և պարզվեց, որ սրանցից ոչ մեկը այլևս դասախոս չէ համալսարանում։ Տխրեցի, բայց ի՞նչ կարող էի անել։ Շատ էի ցանկանում տեսնել ու տեսա բոլորին, և խոստովանություն լինի, Մանանդյանը և Խանզադյանը ոչինչ, մի-թեթև մոտենում էին իմ պատկերացմանը, իսկ Աճառյանը և մանավանդ Աբեղյանը ոչ մի տպավորություն չթողին։ Կատարյալ հիասթափություն։

Հիասթափությունը չխանգարեց, սակայն, որ Աբեղյանի ոչ մի դասախոսությունը, ոչ մի ելույթը բաց չթողնեմ, մանավանդ որ Թբիլիսիում շատերը, հատկապես Արամ Երեմյանը ամենից ավելի ուշադրությունս հրավիրում էին այդ նշանավոր հայագետի վրա։ Անունն անգամ ակնածանքով էին տալիս։ Ու ես փորձում հանդիպելիս՝ խոնարհ

բարևում էի, նա էլ մի պահ զարմացած նայում էր ինձ և, ըստ երևույթին, մտածելով, թե իր բազմաթիվ ուսանողներից եմ, պատասխանում էր ու անցնում։

Եվ ահա ներկայացավ ծանոթության առիթը։

Նորից թողել էի համալսարանը և աշխատում էի Գրական թանգարանում։ 1935-ին թանգարանը Գրողների տան դահլիճում կազմակերպեց գիտական հաղորդումների երեկո։ Երկու հաղորդում պետք է լսեին ներկաները. Խորեն Սարգսյանինը և իմը. Սարգսյանը թանգարանի վարիչն էր, ես՝ թանգարանի կրտսեր գիտաշխատակից։ Եթե իմանայի, որ Գյուլիքեվխյանն է նախագահելու և ովքեր են հրավիրված լսելու՝ ոչ մի կերպ չէի համաձայնի ամբիոն բարձրանալ։ Բայց եղածը եղած էր, և նահանջելու տեղ չկար։

Իմ նյութն էր՝ «Նար-Դոսի նամակները Մինաս Բերբերյանին»։

Ծավալվեց մտքերի փոխանակություն, որի կենտրոնը, թող ներվի, որ այդ ասում եմ ես, իմ հաղորդումը դարձավ։ Ավելի ճիշտ՝ պահպանողականության գնահատության հարցը։ Վիճարկվում էր հաղորդման այն միտքը, թե պահպանողականությունը միատարր հասկացողություն չէ, հետևապես պետք է տարբերակված մոտեցում ունենալ։ Եվ, բացի այդ, նաև այն դրույթը, որ պահպանողական մտածողությունը ինչ-որ դեպքերում ռեակցիա էր ցարիզմի ազգահալած քաղաքականության դեմ, հետևապես ճիշտ կլինի, եթե ինչ-որ չափով ընկալվի նաև իբրև ժողովրդի ազգային ինքնապահպանման փորձ։

Մտքերի փոխանակությունը բուռն էր։ Մասնակցեց Մանուկ Աբեղյանը նույնպես։ Աբեղյանի գրական կյանքի սկիզբը կապված էր «Նոր-Դարի» հետ և նրա ելույթը, բացի ըստ էության խոսք լինելուց, ժամանակակցի վկայություն էր միաժամանակ։

Դրանից հետո, փողոցում հանդիպելիս, Աբեղյանը բարևիս արձագանքում էր ծանոթի արտահայտությամբ։

* * *

Անցավ մի քանի տարի։

1939-ին էր։ Աշխատում էի երկու տեղ՝ Հայպետհրատում Գեղարվեստական գրականության բաժինն էի վարում և համատեղությամբ՝ Գրականության և լեզվի ինստիտուտում ավագ գիտաշխատակցի պաշտոնակատար։

Հայտնեցին թե Պետհրատի դիրեկտորը խնդրում է իր մոտ։ Այդ տարիներին դիրեկտորը Հայկ Դոնոյանն էր։

Աբեղյանն էր նստած սենյակում՝ ակնոցներն աչքերին, մռայլատես ու, ինձ թվաց, մի-փոքր էլ բարկացած։

— Ծանոթացեք։

— Մենք ծանոթ ենք,— ասաց Աբեղյանը՝ չփախտելով դեմքի դժկամ արտահայտությունը։

— Ընկեր Աբեղյանը դժգոհում է, որ 1937 թվականին իր ուսումնասիրության ձեռագիրը տպարան ուղարկելուց հետո տեղից չի շարժվել։

— Քանի՞ տարի կարելի է սպասել մի գրքի հրատարակության։

Լսվեց գիտնականի անբավական ձայնը։

— Ընկեր Աբեղյան, կապ պահպանեք Զարյանի հետ և նա կկարգավորի գրքի հրատարակության ընթացքը և դառնալով ինձ ավելացրեց.

— Գիրքը կոչվում է...— չհիշեց։

— «Ժողովրդական խաղիկներ»,— օգնության հասավ հեղինակի բամբ ձայնը։

Աբեղյանը գնաց։

* * *

Մի շաբաթ էլ չէր անցել՝ Աբեղյանի տանն էի։ Գնացել էի գրքի տպագրության հետ կապված հրատարակչական մի-երկու խնդրի շուրջ համաձայնություն ստանալու։

Ես առաջին անգամն էի լինում նրա տանը։

Պատերին նկարիչ որդու՝ Մհեր Աբեղյանի կտավներն էին։ Գիրք քիչ կար։

Երբ հանդիպման գործնական մասը վերջացավ ու ես ոտքի ելա հրաժեշտ տալու։ Նա ինձ պահեց։ Նստեցի։

— Չեմ հասկանում՝ դուք ո՞րտեղ եք աշխատում։

— Երկու տեղ։

Մի պահ լռություն։

— Ուզում եմ մի բարեկամական խորհուրդ տալ. եթե գիտությամբ պետք է զբաղվեք՝ թողեք հրատարակչական գործը։

Մի պահ կանգ առավ և ապա շարունակեց.

— Ուժերը չի կարելի ցրել, ուշադրությունը ցրել։ Գիտության մարդը շատ բանից պետք է հրաժարվի, որ ուսումնասիրության մեջ խորանա։

Աբեղյանի խորհուրդն ինձ համար մնաց խորհուրդ։ Ես ուժ չգտա մեջս՝ հրաժարվելու հրատարակչական գործից։ Ավելին. մի տարի անց մի երրորդ գործ հանձն առա՝ գրական ամսագրի խմբագրությունը։

Ես այն ժամանակ էլ, հետո էլ համաձայն էի Աբեղյանի խորհրդի հետ, երբեք չմոռացա այդ խորհուրդը, ուրիշներին հաճախ եմ ասել նույնը, բայց ինքս չեմ հետևել և իմ ամբողջ կյանքի ընթացքում զգացել եմ այդ խորհրդի անողոք ճշմարտությունը։

* * *

Հրատարակչության դիրեկտորն հետաքրքրվեց «Ժողովրդական խաղիկների» ընթացքով։ Եվ այդ կապակցությամբ անդրադարձանք Աբեղյանին ընդհանրապես։ Նա գիտեր, որ Աբեղյանը մեծ գիտնական է և ընդունում էր, որ հրատարակչությունը լավ չի վարվել հետը։ Առաջարկեց ինձ գնալ գիտնականի տուն և «խաթրը առնել», իսկ դա նշանակում էր՝ իմանալ, թե ինչ ունի հրատարակելու։

Գնացի։ Հաղորդեցի գալուս նպատակը և զգուշացրի, որ դիրեկտորի հանձնարարությամբ եմ եկել, հետևապես լիազորված եմ վճռելու հարցերը տեղն ու տեղը։

Աբեղյանը հիշեցրեց, որ մի քանի ամսից բոլորում է Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1500 ամյակը և ինքը այդ առ-

թիվ հրատարակություն է պատրաստում «Վարք Մաշտոցին», այլ ձեռագրերի բաղդատությամբ, ներածական ուսումնասիրությամբ, մեկնություններով հանդերձ։

Հարցրի, թե հնարավո՞ր չի համարում, արդյոք, Կորյունի բնագրի հետ տալ նաև նրա աշխարհաբար թարգմանությունը։ Համաձայնեց, ավելացնելով, որ դժվարը ձեռքի տակ ճշտված բնագիր ունենալն է։

* * *

Պետհրատում ձեռնամուխ եղա տարբեր մատենաշարերի հրատարակության։ Մեկն էլ դրանցից հայ պատմագիրներն էին՝ աշխարհաբար թարգմանությամբ։

Գնացի Աբեղյանի հետ խորհրդակցելու։ Հավանություն տվեց, գտավ, որ օգտակար գործ կլինի, վերջապես ընթերցող լայն շրջանները կծանոթանան մեր պատմիչներին։

Շատ ուրախացա, հատկապես, երբ նա դրական վերաբերվեց նաև մշակածս կառուցվածքին՝ ներածական ուսումնասիրություն, թարգմանություն և մեկնություններ։

Հարցրի, թե առաջին հերթին ո՞ր պատմիչներին պետք է հրատարակել։

— Նախ Խորենացի։ Եվ մի-փոքր մտածելուց հետո.

— Եղիշե, Բուզանդ, Փարպեցի։

Հետաքրքրվեցի, թե պատմիչներից որի՞ն կուզենար ինքը թարգմանել և հետո՝ ընդհանրապես ո՞ւմ հրավիրել աշխատակցության։

— Անպայման Ստեփան Մալխասյանին, կարող եք նկատի ունենալ նաև Երվանդ Տեր-Մինասյանին։ Ճիշտ կլինի դիմել Հրաչյա Աճառյանին նույնպես, թեև չեմ կարծում, թե համաձայնի։

Լռեց։

— Իսկ դո՞ւք։

— Ես ի՞նչ։

— Ոչինչ հանձն չե՞ք առնելու, օրինակ Կորյունը։

— Կորյունը հարմար չի դա մատենաշարին, տարբեր է բնույթը, նեղ գիտական։

Այն կարծիքին չլինելով, թե այդ խախտումը մի մեծ մեղք կլինի, խնդրեցի իր համաձայնությունը։ Համաձայնեց։ Հավատացած էի, որ հրատարակչության ղեկավարությունը չի առարկի։ Եվ այդպես էլ եղավ։

* * *

Մի զեկուցում կարդաց, որ հետագայում լույս տեսավ առանձին գրքով։ Վերնագիրը երկար էր՝ «Վիշապներ կոչված կոթողները իբրև Աստղիկ-Դերկետո դիցուհու արձաններ»։ Անզգուշություն ունեցա իրեն ասելու, որ երկար է, մի՞թե կարճ վերնագիրը գերադասելի չէ։

— Ի՞նչ կառաջարկեիք, օրինակ։

— Միայն «Վիշապներ»։

— Ոչ մի դեպքում։

Կտրեց նա։

— Վերնագիրը նրա համար է, որ իմացվի, թե ինչի մասին է խոսքը, ուստի այն հետազոտության հիմնական էությունն է ամփոփում։ Թող երկար լինի, ոչինչ, բայց ճշգրիտ լինի, ընթերցողն անմիջապես կհասկանա, թե ինչի մասին է խոսքը և հենց սկզբից էլ կիմանա իրեն հետաքրքրո՞ւմ է գրքում արծարծվող հարցը։

Մի-փոքր լռելուց հետո ասաց.

— Գիտության մեջ վերնագիրը գայթ չէ։

* * *

Թեկնածուական դիսերտացիա էի պաշտպանում՝ Աբովյանի «Նախաշավիղը» և նրա պատմությունը։ Գիտխորհրդի անդամները տեղ էին գրավել նախագահության մեջ։ Այնպես պատահեց, որ Մանուկ Աբեղյանը զբաղեցրեց կողքիս ազատ աթոռը։

Ես խոր ակնածանք ունեի Աբեղյանի նկատմամբ, և, ճիշտն ասած, քաշվում էի նրա ներկայությունից և ուրախ կլինեի, եթե այդ օրվա նիստին եկած չլիներ։ Մեր Ակադեմիան, այն ժամանակ՝ ԱրմՖան, դիսերտացիայի պաշտպա-

նուԹյան իրավունքը նոր էր ստացել և դա անդրանիկ պաշտպանուԹյունն էր։

Աբեղյանը նկատեց իմ հուզմունքը և փորձ արավ հանգստացնելու։

— Մի հուզվեք, ամեն ինչ լավ կլինի։

Ես ամբիոն բարձրացա՝ գիտխորհրդի անդամներին ծանոԹացնելու դիսերտացիայի հիմնական դրույԹներին։ Երբ նստեցի՝ Աբեղյանը խնդրեց դիսերտացիան։ ԹերԹեց ուշադիր, ինչ-որ տեղեր կանգ առավ։ Եվ երբ վերջացրեց՝ դարձավ ինձ.

— Ընկեր Ջարյան...

Եվ արեց երեք այնպիսի հիմնավոր դիտողուԹյուն, որ եԹե մեկնումեկը ինձ ասած լիներ մինչ այդ, հազիվ Թե համաձայնեի պաշտպանուԹյամբ հանդես գալ։ Իսկ եԹե սկզբից մինչև վերջ կարդար, երևի քարը-քարի վրա չԹողներ,— մտածեցի ես։ Հրատարակելիս էլ չէի կարող աչքի առաջ ունենալ նրա ասածները։ Դիսերտացիան արդեն տպագրված էր, բայց դեռ հրապարակ չէր հանվել։ Ես երեք անկազմ օրինակ բերել էի տպարանից ու հանձնել ինստիտուտի գիտնական քարտուղարին, որ այն ժամանակ Խորեն Սարգսյանն էր։ Վախը սրտիս մեջ էր՝ հանկարծ վեր կենա ու խոսի։ Վայն եկել ու տարել է ինձ։ Շատերը խոսեցին, ոչ ոք չէր նկատել Աբեղյանի նկատած ԹերուԹյունները։ Իմ բախտից չխոսեց։

* * *

Երբ «Նախաշավիղը» լույս տեսավ՝ մի օրինակ տարա Աբեղյանին։

Ընդհատեց զբաղմունքը, շնորհակալուԹյուն հայտնեց բերածս գրքի համար։ Գիրքը ձեռքն առավ, ԹերԹեց.

— Լավ եք արել, որ լուսատիպ նմանահանուԹյամբ եք հրատարակել։

Հարցուփորձ արեց, Թե ինչպե՞ս եմ, ինչո՞վ եմ հիմա զբաղվում։

Աչքս ընկավ գրասեղանի վրայի թղթերին և հասկանալով, որ գալուս պատճառով ընդհատել է պարապմունքը՝ հրաժեշտ տվի ու գնացի։

* * *

Պաշտոնատեղում նստած՝ հրատարակչական գործերով էի զբաղված։ Լսվեց դռան բախոց։

— Մտեք։

Անփույթ ձայն տվի ես։

Դռների մեջ Աբեղյանը երևաց։

— Կարելի՞ է։

Հարցրեց նա առանց տեղից շարժվելու։

Անմիջապես ընդառաջ գնացի, աթոռ առաջարկեցի և խնդրեցի նստել։

Ձեռքի գիրքը դրեց սեղանին։

— Նոր աշխատասիրությունս է լույս տեսել «Գուսանական երգեր», բերել եմ ձեզ հիշատակի համար։

— Ես գնել եմ,— թռավ բերանիցս։

— Ոչինչ։ Ձեր օրինակն էլ մեկին կնվիրեք։

— Շնորհակալ եմ, շատ զգացված։

Շփոթված էի նրա վերաբերմունքից և չգիտեի, թե նման դեպքերում ինչ է հարկավոր ասել։ Թեև խիստ շոյված, լավ չէի զգում ինձ, որ ինքն է բերել։

— Ընկեր Աբեղյան, ինչո՞ւ եք նեղություն քաշել ու բերել, իմաց կտայիք՝ ինքս կգայի ձեր տուն։

— Չի կարելի, ընդունված չէ։ Եթե հիվանդ չէ հեղինակը, ապա ինքը պետք է տանի։ Դա ընդունված կարգ է։ Ոչ մի նշանակություն չունի՝ նվիրողն է տարեց, թե ստացողը։ Հարգանքի նշան է այդ և խորհուրդ կտայի ձեզ՝ հետևել դրան։

Հիմա չեմ հիշում, թե ինչու խոսք բացվեց այն մասին, թե հեղինակն ում պետք է գիրք նվիրի։ Նա մի ամբողջ պատմություն արավ այդ հարցի շուրջ։

— Նախ այն մարդկանց, որ իրենց մասնակցությունն են բերել գրքի տպագրությանը սրբագրչից մինչև հրատարա-

կիշը։ Հետո՝ գրչակից ընկերներից, իհարկե, ընտրությամբ, մանավանդ նրանց, որ կարդացել են ձեռագիրդ, խորհուրդներ տվել։ Այն գիտնականներին, որ քեզ ուսուցիչ են եղել կամ էլ՝ թե ուսուցիչ չեն եղել պաշտոնապես՝ երախտապարտ ես։ Հա՛, մեկ էլ՝ մոտիկ մարդկանց։ Վերջապես՝ նաև նրանց, որ իրենց գիրքը նվիրել են ձեզ։ Գոնե մեկ անգամ պետք է պատասխան տալ։

Հիշեցի, որ ես նրան տարել էի «Նախաշավիղը»։ Սա նրա պատասխանն էր։

Ու ես մինչև օրս հաճախ եմ հիշում Աբեղյանի այս այցը, հաճախ եմ պատմում ուրիշներին, թե ինչ ասաց այդ մեծ մարդը և բարոյական ինչ ուսանելի խրատ կար նրա խորհրդում։

* * *

«Ժողովրդական խաղիկները» լույս տեսան։

— Գիտական գիրքը մի անգամ է լույս տեսնում, վեպ հո չէ, որ վերահրատարակվի, ուրեմն պետք է հարկ եղած հոգը տանեիք, որ լավ թղթի վրա տպագրվեր։

Ժպտաց Աբեղյանը։

— Այս էլ իմ գիրքը, բերել եմ մի օրինակ ձեզ, թող հիշատակ մնա ինձանից։

Այլևս նրա դեմքը չուներ մի-փոքր առաջվա մռայլությունը։ Ժպտում էր։ Իսկ նա ժպտում էր մաքուր, անմեղ, անքեն։

* * *

Մի օր հարցրի՝ ճանաչո՞ւմ էր Մամբրե Մատենճյանին։

— Ինչպես չէ, Ներսիսյանում միաժամանակ դաս ենք տվել, նույնիսկ միասին ուսումնական ձեռնարկ ենք կազմել։

— Ուրեմն լավ գիտեք։

— Իսկ ի՞նչ կա որ։

— Ուզում էի իմանալ ձեր կարծիքը նրա մասին։

— Ինչ ասեմ. հետաքրքիր մարդ էր, անպայման ընդու-

նակ, լավ հռետոր էր, նրան լսողները հափշտակվում էին, հատկապես երիտասարդությունը։ Ինքնահավան էր և արտաքին տպավորությանը մեծ տեղ էր տալիս։ Երբեք նրանից հասարակ ու պարզ ձևակերպված միտք չեմ լսել, անպայման շլացուցիչ։

Դադար։

— Գիտեք, ընդունակությունը վտանգավոր բան է լուրջ դպրոց չանցած և մանավանդ լայն ժողովրդականություն վայելողի համար։ Ապրում են ընդունակության հաշվին և կործանվում։ Մատենճյանը փայլեց ու անցավ և լուրջ հետք չթողեց մեր գրականության մեջ, մինչդեռ կարող էր։

* * *

Գրականության և լեզվի ինստիտուտի գիտխորհուրդը բանասիրության դոկտորի աստիճաններ էր շնորհում մեր տարեց գիտնականներին։ Շնորհվում էր աստիճանը՝ առանց ատենախոսության պաշտպանության՝ honoris causa։ Օրակարգում Ստեփան Մալխասյանին դոկտորի աստիճան շնորհելու հարցն էր դրված։ Դա 1940-ին էր։ Ես այդ ժամանակ արդեն գիտխորհրդի անդամ էի։ Այդ նիստերին ելույթ ունեցողները խոսում էին գիտնականի արժանիքների մասին հիմնավորում, թե ինչու պետք է շնորհվի նրան գիտական այդ աստիճանը։

Աբեղյանը ներկա էր։ Շատերը զարմացած էին, կարծում էին, թե կխուսափի, չի գա, որովհետև ինչ-որ առիթով գժտվել էին և խուսափում էին միմյանց հանդիպելուց։

Երևի մի երեք մարդ խոսել էին, որ Աբեղյանը ձայն խնդրեց։ Բոլորը նստած էին խոսում։ Այդպես էր ընդունված կարգը։ Աբեղյանն էլ, որ գալիս էր նիստի, նույնպես իր կարծիքը հայտնում էր նստած։ Այս անգամ նա ոտքի կանգնեց։ Ու երբ սկսեց, ամենքը նկատեցին, որ հուզված է։

Նստած լինելով սեղանի մոտ, ես տեղնուտեղը գրի առա Աբեղյանի ելույթը։ Այնպես որ, համարյա բառացի եմ բերում ասածը։

— Երկար խոսել այն մասին, որ Ստեփան Մալխասյանն

արժանի է դոկտոր լինելու, անտեղի է։ Ստեփան Մալխասյանն այն գիտնականն է, որի անունն շատ բան է ասում։ Նա ըստ էության դոկտոր է, անկախ նրանից՝ մենք այդ աստիճանը կտանք նրան, թե ոչ։

Մի պահ կանգ առավ, շունչ քաշեց, կամենալով աճող հուզմունքի առաջն առնել։

— Ես ամաչում եմ, որ նրանից առաջ եմ դոկտորության արժանացել, ես ամաչում եմ, որ իր ուսուցչին աշակերտն է ձայն տալու, ես ամաչում եմ, որ հակառակը չէ... Առաջինը նրա հարցը պետք է լուծվեր և հետո մերը...

Այլևս ոչ ոք չխոսեց։ Նույնիսկ քվեարկելու հարկ չեղավ։

* * *

1940-ի ուշ աշնանը նշանակվեցի գրական ամսագրի խմբագիր։

Ըստ իմ ծրագրի՝ ամսագիրը և՛ արտաքնապես, և՛ բովանդակությամբ տարբերվելու էր նախորդից։ Մտքովս անցավ փոխել ամսագրի վերնագիրը։ Զգաջողվեց, հանդիպեցի դիմադրության։ Մնացածը թվում էր ինձ իմ իրավասության ենթակա ու ես գործում էի իմ նախաձեռնությամբ։ Փոխեցի ամսագրի չափսը,— շարվածքը, ձևավորումը։ Խմբագրական նոր կազմ հաստատել տվի։ Մտքիս դրի գեղարվեստական գործեր տպագրել խիստ ընտրությամբ, որ ամսագրում հրապարակվելը լինի ամեն մի, նույնիսկ հռչակավոր գրողի ձգտումը։ Որոշեցի չսպասել, որ գրողները նյութ բերեն, ինքս էի հետները պայմանավորվում, իհարկե, ոչ ամենքի հետ։ Բացի այդ, մտածում էի, թե ամսագիրը կարող է ավելի հետաքրքիր լինել, եթե նրա էջերում հայագիտական հարցեր արծարծվեն։ Իսկ այդ նպատակով հարկավոր էր ապահովել անվանի գիտնականների աշխատակցությունը։ Եվ կարողացա առնել նրանց համաձայնությունը՝ աշխատակցել ամսագրին մեծ ու փոքր հոդված-ուսումնասիրություններով։

Մի խոսքով՝ ինձ հարկավոր էր գնալ Աբեղյանի մոտ և ապահովել նրա մասնակցությունը հենց առաջին համարից։ Ես հիշում էի նրա խորհուրդը։ Բայց այդ շրջանում,— խոսքը 1940—1941 թթ. է վերաբերում,— իբրև հրատարակիչ մոտը հաճախ էի լինում, զգացել էի նրա համակրական վերաբերմունքը և վստահ էի, որ չի մերժի աշխատակցել։

Ներկայացա և պարզեցի գալուս պատճառը։ Միաժամանակ շտապեցի ասել, որ մտադիր եմ նույն խնդրանքով դիմել Աճառյանին, Մալխասյանին, Ղափանցյանին։

Երկար մտածեց։

— Ես կարող եմ տալ մի ակնարկ, որ պատրաստ է, մնում է վրայից մի անգամ էլ անցնել՝ «Մեսրոպ Մաշտոցը և գրի ու գրականության սկիզբը»։ Մի շաբաթից կամ տասը օրից պատրաստ կլինի։ Բայց…

Ու կանգ առավ։

— Ծի՞շտ եք վարվում ինձ ու ինձ նմաններին ձեր ամսագրի հեղինակ դարձնելով։ Դրանից չի՞ փոխվի, արդյոք, ամսագրի բուն նշանակությունը։ Չե՞ն դժգոհի գրողները, արդյոք։ Չէ՞ որ դա գրողների հանդեսն է և բնական է, որ նրա խնդրո առարկան լինելու է արդի գրականությունը։ Գուցե խուսափեք մի համարում մի քանի հայագետի տեղ տալուց։ Այս անգամ մեկին, մի երկու համար հետո մի ուրիշին։ Մտածե՞լ եք դրա մասին։

Ես այնպես էի խանդավառված իմ ծրագրով, որ Աբեղյանի խորհրդի իմաստը բնավ չընկալեցի, ոչ էլ մտածեցի նախազգուշացվող հետևանքների մասին։

Ամսագրի էջերում միաժամանակ կամ միմյանց հաջորդելով՝ հանդես եկան Մանուկ Աբեղյանը և Հրաչյա Աճառյանը. Ստեփան Մալխասյանը և Գրիգոր Ղափանցյանը, Արսեն Տերտերյանը և Գարեգին Լևոնյանը։ Եվ ուրիշներ։ Այս անունները, բնականաբար, փոխադրեցին ինձ մի այլ մթնոլորտ, ու ես խմբագրական կոլեգիան դարձրի «խմբագրական մարմին», գրախոսության բաժինը՝ «մատենախոսություն»։

Ամսագիրը բավական խիստ քննադատվեց մամուլում։ Քննադատությունն ուղղված էր նոր խմբագրի դեմ։ Քննա-

դատվեցի, որ ամսագիրը, այժմեական լինելու փոխարեն, իր էջերը զիջում է անցյալին։

Երբ հրաժեշտ էի տալիս, դռների մեջ Աբեղյանն ասաց, բայց այս անգամ այնպիսի մեղմությամբ, կարծես անհարմար էր զգում անդրադառնալ նույն հարցին.

— Քանի՞ տարեկան եք։

Պատասխանեցի։

— Երանի՜ ձեզ։

Բայց ես զգում էի, որ դա չէ ասելիքը։

— Դժվար կլինի, շատ դժվար երեք ծանր պարտականություն ունենալ... Բոլոր դեպքերում հաջողություն եմ ցանկանում ձեր նոր գործին։

Լռեց մի պահ, հետո ավելացրեց.

— Մի շաբաթից պատրաստ կլինի «Մաշտոցը»։

* * *

Իլյա Աբուլաձեից ստացա մի հոդված։ Նա վիճում էր Աբեղյանի հետ՝ մեր ամսագրում նրա տպագրված ուսումնասիրական ակնարկի կապակցությամբ։ Ես անմիջապես գնացի Աբեղյանի մոտ և հարցրի, թե կկամենա՞ ծանոթանալ։ Հրաժարվեց, բացատրելով, թե ինքը դա գիտական էթիկային հակառակ է համարում։ Տպագրվելուց հետո կկարդա, եթե առարկելու բան ունենա՝ կգրի պատասխան։

Աբուլաձեի հոդվածը լույս տեսավ։ Դրանից հետո մի-երկու անգամ հանդիպեցի Աբեղյանին, նա ոչ մի խոսքով չանդրադարձավ, ասես Աբուլաձեի առարկությունը լույս չէր տեսել։ Հետո իմացա, որ չի կարդացել։

Մի օր նա եկավ ու խնդրեց ուշադիր լսել իրեն։ Եվ կետ առ կետ հերքեց Աբուլաձեի առարկությունները և հարցրեց՝ կտպագրե՞մ, եթե այս բոլորն ինքը գրի իբր պատասխան։

Համաձայնությունս ստանալուց հետո հետաքրքրվեց, թե իր հոդվածը երրորդ համարում լույս կտեսնի՞։

Ասացի չորրորդը վաղը վաճառքի է հանվելու, իսկ հինգերրորդը մամուլի տակ է արդեն։ Պատահական հանգամանք-

ների բերումով երրորդ և չորրորդ համարների մամուլները համարյա միաժամանակ տպագրության հանձնվեցին։ Այդ պատճառով էլ երկու համարը միմյանց հաջորդելով լույս աշխարհ եկան, արագացնելով հինգերորդի գործը տպարանում։

— Ուրեմն, ի՞նչ, մնում է վեցերորդի՞ն։

Խոստացա մի բան անել։ Չէի կարող մերժել Աբեղյանին, բայց և ինքս էլ չգիտեի, թե ինչպես եմ խոսքիս տերը լինելու, երբ հինգերորդի մամուլները էջկապված և վերջնական սրբագրության էին ենթարկված։

Աբեղյանը պատասխանը բերեց ավելի ուշ, քան պայմանավորվել էինք։ Ընկա դժվար կացության մեջ։ Տանը ու թեթև արի և միակ ելքը երևի այն էր, որ հինգերորդին միացնեի վեցերորդ համարից տպարան ուղարկված և էջկապ արված նյութերը և հրատարակեի միացյալ համար։

Ամեն մի հանդիպման՝ Աբեղյանը հարցնում էր.

— Ի՞նչ եղավ։

Ես նրան հանգստացնում էի, թե շուտով կլինի, բայց համարը ուշանում էր։ Ճիշտն ասած, Աբեղյանին այդպես անհամբեր չէի տեսել։

Պատերազմը սկսվեց, կյանքը խառնվեց։ Եվ Աբեղյանն այլևս չէր հարցնում, թե երբ լույս կտեսնի ամսագիրը։ Տպարանում չէին շտապում սկսել տպագրությունը միացյալ համարի, որի խաղաղ բովանդակությունն արդեն չէր համապատասխանում կյանքի նոր ընթացքին։

Համարը լույս տեսավ զգալի ուշացումով։

* * *

Մի քանի անգամ եղել եմ Աբեղյանի տանը հրատարակչական գործերով։ Երբեմն կարճ եմ մնացել, այնքան, որքան գործը պահանջել է, երբեմն էլ ոտս կախ եմ գցել, մնացել, որ հետը մի-փոքր զրուցեմ։

Մի անգամ դիմեցի նրան, թե կյանքի հարուստ ուղի է անցել, շատ մարդկանց է հանդիպել, ծանոթ եղել, հետները

բարեկամություն արել, արդյոք ճիշտ չէ՞ր լինի, եթե գրեր իր հուշերը։

Եվ ավելացրի.

— Պետհրատն իր վրա կվերցնի գրքի տպագրությունը, եթե ուզեք՝ այժմյանից կարելի է պայմանագիր կապել։

— Պետք է, անշուշտ, ես էլ եմ հասկանում, բայց դեռ ժամանակը չէ։ Հետազոտելու բազմաթիվ խնդիրներ ունեմ։ Ի՞նչն է շտապ, հուշե՞րը, թե՞ գրականության պատմությունը։

Հարցը տվեց և ինքն էլ պատասխանեց.

— Իհարկե, պատմությունը։ Ա՛յ, եթե հասցնեմ վերջացնել, այն ժամանակ գուցե։

Ու մի պահ լռելուց հետո շարունակեց խոսքը.

— Մի խնդիր կա, որ կարող է չգրելուս պատճառը դառնալ։ Պետք է ճշմարտությունը գրեմ, միայն ճշմարտությունը։ Կտպագրե՞ք, ո՛չ, չե՛ք տպագրի, բարեկամ։ Կասեք՝ այս կարելի է, այն չի կարելի, ուրեմն ինչո՞ւ գրեմ։ Շատ խնդրեցին, մի քանի անգամ ասացին, որ Թումանյանի մասին հուշեր գրեմ։ Չէի համաձայնում, բայց հենց որ ասի կգրեմ, միայն թե չթաքցնելով ճշմարտությունը, հանգիստ թողին, այլևս չատիպեցին։ Չխոստացա, փորձ արի, մի-երկու բան գրի առա, բայց հետո հրաժարվեցի։ Ոչ, չեմ գրի, ավելի լավ է իմ գործերով զբաղվեմ։

* * *

Գնացել էի Աբեղյանի մոտ։ Ձեռքին Երևանում լույս տեսնող ռուսական թերթն էր՝ «Կոմունիստը»։ Աչքիս վրդովված էր երևում։ Այն է ուզում էի հարցնել, թե ինչ է պատահել՝ ինքը բացվեց։

— Այսպես էլ բա՞ն կլինի. հոդված են պատվիրում, չես ուզում գրել՝ խնդրում են, վերջն էլ վարվում են իրենց կամեցածի պես։ Ես Մանուկ Աբեղյան եմ ստորագրել, իսկ նրանք բռնել են ու ավելացրել՝ ակադեմիկոս։ Չեմ հասկանում՝ դա ինչի՞ համար է։

* * *

Երբեք այդպիսի զվարթ տրամադրությամբ չէի տեսել Աբեղյանին։ Ծիծաղում էր, կատակում։ Արեց հետևյալ պատմությունը, որն ընդհատվում էր հանկարծ, որովհետև չէր կարողանում զսպել ծիծաղը։

Դեմիրճյանը, ինչպես հայտնի է, խոսելիս փոքր-ինչ կակազում է։ Իսահակյանը՝ նույնպես։ Մի օր նրանք հյուր են լինում մի գյուղացու տանը։ Տանտերը, նույնպես կակազ մի մարդ, սրանց պատվին ընթրիք է տալիս, և հաճելի զրույցը, գեղջկական սեղանի շուրջը, տևում է մինչև ուշ գիշեր։ Խոսում են միայն Իսահակյանն ու տանտերը։ Դեմիրճյանը ձայն չի հանում։ Սրտնեղում է Իսահակյանը, բայց ուրիշների ներկայությամբ հարմար չի գտնում ընկերոջը դիտողություն անել։ Մյուս օրը, առավոտյան կողմը, թողնում են հյուրընկալ տունը։ Երբ բավականին հեռանում են՝ Իսահակյանը հայտնում է իր դժգոհությունը.

— Ի՞նչ պիտի մտածեր տանտերը, կասեր գյուղացի եմ՝ բանի տեղ չդրեց։

Դեմիրճյանը կակազելով պատասխանում է.

— Դու կակազ, նա կակազ, ես էլ որ խոսեի՝ պիտի կարծեր, թե իրեն ձեռ ենք առնում։

Աբեղյանին ասացի, թե այդ պատմությունը կարդացել եմ, բայց չեմ հիշում որտեղ։

— Գուցե, գուցե։ Ապա հարցրեք Ավետիքին կամ Դեմիրճյանին։

Հարցրի Դեմիրճյանին՝ պատահե՞լ է այդպիսի դեպք։

— Միտս չէ, գուցե։

Ու ինքն էլ հետաքրքրվեց.

— Ինչպես ասացի՞ր, հապա նորից պատմիր։

* * *

1944-ի գարնանը կազմակերպվեց Մհեր Աբեղյանի ստեղծագործությունների անհատական ցուցահանդեսը, և հայրը ցանկություն էր հայտնել ներկա լինել բացմանը։

Համբարձում Խաչանյանը, որ Մհերի քենակալն էր, հանձնարարություն է ստանում՝ Աբեղյանին ուղեկցել նկարիչների տուն։

Անցան օրեր։ Խաչանյանը հանկարծամահ եղավ։ Սգից հանելու սովորույթի համաձայն՝ Մհերի կինը, Լուսիկը քրոջը տանում է իրենց տուն։ Աբեղյանը բռնում է տիկին Խաչանյանի ձեռքը և ասում.

— Գնաց խառնվեց հազար տարվա մեռելներին։

Հետո ավելացնում է.

— Մի տարվա մեռածը և հազար տարվանը՝ նույնն է։

Նկատելով, որ շրջապատողները չեն հասկանում իրեն՝ ասում է.

— Այսպես էլ անարդար բան կլինի՞. նա երիտասարդ էր ու չկա, ես ծեր եմ և կամ։

* * *

1944-ի գարնանն էր։ Գնացել էի Աբեղյանի մոտ գործով։ Տրամադրությունը բարձր էր։ Մեկ նստում էր, մեկ վեր կենում։ Ժպտում էր։ Իսկ ժպտում էր նա, ասես արեգակի ճառագայթ էր ընկնում ժայռաբեկորի վրա և լուսավորում, տեսանելի դարձնում մի թաքնված հրապույր, որ բարության վսեմ արտահայտություն էր, որը պահում էր հոգու խորքերում...

Հարցրի, թե չէ՞ր կամենա նոր աշխատություն առաջարկել հրատարակչությանը։

— Ինչպես չէ, ինչպես չէ։ Երկու ուսումնասիրություն ունեմ պատրաստ։ Մեկը մեր քերականության խնդիրներին է վերաբերում, մյուսը՝ վիպական բանահյուսությանը։ Այս մեկի ծավալը կարող է վախեցնել, բայց եթե տպագրվի, որքա՜ն երախտապարտ պիտի լինեի։

Դա իմ վերջին հանդիպումն էր։

* * *

1944 թվականն էր։

Աբեղյանի որդին մեկնելու էր Մոսկվա։

Տրետյակովյան պատկերասրահում կազմակերպվելու էր

հայկական կերպարվեստի ցուցահանդես, նա կազմակերպիչներից էր։ Աբեղյանը, որ վատառողջ էր, նկատում է որդու տարակուսանքը՝ գնա՞, թե մնա։

— Գնա, մի վախենա, չեմ մեռնի,— ասում է հայրը։ Գնա, բայց աշխատիր սեպտեմբերի 24-ին այստեղ լինել։

Մի օր Աբեղյանը հարցնում է հարսին՝ Լուսիկին։

— Նամակ գրելո՞ւ ես Մհերին։

— Իհարկե։

— Գրիր, որ սեպտեմբերի 24-ին այստեղ լինի։

— Ի՞նչ է, այդ օրը բա՞ն կա։

— Ոչինչ, դու գրիր, որ չմոռանա և այդ օրը անպայման այստեղ լինի։

Անցնում է մի քանի օր։ Լուսիկը նամակ է գրում Մհերին, հաղորդում է ամուսնուն հոր խնդրանքը՝ սեպտեմբերի 24-ին անպայման Երևանում լինելու մասին, բայց միաժամանակ զգուշացնում է, թե հայրիկը չի ասում, թե ինչու։

Աբեղյանը հարցնում է.

— Գրեցի՞ր, Լուսիկ։

— Գրեցի, հայրիկ։

— Գրեցի՞ր, որ սեպտեմբերի 24-ին այստեղ լինի։

— Գրեցի, հայրիկ։

Ձայն չի հանում։ Անցնում է ժամանակ։ Վրա է հասնում սեպտեմբերի 24-ը և այդ օրը վախճանվում է Մանուկ Աբեղյանը։

Լսածիս մասին հարցրի Մհեր Աբեղյանին, նա հաստատեց, ավելացնելով.

— Սեպտեմբերի 24-ի երեկոյան Մոսկվայում գնացինք ներկայացում նայելու։ Ներկայացման կեսին հանկարծ մի չարագուշակ զգացում ընկավ սիրտս։.

— Հայրիկին բան պատահեց։

Ասացի ես կողքիս նստած Ռուբեն Դրամբյանին։

Հաջորդ օրը ստացվեց դժբախտությունը հաստատող հեռագիր։

* * *

Մանուկ Աբեղյանի մահը ինձ համար անսպասելի էր։ Ոչ այն պատճառով, որ առողջ էի կարծում։ Այն պատճառով, գլխավորապես, որ ինձ չէր թվում, թե նա էլ է ենթակա բնության օրենքներին, մի օր ծնվել է, մի օր էլ մեռնելու է։

Եվ, այնուամենայնիվ, վախճանվել էր։ Չկար այլևս հայագիտության գագաթը։

Գրականության և արվեստի մեծերի հետ եմ բարեկամություն արել և հակառակ մի քանի տարվա իմ հաճախակի այցերին, չեմ կարող ասել, թե նրա հետ մտերմություն ունեի, թեկուզ այնքան, որքան դրա իրավունքն է ունենում սիրված աշակերտը։ Իսահակյանի և Դեմիրճյանի հետ վիճում էի, թույլ էի տալիս անգամ կատակել։ Իսկ Աբեղյանի հետ հարաբերությունս պաշտոնական էր։ Մի ուժ կար Աբեղյանի մեջ, որ ստիպում էր ինձ, և ոչ միայն ինձ, նույնիսկ տարեց ու մեծահռչակ մարդկանց, ինչ-որ տարածության վրա մնալ։ Բոլորն ակնածում էին, պատկառում։ Երբ նա սենյակ էր մտնում, քո կամքից անկախ՝ ոտքի էիր կանգնում։

Ուսուցիչներ կան, թեկուզ և նշանավոր իրենց ասպարեզներում, որոնց աշակերտները գալիս և անցնում են նրանց։ Ես համարյա թե չգիտեմ չգերազանցված ուսուցիչ։ Իմ ճանաչածներից միակը Մանուկ Աբեղյանն էր, որ գերազանցել էր իր հայտնի ուսուցիչներին, իսկ աշակերտներից ոչ մեկը նրան գերազանցել չկարողացավ։ Աբեղյանը ուսուցիչ էր և ուսուցիչ էլ մնաց։

## ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆ

*Այս մեծահռչակ գիտնականի անունը վաղուց էի լսել, դեռևս աշակերտ ժամանակվանից։ Իմ հայոց լեզվի ուսուցիչը՝ Մկրտիչ Մկրտումյան, որ էջմիածնի Գևորգյան ճեմարանն էր ավարտել, հիացած էր խոսում նրա մասին, ու նրա պատմածները անհավատալի էին թվում մեզ, մանավանդ երբ ասում էր, թե նա կազմում է (թե՞ կազմելու է, լավ չեմ հիշում) հայոց լեզվի քերականությունը՝ աշխարհի բոլոր լեզուների համեմատությամբ։*

*Ասում են առաջին տպավորությունը չի փոխվում և մարդուն ուղեկցում է մինչև նրա կյանքի վերջը։ Եվ այն ժամանակ, և հետո, երբ արդեն անձնական ծանոթություն ունեի հետը, չէի կարողանում «անջատվել» առաջին անգամ լսածիցս ու միշտ, նրան տեսնելիս, մտածում էի, թե այդքան բան ի՞նչպես է ամփոփվում մի գլխի մեջ։*

*Երբ առաջին անգամ տեսա Աճառյանին, հետո էլ ծանոթացա հետը, մտածում էի՝ այդպիսի մեծություն և այդպիսի պարզ, հասարակ պահվածք։ Չնայած իր ծայրահեղ զբաղվածությանը՝ մատչելի էր բոլորին, կարող էր ամեն մեկը մոտենալ, իրեն հետաքրքրող հարցը տալ և պատասխան ստանալ։ Հազիվ ծանոթացած՝ կատակներ էր անում։ Մի խոսքով՝ իր արտաքինով, իր պահվածքով չէր զանազանվում իր շրջապատի մարդկանցից։*

* * *

*Աչքի եմ անցկացնում գրառումներս և, թող խոստովանություն լինի, ծանոթությունս այդ մեծ գիտնականի հետ, ցավոք, իմ օգտին չէ։ Եղածը եղել է ու ինձ մնում է անել այդ պատմությունը ինչպես որ պատահել է։*

Աճառյանը Հայպետհրատին տպագրության առաջարկեց իր «Հայոց լեզվի պատմություն» աշխատության առաջին հատորը։ Վերապահություն կար նրա այդ ուսումնասիրության նկատմամբ։ Մառի ազդեցությունն այդ ժամանակ ուժեղ էր բոլորի վրա, այդ թվում և իմ, իսկ Աճառյանի գիրքն այլ մոտեցումով էր գրված, եթե չասենք՝ հակառակ։

Ես պետք է պատասխան տայի։ Ստիպված էի արհեստական պատճառներ մեջ բերել։ Մի անգամ ասացի, թե լավ թուղթ չունենք։

— Ինչ թղթի վրա ուզում եք տպագրեք, թեկուզ շաքար փաթաթելու թղթի վրա, բայց տպագրեք։ Լավ գրքի համար թուղթը ոչ մի նշանակություն չունի։

Մի այլ անգամ ասացի, որ երևի հարկ կլինի առաջաբան գրել և հայտնել անհամաձայնություն՝ որոշ տեսակետների նկատմամբ։ Համաձա՞յն է։

— Համաձայն եմ, իհարկե։

Ու բարձրացրեց երկու ձեռքը, որպես հանձնվելու նշան։ Հետո ձայնն իջեցրեց և կամացուկ ասաց.

— Առաջաբան չէ, ինչ ուզում եք գրեք, միայն թե տպագրեք։ Գրեցեք, որ այս գիրքը մի գրոշ չարժե, գիտության հետ ոչ մի կապ չունի, գրեցեք, ինչ ուզում եք գրեցեք, բայց տպագրեք։

Եվ հետո ավելացրեց.

— Ոչ մի առաջաբան անհաջող գրքին հաջողություն չի բերի։ Եվ հաջողված գրքի ճանապարհը փակել չի կարող ոչ մի բացասական առաջաբան։

Իմ սխալը եղավ այն, որ խորհրդակցեցի համալսարանի այն լեզվաբանների հետ, որոնք Մառի երկրպագու էին։ Հրատարակչության մեջ ծանր կացություն էր ստեղծվել։ Չգիտեինք ինչ անել։ Հայպետհրատի ղեկավարությունն այս բոլորի մասին իրազեկ դարձրեց վերադաս մարմիններին։ Նրանք գտան, որ Աճառյանի նման գիտնականին մերժել չի կարելի, բայց ասացին, որ լավ կլինի, եթե Պետական հրատարակչության փոխարեն համալսարանը լույս ընծայի, որպես ուսումնական ձեռնարկ, ու եթե անհրաժեշտ են համարում՝ թող մի առաջաբան կցեն, քննադատեն հեղինակի

սխալ հայացքները, բայց նշեն նաև գրքի արժանիքները։ Ինձ վրա դրվեց այս որոշմանը պրոֆեսորին տեղյակ պահելու ծանր պարտքը։

Լսեց և ասաց.

— Ես այդպես էլ սպասում էի։

Եվ հետո.

— Ձեզանից չեմ նեղանում, դուք կարգադրություն եք կատարում։

Ես չթաքցրի, որ ես էլ այնպես եմ մտածում, ինչպես որոշում կայացնողները։

— Ձեզ պատիվ է բերում այդ անկեղծ խոստովանությունը, բայց չեք կարող երևակայել, թե ինչ մոլորության մեջ եք։ Կհասկանաք մի օր, թե ե՞րբ՝ չեմ կարող ասել, բայց կհասկանաք անպայման երևի ինձանից հետո։

Մի հեգնական ժպիտ գծվեց դեմքին.

— Ասենք, ինձ համար միևնույն է, թե ով է տպագրում, միայն թե լույս տեսնի։

* * *

Փողոցում հանդիպեցի, մոտեցա, բարևեցի, հարցրի թե ինչպես է։

Հարցս օդի մեջ կախված մնաց։ Կշտամբող հայացքը հառեց վրաս։

— Ի՞նչպես մինչև հիմա չեք ասել, թե ով է ձեր անունը։

— Հաբեթ Խաչատրյանը,— վրա բերի ես։

— Թանկագին մարդ էր ինձ համար։ Շատ հիշողություններ են կապված նրա հետ։ Իսկ եթե իմանայիք, թե ինչպես էր սիրում Կոմիտասը նրան։

* * *

Ես հազիվ մի-երկու անգամ եմ եղել նրա տանը և մնացել եմ զարմացած, որ այն սենյակում, ուր նա պարապում էր, գիրք չկար։ Անգամ իր հրատարակած գրքերը չկային։ Պահարաններում տպագրության պատրաստ և հերթի սպասող ձեռագրեր։ Սեղանի վրա կային գրքեր. երբ մի-երկուսը

աչքի անցրի, հասկացա, որ առաջիկա հետազոտության կապակցությամբ դրանք գրադարաններից էին բերված։

Զարմանք հայտնեցի, որ գոնե իր տպագրած աշխատությունները չի պահում։

— Իսկ ինչո՞ւ պահեմ, ինչի՞ս են պետք։

Ու հետո բացատրեց այսպես.

— Աշխատությունը ձեռագիր վիճակում իմն է, տպագրվելուց հետո՝ ընթերցողներինն է։ Իսկ ես իմ աշխատությունների ընթերցողը չեմ։

* * *

Նշանակվեցի գրական ամսագրի խմբագիր և որոշեցի հայագետների աշխատակցությունը խնդրել։ Դիմել էի Աբեղյանին, ուրիշներին նույնպես։ Հիմա խնդրում էի Աճառյանին։ Մերժեց, ասաց, որ զբաղված է իր հիմնական գործերով։

Ամսագիրը հետաքրքիր դարձնելու ծրագրիս մեջ մի կետ կար. գրախոսություններ շատ տպագրել և, շարքային հեղինակների կողքին թեկուզ և կարճ հոդվածների տակ, ունենալ անվանի դեմքերի ստորագրություն, անկախ այն բանից, գրող է, թե գիտնական։ Դա ինձ մասամբ հաջողվեց։

Աճառյանի հետ խոսելիս հիշեցի, որ նա Խաչատուր Կանայանի թեկնածուական դիսերտացիայի ընդդիմախոսն էր։ Կանայանի դիսերտացիան էլ նվիրված էր Ավետիք Իսահակյանի բանաստեղծությունների լեզվին։ Ընդդիմախոսություններն էլ սովորաբար գրավոր էին լինում։ Խնդրեցի, որ համաձայնի իր ընդդիմախոսականը տպագրել, որպես գրախոսություն։

— Այդ կարելի է։

* * *

Ամսագրի մի օրինակ ձեռքին խմբագրություն եկավ Աճառյանը։ Եվ հայտնեց, որ, հակառակ իր մերժման, ինքը այժմ պատրաստակամություն է հայտնում աշխատակցելու։ Ու եթե խմբագրությունը դեմ չէ, գուցե արժե պայմանավորվել, թե առաջին հոդվածը ի՞նչ հարցի վերաբերի։

*Լսել էի, որ Աճառյանը կազմում է անձնանունների բառարան։ Խնդրեցի, որ մի հոդված գրի անձնանունների մասին ընդհանրապես, կանգ առնելով հայկականի վրա։*

*— Շատ լավ։*

*Համաձայնեց։*

*— Իսկ ի՞նչ ծավալով։*

*Ես խնդրեցի, որ գրի հեղինակային մի մամուլի չափով։*

*— Ժամկե՞տ։*

*— Մի ամիսը բավակա՞ն է։*

*— Ինչո՞ւ այդքան շատ։*

*— Ուրեմն՝ երբ կուզեք բերեք։*

*Մի փոքր հետո հարցրեց.*

*— Ձեր անունը, ի՞նչ եք կարծում, հայկակա՞ն է։*

*— Հայկական չէ։*

*— Ընչակա՞ն է հապա։*

*— Երևի՝ իսպանական։*

*— Իսկ ինչո՞ւ եք այդպես կարծում։*

*— Դոլորես Իբարուրիի որդու անունը Ռուբեն է։*

*— Ոչ, իսպանական չէ, հրեական է, ավելի ստույգ՝ եբրայական։ Մի ամբողջ նախադասություն է. Ռու՝ նշանակում է տես, բեն՝ որդի։*

*Ես լսում էի Աճառյանին և հիշում, որ գրողների տան ատամնաբույժը, ազգությամբ հրեուհի տիկին Վանեցյանը* «Ах эти бены» *էր կոչում կիրակի օրերը իրենց տուն եկող ամուսնու՝ առաջին կնոջ չարաճճի տղաներին, որ գալներուն պես տակնուվրա էին անում ամբողջ տունը։*

*— Ձեր մտքերն ուրի՞շ տեղ են։*

*Ես ասացի, թե ինչ հիշեցի, ինչպես նաև այն, որ Ֆեյխտվանգերի «Հրեական պատերազմ» վեպում գլխավոր հերոսը կոչվում էր Հովսեփ-բեն-Մատաթիա։ Ուրեմն՝ Մատաթիայի որդի Հովսեփ է նշանակում։*

*— Իհարկե։*

*Մի փոքր հետո.*

*— Հիշեք ձեր պատանեկությունը, անպայման կարդացած կլինեք «Բեն-Հուրը»։ Ձեր մտքով չի՞ անցել, որ նշանակում է կրակի որդի։*

Ես լսում էի կլանված ու ցավում, որ իր ուսանողը չեմ եղել։

— Հիմա ասեմ, թե ինչ իմաստ կարող էր պարունակել ձեր անունը։ Հավանաբար դա բարեմաղթություն է, որ արվել է այն աղամարդուն, որի կինը իրար ետևից աղջիկներ է բերում, այսինքն՝ արժանանա որդու ծնունդին։ Կամ էլ այդ ասված է այն հորը, որի որդին պատերազմի դաշտում է կամ պանդխտության մեջ, ուրեմն բարեմաղթում են նրա վերադարձը։ Բայց սա ենթադրություն է, իմ ենթադրությունը։

Մի պահ հետո ավելացրեց.

— Հետաքրքի՞ր է։

Եվ ապա.

— Ես գնացի։

* * *

Զանցավ մի քանի օր՝ Աճառյանը խոստացած հոդվածը դրեց սեղանիս։

— Ե՞րբ կարող եմ իմանալ պատասխանը՝ տպագրո՞ւմ եք, թե ոչ։

— Հենց հիմա։

— Ինչպես թե՝ հենց հիմա։

— Համարեք ձեր հոդվածն ընդունված, կհրապարակվի երրորդ համարում։

— Թող լինի երրորդում, բայց ես ուզում եմ իմանալ խմբագրի որոշումը՝ հոդվածը կարդալուց հետո միայն։ Ե՞րբ ի վիճակի կլինեք հայտնելու ինձ ձեր որոշումը։

— Թեկուզ վաղը։

* * *

Հաջորդ օրը Աճառյանը եկավ ու նստեց դիմացս։

— Կարդացի՞ք։

Չէի կարդացել։ Ներողություն խնդրող հայացքով մեղավորս նայեցի իրեն։

— Ոչինչ, ոչինչ, մի նեղվեք։ Կարող եմ վաղը գալ, մյուս օրը։ Բայց մի բան ասեմ. ձեզանից մեծ եմ և ինձնից ձեզ խրատ կհասնի։ Աշխատեցեք ստույգ լինել, տված խոսքը պահել։

Ժպտաց, ինչ-որ բան ասաց պահլավերեն, որից ոչինչ չհասկացա։

Նայեց ինձ։

— Տեսնում եմ, որ պարսկերեն չգիտեք։ Ռուսն ասում է՝ մարդ պետք է իր տված խոսքի տերը լինի։ Իմաստուն խոսք է։ Պարսիկն էլ ասում է. մինչև խոսքը տալը՝ դու ես խոսքի տերը, խոսք տալուց հետո՝ խոսքն է քո տերը։

Նորից ժպտաց։

— Հո չե՞ք նեղանում։

* * *

Հաջորդ օրը, որպեսզի ժամանակ չկորցնի, ինքս գնացի մոտը, հայտնեցի, որ կարդացել եմ, պայմանավորվածությունը երրորդ համարի վերաբերյալ պահպանվում է։

— Իսկ ինչո՞ւ ոչ երկրորդում։

Ասացի, որ երկրորդը մամուլի տակ է և կես էջ անգամ հիմա տեղադրել չեմ կարող։ Եվ հետո հարցրի՝ մի՞թե միևնույն չէ մի ամիս առաջ, մի ամիս հետո։

— Ես գործնական մարդ եմ, և այսօրվա գործը վաղվան չեմ թողնում։ Կյանք է, ամեն ինչ կարող է պատահել։

Շատ ուշ էր, չէի կարող որևէ հոդված հանել և տեղը Աճառյանինը դնել։

* * *

Երևի մարդիկ կան, որոնց նախազգացումն ուժեղ է։ Ըստ երևույթին դրանցից էր Աճառյանը։

Երրորդ համարի ուրիշ նյութերի հետ հոդվածն ուղարկեցի տպարան։ Ստացանք սրբագրաթերթերը։

Այդ օրերին լույս տեսավ ամսագրի դեմ գրված բավական խիստ մի հոդված։ Խմբագիրը խստագույնս քննադատվում էր գրական հանդեսը ժամանակակից հարցերից հեռու պա-

հելու համար։ Հոդվածի հեղինակը և նրա հետ միասին նաև ուրիշներ, անվանի գրողներից, օրինակ Դեմիրճյանը, Գրողների միության նախագահության նիստին ինձ կշտամբեցին գրական սխալ քաղաքականություն վարելու համար։

Հոդվածը լույս տեսնելու հաջորդ օրը Աճառյանը եկավ խմբագրություն և խնդրեց իր նյութը չտպագրել։

Ես ասացի, որ քննադատությունն իրեն չի վերաբերում։ Համառեց, ասելով, որ իր համար չի անհանգստանում, որ ինքը հրի ու ջրի միջով անցած մարդ է և մտածում է խմբագրության մասին։ Եվ ավելացրեց, թե ինքը չի կամենա, որ ուրիշներն էլ իր պատճառով հարվածի տակ ընկնեն։

Ես ցույց տվի հոդվածի սրբագրաթերթերը։ Նա ասաց.

— Ուզո՞ւմ եք վերադարձրեք ինձ, ուզո՞ւմ եք պահեք ձեզ մոտ, բայց ոչ մի դեպքում մի տպագրեք։

Նրա խոսքը կտրական էր։

Եվ այդպես, ստիպված եղա հոդվածը հանել երրորդ համարից։

* * *

Աճառյանը եկել էր խմբագրություն, բայց մեր խոսակցությունն ընդհատվեց։ Եկավ մի գրող, ներողություն խնդրեց պրոֆեսորից, ասաց, թե շտապում է և բառացիորեն երկու խոսք ունի փոխանակելու։ Երկու խոսքը դարձավ հարյուր, և քառորդ ժամից ավելի Աճառյանը ստիպված էր լսել իրեն չհետաքրքրող մի հարց ու պատասխան, մի որոշ իմաստով՝ վեճ։

Զրուցակիցս դուր չեկավ Աճառյանին. երբ գնաց՝ հարցրեց.

— Ո՞վ էր այդ տգետը։

Եվ տվի այցելուի ազգանունը։

— Չեմ լսել, բայց...

Եվ հետո ասաց պարսկերեն մի խոսք, որի հայերենն իր թարգմանությամբ ստացվեց այսպես. «Մարդ կա՝ գիտի, և գիտի, որ գիտի, մարդ կա՝ գիտի և չգիտի որ գիտի, մարդ կա՝ չգիտի և գիտի որ չգիտի, մարդ կա՝ չգիտի և չգիտի որ չգիտի»։

Ու ասաց, թե քիչ առաջվա այցելում վերջիններից է՝ չգիտի, որ չգիտի։

Մի-փոքր դադարից հետո ավելացրեց.

— Դրանց թիվը հիմա շատ է։

* * *

Ես չեմ հիշում, որ Աճառյանը սխալվեր։ Ինչ որ ասում էր՝ ճիշտ այդպես էլ լինում էր։ Բայց մի անգամ սխալվեց։

Հանդիպեցինք փողոցում։ Նկատեց, որ տրամադրությունս բարձր է։

— Ի՞նչ է պատահել, աչքիս զվարթ եք երևում։

— Պրոֆեսոր, կարող եք շնորհավորել, կինս ազատվել և աղջիկ է բերել։

— Շնորհավորում եմ։ Առաջնե՞կն է։

— Ոչ, մեկն ունեի, արդեն, դարձյալ աղջիկ, անունը Արփենիկ։ Սրան էլ կոչեցինք Տաթևիկ։

— Ինչո՞ւ։

Նախ՝ հայկական է, վերջապես՝ տարածված չէ։

— Չի էլ տարածվի։

Եվ հետո վրա բերեց.

— Սարքովի է։ Երգչուհու հայրն է հորինել։ Նրա աղջիկն է այդ անունը կրում, հիմա էլ ձերը, ու այդպես էլ կմնա։

Այս այն դեպքն էր, որ Աճառյանը, կարծեմ, սխալվեց։

* * *

Աճառյանը հրատարակչություն էր եկել մի հարցով։ Հեռախոսային զանգն ընդհատեց մեր խոսակցությունը։ Երբ վերջացրի և ուզեցի անցնել ընդհատված խոսակցությանը՝ Աճառյանը միջամտեց.

— Դուք հեռախոսով խոսելիս ասացիք՝ «կողմնակից չեմ այդպիսի փոխհարաբերության»։ Ձեր մտքով չի՞ անցել, որ հարաբերության կողքին այդ փոխը միանգամայն ավելորդ է։ Հարաբերություն բառն ըստ իմաստի այդ նախածանցը կրում է իր մեջ, ուրեմն էլ ինչո՞ւ ծանրաբեռնենք առանց այն էլ երկար բառը։

* * *

Մի օր հարցրեց.

— Հայտնի՞ է ձեզ, որ ես զբաղվել եմ նաև գրականությամբ։

— Ուսանողական տարիներիս կարդացել եմ ձեր գրած հայոց նոր գրականության պատմության երեք պրակն էլ։

— Ավելի լավ։

Ասաց ու լուռ մնաց։ Մի կարճ դադարից հետո խոսեց.

— Մի առաջարկ ունեմ. չե՞ք հանձնարարի ինձ պատրաստելու Դուրյանի ժողովածուն։ Կճշտեմ նախորդ հրատարակության սխալները։ Համաձա՞յն եք։

Խնդրեցի ներկայացնել ինձ ապագա հրատարակության ծրագիրը։

— Ես արդեն մտածել եմ այդ մասին։ Նախ՝ բանաստեղծություններ, հետո՝ թատերգություններ, վերջում՝ նամակներ։ Այս է իմ ծրագիրը։ Ինչպե՞ս եք գտնում։

Լավ ծրագիր էր։

— Իսկ առաջաբան և ծանոթությունննե՞ր։

— Ծանոթություններ գուցե. ես կմտածեմ այդ մասին, բայց առաջաբան հարկավոր չէ։ Ես այն համոզման եմ, որ բոլոր առաջաբանների կյանքը կարճ է։ Չե՞ք նկատել, որ գիրքը վերահրատարակվում է, իսկ առաջաբանը՝ ոչ։ Այլ խնդիր է, երբ գրքին կցվում է բանասիրական բնույթի ներածական ուսումնասիրություն։

* * *

1946-ին էր։ Ցուրտ ձմռանը, հունվար ամսին նշվելու էր Երվանդ Շահազիզի ծննդյան 90-ամյակը։

Երեկոյի օրը, ցերեկվա ժամը 12-ը կլիներ, Աճառյանը եկավ գրականության ինստիտուտ և հրավիրատոմս խնդրեց։ Բոլոր հրավիրատոմսերը բաժանված էին։

Խորեն Սարգսյանն ասաց, որ Աճառյանը կարող է առանց տոմսի էլ գալ, նրա առջև բոլոր դռները բաց են։

— Ես կարգ ու կանոն սիրող մարդ եմ և չեմ թույլ տա ինձ մի տեղ գնալ, որտեղ մուտքը հրավիրատոմսերով է, իսկ ես անտոմս եմ։

Եվ պնդեց, թե խնդրում է իրեն հրավիրատոմս տալ. Շահազիզն իր տեսուչն է եղել Նոր-Նախիջևանում, միասին աշխատել են, վաղուցվա բարեկամներ են և ինքը պետք է իր ներկայությամբ հարգի նրա հոբելյանը։

Խորեն Սերգեևիչը առաջարկեց ինձ ինստիտուտի աշխատակիցներից որևէ մեկին խնդրել, որ իր տոմսը զիջի Աճառյանին։ Շատերը տոմս առաջարկեցին, համարելով դա իրենց համար պատիվ։

Աճառյանը Սարգսյանին տվեց մի ծրար։

— Խնդրում եմ հանձնել հոբելյարին։

Խորեն Սերգեևիչը հարցրեց.

— Թույլ կտա՞ք հրապարակել երեկոյին։

— Ինչու չէ։

Իբրև երեկոյի կազմակերպիչներից, մի քառորդ ժամ շուտ գնացի։ Դեռ վաղ էր և դահլիճում ոչ ոք չկար, բացի Աճառյանից, որ գրավել էր երկրորդ շարքի պատի տակի աթոռը։

Ես ուղեկցեցի նրան բեմի նախասենյակը։

— Հետո կլցվեն,— հայտնեց իր երկյուղը Աճառյանը,— և ինձ համար տեղ չի լինի դահլիճում։

Ես նրան հանգստացրի, թե նրա տեղը նախագահության մեջ է։

Այդ օրը նա բարձր տրամադրության մեջ էր և անկեղծ ուրախանում էր Շահազիզի հասցեին ասված ամեն մի լավ խոսքի համար։

Երբ երեկոն վերջացավ և հասարակությունը խռռներամ դուրս էր գալիս, միջանցքում պատահմամբ հայտնվեցի Աճառյանի կողքին։

— Եթե ոչինչ արած չլիներ՝ հասներ այս տարիքին, էլի պետք է այս երեկոն կազմակերպվեր։ Իննսուն տարի, կատակ չէ. դա նշանակում է հաղթել բնությանը։

Կարճատև լռությունից հետո.

— Իսկ իմ աչքերը վաղուց դավաճանում են ինձ... իսկ յոթանասունս նոր եմ լրացնելու...

Խոսքն ընդհատեց և ապա շարունակեց.

— Գործ անող մարդու համար մեծ բախտավորություն է Երվանդի նման հասնել իննսուն տարվան։

* * *

Աճառյանը ութսունը չլրացրեց։ Եվ զարմանալի բան։ Երբ առաջին անգամ լսեցի Աճառյանի անունը, նա, կարծեմ, հիսուն տարեկան էլ չկար, իսկ նրա անվան շուրջը արդեն առասպելներ էին հյուսվում։ Գիտության մեջ հազվագյուտ ժողովրդականություն ունեցող մարդ, որի անվան շուրջ զանազան ճիշտ և անճիշտ պատմություններ բերնե-բերան էին անցնում։

Աճառյանի մասին մտածելիս ես միշտ անդրադարձել եմ նրա արտակարգ անհատականություն լինելուն։ Նրան կյանքը օժտել էր մի հիշողությամբ, որ առասպելական էր, աշխատասիրությամբ, որ բոլոր համեմատություններից դուրս էր, ինչպես նաև գիտական մտքի այնպիսի հղացումներով, որ նույնիսկ իբրև գաղափար և ծրագիր արժանի էին բարձր գնահատության։ Աճառյանի արածը մի մարդու գործ չէ, այլ մի ամբողջ հաստատության։ Աճառյանին մոտ կանգնած ընկերներս ասում էին, թե նա թողել է այնքան ձեռագրեր, դեռևս չհրապարակված աշխատություններ, որ լի ու լի բավական է մի երեք, նույնիսկ չորս գիտնականի ծանրակշիռ վաստակ կազմելու համար։

Աճառյանը օժտվածության և աշխատասիրության ներդաշնակության բացառիկ օրինակն է։

Մեր վերջին հանդիպմանը խնդրեցի նրան թարգմանել գրաբար մի նախադասություն Սարգիս Տիգրանյանի ընդարձակ նախաբանից՝ կցված «Գոթողիայի» հայերեն թարգմանությանը։ Իմ տված թերթիկը մոտեցրեց իր աչքին այնքան մոտ, որ թուղթը կպչում էր արտևանունքներին։ Իմացա, որ մի աչքը չէր տեսնում բոլորովին, իսկ մյուսը՝ մի քառորդով միայն։ Եվ այդ վիճակում նա շարունակում էր կատարել այնպիսի գործեր, որոնք վեր էին մի մարդու ուժերից։

## ՍՏԵՓԱՆ ՄԱԼԽԱՍՅԱՆ

Շատ էր տարբեր իր արտաքին նկարագրով այս նշանավոր հայագետը Աբեղյանից և Աճառյանից։ Առաջինը թեև կարճ էր, բայց մոնումենտալ տպավորություն էր թողնում, նման էր կաղնու, ժայռաբեկորի, որին թվում էր թե հողմերն իսկ ի վիճակի չեն սասանելու։ Երկրորդը չուներ նրա ամուր կառուցվածքը։ Վտիտ էր ու անտպավորիչ, գոնե առաջին հայացքից. ներքուստ կենտրոնացած և խիստ լուրջ, արտաքուստ նա ցրված մարդու տպավորություն էր թողնում, մանավանդ եթե չգիտեիր, թե ով է։ Սիրում էր գավեշտը, և դիմացինը լավ չէր հասկանում, որտեղ է անկեղծ ու անմեղ կատակը, և որտեղ՝ խայթը, թաքնված անմեղ կատակի տակ։

Այս երկուսից բոլորովին տարբեր էր Ստեփան Մալխասյանը թե՛ իր արտաքին պատկերով, թե՛ խառնվածքով, մանավանդ եթե նկատի առնվի անմիջական տպավորությունը, որ նոր մարդը կարող էր ստանալ նրանից։

Աբեղյանի համար գիտական զբաղմունքն էր կյանքի գլխավոր, երևի ճիշտ կլինի ասել՝ միակ նպատակը։ Այդ նպատակից շեղումներ չուներ, ամբողջապես կենտրոնացում էր, ծայրահեղ, այսինքն՝ այնպիսի չափերի հասնող, որ ճաշի սեղանի մոտ նստած ավելի մտքերի հետ էր, քան սեղանակիցների, ու նրան այնքան չէր զբաղեցնում այն, թե ինչը ինչի հետ պիտի ուտել, որքան՝ ինչքան կարելի է շուտ ավարտել ճաշը և վերադառնալ գրասեղանի մոտ։

Աճառյանը, որ նույնպես գիտությանը նվիրված էր այնպես, որ չգիտեմ, թե ինչ ուժ կարող էր փոխել նրա կյանքի ընթացքը, հակված էր դեպի ժամանցը և վայելքը. նրան կարելի էր «Աբխտղոմ աղա» ճաշարանում տեսնել անեկդոտ պատմելիս կամ էլ սրտանց քրքջալիս։ Ծաշելու և

ընթրելու պահերը նրա համար բավականություն էին։ Թվում էր չի էլ շտապում վերադառնալ իր զբաղմունքին։ Ու շատ էր զարմանալի դա, նույնիսկ անհասկանալի, եթե աչքի առաջ ունենանք նրա բանասիրական հետազոտությունները, որոնք բնույթով չափազանց աշխատատար էին։ Ե՞րբ էր ժամանակ գտնում կամ ինչպե՞ս կարող էր ժամավաճառ լինել, չէ՞ որ նա այն մարդն էր, որի մասին ասում էին, թե գտել է օրվա քանչորս ժամերից ավելի ժամանակ ունենալու և աշխատելու գաղտնիքը։

Աճառյանի զբաղմունքը այնքան կենտրոնացած էր, որ նա, որպեսզի հետո կարողանա շարունակել, իրեն ենթարկում էր ցրվելու ցանկությանը։ Իսկ այդ կենտրոնախույս վիճակը պահանջում էր անչափաման ընդունակություն, որն ամենքը չունեն։ Առօրյա կյանքում նրա սերը դեպի կատակները, սրտագին ծիծաղը զվարթ պատմություն լսելիս՝ բնական հատուցումն էին այն լարված լռության, որի մեջ էր գիտական զբաղմունքի ժամերին։

Ստեփան Մալխասյանը, ինչպես ասացի, նման չէր ո՛չ մեկին, ո՛չ էլ մյուսին։ Նրա մեջ կար բնության ներդաշնակությունից մի բան, որ նրան հեռու էր պահում բոլոր ծայրահեղություններից։ Աբեղյանի անունը բավական էր, էլ չեմ խոսում նրա անծպիտ արտաքինի մասին, որ դիմացինին պահեր տարածության վրա։ Աճառյանի անունը ուներ Աբեղյանի մագնիսական ուժը, բայց, հակառակ հաճախ հանդիպելու ցանկությանը, երբեմն խուսափում էիր, մտածելով, թե հանկարծ նրա լեզվի խայթի զոհը չդառնաս։

Ստեփան Մալխասյանը վարվեցողությամբ չափազանց մեղմ էր։ Չեմ կարող ասել, թե Աբեղյանն ու Աճառյանը բարյացակամ չէին, բայց այն, ինչ այդ երկուսի ներսումն էր թաքնված, Մալխասյանի համար, ներքին հատկություն լինելուց բացի, արտաքին շեշտված կողմ ուներ նաև։ Աճառյանին և Աբեղյանին մի բանի համար դիմելուց առաջ երկար-բարակ պիտի մտածեիր՝ ասե՞լ, թե չէ, իսկ Մալխասյանի պահվածքն այնպիսին էր, որ նրան դիմողը մտա-

տանջություն չէր ապրում։ Դա էր պատճառը, որ Մալխասյանին մի անգամ հանդիպողը նորից մոտը գնալու, զրուցելու, ինչ-որ հարցեր լուծելու ներքին համարձակություն էր ունենում։

* * *

Երբ առաջին անգամ հանդիպեցի՝ Մալխասյանը ութսուներկու տարեկան էր, իսկ ես երեսունս դեռ չէի բոլորել։ Եվ բնական է, որ ես մի որոշ վարանում ապրեցի նրա սենյակի դուռը բախելուց առաջ։ Բայց ոչ մի կասկած և ապրում ինձ հետ չէին դարձնի, քանի որ ուղարկված էի նրա մոտ՝ Հայպետհրատի ղեկավարության հանձնարարությամբ, որտեղ աշխատում էի։ Հարցը վերաբերում էր իր կազմած «Հայերեն բացատրական բառարանին», թեև հիմնական բոլոր խնդիրները լուծվում էին ավելի բարձր մակարդակով, քան հրատարակչությունն էր։ Ես այն օղակն էի, որ կապում էի հեղինակին և հրատարակչությանը միմյանց։

* * *

Աշխարհաբար թարգմանությամբ հայ պատմիչների մատենաշար հրատարակելու կապակցությամբ պետք է հանդիպեի Մալխասյանին։ Մանուկ Աբեղյանը խորհուրդ էր տվել առաջին հերթին նրան տեսնել, նրա հետ համաձայնության գալ։ Եվապա միայն նոր բանակցություններ սկսել ուրիշների հետ։

Մալխասյանը Թբիլիսիումն էր ապրում և ոչ ոք չգիտեր, թե նա մեկ էլ երբ կլինի Երևանում։ Ես շատ էի ոգևորված նոր մատենաշարի ծրագրով, որպեսզի նամակագրությամբ պարզեի ինձ հետաքրքրող մանրամասնությունները, եթե, մանավանդ, հանձն առներ Խորենացու թարգմանությունը, որով սկսվելու էր մատենաշարը։

Գիշերը գնացք նստեցի և առավոտյան Թբիլիսիումն էի, ուր միշտ հաճույքով եմ ոտք դրել, քանի որ կյանքիս առաջին քսան տարին անցել է այնտեղ։

ժամանակ չկորցրի, շտապեցի Մալխասյանի տուն։ Հայտնեցի, թե ինչ նոր մատենաշար է ծրագրվում ու ես էլ նրան դիմում եմ հրատարակչության անունից՝ երկրորդն էլ՝ Աբեղյանի խորհրդով, շեշտելով, թե նա է ասել, որ առաջինը իրեն դիմենք։

Մալխասյանի դեմքին երևաց մի ժպիտ, որ մատնում էր շոյվածությունը։ Ասաց, թե նախընտրում է Բուզանդի թարգմանությունը, բայց Աբեղյանի խորհուրդը Խորենացուց սկսել՝ ճիշտ է։

Նա այս բոլորն այնպես ասաց, որ կարող էր այն տպավորությունը ստացվել, թե ոչ թե ինձ հետ է խոսում, այլ մտմտում է ինքն իր հետ։ Թվում էր, թե որոշում կայացնելու պահը պիտի նրա դեմքին հաղորդեր կենտրոնացում, բայց դեմքի արտահայտությունն այնպես էր, կարծես վերացած մի ապրումի մեջ է։ Եվ հանկարծ դեմքը փոխվեց, վերացական արտահայտությունը չքացավ և ինձ նայեց իր սովորական աչքերով, որոնց մի մասը, միշտ թաքնված էր մնում իջած կոպերի տակ։

— Որքա՞ն ժամանակ կտաք։

— Մի տարի։

Զրույցը տեղի էր ունենում 1939-ի աշնանը։

— Համաձայն եմ։ Ուրեմն ասում եք՝ Աբեղյանի խորհրդով եք եկել ինձ մոտ։ Լավ, լավ, կանեմ անպայման։

— Իսկ Բուզա՞նդը։

— Բուզա՞նդը ինչ... Ա՞յդ էլ եք ուզում։

— Անպայման։

— Հենց որ հանձնեմ Խորենացին։

Հարցրի, թե ինչպես ճիշտ կլինի գրել՝ Բյուզա՞նդ, թե Բուզանդ։

— Բուզանդ, հիմք ընդունելով Փարպեցուն։

* * *

Մեր հայագետներից մեկը Խորենացու առեղծվածին անդրադառնալով՝ կամենում էր հաստատել, որ նա ավելի ուշ ժամանակների ծնունդ է, քան ավանդաբար համարվում է և, միաժամանակ, մեղադրում էր պատմիչին, թե նա

իր կյանքի տվյալներն այնպես է հաղորդում, որ կարծես, թե ինքը հինգերորդ դարու է։

Շատերը վրդովվեցին։ Եղան առարկություններ՝ բանասիրական, պատմական, ապացուցելու համար հակառակը։ Եվ առարկողներից մեկը Մալխասյանն էր, որ մի ամբողջ գիրք գրեց՝ հիմնավոր, փաստարկներով լի։

Մալխասյանը, մինչև գիրք հրատարակելը, մեր Ակադեմիայում այդ նյութի շուրջ մի դասախոսություն կարդաց։

Դասախոսության ժամանակ, երբ կամեցավ անդրադառնալ առարկող կողմի այն մտքին, թե Խորենացին ճիշտ չի հաղորդում իր կյանքի տվյալները, դասախոսի վրդովված հուզմունքը հասավ այնպիսի չափերի, որ նա ի վիճակի չեղավ իշխելու իր վրա և... աչքերից արցունքներ թափվեցին։

— Պատկերացնո՞ւմ եք,— ասաց նա կերկերուն ձայնով,— գտնվում են մարդիկ, այն էլ գիտության մեջ, որ ասում են, թե պատմահայր Մովսես Խորենացին սուտ է խոսում...

Այդ դասախոսությանը ներկա էր Հրաչյա Աճառյանը։ Վերջում նա մոտեցավ Մալխասյանին, ուզեց ինչ-որ բան ասել, բայց ոչինչ չասաց, սեղմեց ձեռքը, գրկեց ծերունուն ու երկար ողջագուրված մնաց...

* * *

Գնացել էի Թբիլիսի։ Ես արդեն նշանակված էի «Սովետական գրականություն» ամսագրի խմբագիր և մտքովս անցավ Ստեփան Մալխասյանի աշխատակցությունը խնդրել։

— Գիտեք ինչ, ինձ համար դժվար կլինի որևէ բան գրել ձեզ համար, թեև կկամենայի։

Լռեց։

— Գուցե ավելի լավ կլինի, եթե ստանձնածս գործը ժամանակին կատարեմ։ Ո՛չ, ո՛չ, ինձ մի մղեք գայթակղության։ Դա կարող է ինձ խանգարել։ Գիտեք ինչ, միշտ հիշեցեք, գիտությունը սիրում է կենտրոնացում։ Գյոթեի խոսքը հայտնի՞ է ձեզ՝ հանճարը մտքի կենտրոնացումն է։ Շատ ճիշտ միտք է։

Ասաց ու հանկարծ շտապեց նկատել։

— Ինձ անհամեստ մարդ չհամարեք և չկարծեք, թե հանճարի տեղ եմ դնում ինձ, բայց կյանքն ապացուցել է, որ շատ ընդունակ մարդիկ բեղմնավոր չեն եղել, որովհետև կենտրոնանալու կամք չեն ունեցել, և, ընդհակառակը, միջակ ընդունակության մարդիկ, ինչպիսին օրինակ ես եմ, արդյունքի եմ հասել, որովհետև կենտրոնացումը աշխատողի ուժերը կրկնապատկում է։

* * *

Անցավ ժամանակ, ես նորից այցի էի գնացել մանկության վայրերը։ Որոշեցի անցնել Մալխասյանի տուն. նախ՝ ուզում էի գործի ընթացքին տեղյակ լինել, և ապա՝ ինձ հաճելի էր հանդիպել մի մարդու, որը, խոշոր դեմք լինելով, իրեն պահում էր այնքան պարզ ու անմիջական, դիմացինին նշանակություն տալով, որ վերջինս էլ թե էր առնում, ինքն էլ կարևորությամբ համակվում սեփական ուժերի նկատմամբ։

— Մի բան եմ խնդրելու, կարծում եմ չեք զլանա ընդառաջել, մանավանդ որ ընդունված ձև է։ Թարգմանությունը ժամանակին կտամ, մեկնությունները նույնպես, բայց ներածությունը մի-փոքր կուշանա։ Ներածականը հոդվածականով կհամարակալեք, որ պատրաստ մամուլների համարակալումը ստիպված չլինեք փոխելու։

* * *

Պայմանավորված ժամանակ ստացա թարգմանությունը ծանոթագրությունների հետ միասին։ Ուղարկեցի արտադրելու մեկին, որի անունը տվել էր ինքը, իսկ ես անմիջապես գնացի Աբեղյանի հետ խորհրդակցելու՝ թե ո՞ւմ հանձնեմ խմբագրությունը։

Աբեղյանը զարմացած նայեց ինձ, թե այդ ի՞նչ հարց եմ տալիս և ասաց.

— Իսկ այդ ո՞վ է, որ իր վրա կառնի Մալխասյանին խմբագրելը։

Աբեղյանը տեսնելով, որ ոչինչ չեմ ասում, վրա բերեց.

— Հանգիստ ուղարկեցեք տպարան։ Ինչո՞ւ եք ավելորդ ժամանակ կորցնում և զուր տեղը դրամ ծախսում։

* * *

Կարճատև հանդիպումներից եկա այն եզրակացության, որ նա իր առջև հարց չէր դնում, թե իրեն դիմողն արժանի՞ է իր վերաբերմունքին, թե ոչ։ Աջակցում էր բոլորին անխտիր։ Եվ սկզբունքով։

Ես մի օր հարցրի նրան, թե ինչպե՞ս կարելի է ընտրություն չանել։ Եվ նա հետաքրքիր բացատրություն տվեց։

— Ես, իհարկե, հասկանում եմ, որ ինձ շրջապատող երիտասարդները, ընդունակությամբ, պատրաստությամբ միմյանցից տարբեր են։ Ես այդ հասկանում եմ, և, այնուամենայնիվ, հովանավորում եմ, օգնության ձեռք պարզում՝ բոլորին, որովհետև ոչ ոք երաշխավոր չէ, թե այսօրվա շնորհալի մարդուց վաղը ինչ կմնա, իսկ նվազ ընդունակը աշխատասիրության շնորհիվ ինչպիսի արժեքներ կստեղծի։

* * *

Խորենացին լույս տեսավ։ Ընդունելությունը լավ էր։

«Սովետական գրականություն» առաջին համարում տպվեց Վարազ Առաքելյանի գրախոսությունը Խորենացու հրատարակության մասին։ Հոդվածագիրը բարձր էր գնահատում արվածը, համարում Խորենացուն արժանի հրատարակություն։ Նա գտնում էր, որ թարգմանիչը պարզել է անցյալում սխալ հասկացված և այդ պատճառով անճիշտ թարգմանված որոշ նախադասություններ ու բառեր, ինչպես նաև առանձին մութ համարված կետեր։ Նա միաժամանակ որոշ առարկություններ էր ներկայացնում և թարգմանության մեջ հայտնաբերում մի-երկու բացթողում բնագրից։

Մալխասյանն անտարբեր չմնաց և պատասխան-հոդված

գրելու համաձայնություն առավ ինձանից։ Եվ գրեց «Անկամա պատասխան»։ Հարցն այն չէ, որ նա հերքեց առարկություն-ները, մի բառի շուրջ քննադատի դիտողությունը համարեց հետաքրքիր կամ էլ շնորհակալություն հայտնեց բացթողում-ներ նկատելու համար։ Կարևոր եմ համարում ընդգծել, որ վեճի բռնվելով մի երիտասարդ բանասերի հետ, որի անունը գուցե և մինչ այդ իրեն ծանոթ չէր, ինչպիսի հարգանքով էր խոսում իր մայրամուտին հասած գիտնականը։

* * *

«Բառարանի» առթիվ հանդիպեցի Մալխասյանին։

Առաջին հարցը, որ տվի, այն էր, թե քանի՞ տարվա ընթացքում է նա կազմել իր բառարանը։

— Ոչ-լրիվ տասներեք տարվա ընթացքում։

Եվ հետո վրա բերեց.

— Իմ բառարանի ընդգրկածն ավելի է, քան հայերեն մյուս բառարանները, որ մեկն էլ վերցնելու լինենք, բայց իմ բառարանը փոքր է հայոց լեզվի ամբողջության բաղդա-տությամբ։

Մի կարճ դադարից հետո.

— Որպեսզի հասնեի համեմատական լիակատարության, ես գործի էի անցնելու հենց որ մի այսպիսի բառարան կազ-մելու միտքը հղացա, երբ երիտասարդ էի, բայց, ուսուցիչ լինելով, չէի կարող նվիրվել մեծ ժամանակ պահանջվող մի այդպիսի աշխատանքի։ Սկսեցի ուշ, վաթսունչորս տարեկան հասակում, երբ արդեն ավարտած պիտի լինեի։

Նա խոսում էր ու ես, այնուամենայնիվ, չէի հասկանում, թե ինչպես է նա մի այդպիսի վիթխարի աշխատանք հաղ-թահարել տասներեք տարվա ընթացքում։

— Ես մի լավ հատկություն ունեմ, կարողանում եմ կազմակերպել օրս։ Եթե հետաքրքիր է՝ ասեմ։

Ու պատմեց.

— Ամեն օր, որպես պարտադիր կարգ, առավոտյան ժամը յոթին ես իմ գրասեղանի մոտ էի։ Հա՛, ասեմ, որ ուսուցչությունը թողել էի և որոշել ոչ մի այլ բան չանել, բացի «Բառարանից»։ Ինչպես ասացի՝ առավոտյան կանուխ

սկսում էի աշխատանքը։ Իննին տիկին Սաթենիկը դուռը բացում էր, որ նշանակում էր, թե թեյը պատրաստ է։ Կես ժամ մնում էի թեյասեղանի մոտ, հետո վերադառնում աշխատասենյակ։ Ժամը մեկին տիկինս նորից էր բացում դուռը և կանչում նախաճաշի։ Կրկին կես ժամ սեղանի շուրջ։ Եվ հետո աշխատում էի մինչև ժամը չորսևկեսը և նորից կանչվում էի ճաշի։ Այս անգամ մնում էի մեկ ժամի չափ, որից հետո այլևս չէի մոտենում գրասեղանիս։ Մի-փոքր հանգստանում էի, իսկ երեկոյան հյուր էինք ընդունում, հյուր էինք գնում։ Միշտ մի զբաղմունք լինում էր, որ ոչ մի կապ չուներ «Բառարանի» հետ։ Ամենագլխավորն այն է, որ ոչ միայն «Բառարանով» չէի զբաղվում հետճաշյա ժամերին, այլև մտքով անգամ չէի անդրադառնում նրան։ Եվ այսպես, ամեն աստծո օր կրկնում էր նույնը տարիների ընթացքում։

Մի պահ լռեց և ապա ասաց.

— Գիտությունը չի սիրում, երբ գիշերն ու ցերեկը մարդիկ խառնում են իրար։ Ոչինչ չունեմ, արդյունքի հասնում են մարդիկ, բայց դա չի կարող ուժից չգցել։ Եռանդի ճիշտ բաշխումը, կարգապահությունը, այսինքն՝ հանգիստը հանգիստ, աշխատանքը աշխատանք, գիտնականի երկարատև գործունեության գրավականներն են։ Ոչ էլ կարելի է մի օր աշխատել, մի օր չաշխատել, թե ինչ է՝ տրամադրություն չունի։ Ամեն օր գործ, ամեն օր աշխատանք, քիչ կամ շատ։

* * *

Հակառակ հեղինակի հետ ունեցած պայմանավորվածության, հակառակ բարձրագույն մարմինների ցուցումին, թե Մալխասյանի բառարանի տպագրությունը հարկավոր է սկսել, խանգարող հանգամանքներ կային։ Ես այդ պատմությունը չեմ անի, բայց կարող եմ վկայել, որ նա, ութսունն անց այդ գիտնականը երբեք չասաց, թե վախենում է, որ տպագրությունը ձգձգվի ու ինքն իր աչքով չտեսնի աշխատությունը։ Չեմ հիշում ոչ մի խոսակցություն մահվան մասին։ Նա ապրում էր այնպիսի հոգեբանությամբ, որ թվում

էր միշտ ապրելու է։ Նա տրտնջում էր, որ տպագրությունը ձգձգվում է, հրատարակչությունը դանդաղ է գործում, վճռական քայլերի չի դիմում, բայց երբեք, կրկնում եմ, չէր ասում թե ինքը ծեր է, որ կարող է մի օր իրեն բան պատահել, ոչ այն ժամանակ, երբ գնում և գալիս էր, ոչ էլ, երբ վերջնականապես տեղափոխվեց Երևան, որպեսզի վերահսկի բառարանի սրբագրությանը։

Կամենում եմ հիշեցնել, որ նա այդ տարիներին արդեն բոլորել էր իր ութսունհինգ տարին և նույնիսկ անցել։

* * *

Բարձրագույն մարմինները հրատարակչությանն առաջարկել էին շատ գրքերի տպագրությունից հրաժարվելու գնով, կարճ ժամանակում «Բառարանի» չորս հատորը հանձնել ընթերցողին։ Ծրագրվեց այսպես՝ մի տարվա ընթացքում չորս մեծադիր հատոր հրատարակել։ Ձեռագիրը հրատարակչությանն էր հանձնվել 1935-ին։ Անպայման նկատի էր առնված և՛ հեղինակի տարիքը, և՛ այն գիտակցությունը, որ սա ոչ վեպ է, ոչ էլ գիտական սովորական աշխատություն, այլ բառարան, հետևապես տպագրությունը կատարվելու է միայն և միայն նրա կենդանության օրով, որպեսզի հսկի տպագրության ընթացքին, մինչև բառարանի լույս աշխարհ գալը։

Հրատարակչությունը դրված էր ծանր կացության մեջ։ Եվ չի կարելի ասել, թե նրա ղեկավարները դա չէին հասկանում։ Այն ժամանակ Հայպետհրատն ուներ իրեն ենթակա տպարան, և նա բոլոր միջոցները ձեռք առավ կարելույն չափ կարճ ժամանակում հաղթահարել համարյա մի անհնար դժվարություն։

Ինձ վրա, իբրև հրատարակչությանը և հեղինակին կապող օղակի, դրված էր դժվար մի խնդիր՝ համոզել հեղինակին, որ նա հրաժարվի ձեռքի շարվածքի պահանջից, որովհետև այդ դեպքում գործը տարիներ կարող էր տևել, և համաձայնի լինոտիպային շարվածքին, որ կարելի լինի արագացնել։ Ես հասկանում էի ձեռքի շարվածքի շահեկանությունը, բայց

ուրիշ ելք չկար։ Դժվարությամբ, բայց հաջողվեց ստանալ համաձայնությունը։

Ձեռագիրը բաժանված ըստ հատորների, 1943-ին ուղարկվեց տպարան, նախ առաջինը, կարճ ժամանակից երկրորդը, մի որոշ ժամանակ անց նաև երրորդը։ Բոլոր ուժերը լարվեցին։ Թեև չորրորդն էլ համարյա պատրաստ էր, բայց չուղարկվեց, որովհետև միևնույն է, այնտեղ ընթացք չէր ստանա։ Առաջադրանքը կատարվեց, բայց ոչ լիովին։ Առաջին երեք հատորները լույս տեսան 1944-ի ընթացքում, չորրորդը՝ 1945-ին։

* * *

Իմ հաճախումները պարբերական բնույթ ստացան։ Եվ միշտ գործով եմ գնացել մոտը, երբեմն հազիվ մի տասը րոպե եմ մնացել, երբեմն բավական երկար, մանավանդ եթե տիկին Սաթենիկն առաջարկում էր միասին նախաճաշել։ Եղավ մի երկարատև շրջան, երբ համարյա մոտը չեղա՝ հիվանդացել և անկողին էի ընկել։

Աշխատանքի եռուզեռի ժամանակ հիվանդացա և ժամանակավորապես փոխարինվեցի ուրիշով, որպեսզի գործը ոչ մի պատճառով կանգ չառնի, բայց Մալխասյանը, ըստ երևույթին, ընտելացել էր ինձ։ Երբ երկար բացակայությունից հետո ներկայացա իրեն, հետաքրքրվեց, թե ինչպես է առողջությունս։ Ասացի, որ տասն օրից ավելի է ոտի վրա եմ, բայց չէի գալիս՝ Շեքսպիրյան փառատոնի պատճառով։ Պատմեցի մի-երկու մանրամասնություն։ Միաժամանակ ասացի, որ Վահրամ Թերզիբաշյանի զեկուցման մեջ հիշվեց նաև ինքը՝ «Լիրի» և «Մակբեթի» թարգմանության կապակցությամբ։

— Երիտասարդական տարիների իմ հափշտակություններից էր Շեքսպիրը։ Հետագայում մարեց Շեքսպիր թարգմանելու ցանկությունս։ Դեր խաղացին «Մակբեթի» թարգմանությանս շուրջ առաջացած որոշ հանգամանքներ։ Այն ժամանակ էր դա, երբ Աբեղյանն էլ Գոգոլի «Տարաս Բուլբան» թարգմանեց։ Դե՛, արդեն անցած-գնացած պատմություն է։

* * *

Մի օր նա ասաց, որ իր ձեռագրից գրաշարները միշտ դժգոհ են մնացել և այդ պատճառով ստիպված է եղել գրածն արտագրել տալ։ Նկատեց նաև, որ իր տիկնոջ ձեռագիրը գեղեցի՛կ է, օգնել է, թե բառարանի մի որոշ մասը նրա արտագրածն է։ Այդ պատճառով,— ավելացրեց նա,— ինքը մեքենա է ձեռք բերել։

— Ո՞վ է մեքենագրելու,— հարցրի ես,— տիկին Սաթենի՞կը։

— Ինչո՞ւ Սաթենիկը, ես եմ մեքենագրելու։

Նա այդ տարի ութսունհինգից անց էր։

— Դժվար չի՞ լինի։

— Չեմ կարծում, համոզված եմ, որ շուտ էլ կսովորեմ. աշակերտ ժամանակս դաշնամուր եմ նվագել, մատներիս մի ժամանակվա վարժությունն ինձ կօգնի։

Ես զարմացա բոլորովին, երբ նա հայտնեց, որ գրամեքենան գնել է արդեն և ձեռքով մատնացույց արեց սենյակի մի անկյունը։

— Փորձ արե՞լ եք արդեն և հաջողվե՞ց, ինչպես կարծում էիք։

— Ոչ, դեռ չեմ փորձել։

Քաշեց գրասեղանի գզրոցը և այնտեղից հանեց մի մեքենագրված գրություն, որ ուղարկել էր նրան, եթե չեմ սխալվում, էջմիածնի Մայր աթոռի դիվանապետը։

— Ձեզ դո՞ւր է գալիս այս գրության տառատեսակը։ Ամերիկյան գրամեքենա է։

Շեղ տառեր էին դրանք, բավական դուրեկան։

— Թե՞ սա է լավ։

Ինձ տվեց մի թերթիկ, որի վրա, ինչպես հասկացա, մի չորս տող էր տպված ֆրբրև գրամեքենայի տառատեսակ։

Ամերիկյան գրամեքենայի տառատեսակն ինձ ավելի գեղեցիկ էր թվում։

— Ինձ էլ։

Եվ բացատրեց, որ երկրորդը իր գնած մեքենայի տառատեսակն է, բայց ինքը գրամեքենան չի օգտագործում, որով-

հետև խոսել է կաթողիկոսի հետ և ստացել նրա համաձայնությունը՝ փոխանակելու իր գնածը ամերիկյանով, որից յոթ հատ վերջերս ստացել է Վեհարանը։

Ուրեմն՝ գրամեքենա ձեռք բերելը բավական չէր, բավական չէր մեքենագրություն սովորելու հոգնությունը այդ տարիքում, և հանկարծ, այդ բոլորի հետ միասին, գեղեցիկ տառատեսակներ ունենալու լուրջ մտահոգություն։

Մանրո՞ւք է։ Համաձայն եմ։ Բայց, նախ, կյանքի մանրամասնությունը մարդուն երբեմն ավելի է բացահայտում, և հետո՝ մտահոգությունն այդ տարիքում վկայություն է ոչ միայն ապրելու և գործելու ներքին մղումների, այն կամքի, որ մարդու ներքին աշխարհը նպատակով, իմաստով է հագեցնում, այլ նաև գեղեցիկ ապրելու, գեղեցիկ գործելու ձգտման։

* * *

Ես ինձ թույլ կտամ մի շեղում, որը թերևս օգնի բացատրելու գիտնականի մարդկային կերպարը։

Մարտիրոս Սարյանն այն դիմանկարիչներից է, որոնք, ինչպես հայտնի է, բնորդին ենթարկում են խստագույն քննության, ըստ որում, գրեթե միշտ, թափանցելով նրա հոգու խորքերը, տեսնելու, թե այնտեղ մութ կետ կա՞, թե ոչ։ Ու եթե հայտնագործում էր՝ չէր ներում։ Ոչ ոք չի խուսափել նկարչի «դատախազական» այդ հայացքից, որը հաճախ թափանցում էր այնքան արագ, նկարելու մեկ կամ երկու սեանսի ընթացքում, որ բնորդը գլխի չէր ընկնում, իսկ եթե հասցնում էր գլխի ընկնել, ապա այն ժամանակ, երբ արդեն ուշ էր լինում։

Եվ մարդկային խառնվածք, թաքնված մտքեր և կրքեր կարդացող այդ վարպետին «չհաջողվեց» գեթ մի մութ անկյուն գտնել իր հերթական «զոհի»՝ Մալխասյանի հոգեկան աշխարհի այն խորշերում, որոնք սովորաբար մարդկանց աչքից աննկատ են մնում։

Գնացեք պատկերասրահ և մի անգամ էլ դիտեցեք Ստեփան Մալխասյանի դիմանկարը։

Սրբի է նման։

# ՀՈՎՍԵՓ ՕՐԲԵԼԻ

Չգիտեմ ով ինչպես՝ բայց ամեն մարդ իր բախտի տերն է։ Ես չեմ կարող դժգոհել։ Ավելին. ես չափազանց գոհ եմ ու եթե իմ կյանքում ինչ-ինչ բաներ, որ չպիտի լինեին եղել են՝ մեղավորը միայն ես եմ։ Որ գոհ եմ՝ դրա մի պատճառն էլ այն է, որ ճակատագիրն ինձ պարգևել է անմոռանալի հանդիպումների շռայլ հնարավորություններ։

Եվ այժմ, երբ մարդ հանրագումարի է բերում, թե ինչ է եղել իր կյանքը՝ գտնում է մի հարստություն, որի գիտակցությունը և ունեցել է, և չի ունեցել։

Եվ գուցե լավն էլ դա է։

Չհասկանա՞լ, թե ինչպես է հարստացնում ինձ Ավետիք Իսահակյանին մոտիկից տեսնելու, նրա տանը լինելու բախտը։ Մյուս կողմից էլ դա, այդ չհասկանալն օգնել է ինձ՝ թույլ տալով, որ հարաբերություններն ընթանան իրենց բնական հունով։

Բախտավոր պատահականություններ ամեն մեկի կյանքում էլ լինում են։ Մի այդպիսի բախտավոր պատահականություն էլ Հովսեփ Օրբելու հետ ծանոթանալս էր։ Բայց, ավա՜ղ, հակառակ սովորությանս, գրառումներ չեմ արել, կարծել եմ, թե սա առաջին և վերջին հանդիպումն է ու երբ նորից եմ հանդիպել՝ չեմ մտածել, թե երրորդն ու չորրորդն էլ կլինեն։ Դրա պատճառով այդ մեծ մարդու ասածները շարադրում եմ հիշելով, առանց այն հնարավոր ճշտության, որի համար միշտ հիմք են ծառայել նույն օրը կամ էլ մերկու օրից, թարմ տպավորության տակ արված գրառումներս։

* * *

1939-ին էր։ Վաղ աշնանը։ Ավելի ճիշտ՝ սեպտեմբերի առաջին օրերը։ Այդ տարի, ինչպես դրանից առաջ և բավական ժամանակ հետո, ամեն երեկո մի քանի ժամ աշխատանքի վայրում էինք լինում։ Պարտադիր կարգ էր։ Դե՛, գործն էլ, եթե սիրում ես, սկիզբ ունի, բայց վերջ չունի։ Մի խոսքով՝ խանդավառ տարի էր հրատարակչության աշխատողների համար՝ նշվելու էր «Սասունցի Դավթի» 1000-ամյակը։ Գործ շատ կար։ Երևանում, ընդհանրապես մեր ամբողջ հանրապետության մեջ տոնահանդես էր սեպտեմբերի առաջին օրերից սկսած։

Մի տեղ ցուցահանդես էր բացվում, մի այլ տեղ՝ գիտական նստաշրջան և այսպես շարունակ։ Բոլոր հիմնարկներում կազմակերպվում էին երեկոներ։ Մամուլն ամեն օր հրապարակում էր հաղորդումներ այն մասին, թե երկրի այսինչ կամ այնինչ քաղաքում հայ ժողովրդական վեպին նվիրված հանդիսավոր երեկո է տեղի ունեցել։ Գրվում էր և այն մասին, որ «Սասունցի Դավիթը» թարգմանվում է տարբեր լեզուներով՝ ռուսերեն, ուկրաիներեն, վրացերեն, ադրբեջաներեն, ուզբեկերեն։

Մեր հրատարակչությունն էլ գրքերի մի ամբողջ շարք էր նախատեսել, ամենագլխավորը իհարկե, ժողովրդական վեպի հայերեն և ռուսերեն հոբելյանական հրատարակություններն էին, մեկը-մյուսից շքեղ։

Երևանը սպասում էր մեծ թվով հյուրերի։ Գալիս էին Մոսկվայից ու Լենինգրադից։ Գալիս էին Կիևից ու Մինսկից, Թբիլիսիից ու Տաշքենդից։ Որտեղի՛ց միայն չէին գալիս։ Եվ ամեն մի ազգություն ուղարկում էր իր պատվիրակությունը մի նշանավոր գրողի գլխավորությամբ։

Հայաստանի Գրողների միության անդամների վրա շատ պարտականություններ էին դրված։ Տարբեր հաստատություններում զեկուցումներ կարդալ, դիմավորել հյուրերին, ցույց տալ Երևանը, ուղեկցել նրանց դեպի հիշարժան վայրերը։ Եթե ասեմ, որ այդ օրերին Գրողների միության անդամները, որոնք այն ժամանակ այդքան շատ չէին, ինչպես

հիմա, գիշերներն էին միայն կարողանում տուն ընկնել, չափազանցություն չի լինի։

«Սևան» հյուրանոցի ռեստորանը, կառավարության որոշումով, սպասարկելու էր միայն հյուրերին։ Մեզ կտրոններ էին բաժանել, որով իրավունք ունեինք մեր ցանկացած ժամանակ սեղան նստել, հյուրասիրել։ Մի խոսքով, ծանրաբեռնված էինք անչափ։

Ես դիմավորելու էի ադրբեջանական պատվիրակությանը։ Ինձ հանձնարարվեց, որովհետև մի տարի առաջ հայկական պատվիրակության կազմում մեկնել էի Բաքու՝ մասնակցելու Միրզա Ֆաթալի Ախունդովի ծննդյան 125-ամյակի հոբելյանական օրերին։

Հեռագիր ստացվեց, որ ադրբեջանցի ընկերները, Սամեդ Վուրղունի գլխավորությամբ գալու են Աղստաֆայով։

Մեկնելուս նախորդ օրը երեկոյան Պետհրատում էի։ Զանգ։

— Բարի երեկո, Ռուբեն Վարոսովիչ։

Ձայնն ինձ ծանոթ չէր և առաջին անգամն էի լսում, որ ինձ հայրանունով կոչեն, մանավանդ այդ տարիներին միմյանց դիմելու ռուսական ձևը տարածված չէր։

— Ձեզ հետ խոսում է Օրբելին, Իոսիֆ Աբգարովիչը։

Զարմացա։ Տեսել էի, լսել զեկուցումները, ելույթները, բայց իրեն անձամբ ծանոթ չէի։ Ակնածանքից էր, թե ինչից՝ ոտքի ելա։

— Ինձ ասացին դուք վաղը մեքենայով մեկնելու եք Աղստաֆա՝ Ադրբեջանից ժամանող ընկերներին դիմավորելու։ Ճի՞շտ է։

Ես հաստատեցի։

— Ժամանելու են նաև Էրմիտաժի աշխատակիցները։ Ես կարո՞ղ եմ Աղստաֆա մեկնել ձեր մեքենայով։

Այ քեզ բախտավորություն։

Հա՛, այն էլ ասեմ, որ այն տարիներին Մոսկվա-Երևան, Երևան—Մոսկվա ճանապարհը Բաքվի վրայով էր ու մի քանի օր էր տևում։

Պայմանավորվեցինք, որ առավոտյան կանուխ կհանդիպենք «Ինտուրիստ» (այժմ «Երևան») հյուրանոցի դռանը։

Մտատանջության մեջ ընկա՝ ի՞նչ եմ խոսելու նրա հետ ճանապարհին։ Իզուր, որովհետև Օրբելին, ինչպես դա հատուկ է իրոք մեծ մարդկանց, հանդիպեց և այդ ամբողջ ճանապարհին իրեն պահեց այնպես, կարծես, իր ուղեկիցը ոչ ավել, ոչ պակաս՝ իրեն հավասար մի մարդ է։ Եվ ապա՝ խոսում էր, մտքեր հայտնում, հետաքրքիր պատմություններ անում։ Ես չնկատեցի, թե ինչպես ժամանակն անցավ։ Ոչ մի խոսք չբացեց «Սասունցի Դավթի» մասին։ Զրույցն ուրիշ նյութերի շուրջն էր։ Ու երբ նրա ուշադրությունը դարձրի դրա վրա, ասաց, թե ինքը որպես կանոն, հեռու է պահում միտքը այն հարցից, որի մասին մի կամ երկու օր հետո խոսելու է հրապարակավ։ Լավ հիշում եմ նաև այն, որ ասաց, թե խոսել այդ մասին՝ նշանակում է ուղեղը զբաղեցնել դրանով, դա էլ իր հետ բերում է մտքի այնպիսի նոր առկայծումներ, որոնց մասին մինչ այդ չես մտածել, իսկ դրանք կարող են ավերել այն կառուցվածքը, որն արդեն մշակվել է մտքում։

* * *

Գնացքը դանդաղ մոտեցավ Աղստաֆա կայարանին ու կանգառավ։ Կառամատույցում մեր կամքից անկախ, անջատվեցինք. հյուրերը, որոնց դիմավորելու էինք, տարբեր վագոններում էին։

Պարզվեց, որ Օրբելուն տրամադրել են բեռնատար մեքենա, որը արդեն հասել էր Աղստաֆա, քանի որ էրմիտաժի աշխատակիցները իրենց հետ բերելու էին համարյա արդեն պատրաստ ցուցահանդեսի համար ցուցանմուշներ՝ մեծ-մեծ արկղներով։

Ես չեմ հիշում, թե ովքեր էին Լենինգրադից եկողները, բայց միտս է, որ մի հինգ հոգի պիտի լինեին։ Վերադարձին Օրբելին շնորհակալություն հայտնեց իրեն Աղստաֆա հասցնելու համար։ Ես ասացի, թե մեքենայում տեղ կա։ Հրաժարվեց՝ լավ չի լինի, եթե թողնի ընկերներին բեռնատար մեքենայում և միանա մեզ։

Ես ասացի, թե նրանք կհասկանան և ներողամիտ կլինեն։ Օրբելին չուշացրեց պատասխանը.

— Բայց ես ինձ չեմ ների, վերջապես, այնտեղ կանայք կան։

Վուրղունն էլ խնդրեց, բայց դա էլ չօգնեց։

Ճանապարհին երկու թե երեք տեղ կանգ առանք, Օրբելու բեռնատարը հասնում էր մեզ ու անցնում։ Նա աշխատակիցների հետ կանգնած էր մեքենայի մեջ, և քամին խառնում, պոկում էր նրա մազերը։ Մեզ ձեռքով էր անում։

Սևանից հետո մեր մեքենան մի տեղ էլ կանգ առավ։ Օրբելու բեռնատարը նորից երևաց։ Նրանց մեքենան կանգ առավ և Օրբելին իջավ, մոտեցավ և հաճելի անակնկալ՝ ցույց տվեց «Սասունցի Դավթի» լենինգրադյան հրատարակությունը։

Չէինք կարողանում պոկվել գրքից, հատկապես նկարազարդումներից, որ արել էր Երվանդ Քոչարը։

— Ա՛յ ճաշակ, ա՛յ արվեստ։

Կրկնում էր քթի տակ Վուրղունը։

Հիանում էինք նկարներով, բացվեց այն էջը, որի վրա էր Օրբելու ասելով իր ամենահավանած նկարը՝ Դավիթը և նրա կողքին՝ ձիու գլուխը, որի ձախ աչքը փակել էր իր ձեռքով։

— Սա,— ասաց նա,— կարելի է արվեստի մեծագույն գործերի կողքին դնել և, համոզված եմ, կդիմանա մրցությանը։

* * *

Լեզվի և գրականության ինստիտուտի Գիտական խորհրդի նիստն էր։ Քննության էր դրված «Վերք Հայաստանի» գիտական հրատարակության հարցը։ Ես, որպես զեկուցող, ներկայացրի հրատարակության սկզբունքները, ինձ հետ բերել էի այլ ընթերցումների գործնական մի քանի էջ, տպարանում շարված թերթեր։

Նոր էր Խորեն Սարգսյանն ինձ ձայն տվել, որ մեզ համար անսպասելի նստարահ մտավ Օրբելին։ Նիստին ներկա էին քսանից ավելի մարդ։ Օրբելին, որ նոր էր ժամանել Լենինգրադից, մոտեցավ և մեկ-մեկ սեղմեց բոլորի ձեռքը, ապա տեղ գրավելով, խնդրեց շարունակել նիստը։

Սկզբում մի փոքր շփոթվեցի, բայց շուտով հաղթահարեցի հուզմունքս և շարունակեցի խոսքս։

Սա իմ երկրորդ հանդիպումն էր Օրբելու հետ։

* * *

Մի քանի օր անց, Խաչիկ Մոմջյանը, որ այն ժամանակ Արմֆանի գիտնական քարտուղարն էր, խնդրեց իր մոտ անցնել։

Գնացի։

Նա ասաց, որ նկատի ունենալով իմ խմբագրական աշխատանքի փորձը, առաջարկում է հանձն առնել Հասարակական գիտությունների «Տեղեկագրի» խմբագրի պաշտոնը։ Ջհամաձայնեցի։ Ինձ նոր էին ազատել «Սովետական գրականություն» ամսագրի խմբագրի պարտականություններից։

Մոմջյանն ասաց, որ ինքը խոսել է Օրբելու հետ և ստացել նրա հավանությունը։ Նա առաջարկեց գնալ Օրբելու մոտ, բայց ես կտրականապես հրաժարվեցի, իմանալով, որ իմ մեջ ուժ չեմ գտնի նրան դիմադրելու։

Այդ առաջարկը, իհարկե, շոյեց ինձ, մանավանդ որ իմ թեկնածության հեղինակը Մոմջյանն էր, որի մասին բարձր համարում ունեի, բայց իմ մեջ դեռ թարմ էին խմբագրի պաշտոնից հանվելուս վիրավորանքն ու դառնությունը։

Ես Մոմջյանին չասացի այս բոլորը, բերի բոլորովին այլ պատճառներ, որոնք նա համոզիչ չհամարեց, և խնդրեցի շնորհակալությունս հայտնել Օրբելուն՝ վստահության համար։

Մի քանի օր անց ինձ իր մոտ կանչեց Օրբելին։ Կարծում էի, թե նույն խնդրով, մինչդեռ ասաց, թե ուզում է զրուցել ինձ հետ իմ զեկուցման հետ կապված մի քանի հարցի շուրջ։ Ուրեմն՝ զեկուցումս նրան զբաղեցրել էր։ Հայտնեց իր ընդհանուր տպավորությունը, ապա տվեց մի քանի խորհուրդ, որոնք ի վիճակի էր անելու միայն նա, ով շատ երկար զբաղվել էր հենց այդ նյութով, և միաժամանակ իր կարծիքը

հայտնեց այլընթերումների փորձնական օրինակների մասին, որից երևաց, որ հրաշալի տիրապետում է նաև պոլիգրաֆիական գործին։

Իմ երջանիկ օրերից մեկն էր դա։

* * *

Մի օր հավաքեց պատմաբաններին ու գրականագետներին իր մոտ ու ասաց՝ ինչ որ ըստ հետազոտական ծրագրի գրում եք, հասկանալի է, բայց, դրանից բացի, թեկուզ կարճ՝ կամ որպես գրքույկ, կամ որպես հոդված, անհրաժեշտ է, որ ամեն մեկը հանձն առնի որևէ հայրենասիրական թեմա։ Ամեն մի հետազոտողի քաղաքացիական պարտքն է դա։ Եվ պետք է գրել՝ միշտ հիշելով, որ հիմա պատերազմ է, հայրենիքը վտանգի տակ է։

Տասնիններորդ դարով զբաղվող պատմաբանների մեծ մասը հանձն առավ գրել հայազգի զորավարների մասին, որոնք մեծ անուն էին հանել ցարական Ռուսաստանի բանակում։ Բանասերներն էլ հանձն առան գրելու իրենց ուսումնասիրած գրողների հայրենասիրության մասին։

Ես մտածեցի, թե կգրեմ Աբովյանի հայրենասիրական ոգու մասին, բայց ինձ կանխեց Հայկ Գյուլիքեվխյանը։ Մնում էր այլ ընտրություն կատարել ու ես կանգ առա Տերյանի վրա։ Բայց, ինչպես հաճախ է լինում ամեն մարդու հետ, այնպես էլ ինձ հետ, խորագրից այն կողմ չանցա։ Վերնագիրը մտածել էի ռուսերեն՝ «Терян в поисках родины» ու մինչև հիմա էլ մտածում եմ, մտածում, ու դրա հայերեն թարգմանությունը ճապաղ մի վերնագիր է ստացվում։

Մի օր, երբ Օրբելին արդեն պրեզիդենտ չէր, պատերազմական օրերն էլ անցած մի պատմություն էին, լենինգադյան հանդիպումներից մեկի ժամանակ արի նրան խորագրի այս պատմությունը և հայտնեցի իմ զարմանքը, թե ռուսերեն ստացվեց, հայերեն՝ ոչ, տվեց իր բացատրությունը։

Ռուսական լեզվամտածողությունը,— ասաց նա,— վերնագրային տրադիցիաներ ունի։ Լենինգրադում, Մոսկվայում

և գուցե այլ քաղաքներում նույնպես, մեծ խմբագրատներն ունեն վերնագրերի մասնագետներ, որ հատկապես պահվում են վերնագրեր հորինելու համար։ Նույնը կա նաև Եվրոպայում։ Եվ հետո հարցրեց, թե չե՞մ նկատել, արդյոք, որ մասնագիտական որևէ հարց մշակելիս ռուսական լեզվամտածողությունն սկսում է միջամտել, որովհետև մասնագիտական առումով ավելի մշակված է, քան հայերենը։ Եվ դա տեղի է ունենում անկախ ռուսերենին տիրապետելու չափից, քանի որ մասնագետը հաճախ է դիմում ռուսական գրականության օգնությանը։

Եվ հետո եզրակացրեց.

— Որքան կարելի է շատ պետք է հրատարակել հայերեն մասնագիտական գրքեր, որպեսզի մասնագիտական լեզվամտածողությունը մշակվի։ Դա երկար ժամանակ և համբերություն պահանջող գործ է ու վեր մի սերնդի ուժերից։

* * *

Լևոն Քալանթարը հաճախ էր այցելում Օրբելուն։ Պետերբուրգի համալսարանից գիտեին միմյանց։ Երկուսն էլ պրոֆ. Մառի մոտ էին սովորել։

Երբեմն-երբեմն ես էլ էի միանում Քալանթարին, որն այն ժամանակ Ռուսական թատրոնի գեղարվեստական ղեկավարն էր։ Այնտեղ էր լինում Տրեվերը, մի համակրելի կին և լուրջ գիտնական։ Օրբելու անփոփոխ խորհրդատուն։ Միասին գիրք էին գրել՝ «Սասանյան մետաղ»։ Եվ Տրեվերն էլ այդ վերաբերմունքին պատասխանում էր երախտագետ հավատարմությամբ։ Ավելի հաճախ կարելի էր հանդիպել Տոկարսկուն, որի կյանքում Օրբելին մեծ դեր էր խաղացել, և նրանք լավ բարեկամներ էին։

Իոսիֆ Աբգարովիչը գրեթե ամեն հանդիպման աշխատում էր Քալանթարի վրա ազդել, որ թողնի թատրոնը, կապվի գիտության հետ։

Քալանթարն ասում էր.

— Ուշ է։

Օրբելին անմիջապես վրա էր բերում.

— Ուշ չէ։ Գիտությունը սիրում է հասուն տարիք։

Եվ ինչ-որ չափով կարողացավ ազդել Լևոն Քալանթարի վրա։ Չթողեց թատրոնը, բայց սառեց, մանավանդ անբավական լինելու պատճառներ ուներ։ Եվ այն կարճ ժամանակը, որ նա անցկացրեց գիտության մեջ, եղավ բավական արդյունավետ։

Եվ մի օր, դառնալով ներկաներին, առանձնապես Կամելիա Վասիլևնա Տրեվերին՝ ասաց, թե ով գիտե, թե Քալանթարն ինչպիսի գիտնական կդառնար, եթե թատրոնին չնվիրվեր։ Ու միտս է մնացել, որ ասաց, թե Մառի աչքը Լևոնի վրա էր, իր բոլոր սաներից ամենից ավելի նրա հետ էր հույսեր կապում։

* * *

Արշավիր Մելիքյանից հետո միակ հռետորը, որ ինձ վրա խոր տպավորություն էր թողել՝ Հովսեփ Օրբելին էր։

Ամբիոնի մոտ նրա երևալը բավական էր, որ դահլիճը հավատով լցվեր նրա նկատմամբ։ Օրբելին իր փառահեղ մորուքով նման էր մոգի։

Նա իր խոսքը հանդարտ էր սկսում, հնարավորություն տալով ունկնդրին՝ մտնել իր նյութի ընդհանուր մթնոլորտի մեջ։ Երբ համոզվում էր, որ իրեն լսողները մտքով և, գլխավորը, զգացողությամբ իր արծարծած հարցերի ոլորտումն են՝ նրա հանգիստ խոսքը թափ ու փայլ էր առնում։ Օրբելին կարողանում էր իր խոսքի հմայքին ենթարկել ունկնդրին։ Ինքը հուզվում էր և հուզում մի ամբողջ լսարան, որքան էլ մեծ լիներ։

Նա հասնում էր առավելագույնին. ամենատարբեր խառնվածքի և ամենատարբեր պատրաստության տեր մարդկանցով լեցուն դահլիճը մի կես ժամում դարձնում էր մի մտքի, մի հույզի, մի կամքի ենթակա միասնական լսարան։

■ ■ ■

Հայտարարվեց Օրբելու դասախոսությունը՝ «Մոքսի հայկական բարբառի ուսումնասիրություն»։

Երբ տեսա, որ դահլիճը լեփ-լեցուն է ոչ միայն գիտությամբ զբաղվողներով, հասկացա որ նրանց բերել էր

Օրբելու համբավը, բայց ոչ դասախոսության տարկան: Խոստովանություն լինի, լավ չէի պատկերացնում, թե մի այդպիսի մասնագիտական հարց, ինչպես է ներկայացնելու դասախոսը, որ նյութից անտեղյակ ունկնդիրները ևս հետաքրքրությամբ լսեն:

Նա սկսեց նրանից, թե ինչպես է ինքը ձիով, դեռևս քսանհինգ տարին չբոլորած, ճանապարհվել դեպի Մոքս: Սկիզբն արդեն լարեց ունկնդիրներին: Կենդանի պատկերացում տվող ձևակերպումների օգնությամբ նկարագրում էր Վանա լճի հարավային մասում, լեռների մեջ կորած Մոքսը, այնտեղ ապրող հայերին և քրդերին, ինչպես նաև Մոքսի քուրդ կառավարչին,— անունը միտս չի մնացել,— նրա կերպարը, տան կենցաղը, սովորույթները: Եվ հետո անցավ բուն հարցին, ոչ միայն բարբառային նյութերի հավաքմանը՝ բարբառագիտական բառարան կազմելու համար, այլև իր գրի առած հեքիաթներին, առակներին, զվարճալի պատմություններին, երգերին, առածներին և ասացվածքներին: Ասաց նաև, որ մի որոշ ժամանակ անց, նորից է եղել Մոքսում ու հավաքել նույնպես քրդական նյութեր:

Թվում էր, թե դահլիճում տիրող աշխույժ մթնոլորտը պահելու համար կպատմի իր գրառած ժողովրդական նյութերից, հատկապես զվարճալի պատմություններից, բայց նա չարեց այդ: Նա խոսում էր մասնագետների համար, չմոռանալով բանասիրության հետ կապ չունեցողների ներկայությունը: Ոչ բանասերների համար մատչելի ձևով, բանասերների համար հարցի բնորոշ կողմերով պատմեց իր հավաքած նյութի մասին, բացատրեց դրանց նշանակությունը և բոլորը լսում էին կլանված ուշադրությամբ, աշխատելով նրա ասածից ոչինչ բաց չթողնել:

Տարիներ են անցել ու հիմա անդրադառնալով նրա բանախոսությանը, հասկանում եմ, որ այդ բոլորը պատմեց ոչ այնքան Մոքսի բարբառի, խոսք ու բանի պատկերացումը տալու նպատակով, որքան բացատրելու այդպիսի աշխատանք կատարելու մեթոդաբանությունը, որ նա ժառանգել էր Մառի գիտական դպրոցն անցնելով:

Հետաքրքիր էր լսել, որ տպարանում Օրբելին սեփական

ձեռքով շարել է իր աշխատասիրությունը, որը, հիմա չեմ կարողանում մտաբերել, թե ինչու լույս չի տեսել, թեև ինքը, կարծեմ, ասաց այդ մասին։

Միտս է մնացել նրա դասախոսության վերջվածքը։

Նա ասաց, թե Մոքսը հիմա անմարդաբնակ է։ Համաշխարհային առաջին պատերազմի ժամանակ բնաջնջվեցին այնտեղ ապրող հայերն ու քրդերը։ Եվ այն, ինչ ինքն արել է՝ վերջին ու թերևս միակ վկայությունն է հազարամյակներ ապրած և այժմ անհետացած հայկական ու քրդական մի օջախի, նրա անկրկնելի կյանքի մասին։

* * *

Մի օր հարցրինք, թե ինչո՞ւ հայերեն չի խոսում։

Ժպտաց։

Ասաց, որ ամբողջ կյանքը Պետերբուրգում է անցել և հայերենն իրեն համար ավելի գրքային մի լեզու է եղել, քան խոսակցական։

Ու այդ կապակցությամբ հետևյալ պատմությունն արեց.

Միշտ էլ Մառի Անվո արշավախմբումն է եղել։ Մի օր իրեն վատ է զգում և չի գնում պեղումների, մնում է տանը։ Եվ խոսակցության է բռնվում Միքայել վարդապետի հետ, որը, հայերենից բացի, մի այլ լեզու չգիտեր։ Խոսում են տարբեր հարցերի շուրջ, և վարդապետը, կարծելով, թե Օրբելին վրացի է, հաճոյախոսում է.

— Ինչ լա՜վ եք խոսում հայերեն, պարոն Օրբելի։

Օրբելին վստահ իր հայերենի վրա, մի պահ զարմացած է մնում և ապա ասում՝ ուրիշ ինչ կերպ կարող էր լինել, չէ՞ որ ինքը հայ է։ Ասում է և հանկարծ հիասթափություն է կարդում Միքայել վարդապետի աչքերում։

— Ինչ վա՜տ եք խոսում հայերեն, պարոն Օրբելի։

Պատմեց և ասաց, թե հաճախ է ինքը որոշել սիրտ անել ու իր հրապարակային ելույթներից մեկը հայերեն սկսել, բայց հենց որ հիշել է Միքայել վարդապետի ասածը, թևաթափ է եղել։ Եվ այսպես տարիներն անցել են։ Ավելացրեց

նաև, թե իրեն համար հիմա ավելի հեշտ է մի նոր լեզու սովորել, նույնիսկ ճապոներեն, քան ամբիոնից հայերեն խոսել։ Դուք երևի չեք պատկերացնում հոգեբանական արգելքի կաշկանդող ուժը։

* * *

Հնությունների պահպանության կոմիտեի աշխատակիցները, որոնց մեջ էր նաև իմ տիկինը, որոշեցին հավաքվել մեր տանը՝ դիմավորելու 1943-ի Նոր-տարին։

Տոկարսկու հետ եկավ նաև Օրբելին և հայտարարեց իրեն ինքնակոչ սեղանապետ։

Լավ հիշում եմ, որ Իոսիֆ Աբգարովիչը, որպես ավագագույնը, բաժակ բարձրացրեց և առաջարկեց խմել Նոր-տարվա կենացը։ Ամեն Նոր-տարվա հետ մարդը հույս է կապում՝ անցյալ տարի չեղավ, կլինի այս տարի։ Եվ այդ հույսն էլ պահում է մարդուն։ Ուրեմն՝ կենացի համար բարձրացված բաժակը պետք է պարպել համոզված և հավատալով, որ այս Նոր-տարին անպայման կլինի հույսերի իրականացման տարի։ Հուսանք, ասաց նա, որ կկատարվի ամբողջ մարդկության հույսը, 1943 թվականը հաղթանակի տարի լինի։

Հիշում եմ նաև, որ բաժակ բարձրացրեց և խմեց Պիոտրովսկու կենացը։ Նրա արժանիքները բնութագրող խոսքեր չասաց, բայց այնպես, ինչպես իրավունք ունի անելու ուսուցիչը, երբ մանավանդ խոսքը վերաբերում է արժանավոր աշակերտին, 1944 թվականը հայտարարեց նրա դոկտորանալու տարին։

Օրբելու առաջարկած կենացն ընդունվեց ծափահարությամբ։ Եվ այդ սրտագին մթնոլորտում իրեն նեղված զգացող Պիոտրովսկին, ուսուցչի օրհնությունն ունենալով, մի քանի ամիս անց հաջողությամբ պաշտպանեց իր «Ուրարտուն» և ստացավ դոկտորական աստիճան։

Օրբելին կենացներ էր առաջարկում։ Խմբական երգերն ընդմիջվում էին պարերով՝ աղջիկները՝ նազով լի, տղաները՝ թափով ու խոլական։ Ռաֆո Իսրայելյանը կատակներ էր անում և սրախոսում։ Մեկ էլ հանկարծ լռություն էր իջնում ու լսվում Վարագդատ Հարությունյանի սրտալի երգը։

* * *

Գեղեցիկ մարդ էր Օրբելին։ Տոհմական ազնվականության դրոշմը դեմքին էր։ Ես հիշում եմ նրան նաև առանց մորուքի։ Պատերազմի տարիներին հայմորիտ ուներ, պետք է վիրահատության ենթարկվեր։ Բժիշկների պահանջով հրաժարվեց մորուքից և թողեց միայն բեղերը։ Պետրոս Առաջինին էր նման։

Ներկայանալի անձնավորություն էր։ Մի նշանակալի բան կար արտաքին պատկերի մեջ և հնարավոր չէր կողքից անտարբեր անցնել։ Երբ հայտնվում էր մի տեղ՝ սենյակը լցվում էր անմիջապես։ Բավական է հեռանար, որ դատարկություն զգացվեր։

Ես տաղանդավոր մարդկանց հանդիպել եմ բավական։ Եվ միշտ ուրախ մի զարմանքի մեջ եմ եղել այն զգացումից, թե բնությունը երբեմն որքան շռայլ է լինում իր ընտրյալների նկատմամբ։

Օրբելին մեկն էր դրանցից։

Օրբելուն նմանվել չէր կարելի։ Դառնալ Օրբելի՝ նույնպես հնարավոր չէր։ Պետք էր ծնվել այդպիսին, կրելով իր մեջ ապուպապերից եկող ազնվական մի գեն, գումարած նաև տարիների կուտակում և այն, ինչ հայտնի է որպես պետերբուրգյան դպրոց։

Գիտությամբ զբաղվելը համատեղում էր աշխարհիկ կյանքի հետ։ Այդ կողմից նա էապես տարբերվում էր մեր շատ մեծանուն հայագետներից։ Վերածնությունից մի բան կար Օրբելու մեջ։ Մեծ երկրպագու էր ամեն գեղեցիկ բանի՝ լիներ բնություն, լիներ կին, լիներ կերուխումի սեղան։ Ինչ-որ գեղեցիկ էր՝ սիրելի էր նրան, մոտ և ընդունելի։

Բուռն էր, տաքարյուն։ Ծայրահեղ չափերի էր հասնում նրա վերաբերմունքը։ Երբեք ու ոչ ոքի նա հանդիպում ու անտարբեր չէր վերաբերի. կամ սիրում էր, կամ ատում, կամ գնահատում կամ ոչնչացնում։

Երբ նա Արմֆանի, հետո էլ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ էր, մի երկու-երեք մարդ չէին կարողանում գնալ մոտը, չէր ընդունում։ Քարտուղարուհուն պատվիրել էր

տարբեր պատրվակներով թույլ չտալ նրանց մտնել իր առանձնասենյակը, իսկ եթե դրանք, այնուամենայնիվ, անցնում էին առաջին արգելքից և հայտնվում պրեզիդենտի դռների մեջ, նա աղմկալի ձայնով ետ էր դարձնում, չնայելով ոչ տարիքի, ոչ սեռի։

Բորբոքվում էր, նույնիսկ անպատվում, երբ համոզվում էր թե իրեն խաբել են ուզում։ Չէր սիրում շողոքորթներին։ Զգուշացնում էր, թե շողոքորթությունն իր մեջ կրում է դավաճանության թաքնված հնարավորություններ։ Ուստի՝ պետք է զգուշանալ հենց սկզբից։

Սիրում էր երիտասարդներին։ Բավական է մեկի մեջ մի փոքրիկ կայծ տեսներ, կզբաղվեր նրանով, ժամեր կտրամադրեր, բոլոր տեսակի ընդառաջումներ կաներ, միայն թե ասպարեզ ստանա։ Եվ, միաժամանակ, կատակով զգուշացնում էր իր ունեցած վերաբերմունքի մեջ թաքնված եսասիրական մի շահ։ Այսպես էր նա բացատրում իր միտքը։ Սերունդները հաջորդում են միմյանց կորուստներով և ձեռքբերումներով։ Ամեն մի եկող սերունդ նախորդի ինչ-որ գծերից հրաժարվում է, բայց իր հետ բերում է մտածողության և հոգեբանության այնպիսի կողմեր, որ չի ունեցել նախորդ սերունդը և չէր էլ կարող ունենալ իբրև այլ ժամանակների ծնունդ։ Շփվել երիտասարդության հետ, եզրակացնում էր նա, նշանակում է ժամանակի ոգին զգալ և գլխավորը, հոգով երիտասարդ մնալ։

* * *

Լուրեր էին տարածվել, թե Ախթամարն ավերված է։ Թե ինչպես դա կազդեր հայ արվեստը սիրողի վրա՝ դժվար չէ պատկերացնել։ Հաստատ չգիտեինք, բայց մեզ հասած լուրը հավանական էր համարվում, մանավանդ որ Անիի կառույցներից մի-երկուսը երկու ճանապարհորդ գետնին հավասարեցված էին տեսել։

Եվ հանկարծ, Օրբելու ձեռքն է ընկնում արտասահմանյան մի հանդես,— եթե չեմ սխալվում՝ Լոնդոնում լույս տեսած,— որտեղ Թուրքիայից, ավելի ճիշտ՝ Վանից վերադարձած թղթակիցը, հոդվածի հետ միասին հրապարակել է սեփական

աչքով տեսած և տարբեր կետերից իր իսկ լուսանկարած Անիթամարը, այդպիսով վկայելով աշխարհին տաճարի կանգուն վիճակը։

Օրբելին, որ դեռևս 1912-ից սկսել էր ուսումնասիրել կղզու հուշարձանախումբը, հասկանալի է, թե ինչ ուրախություն պիտի ապրեր, իմանալով, որ տաճարի ավերման մասին տարածված լուրերը ճիշտ չեն։

Չէր կասկածում, որ իր հետ շատերը կուրախանան Երևանում։ Եվ օրերից մի օր մի ընդարձակ հեռագիր ստացա, որով շնորհավորում էր հայ արվեստով զբաղվողներին՝ իր ուրախառիթ լուրով։

* * *

1957-ին խոսեցի մեր Ակադեմիայի պրեզիդենտի հետ՝ Արվեստների պատմության և տեսության սեկտորի հիմքի վրա Արվեստի ինստիտուտ ստեղծելու մասին։ 1948-ից սկսած, դեռևս պրոֆ. Քուշնարյանի ղեկավարության ժամանակներից ի վեր, մեր հետազոտական օջախն այնքան արդյունավետ էր գործել, որ հասունացել էր հայագիտության նոր ճյուղի գործունեությունը ինստիտուտի մակարդակով ծավալելու համար։

Պրեզիդենտը համաձայնեց, ասաց, որ իսկապես արդեն ժամանակն է և հարցրեց, թե ո՞վ է գլխավորելու ինստիտուտը։ Իմ կարծիքով միակ թեկնածուն Օրբելին էր։ Պրեզիդենտը ճիշտ համարեց իմ առաջարկը, բայց ասաց, որ հազիվ թե համաձայնի։

Ես խնդրեցի նրա թույլտվությունը՝ մեկնելու Լենինգրադ և Օրբելու հետ բանակցություններ վարելու։ Խնդրեցի նաև թույլ տալ ինձ Իոսիֆ Աբգարովիչին ներկայանալ ոչ միայն արվեստաբանների, այլ նաև պրեզիդենտի անունից։

Երեք օր հետո Լենինգրադումն էի։ Օրբելին ընդունեց ինձ այն սրտաբացությամբ, որով դիմավորում էր հյուսիս եկած ամեն մի երևանցու։

Լսեց ինձ ուշադիր, ասաց, որ վաղուց պետք էր ինստիտուտ ստեղծել, և՛ հետազոտության բնագավառն է լայն, և՛ բավա-

կանաչափ երիտասարդ ուժեր կան և ինքն էլ շոյված է առաջարկի համար, խնդրեց իր շնորհակալությունը հայտնել և՛ պրեզիդենտին, և՛ սեկտորի աշխատակիցներին, բայց մերժեց։

Այս զրույցից մի տարի անց ստեղծվեց ինստիտուտը և Օրբելին եղավ առաջին ողջունողներից մեկը։

* * *

Հետաքրքրվեց, թե ովքեր են աշխատում ինստիտուտում, ի՞նչ ենք ծրագրել անել առաջիկայում։ Ուշադիր լսեց, հավանություն տվեց և ապա ասաց.

— Իմ խորհուրդը ձեզ։

Եվ գործունեության մի ամբողջ ծրագիր գծեց իմ առջև։

Հատուկ ուշադրություն դարձնել ճարտարապետության պատմությանը, որքան կարելի է՝ շատ երիտասարդներ պատրաստել, նյութի ընդգրկումը լայն է և աղերսները համաշխարհային արվեստի հետ չափազանց մեծ են։ Մեկ էլ՝ մանրանկարչությամբ զբաղվողներ պատրաստել։ Մի մարդու ուժերը երբեք բավարար չեն կարող լինել, այն էլ եթե հայերեն չգիտե։ Մեծ ուշադրություն գրաբարին, բոլոր աշխատակիցները պետք է անպայման գրաբար իմանան։

Մի կարճ դադարից հետո ասաց, թե թատրոնի ուսումնասիրությունն անհրաժեշտ է նույնպես, բայց այդպիսի լայն հնարավորություններ չունի։ Հետո ասաց, որ երաժշտագետների թիվը բավական մեծ է և լավ կլինի մղել նրանց դեպի ժողովրդական երգերի հավաքում։ Երբեք չպետք է մոռանալ, որ ամեն անցնող օր իր հետ անվերադարձ տանում է մի երգ։ Եվ հետո խոսեց այն մասին, թե ինչ անակընկալներ են սպասում այն երաժշտագետներին, որոնք կնվիրվեն միջին դարերի երաժշտությանը։

Լավ հիշում եմ նրա մի խորհուրդն էլ. աշխատակիցներին հարկավոր էր մղել դեպի հարցի կոմպլեքսային քննություն, գեղարվեստական կյանքի լայն զուգորդումներով, հայրենականը միշտ դիտել համաշխարհային երևույթների ընդհանուր շղթայի մեջ։

* * *

Լենինգրադ էի մեկնել։ Զանգեցի Իոսիֆ Աբգարովիչին և հարցրի, թե կարո՞ղ եմ իրեն տեսնել։ Այս անգամ դա մի պարզ այցելություն չէր, այլ նաև փորձ՝ համոզելու նրան, որ մեր ինստիտուտին հանձնի իր «Ախթամար» աշխատությունը, որը, ինձ հասած լուրերով, ավարտել էր։

Չմերժեց, բայց և չհամաձայնեց։ Ասաց, որ նախ շարադրանքը վերջացած չէ, դեռ գրվելու է մի գլուխ ևս, որով սկսվելու է աշխատությունը, ապա նաև տողատակի ծանոթագրությունները։

Ես հայտնեցի մեր ինստիտուտի պատրաստակամությունը, եթե նա վստահի։ Ասացի, որ իր ընտրությամբ երկու աշխատակից կժամանեն Լենինգրադ և կմնան այստեղ այնքան ժամանակ, որքան որ պետք կլինի ծանոթագրությունները պատրաստելու համար։ Իոսիֆ Աբգարովիչն ասաց, թե ինքը զգացված է ինստիտուտի վերաբերմունքից, բայց նկատեց, որ Լևոն Գյուզալյանը, եթե հարկ լինի իրեն կօգնի, մանավանդ այստեղ է, իր կողքին։ Բայց ավելացրեց, որ խոստանում է աշխատությունն ավարտելուն պես՝ հրատարակության տնօրինությունը հանձնել մեր ինստիտուտին։

Դա իմ վերջին հանդիպումն էր մեծանուն գիտնականի հետ։

* * *

Շաբաթը յոթ օր ունի։ Դրանցից մեկն է կիրակի։ Օրբելին իմ մտապատկերում միշտ նմանվել է կիրակի օրվան։

## ԱՐՈՒՍ ՈՍԿԱՆՅԱՆ

Ես չգիտեմ մի այլ դերասանուհի,— խոսքը անցած հիսնամյակի հայ թատրոնի մասին է,— որ իր ժամանակակիցների կյանքում այնպիսի ազդեցիկ դեր խաղացած լինի, ինչպես Արուս Ոսկանյանն իր բեմական գործունեության վերջին երկու տասնամյակում։

Արուս Ոսկանյանը լայն ժողովրդականություն ուներ։ Ոչ ոք անտարբեր չէր։ Երիտասարդությունը պաշտում էր նրան։ Մանավանդ ուսանողները։ Նրա պատկերած հերոսուհիները իրենց սիրով ու կարոտով, իրենց երազներով ու տառապանքով, վստահաբար կարող եմ ասել, փնտրվող օրինակ էին թատերասրահում նստած տղաների ու աղջիկների համար։

Ես էլ մեկն եմ եղել այն ժամանակվա երիտասարդներից, և Արուս Ոսկանյանի օրինակի վրա զգացել եմ, թե ինչ անմիջական միջամտություն կարող է ունենալ բեմական արվեստը մարդկանց կյանքում։ Ոչ մեկիս համար Արուս Ոսկանյանը այն հմայիչ կինը չէր, որին կարող էր ձգտել նրանով հրապուրված երիտասարդը։ Դերասանուհու գեղեցիկ ըմբռնումն էր նա։ Մեր ականջին հասնում էին տարբեր պատմություններ նրա կյանքից,— իրական, թե հորինված,— և մեզ համար նա այդ պատմությունների հերոսուհին չէր, այլ կրողը հոգեկան այն գեղեցկության, որ հանդիսատեսը գտնում էր նրա պատկերած Ռաուտենդելայնի, Նորայի կամ Կատերինայի մեջ։

Չէի ասի, թե գեղեցկուհի էր, բայց երևի շատ գեղեցկուհիներ կգերադասեին նրա գրավչությունն ունենալ։ Նրա երկնագույն աչքերը, լայն ու բարձր ճակատը, գլխի բացառիկ դրվածքն ուսերին, երկարավուն վիզը, դեմքին խաղացող գույները, երեք կողմից դեմքը շրջանակող խարտյաշ մա-

գերը և մանավանդ արտահայտությունն աննկարագրելի հրապույր էին հաղորդում, պարզապես դարձնում անդիմադրելի։ Եվ որ գլխավորն է՝ չէր «կոտրատվում» նազից, ինչպես սովորաբար գեղեցիկ կանայք, երբ տեսնում են, որ դիմացի տղամարդը նկատել է իրենց հրապույրը։ Նազելի էր Արուսի էությունը։ Եվ որ գլխավորն է՝ պահում էր իրեն այնպես, ասես, ոչ հայտնի է իրեն իր արտաքին հմայքը, ոչ էլ իբր տեսնում է դրա ազդեցությունն իր հետ խոսողի վրա։

Նույնը կարող եմ ասել և նրա մտքի վերաբերյալ։ Խելոք ու կարդացած՝ երբեք չէիր նկատի կանանց մոտ հաճախ դիտված արհեստական ջանքը՝ նրանց ասես այնքան չի զբաղեցնում գրույցի բուն միտքը, որքան ապացույցն այն բանի, թե իրենք պակաս գիտուն չեն, քան իրենց հետ խոսող տղամարդը։ Արուսին հարցը զբաղեցնում էր ըստ էության և դրա քննությանը հանձնվում էր ամբողջապես, մանավանդ եթե համոզված էր։ Բայց երբ նյութը չգիտեր, չուներ իր տեսակետը, վարանոտ մի արտահայտություն կար հայացքի մեջ կամ էլ հանդես էր բերում լսելու մի զարմանալի պատրաստակամություն, որը բառերով երևի այսպես կարելի էր ձևակերպել՝ «Ի՞նչ եք ասում», «շա՜տ հետաքրքիր է», «չէի լսել. մի՞թե ճիշտ է» և այլն, և այլն։ Այսինքն՝ որքան տրամադրված խոսելու, վիճելու, տրամաբանելու, իր միտքը հաստատելու, ուներ լսելու, ասածիդ նկատմամբ ուշադիր լինելու հազվագյուտ ընդունակություն։ Նրա հետ խոսելը, զրուցելը, մանավանդ վիճելը մեծ բավականություն էր, երևի ոչ պակաս, քան նրա մասնակցությամբ ներկայացում դիտելը։

Արտաքին հրապույրի ներգործությունը անկասկած էր։ Բայց երիտասարդությանը գրավում էին առանձնապես հոգեկան նկարագրի այն գծերը, որ ունեին Արուսի հերոսուհիները կամ «վերագրում» էր նրանց դերասանուհին։

Արուսի անձնավորած հերոսուհիները դառնում էին հոգեկան գեղեցկության չափանիշ. եթե երիտասարդ աղջիկները ձգտում էին նմանվել նրա հերոսուհիներին, ապա տղաներն ուզում էին, որ իրենց ընտրյալը ինչ որ կերպ հիշեցնի նրանց։

Ինձ հայտնի է մի երկու դեպք, թե ինչպես Արուսին բեմում տեսնելուց հետո տղան սառել է դեպի իր սերը, չգտնելով իր ընտրած աղջկա մեջ այն, ինչ տեսել է բեմական հերուսուհու մեջ։

Ուսանող ժամանակս մի առիթով իմ պրոֆեսորներից մեկի տանն էի երեկոյան ժամին, որտեղ շատ հյուրեր կային, ընտիր մտավորականներ։ Գնացել էի գիրք վերցնելու. չթողեց, որ գնամ, պահեց։ Ու երբ Արուսի մասին խոսք բացվեց, հասկացա, որ տարեց մարդկանց կյանքում ևս դերասանուհին ունի իր տեղը։ Չէ որ մի ժամանակ նրանք էլ են երիտասարդներ եղել։ Նա իր խաղացած դերերով անցած-գնացած կյանքի՝ գեղեցիկ սիրո, երազի ու ձգտումի վերհուշ է, հաճախ որոնված և չգտնված, հաճախ էլ գտնված ու կորցրած, բայց բոլոր դեպքերում, որպես հոգու խորշում թաղված մի գանձ ու հարստություն, որ ամեն անգամ կյանքի է կոչում Արուսն իր արվեստով։

Նրա խելքը և հմայքը համագործակցում էին։

* * *

Ուշ ծանոթացա հետը, 1940-ին միայն, կարծեմ ապրիլի 30-ին։ Այդ օրը հրավիրված էի Պոլիտեխնիկական ինստիտուտ Աբովյանի մասին զեկուցում կարդալու։ Հրավիրված էր նաև Արուս Ոսկանյանը, զեկուցումից հետո հանդես էր գալու գեղարվեստական ասմունքով։ Այդ ինստիտուտում մի երկու-երեք անգամ եղել էի և համոզվել, որ ուշադիր և հետաքրքիր մի լսարան է, որի համար արժե խոսել։ Երբ եկա զեկուցման՝ Արուս Ոսկանյանն արդեն այնտեղ էր։ Ինձ ներկայացրին նրան։ Ես շտապեցի ասել, որ իր արվեստի երկրպագուներից եմ։

— Շատ ուրախ եմ։

Ժպտաց և անմիջապես փոխեց խոսակցության նյութը։

— Որքա՞ն եք խոսելու։

— Մի ժամ, կամ գուցե մի փոքր ավելի։

Բայց ես ոգևորվեցի ու իմ զեկուցումը տևեց երեք ժամ։

Ընդմիջմանը մեղավոր տեսքով մոտեցա դերասանուհուն։ Արուսը թեև ժպտում էր, բայց կապույտ աչքերի մեջ կշտամբող հայացք կար։

— Այս ի՞նչ արիք, այդքան խոսել կլինի, սպասելուց հոգնություն իջավ վրաս։ Ես հիմա ինչպե՞ս բեմ բարձրանամ, անաստված։

Ես շփոթված էի ու չգիտեի ինչ ասել։ Մեղավոր լռությամբ կանգնել էի նրա առաջ։ Չգիտեի ինչպես արդարանալ ու ինձ մատուցված ծաղկեփունջը մեկնեցի իրեն։

— Ի՞նչ անեմ, ներե՞մ...

Նա շարունակում էր ժպտալ և այլևս կշտամբանք չկար նրա աչքերի մեջ։

— Մի՞թե չգիտեք, որ երկար զեկուցումը դե մոդե է հիմա։ Որքան կարճ՝ այնքան ազդեցիկ ու լավ։

Ձայնը իջեցնելով և կամացուկ, համարյա շշուկով, որ երեկոյի կազմակերպիչները չլսեն, ասաց.

— Երիտասարդ եք, ընկեր Զարյան և ինձանից ձեզ խրատ. միշտ հիշեք, որ երկար խոսքը հագեցում է առաջ բերում. պետք է կայծը ձգել ունկնդիրների սրտերի մեջ ու, չսպասելով, որ հանգչի, ամբիոնից հեռանալ։ Նրանք դեռ ուզում են լսել, իսկ դասախոսը վերջացրել է արդեն։ Երբեք չպետք է կշտացնել, պետք է կարոտի մեջ թողնել։

Ասաց ու նայեց ուղիղ աչքերիս մեջ։

— Հո չե՞ք նեղանում։

— Ոչ, ինչ եք ասում. ճիշտ հակառակը. շնորհակալ եմ լավ խորհրդի համար։

Զանգը տվին, նա պետք է բեմ գնար։

— Մենք դեռ կհանդիպենք. դուք պետք է ձեր մեղքը քավեք։

Ասաց ու գնաց։ Ես երկար մնացի տեղում զամված։ Ես երջանիկ էի այդ պահին, երջանիկ սիրելի դերասանուհու հետ ծանոթանալուս, նրանից կշտամբվելուս, ճիշտ խորհուրդ լսելուս համար, որին, ավա՜ղ, այդպես էլ չկարողացա հետևել ու իմ ամեն մի երկարավուն ելույթից հետո միշտ ականջիս հնչում է դերասանուհու կշտամբող ձայնը։

1940-ի ամառը հանգստանում էի Սևանա կղզում։ Այն-

տեղ էր նաև Արուս Ոսկանյանը։ Ես եկա Սևան, մի երկու, թե երեք օրից մեկնեց։ Հարց ու փորձ։ Զրույցներ տարբեր խնդիրների շուրջ։ Հիշում եմ շատ լավ էր լողում, ասես ձուկ լիներ։ Նա և Վաղարշ Վաղարշյանի կինը մրցում էին իրար հետ։ Թեև Քռի ափին մեծացած՝ լողալ չգիտեի։ Նայելով Արուսի և Աղավնի Գասպարովնայի թեթև ու հանգիստ լողին, կարծեցի թե մի դժվար բան չէ ու ինձ գցեցի ջուրը։ Խեղդվելու վրա էի, Արուսը վրա հասավ ու ջրից դուրս բերեց ինձ։ Նա ինձ հանդիմանեց վաղեմի բարեկամությամբ։

Այդ օրվանից նա ինձ հետ խոսում էր դու-ով։

* * *

Մեր մի հանդիպումը, որի մասին պատմելու եմ մանրամասն, տեղի ունեցավ նույն տարվա վերջին, եթե չեմ սխալվում դեկտեմբեր ամսին։

Հեռախոսային զանգ։ Արուս Ոսկանյանի ձայնն է։ Սկզբում մի երկու ընդհանուր խոսք, ապա խնդրանք, այս երկու օրը ժամանակ գտնել և անցնել իր մոտ, գործ ունի հետս։ Խոստացա հաջորդ օրվա երեկոյան ժամը ութին լինել իր տանը։

Գնացի։ Դիմավորեց մի գիրք ձեռքին, որ ըստ երևույթին կարդում էր։ Ընդունեց ժպտադեմ։ Ավելի գեղեցիկ ժպիտ չեմ տեսել։ Ինչպես նաև չեմ տեսել մի այլ կին, որ այդպիսի հմայք ունենար։ Նայում էիր և թվում էր թե դեմքից լույս է կաթում, ջերմություն։

Նոր էինք սկսել զրույցը, որ Արուսին դուրս կանչեցին։ Մենակ մնալով՝ ինձ համար զբաղմունք ստեղծեցի. ոչ-անտարբեր դեպի գիրքը՝ սկսեցի աչքի անցկացնել դերասանուհու գրադարանը։ Մի գիրք նայեցի, հետո մի ուրիշը։ Երբ տանտիրուհին վերադարձավ՝ ձեռքիս էր Եղիշե Չարենցի «էպիքական լուսաբաց» ժողովածուն՝ բանաստեղծի ինքնագիր մակագրությամբ։

Բանաստեղծի ձեռագիրը միանգամից այնքան հիշողություններ վերակենդանացրեց, որ նայում էի Արուսին և ոչ մի խոսք չէի ասում, թեև նկատում էր, որ արտակարգ հուզ-

ման մեջ լինելով՝ արտահայտվելու կարիք ունեմ։ Արուսը ժպտում էր բարի և չարաճճի խորամանկությամբ։ Ես նրա այդ հայացքը, որ կարծես չէր համապատասխանում իմ հոգեվիճակին՝ հասկացա հետո, երբ մի փոքր անց մեկնեց ինձ Չարենցի մի անտիպ ձեռագիրը՝ «Գովք Արուսին» խորագրով։

Լավորակ թղթից պատրաստված փոքրադիր տետրում բանաստեղծը մաքուր արտագրել էր Արուս Ոսկանյանին նվիրած չափածո ձոնը կամ, ինչպես ինքն է ասում՝ պոեմը։ Ինչպես երևում է, ամեն կերպ աշխատել էր տետրին գրքույկի ձև տալ՝ շապիկ էր պատրաստել, անվանաթերթ, յուրաքանչյուր էջում տեղավորել միայն մի ութնյակ, ամեն մի ութնյակի սկզբնատառ՝ այլ գույնի թանաքով էր գրել։ «Հրատարակելով» իր «գրքույկը» մի օրինակ տպաքանակով՝ բանաստեղծը նվիրաբերել էր դերասանուհուն։

«Նվիրում եմ,— գրված է վրան,— իրեն՝ Արուսին՝ նրա հանճարով և հրով ներշնչված այս պոեմը՝ հայկական Մելպոմենայի տաճարի չքնաղագույն և արևահամ դիցուհունույն Արուսի մասին»։

Եվ հետո հետևյալ պայմանն է դրել.

«Սիրելի Արուս, խնդրում եմ այս պոեմը, քանի դեռ չի հրատարակված, ոչ ոքի թույլ չտալ արտագրելու։ Իսկ տպագրության իրավունքը պատկանում է միայն անձամբ Ձեզ՝ եթե ես ներկա չլինեմ»։

Ես շատ կուզեի արտագրել պոեմը, ունենալ ինձ մոտ բայց չէի համարձակվում թույլտվություն խնդրել, նկատի ունենալով հեղինակի դրած խիստ պահանջը։ Արուսը, որի աչքից ոչինչ չէր վրիպում՝ ասաց.

— Եթե ուզում ես՝ արտագրիր։

Եվ նա ասաց, թե քանի որ Չարենցն այլևս կենդանի չէ, ապա ուրեմն պոեմի նկատմամբ բոլոր իրավունքները, բանաստեղծի կամքի համաձայն, պատկանում են իրեն։ Միաժամանակ զգուշացրեց.

— Արտագրիր, բայց տես՝ չհրապարակես։ Այդ թող ինձ։ Եթե ինձ չհաջողվի՝ դու արա, երիտասարդ ես և ինձանից

ավելի երկար կապրես։ Դե, դու ավելի լավ գիտես, թե ինչպես պետք է անել, հրատարակիչ մարդ ես։

Շատ տարիներ անց, երբ Արուս Ոսկանյանն էլ չկար, ես իրավունք վերապահեցի ինձ հրատարակության հանձնել պոեմը։

* * *

Արուսը նկատեց, որ հայացքս իրենից երբեմն-երբեմն սահում և կանգ է առնում իր ձեռքի գրքի վրա։

— Սառա Բեռնարի հուշերն են։ Կարդացե՞լ ես.

— Այո։

— Ֆրանսերեն կարդո՞ւմ ես.

— Ոչ։

— Ապա ինչպես։

— Ռուսերեն թարգմանությունն եմ կարդացել։

— Չգիտեի, որ ռուսերեն թարգմանությունը կա։ Իսկ ինչպե՞ս գտար, հետաքրքի՞ր է։

— Հետաքրքիր է, անշուշտ։ Նույնիսկ շատ։ Վաղուց եմ կարդացել, մի տաս տարի առաջ։ Ախալքալակում, որտեղ հայոց լեզվի ու գրականության դասատու էի։ Եվ մնացել է ընդհանուր տպավորությունը միայն։ Սիրով նորից կկարդայի, եթե գտնեի գիրքը։ Թեև, խոստովանություն լինի, Սառա Բեռնարով այնքան էլ ոգևորված չեմ։

Արուսի հայացքի մեջ հիասթափության մի շող երևաց, բայց մի վայրկյան միայն, հետո անմիջապես աչքերը կենտրոնացան, կարծես հարցնում էր՝ «ինչո՞ւ»։

— Դուզեական եմ։

— Դժվար է էլեոնորայով չհրապուրվել,— ասաց նա, մի պահ կանգ առավ, կարծես մտածեց՝ ասի, թե չէ, ապա շարունակեց,— դերասանությունը, սիրելիս, արվեստ լինելուց բացի, արհեստ է ու ես հիանում եմ այն արվեստագետներով, որոնք բնության շնորհները մշակում են, հղկում։ Ես նկատի ունեմ մեր գործի արհեստը, որի կատարելությունը հազվագյուտ դերասաններ են հասնում։ Մեր դերա-

սաններից Վաղարշը, դերասանուհիներից Օլգան։ Մյուսները խեղճ են։ Մեր արհեստի անհասանելի բարձունքը Փափազյանի խաղն է։

Ես լուռ էի։ Եվ իմ լռությունը համաձայնության նշան համարելով, նա առաջ տարավ խոսքը։

— Հետո, բավական չէ, որ դերասանը նյութը լավ զգա։ Սուր, խոշոր միտք է պետք։ Երբ դերասանը բեմ է գալիս, հանդիսատեսը պետք է ոչ միայն մարդկային կյանքի մի պատկեր տեսնի, այլև ընդունի և ոգևորվի այն մտքով, որի համար բեմ է բարձրացել։

Մի պահ լուռ մնաց, ֆրանսիական դերասանուհու հուշերի գիրքը բացեց, նորից փակեց։

— Կարդում եմ այս գիրքը և հասկանում, որ այդպես խաղալ կարողանալու համար, մարդ պետք է Սառայի հանճարն ունենա։ Դա տվածություն է, կամ կա, կամ չկա. բայց նրան, իբրև բարձրագույն օրինակ աչքի առաջ ունենալ և բնության քիչ տվածը արհեստով և մտքով հարստացնել, միանգամայն հնարավոր է։

* * *

Սենյակ մտավ մի երիտասարդ աղջիկ։

— Ծանոթացիր,— դարձավ ինձ Արուսը,— եղբորս աղջիկն է, Վարդգեսի։

— Մարգարիտ,— ներկայացավ նա։

Արուսը սիրով նայեց Մարգարիտին, հետո ինձ ու ասաց.

— Մարգարիտը խոստացել է աղջիկ ունենալու դեպքում անունը Արուս դնել։

Մարգարիտը շիկնեց։

— Հորաքո՞ւյր։

— Ի պատիվ ինձ, ու ես անսահման շոյված եմ դրանից. անհամբեր եմ, թե երբ է այս աղջիկը մեծանալու, երբ է ամուսնանալու ու երբ է իմ անունը կրողն աշխարհ գալու, որ ուրախանամ։

Դերասանուհին այս աշխարհին վաղ հրաժեշտ տվեց, բայց Մարգարիտն իր խոստման տերն եղավ և աղջկան կոչեց Արուսիկ։

Նրանք ներողություն խնդրեցին և մի պահ ինձ մենակ թողին։

* * *

Հայելու սեղանի վրա մետաղ դրամներով լի թեյի մի ափսե էր դրված։

Արուսը ներս մտավ ու տեսնելով ինձ հայելու սեղանի առաջ կանգնած, հարցրեց.

— Նախապաշարումներ ունե՞ս։

Չհասկացա հարցը։

— Ես ունեմ։

Ասաց ու ձեռքն առավ մետաղյա դրամներով լի ափսեն։

— Եթե փողոցում, մայթի վրա ընկած է մետաղ դրամ, ըստ ժողովրդական նախապաշարման պետք է վերցնել։ Եթե արծաթ է՝ գտած դրամը ծախսելու է, եթե պղնձե դրամ է և ղուշն է քեզ նայում, պետք է առնել ու պահել, ոչ մի դեպքում չծախսել։ Ասում են՝ բարաքյաթ է բերում։ Այս դրամները փողոցում եմ գտել և չեմ ծախսում, սպասում եմ, սպասում եմ բարաքյաթին։

Նայեց ինձ։

— Իզուր ես ժպտում։ Հարցը հո նախապաշարված լինելը չէ, այլ այն, որ հավատով ես լցվում, սպասումով, իսկ ավելի մեծ բան, քան սպասումը ինձ հայտնի չէ։

* * *

Մարգարիտը հրավիրեց մյուս սենյակը թեյ խմելու։ Երբ սեղանի շուրջը երեքս տեղ գրավեցինք, Արուսն ասաց.

— Հիմա ասեմ, թե ինչու եմ խնդրել, որ նեղություն քաշես և գաս։ Մեկ կամ երկու ամսից, երևի գալ տարվա փետրվարին, նշվելու է իմ ծննդյան հիսնամյակը։ Ես ուզում էի խնդրել, որ հանձն առնես զեկուցումը։

Առաջարկը խիստ անակնկալ էր ու ես մի պահ շփոթվեցի։ Ինձ համար մեծ պատիվ էր այդպիսի դերասանուհու Հոբելյանին զեկուցումով հանդես գալը, բայց այն ժամանակ ես թատրոնով չէի զբաղվում և, անկեղծ ասած, վստահ չէի, որ կարողանամ իրեն քիչ թե շատ արժանի զեկուցում կարդալ։ Նա իմ ոչ մի պատճառաբանությունը հարգելի չհամարելով, շարունակում էր համոզել ինձ։ Ես իսկապես չէի պատկերացնում ինձ թատերագետի վիճակում, թեև թատրոնը սիրում էի և Արուս Ոսկանյանն էլ մեկն էր բեմի այն վարպետներից, որի խաղով միշտ հիացել եմ։ Դժվար էր, ճիշտ է, բայց համառ գտնվեցի ու մերժեցի։

Հիմա, երբ տարիներ են անցել ու ես էլ թատրոնին ավելի եմ նվիրված, քան գրականությանը, ցավում եմ, ավելին, չեմ ներում ինձ, որ կարող էի վշտացնել մի այդպիսի լուսավոր արվեստագետի։ Հոբելյանին զեկուցումով հանդես եկավ Վաղարշ Վաղարշյանը։ Այդ զեկուցումը հրապարակվեց ու ես հիմա էլ համոզված եմ, որ այդ մակարդակին գոնե այն ժամանակ չէի կարող բարձրանալ։

Իմ մերժումը մեղքի պես ծանրացավ հոգուս վրա և արտիստուհու մահից հետո, շատ տարիներ անց, «Արուս Ոսկանյան» դիմանկարը գրելիս՝ միշտ աչքիս առաջ էր ակնարկիս հերոսուհու կշտամբալի հայացքը։ Ես չգիտեմ, թե որքան եմ հաջողել վերստեղծել դերասանուհու կերպարը, բայց որ վերջացնելուց հետո փոքր ինչ թեթևացած զգացի ինձ, այդ ճիշտ է։

* * *

Մի երկու-երեք անգամ Արուս Ոսկանյանին հանդիպել եմ Իսահակյանի տանը։ Վարպետը սիրում էր նրան և մի առանձին քնքշությամբ էր վերաբերվում։ Արուսն էլ լավ էր զգում իրեն ու, թեև միշտ անկեղծ ու անմիջական, բացում էր վշտացած սիրտը բանաստեղծի առաջ, գանգատվում, նա էլ ուշադիր լսում էր դառնացած դերասանուհուն, որն ասելով ու պատմելով թեթևանում էր։

Մի անգամ տեսել եմ նրան արցունքներն աչքերին։

— Դեր չունեմ խաղալու, Ավո, հասկանո՞ւմ ես, դեր։

* * *

Խոսք բացվեց գնացքով ճանապարհ գնալու մասին: Մեկն ասաց. թե ինքը նախընտրում է «միջազգային» վագոնը՝ մաքուր է, հարմար և վերջապես գեղեցիկ: Մի ուրիշը գերադասություն տվեց այն վագոններին, որտեղ շատ ժողովուրդ կա՝ պարզ ու հասարակ մարդիկ:

— Մաքուր և հարմարս որն է, մշտական բնակություն հո չես հաստատում: Մի փոքր՞ նեղվում ես, բայց լսում ես պարզ մարդկանց զրույցը, իմանում, թե ինչպես է ապրում ժողովուրդը:

Միջամտեց Արուսը:

— Ես դերասանուհի եմ և ինձ համար, ինչ խոսք, շատ հետաքրքիր է լինել ժողովուրդի մեջ, լսել նրանց, տեսնել թե ինչպես են ուրախանում, սրամտում, միմյանց ձեռ առնում: Մեկ էլ տեսար մեկը պատմում է իր վիշտը, իսկ մյուսները, բոլորովին անծանոթ մարդիկ, հանգստացնում են նրան հարազատի անկեղծ զգացումով: Մարդիկ այստեղ շատ արագ են մոտիկանում:

Մի պահ լռելուց հետո:

— Ճիշտ ասած, ինձ համար պակաս հետաքրքրիր չէ, եթե չասեմ, թե ավելի հետաքրքիր է փափուկ վագոնը, որտեղ մարդիկ չգիտես ինչու այն չեն ինչպես երևում են և, չնկատելով, խաղում են, որ չլինի թե իրենք պատահական համարվեն ընտրյալների շրջանում և իրենց պահում են այն լրջությամբ, որ չունեն և ստացվում է կեղծ ու հիմար վիճակ: Շատ հետաքրքիր է տեսնել, թե ինչպես մարդիկ աշխատում են, իրենց տեսքին պատկառելիություն հաղորդելով, երևալ ավելի նշանակալի, քան իսկապես են: Հակառակ հասարակ մարդկանց՝ այստեղ ծանոթությունը տեղի է ունենում ուշ կամ երբեք, որովհետև քաղքենի լինելով, իրենց արժանապատվությունից ցած են համարում՝ առաջինը խոսք բացել. հետաքրքրություն ցույց տալ: Մի խոսքով՝ առատ նյութ արվեստագետի համար:

* * *

Մի անգամ էլ, դարձյալ վարպետի տանը, խոսում էր այն պարտականությունից, որ թատրոնն ունի ազգային լեզվի մաքրությունը պահպանելու նկատմամբ։ Այդ խնդիրը դերասանուհուն շատ էր զբաղեցնում և նա ներկայացած առիթն օգտագործում էր ու խոսում դրա մասին, երբեմն էլ, ինչպես հայտնի է, հանդես էր գալիս հրապարակավ՝ ամբիոնից կամ մամուլի էջերում՝ հոդվածներով։

— Մեկը Ղարաբաղի շեշտեր ունի խոսքի արտաբերության մեջ, մի ուրիշը՝ Թիֆլիսի։ Երրորդի մոտ զգալի է Գյումրին։

— Ոմանք էլ Պոլսի շեշտերով են խոսում,— նկատեց վարպետն ու ժպտուն հայացքը հառեց դերասանուհու վրա։

Արուսը զգաստացավ, մի պահ կարծեց, թե բանաստեղծն իրեն է ակնարկում և թույլ ու կամացուկ հարցրեց.

— Ո՞վ օրինակ։

— Օրինա՞կ ես ուզում. Կոթիկյանը։

— Ճիշտ է։

Վայրկենական լռություն տիրեց։

— Քչերն են մաքուր հայերենով խոսում։

— Կյանքից է,— ասացի ես։

Վարպետն ու Արուսը նայեցին ինձ։

Փորձ արի բացատրել միտքս։ Եսասում էի, որ կյանքը և բեմը միմյանց հետ կապված ազդակներ են։ Իհարկե՝ բեմը պետք է օրինակ տա, բայց հիմա մեր մտավորականության թիվը անցյալ ժամանակների հետ համեմատած չտեսնված չափերի է հասել։ Գավառներից լցվում են մայրաքաղաք։ Գալիս են նաև Վրաստանից, Ադրբեջանից, Ռոստովից, Մոսկվայից։ Որտեղից միայն չեն գալիս։ Վերջապես, տեղի է ունեցել հայրենադարձություն։ Երևանը հիմա լեզվական մի խառնարան է։ Սրա առաջն առնել չի կարելի, անխուսափելի ընթացք է և ժամանակ է պետք, որ մի հիմքի վրա մեր լեզուն և դրա հետ միասին նրա արտաբերությունը դառնան միասնական։

Վարպետը հավանություն տվեց ասածիս։

Արուսն էլ առարկություն չուներ, բայց շարունակում էր ասել և, իհարկե, միանգամայն իրավացի, թե մեր լեզվի կանոնավորման մեջ թատրոնի դերը մեծ է։

* * *

Մի երկու օր անց գնացի Սունդուկյանի թատրոն՝ ներկայացում նայելու։ Ճեմասրահում հանդիպեցի Արուսին ու, զրույցի բռնվելով, այդպես էլ դահլիճ չմտա։

Դերասանուհին նորից անդրադարձավ բեմական խոսքին։ Նա շարունակեց Իսահակյանի տանը սկսած զրույցը բեմական խոսքի մաքրության մասին։ Երբ զրույցն ավելի մասնավորվեց, զգուշաբար նկատեցի, որ Հրաչյայի ու իր՝ Արուսի խոսքի մեջ լսելի է բաղաձայների կոշտություն։

Նա երկար համոզում էր ինձ, թե իսկական հայերենում այդպես է և դա, բացի գեղեցկությունից, առնականություն է հաղորդում լեզվին։

Ես համաձայն չէի ու փորձ արի առարկելու, բայց ոչ այն հաջողությամբ, ինչպես նա, որովհետև ոչ նրա փաստական պաշարն ունեի, ոչ էլ երկար-բարակ մտածել էի այդ հարցերի շուրջ։ Հետո, երբ շատ տարիներ անցան ու ես բավական նյութ և դիտողություն կուտակեցի, համոզվեցի, որ նույն Պոլսից եկած Փափազյանի խոսքը շահեկանորեն տարբերվում է երկուսից էլ։ Գտա դրա բուն աղբյուրը, հասկացա, որ ինչ-ինչ սկզբունքներ Սիրանույշի միջոցով Ադամյանից հասել են Փափազյանին։ Մնալով նույն կարծիքին ինչ տարիներ առաջ, ցավում էի, որ Արուսը կողքիս չէ, եթե ոչ կարելի էր այն ժամանակ սկսված և ընդհատված վեճը հիմա շարունակել։

* * *

Հարցրի Սիրանույշի մասին, հետաքրքրվեցի, թե դերասանուհիներից ո՞ւմ է ամենից ավելի պարտական։

— Ավելի զարմանահրաշ բան, քան Սիրանույշը, գոնե ես չեմ տեսել թատրոնում։ Եթե նա հայ ծնված չլիներ, այլ

իտալացի կամ ֆրանսիացի, ապա նրա տեղը կլիներ Էլեոնորա Դուզեի և Սառա Բեռնարի կողքին։

Մի պահ կանգ առավ։

— Գիտեմ որ կզարմանաս, եթե ասեմ, թե մի այլ մեծ դեմք ևս ուներ մեր Թատրոնը։ Եթե ոչ ավելի գերազանց, ապա Սիրանույշից ոչ նվազ։ Խոսքս Հրաչյա Աչնիվի մասին է, իմ ուսուցչուհու, որին շատ և շատ եմ պարտական։ Կոկորդը ցավում էր և նա վաղ թողեց բեմը։

Մի պահ կանգ առավ, ասես ուժ հավաքեց և զսպեց վրա հասնող հուզումը։

— Երբ հիշում եմ նրա պարապմունքները, հիշում եմ նրա ցույց տված տեսարանները, հիմա էլ մնում եմ զարմացած։ Նա այդ անում էր մեկ-մեկ, որովհետև ցույց տալն իր սկզբունքին հակառակ էր, բայց երբ մի երկու անգամ փորձում էի և չէի հաջողում՝ հուսահատությունից, թե բեմի կարոտից,— իսկ նա բեմը վաղ էր թողել հիվանդության պատճառով,— ինքն էր խաղում և ինչպես էր կերպարանափոխվում, դառնում բոլորովին այլ մարդ ու, թեև ոչ բեմական զգեստ կար հագին, ոչ գրիմավորված էր, ոչ էլ դահլիճ ու հանդիսատես կար դիմացը, նա այնպիսի ցնցող ազդեցություն էր հասնում, որ իբրև աշակերտուհի ուշադիր հետևելու փոխարեն դառնում էի հիացած հանդիսատես, և հիմա էլ, չնայած քանի տասնամյակ է անցել, աչքիս առջևն է ու և ամեն անգամ նրան միտ բերելիս փշաքաղվում եմ։

* * *

Զրուցում էինք։ Ես ինչ որ բան էի պատմում՝ Արուսը լսում էր։ Մեկ էլ ինձ թվաց, որ իմ դիմաց ոչ թե ինքը Արուսն է, այլ Սարյանի մատիտանկարը. գլխի նույն պահվածքը, աչքերի ճիշտ նույն հայացքը, պարանոցի պլաստիկ այն գիծը, որ քաշել է նկարչի ձեռքը։ Հարցրի՝ հավանո՞ւմ է իր դիմանկարը։

— Սկզբում չէ, հետո բոլորն այնքան ասացին, թե լավ է, լավ է, որ սկսեց դուր գալ։

— Ընդհանրապես Սարյանի մատիտանկարների այդ շարքը ընտիր գործեր են։

— Ոչ բոլորը։ Օրինակ Համիկը հաջողված չէ. նմանությունը բռնել է, իսկ բնավորությունը՝ ոչ։ Միշոն լավ է, Բուրջալյանը նույնպես։ Ամենալավը, իհարկե, Վահրամի նկարն է. կատարյալ գլուխգործոց։

* * *

1942-ին բեմադրվեց «Համլետը»։ Վաղարշյանի խաղը Համլետի դերում բուռն վեճերի նյութ դարձավ։ Հայկական Թատերական ընկերությունը կազմակերպեց ներկայացման քննարկումը։ Վեճը սուր բնույթ կրեց և տևեց երկու օր։ Ելույթ ունեցա նաև ես։ Քննարկման մասնակիցների մեծ մասը քննադատում էր Վաղարշյանի մեկնաբանությունը։ Նույնը և ես։ Դա թատերագիտական իմ առաջին ելույթն էր։ Ասում էին, թե վատ չէ։

Քննարկմանը շատ մարդ կար, գլխավորապես թատերական աշխարհի մարդիկ։ Բացի այդ՝ գրողներ, լրագրողներ, նկարիչներ։ Կար նաև Արուսը։

Քննարկումից հետո մոտեցավ ինձ Արուսը, բռնեց ձեռքս ու ասաց.

— Բա ասում էիր՝ չեմ կարող։

Ու գնաց։

* * *

Երկու, թե երեք օր անց Արուսը զանգահարեց։

— Ես հիշաչար մարդ չեմ։ Շնորհավորում եմ մուտքդ թատրոն։

Ես ինչ որ բան ասացի։

— Գրականությունը մի թող, բայց թատրոնով էլ զբաղվիր։ Ես ասացի, թե զբաղվող շատ կա։

— Մելիքսեթից բացի ո՞վ է զբաղվում։

Հախումյանի և Թերզիբաշյանի անունները տվի։

— Նրանք մեկ-մեկ են գրում։ Միայն Մելիքսեթն է մեզ հավատարիմ։

Ես ասացի, թե թատրոնով քիչ թե շատ լուրջ զբաղվելու համար շատ բան է հարկավոր իմանալ։

— Ինչ անենք։ Ինչ որ չգիտես՝ ժամանակին կիմանաս։

Եվ հանկարծ նրա աշխույժ ձայնը կտրուկ դարձավ։

— Ոչ մի առարկություն, ես մեծ եմ, դու՝ կրտսեր և իմ առաջարկը քննության ենթակա չէ։

Ասաց լուրջ և ապա լսեցի նրա ծիծաղը։

— Մի նվեր եմ պատրաստել քեզ համար՝ Հովհաննես Հովհաննիսյանի ձեռագիրը՝ «Նորայի» թարգմանությունը։ Չէ որ Հովհաննիսյանով ես զբաղվում, կարող է պետք գալ։

— Շնորհակալություն։

— Ոչ մի շնորհակալություն. ընդունիր նվերս, որպես օրհնանք և մկրտություն։

Ես չիմացա ինչ ասել։

— Հա՛, մի դիտողություն. ելույթդ երկար էր, այդ բոլորը կարելի էր ավելի սեղմ ասել։ Հո չե՞ս նեղանում։

* * *

Ըստ մեր պայմանի, հաջորդ օրը թատրոն գնացի. Արուսը պետք է բերեր «Նորան»։

Հարցրի, թե ինչո՞ւ ելույթ չունեցավ, մի՞թե ասելու բան չուներ։

Նայեց ինձ և նրա աչքերի մեջ թախիծ նշմարեցի։

— Նախ ես էլ քննադատաբար եմ վերաբերում ներկայացմանը։ Որքա՞ն էթիկապես ճիշտ է, որ դերասանը հանդես գա դերասանի դեմ։ Միշտ էլ մտածել եմ, թե դա կարող է ճիշտ չընկալվել, թեև հավատա, որ ընդհանրապես հասարակական կարծիքին գերի մնացողներից չեմ։ Եվ հետո...

Ասաց ու կանգ առավ։ Աչքերում եղած տրտմությունը խտացավ։ Եվ ինձ թվաց, թե նա մի հուզում ապրեց, որը հարկավոր էր զսպել խոսքն ասելուց առաջ։

— Չնեղանաս, սիրելիս, բայց ես քննարկման երկու օրն էլ մի անախորժ զգացում ունեի։ Բոլորդ էլ հետաքրքիր ու

բովանդակալից էիք խոսում, բայց ես բարոյապես ճնշված էի զգում ինձ. հեռվում պատերազմ է, երկրի գլխին սուր է կախվել, հազարավոր մարդիկ են զենքը ձեռին ընկնում, թշնամին շարժվում է առաջ, իսկ մենք. մի խումբ մարդիկ հավաքվել ինչո՞վ ենք զբաղված՝ դերասանը ճի՞շտ է մեկնաբանել Շեքսպիրը, թե ոչ։

Համաձայն չէի դերասանուհու հետ, բայց ձայն չհանեցի։ Հետագայում նրա ասածը մի քանի անգամ հիշել եմ։ Մեկ այն ժամանակ, երբ գերմանացիները մոտեցել էին Կովկասի դարպասներին, իսկ կառավարությունը որոշեց Գիտությունների ակադեմիա հիմնել Հայաստանում։ Մեկ էլ երկու տարի անց, երբ որոշվեց շեքսպիրյան համամիութենական փառատոնը և կոնֆերանսը գումարել Երևանում։ Մի կողմից՝ պատերազմ, մյուս կողմից՝ մի շաբաթից ավելի մեր մայրաքաղաքը, նրա հասարակայնությունը, Մոսկվայից և ազգային մյուս հանրապետության ներկայացուցիչները, վերջապես՝ մամուլը Շեքսպիրով են զբաղված։

Սրանք բոլորը մեր ուժի, մեր արդարացիության վկայությունն էին։ Եվ այնուամենայնիվ՝ հիմա էլ դերասանուհու ասածը մտաբերելիս, փշաքաղվում եմ, որովհետև, թեկուզ և սխալ, նա այն համոզման էր, թե ոչինչ բացարձակապես ոչինչ չպետք է մեր միտքը շեղի պատերազմից։ Նրա հոբելյանը տեղի ունեցավ 1941-ի փետրվարին։ Եթե հետաձգվեր ու պատերազմն արդեն սկսված լիներ, համոզված եմ, որ թույլ չէր տա, կասեր՝ «հիմա դրա ինչ ժամանակն է»։ Կրկնում եմ՝ թեկուզ և սխալ, բայց դրա մեջ մի խոր ազնվություն կա, քաղաքացիական պարտքի մի այնպիսի զգացում, որի առջև մարդ չի կարող չխոնարհվել։

* * *

Ո՞րն է իր սիրած դերը։

— Դժվար է ասել,— պատասխանեց,— այդ ո՞ր մայրը կարող է ասել, թե զավակներից որին ավելի է սիրում։

— Այնուամենայնիվ։

— Երևի Նորան։ Շատ սիրեցի այդ աղջկան, թերևս այնքան, որ ինձ գտա նրա մեջ։ Եղավ մի պահ, երբ ինձ թվում

էր, թե ինքս ինձ եմ խաղում ու ես, չեմ սիրում բեմում իսկական արցունքներ, հազիվ էի զսպում, որ լաց չլինեմ։

Մի պահ լուռ մնաց։

— Սկզբում խաղում էի այնպես, առանց խորանալու։ Հետո, քսանական թվականներին, մի խոր զգացողություն իջավ վրաս։ Ու ես լավ գիտեմ, որ հանդիսատեսն ինձ հետ ապրում է, ինձ հետ հուզվում՝ տխրում, ոգևորվում։ Ավելի ուշ ավելի ճիշտ հասկացա, ավելի խորը։ Իսկ հիմա, երբ նորից եմ անդրադառնում, ինձ թվում է, որ բոլորովին էլ լավ չէի խաղում, որ պարզապես չեմ հասկացել կերպարի բուն էությունը, որ կարելի էր հանդիսատեսին հոգեկան այնպիսի հարստություն առաջարկել, մանավանդ երիտասարդ կանանց, աղջիկներին, որ նրանց կյանքի ճանապարհին հերոսուհին միշտ նրանց հետ լիներ։

— Իսկ մի՞թե այդպես չէ. ես շատերից եմ լսել, որ իրենց թվացել է, թե Նորա խաղալիս դուք իրենց կյանքն եք պատկերել։

Ժպտաց։

— Ես էլ եմ լսել։

— Ուրեմն ինչ։

— Ուրեմն այն, որ դերասանուհին տարբեր է հանդիսատեսից։ Հանդիսատեսը տարիների հետ պահում-պահպանում է երիտասարդ ժամանակվա բեմական տպավորությունները նույնությամբ, իսկ դերասանուհին որքան տարիք է առնում, այնքան անբավական է մնում իրենից, իր երիտասարդ տարիների արածից։

Մի փոքր դադարից հետո.

— Կարող եմ ավելի խիստ ձևակերպել միտքս, խիստ, գուցե նաև պարադոքսալ. որքան առաջացող տարիքն արտաքին անհամապատասխանություն է առաջ բերում, դերասանուհին այնքան ավելի է հասնում կերպարի հոգեկան ըմբռնման խորությանը։

Չգիտեի ինչ ասել։

— Չէի՞ր սպասում այսպիսի անկեղծության։ Եթե ճիշտն ուզում ես իմանալ, ես հիմա, միայն հիմա՛ եմ հասկանում, թե ինչպես կարելի էր խաղալ Նորան։

* * *

Վարպետի տանը մի հանդիպում էլ եղավ։ Նա ուզեց իմանալ բանաստեղծի կարծիքը «Համլետի» մասին։

— Տեսե՞լ ես.

— Տեսել եմ։

— Եվ ինչ։

— Գեշ մոդեռն է։

Խոսք բացվեց Վաղարշյանի մասին։

Հարցրի, թե Արուսն ինչ կարծիքի է Վաղարշյանի մասին։

— Իհարկե, Հրաչյա չէ։ Բայց լավ դերասան է ու այնքան տվյալներն ու հնարավորությունները, որքան տեսակն է դուր գալիս ինձ։ Որքան շատ ունենանք այդպիսի դերասան՝ այնքան լավ մեր թատրոնի համար։

Հարցրի, թե Վաղարշյանի ո՞ր դերերն է առանձնապես գնահատում։

— Սքանչելի Տիխոն էր, չեմ պատկերացնում, որ մի ուրիշն ավելի լավ խաղա։ Լավ Բելագուբով էր։

— Իսկ Բուլըչո՞վը,— հարցրի ես։

— Հոյակապ էր։

— «Պատվի համար»-ի մեջ լավ էր,— ասաց Վարպետը։

— Սուրե՞ն, իսկապես լավ էր։ Վաղարշն ընտիր դերակատարումներ շատ ունի, ո՞րը հիշեմ։

Այս առիթով զրույցի շրջանակն ընդլայնվեց և խոսքն դարձավ մեր դերասանական ուժերին ընդհանրապես։

Վարպետը հարցրեց.

— Երիտասարդների մեջ մի բա՞ն կա։

— Դժբախտաբար՝ ոչ։ Ո՛չ Հրաչյա, ո՛չ Վաղարշ, ո՛չ Համբիկ, ո՛չ էլ Օլգա։ Զարմանալի բան. նայում ես և տեսնում, որ շնորհքով մարդիկ են, իսկ իրենց սեփական դեմքը չունեն։ Բայց դրանք պետքական ուժեր են, թատրոնը չի կարող միայն աստղերից բաղկացած լինել։ Տեսնենք, գուցե դեռ կգան, միայն թե վախենում եմ, որ շղթան կտրվի։

* * *

Մի օր Արուսին հանդիպեցի փողոցում և ճանապարհեցի մինչև տուն։

Հարցրի, թե խաղալիս ո՞ր դերասանի հետ է իր բեմական շփումն ավելի բնական ստացվում։

— Հրաչյայի նախ և առաջ. նայում ես աչքերին ու հավատում։

Հետաքրքիր էր իմանալ, թե այդ տեսակետից ինչ կարծիքի է Փափազյանի մասին։

— Վահրա՞մը. դե, նրա հետ խաղացողը դերասան էլ չլինի՝ կդառնա։

* * *

Զրույցի մի պահի ասաց.

— Դերասանը մի նպատակ պետք է ունենա՝ մաքրագործել թատրոն եկած հանդիսատեսին։

* * *

Ինձ հետաքրքրում էր, թե ո՞րն է դերասանուհու առելիքը թատրոնում։

— Դարերի ընթացքում կյանքը կեղծ պայմանականությունների շատ է ենթարկել մարդուն։ Ու եթե դերասանը, ուրեմն և ես, բեմից մի բան ունի քարոզելու, ապա միայն՝ մարդ, բարձր կանգնիր պայմանականությունների ճնշումից և քեզ ազատագրված զգալով, կտիրանաս հոգու անկախության։

* * *

Իմ ծանոթության շրջանում Արուս Ոսկանյանը հիսունն անց էր։ Ու թեև նրա արտաքին կերպարը արդեն այն չէր, ինչ տարիներ առաջ, բնավորությամբ, հոգեբանությամբ մնացել էր նույնը։ Ճիշտ է, նրա ժպտուն դեմքի և մանա-

վանդ աչքերի մեջ նկատելի էր տրտմություն, բայց բոլորը գիտեին դրա պատճառները և չէին բացատրում առաջացող տարիքով։ Բուռն ու անդադրում, անհանգիստ ու որոնող, նա չէր հաշտվում այն մտքի հետ, թե ինքն այլևս երիտասարդ չէ և հետևապես չպետք է խաղա հերոսուհիների դերեր։ Ոչ միայն չէր հաշտվում, այլև չէր հասկանում։ Եվ նա, որ ընդհանրապես իրավունք ուներ մտածելու, թե թատրոնի ղեկավարներն աչառու են իր նկատմամբ, անարդարացի էր համարում, որ իրեն հասկացնում են, թե այլևս անցել է Ռաուտենդլայն, Նորա կամ Մոննա Վաննա խաղալու իր ժամանակը։ Եվ հազիվ թե նա հոժար լիներ խաղալու մայրական դերեր, եթե պատերազմը չպայթեր։ Ես նկատի չունեմ ոչ Կրուչինինան, որ խաղաց պատերազմից առաջ, ոչ էլ Զեյնաբը, որով հանդես եկավ պատերազմը սկսվելուց հետո, քանի որ ամեն մի աչքի ընկնող դերասանուհի երիտասարդ հասակից տենչում է այդ դերերը կատարել։ Երբ պատերազմի նախօրյակին նրան հանձնարարվեց արքայամոր դերը Դեմիրճյանի պատմական դրամայում, նա չէր կարողանում հասկանալ, թե ինչո՞ւ Վաղարշյանը պիտի խաղա պատանի թագավորի դերը, իսկ ինքը՝ նրա մոր, քանի որ իրենց տարիքի տարբերությունը մի հնգամյակից չի անցնում։

Պատերազմը շատ բան փոխեց։ Շատերին փոխեց։ Նաև Արուս Ոսկանյանին։ Դերասանուհու հոգեկան դրաման իր տեղը զիջեց ժողովրդի պատմական փորձության ահեղ իրականության առաջ։ Եթե թույլ տային՝ կգնար ռազմաճակատ։ Եվ քանի որ հնարավոր չհամարվեց՝ նա հայրենասիրական բուռն գործունեություն ծավալեց։ Երկու տարվա ընթացքում հինգհարյուր ելույթ է ունեցել, չհաշված այն օրերը, որ խաղացել է թատրոնում։ Ուրեմն՝ գրեթե օր չի եղել, որ նա զբաղված չլինի։ Եվ որ գլխավորն է՝ բեմ էր բարձանում խորապես համոզված, թե իր, ինչպես մյուս դերասանների, ամեն մի ելույթը մոտեցնում է մեր հաղթանակի օրը։

Ահա այս հոգեբանության մեջ էր, երբ թատրոնը բեմադրեց «Ռուս մարդիկ» պիեսը և Արուսին առաջարկվեց տարեց մի կնոջ՝ Մարիա Նիկոլաևնայի դերը։ Հանձն առավ անտրտունջ։ Այլևս ոչ հարմար էր, ոչ էլ ժամանակ կար

մտածելու, թե մայրական այդ դերը խաղա՞, թե ոչ։ Դա հերթական ներկայացում չէր նրա համար, այլ մասնակցություն պատերազմին, երբ վիճարկումը բացառված է և մտածում են միայն ռազմական առաջադրանքը հաջողությամբ կատարելու մասին։

Առաջադրանքը կատարվեց գերազանց հաջողությամբ։

Ես զանգահարեցի նրան։ Երեխայի պես ուրախացավ։ Նկատել եմ՝ որքան արվեստագետը մեծ է, այնքան ավելի սրտագին անմիջականությամբ ասեմ, թե հրճվանքով է ընդունում գովեստի խոսքեր, անկախ նրանից, թե ով է ասողը։

* * *

Հիվանդանալուց մի շաբաթ առաջ հանդիպեցինք Վարպետի տանը։ Շատ մարդ կար։ Արուսը, չգիտեմ ինչու, սեղանից հեռու էր նստել, առանձին։ Մոտեցա։ Հարցրի, թե ինչ է ուզում խաղալ։

— Ուզում էի,— ուղղեց նա ինձ։

— Ի՞նչ․

— Էլեկտրա։

— Հիմա չե՞ք ուզում։

— Հիմա դրա ժամանակը չէ, իսկ պատերազմից հետո ուշ կլինի։ Ճիշտ չէ՞։

Ես ձայն չհանեցի։ Կշտամբանքի պես մի բան շողաց նրա աչքերում։

— Եվ դու, Բրուտո՞ս։

* * *

Պատերազմը հաշտեցրեց մեզ մահ հասկացողության հետ։ Ռազմաճակատից եկող մահվան բոթն անպակաս էր։ Լուր էր հասնում, թե մի ամբողջ գունդ է ոչնչացվել։ Այսպիսի մթնոլորտում, բնական է, որ մահը ցավագին չէր ընկալվում։ Անտարբերություն չէր դա։ Մեկի մահը, թեկուզ և լիներ նշանավոր մարդ, չէր թողնում այնպիսի տպավորություն, ինչպես անցյալներում, քանի որ հեռու-հեռվում

հազարավոր մարդիկ էին ունկնդրում։ Եվ, այնուամենայնիվ, Արուս Ոսկանյանի մահվան լուրը ռումբի պայթյունի նման եղավ։ Անսպասելի էր ու նման ծանր հարվածի։

1943-ին էր։

Արուսի շողշողուն կերպարը չէր կապվում մահվան հետ։ Նա ամբողջապես կյանք էր, վառվող մի բոց, որ հանկարծ հանգել էր։

Ով եղել է Արուս Ոսկանյանի թաղմանը՝ երբեք չի մոռանա այդ հուղարկավորությունը։ Երևանը մինչ այդ հողին էր հանձնել այնպիսի մեծություններ, ինչպես Կոմիտասն ու Սպենդիարյանը, Շիրվանզադեն ու Աբելյանը և ոչ ոք չէր հիշում այդքան մարդ։ Թատրոնի այգուց դուրս եկավ հուղարկավորների հոծ թափորը և թաղման կարգադրիչներն ուզեցին դագաղը տեղավորել կարմրով և սևով պատրաստված մեքենայի վրա։ Հուղարկավորներն ընդդիմացան։

— Ժողովրդի դերասանուհին էր նա, թույլ տվեք, ուրեմն, որ ժողովուրդն էլ թաղի նրան։

Ռազմիկ Ալավերդյանն էր ասողը, Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանողը (որը հետագայում նախագծեց ու կառուցեց Սունդուկյանի անվան թատրոնի նոր շենքը)։ Նա իր ուսանող ընկերների և ուրիշ երիտասարդների հետ տարավ դագաղը մինչև գերեզմանատուն։ Ոչ թե ուսաբարձ, այլ ձեռքերի վրա, գլխից բարձր։

Եվ այդպես, թատրոնից մինչև քաղաքային պանթեոն՝ որպես մեծագույն պատիվ։

*Ծանոթ էի, բայց մոտ չէի։*

*Չկար ներկայացում, որ նա խաղար ու ես չգնայի։ Անտարբեր չէի դեպի նրա արվեստը։ Հին սեր էր դա, կյանք առած իմ ուսանողական տարիներից։ Գուցե դեր խաղացած լինի մի խոսակցություն, որ լսել էի Գրողների տանը։ «Ամպրոպի» առաջին ներկայացումների օրերին էր։ Հասմիկը կատարում էր Կաբանիխայի դերը, Արուս Ոսկանյանը՝ Կատերինայի։ Մի քանի երիտասարդ գրողներ ոգևորված խոսում էին Արուս Ոսկանյանի մասին։*

*Դեմիրճյանը մի քանի քայլ այն կողմ նստած՝ գիրք էր կարդում։*

*— Իսկ Հասմի՞կը,— հարցրեց նա։*

*— Նա էլ լավ է,— պատասխանեց մեկը առանց խանդավառության։*

*— Հասմիկը ուրիշ բան է,— ասաց Դեմիրճյանը, մի պահ լռեց ու հետո ինչպես այդ վայել է մեծին, որ կամենում է ճիշտ ուղղություն տալ, նկատեց.*

*— Ուշադիր եղեք։ Իսկական բախտ է այդպիսի դերասանուհի ունենալը։ Ճրագով ման գաս՝ չես գտնի։*

*Ամրացավ իմ սերը։ Եվ շատ ուրախացա, երբ ծանոթացա Հասմիկի հետ։ Հակառակ իմ ցանկության՝ շփվել մոտիկից, լավ ճանաչել նրան՝ չեղավ։ Ծանոթությունը մնաց ծանոթություն։ Հանդիպում սեղանի շուրջ, հարց ու պատասխան ընդհանուր զրույցի ժամանակ։ Այսքան։ Ոչ ավելի։ Չեմ հիշում ոչ մի երկարատև խոսք ու զրույց միայն նրա հետ։ Չեմ կարող բացատրել, թե ինչու, բայց երբ հանդիպում էի նրան, խոսակցությունը մի-երկու խոսքից այն կողմ չէր անցնում։ Մի տեսակ՝ չէր ստացվում։*

Դա չանդրադարձավ իմ սիրո վրա։ Ու մեր հանդիպումները, իսկական ու բախտավոր, անշուշտ ինձ համար, տեղի էին ունենում մեծ մասամբ թատրոնում, երբ նա բեմում էր, ես դահլիճում։ Ամեն անգամ, երբ նա բեմ էր բարձրանում՝ ինձ թվում էր ավելի հարուստ, քան այն ակնկալանքը, որով մտել էի դահլիճ։ Երբեք նրա խաղից անբավական չեմ հեռացել։ Այդպիսի օր չեմ հիշում։ Համմիկի ամեն մի նոր խաղը նրա մեծության հաստատումն էր։

* * *

Համմիկի կուլտուրան բարձր չէր. նա կարգին կրթություն չէր ստացել, առանձնապես կարդացած չէր, զարգացում չուներ, լեզուներ չգիտեր։ Նա այն դերասաններից չէր, որ բեմական արվեստն ուսումնասիրում են դասագրքերով. բայց այն եզակի արվեստագետներից էր, որի փորձի հիման վրա, սովորաբար, դասագրքեր են գրվում։

Ինձ զբաղեցնում, կարող եմ ասել տանջելու չափ մտահոգում էր մի հարց։ Համմիկը սիրված էր, ժողովրդականություն էլ ուներ։ Այդ ճիշտ է։ Բայց նրա ժողովրդականությունը այն չափերը չընդունեց, որին հասել էր, ասենք, Արուս Ոսկանյանը։ Արուսը շողշողուն դերասանուհի էր։ Այդ անկասկած է, և ես չեմ կամենում նրանց հակադրել։ Ամեն մեկն իր տեղն ունի։ Բայց այսքանը կասեմ, մեր երկրի շատ թատրոններում եմ եղել՝ ռուսական, ուկրաինական, վրացական, ադրբեջանական, հրեական։ Արտասահմանում ես ներկայացումներ եմ տեսել՝ անգլիական, հունական, իտալական, ֆրանսիական, ռումինական։ Արուսի նման դերասանուհիների հանդիպել եմ։ Ոչ շատ, բայց հանդիպել եմ։ Հանդիպել եմ նրանից ավելի զորեղ անհատականություն ունեցողների էլ։ Իսկ Համմիկի նման արտիստուհու, ինչ թաքցնեմ, չեմ տեսել։ Ինձ համար Համմիկը եզակի էր, բոլոր համեմատություններից դուրս։ Եվ, այնուամենայնիվ, նրա շուրջը չկար պաշտամունք։

Ինչո՞վ և ինչպե՞ս բացատրել այդ։

Նրանո՞վ արդյոք, որ մեկը հերոսուհի էր, մյուսը՝ տարիքն

առած մայր։ Իհարկե, նաև այս։ Երիտասարդության սրտին, անշուշտ, ավելի մոտ էին Նորան ու Դեզդեմոնան, քան Վիտտորիենն ու Կնիրտտեն։ Երիտասարդությունը, մանավանդ աղջիկները, իրենց տեսնում ու գտնում էին, ինչ խոսք, Կատերինայի և ոչ թե Կաբանիխայի մեջ։ Ուստի և երիտասարդության վրա թողած անմիջական-հուզական տպավորությամբ գերազանց Կաբանիխան չի կարող մրցել լավ Կատերինայի հետ։ Իսկ թատերական պաշտամունքի հեղինակը երիտասարդությունն է։

Մտածել եմ և այն մասին, որ Համբիկը չէր շռայլվում Արուսի նման, չուներ նրա արտաքին փայլը, չուներ այն հրապույրը, որ ազդում է միանգամից, շլացնում ու տանում իր ետևից, ինչպես, սովորաբար, Արուսի դերակատարումները։

Ինձ միշտ էլ թվացել է, թե Համբիկի արվեստի պարզությունն ու խորությունը ճիշտ եմ զգացել։ Երբեք, սակայն, չեմ կարողացել միտքս արտահայտող մի սեղմ բանաձև գտնել։

Ինձ համար պարզ էր նրա խաղի բնականությունը։ Այնքա՜ն էր բնական, որ հաճախ, Համբիկի խաղը նայելիս, ինձ այնպես էր թվում, որ թատրոնում չեմ գտնվում, այլ ականատես մասնակից եմ մարդկային կյանքի մի սրտառուչ պատմության։ Թվում էր, փողոցով անցնելիս հետաքրքրությունը գամել է ինձ անծանոթ մարդու բաց լուսամուտի առջև, ու ես, հակառակ իմ կամքի, վկա եմ մայրական խորակսկիծ մի վշտի։

Այդ՝ բնականությունը։ Իսկ խորությո՞ւնը։

Մի ռուս դերասանուհու մասին, եթե չեմ սխալվում՝ Ելանովայի, ասվել է, թե նրա ստեղծագործական ուղին հիշեցնում է ռուսական գետերի խաղաղ ընթացքը, որի խորքում թաքնված է դրսից աննշմարելի մի լարված կյանք։ Մտածեցի, որ նույնն է նաև Համբիկի արվեստը։ Բայց, միաժամանակ, մտքովս անցավ, որ մեկի մասին ասվածն ընդհանուր առմամբ կարող է վերաբերել մի ուրիշին։ Սա՝ միայն ընդհանուր ձևով։ Եվ հետո, մտածում էի, որ վերոհիշյալ պատկերավոր համեմատությունը, որքան էլ դիպուկ, արտահայտում է Համբիկի արվեստի մի կողմը՝ խորությու-

նը։ Իսկ պարզությո՞ւնը։ Եվ ինչպես հաճախ է լինում՝ որոնողը գտնում է։ Այդպես էլ ես։ Մի օր, չեմ հիշում թե ինչ ներկայացում էր, Համիկի խաղի անմիջական տպավորությամբ մտածեցի, որ նրա բեմական արվեստն իր պարզությամբ ու խորությամբ հիշեցնում է մեր վճիտ գետերը, որոնց հատակի քարերը պարզ երևում են. երբ նայում ես՝ նրանք այնքան մոտ են երևում, որ թվում է, թե ձեռքով կարող ես հասնել, բայց երբ փորձում ես՝ այնքան են խորը, որ ձեռքդ չի հասնում նրանց։

Այդպես է դասական արվեստը։ Այդպիսին է, օրինակ, Հովհաննես Թումանյանի պոեզիան։ Այնքան պարզ է, որ թվում է, թե դու էլ կարող ես այդպես գրել։ Նույնը և Համիկի արվեստը։ Բայց իսկապես՝ դա արվեստի այն բարձունքն է, որ քչերին է բախտավորվում նվաճել։

Հաճախ է պատահում, որ երբ ստացածդ տպավորությունները դեռ չեն բյուրեղացել, չես կարողանում նրանց ընդհանրացած սահմանումը տալ, և հանկարծ այն, ինչին դու հետո պիտի գայիր, արտահայտում է մի ուրիշը։ Մի պահ զուցե տխրում ես, որ կանխվել ես, իսկ հետո ուրախանում ես, որ ուրիշն էլ է այդպես կարծում, հետևապես մտածում ես, որ տպավորությունդ առարկայական հիմք ունի։ Ուրեմն ճիշտ ես։ Այդպես եղավ և ինձ հետ։

Թոթովենցը Համիկի արվեստը բնորոշելիս գտավ մի համեմատություն, որ լավ է արտահայտում այն, ինչ մտածել ու զգացել եմ ես՝ ամեն անգամ Համիկին բեմի վրա տեսնելիս։

Ճիշտ է նկատված, որ Համիկը առաջին հայացքից չէր նշմարվում, նա հեզհեռև, համառ և լայն ստորինանկանությամբ էր համակում ու ենթարկում իր ազդեցությանը։ Այո՛, Համիկի արվեստն այնքան պարզ էր, որ առաջին հայացքից աննշմարելի էր, բայց և, միաժամանակ, այնքան խորն էր, որ նկատվելուց հետո երկար ժամանակ չէիր կարողանում ազատվել նրա ազդեցությունից։

Թոթովենցն իրավացի էր, երբ ասում էր, թե Համիկի արվեստը նման է բնության երևույթներին, ինչպես, օրինակ,

արեգակի ծագումը կամ մայրամուտը, ծաղկի բացվելը, դաշտի ծլարձակումը, մրգահասը...

Մեզանից ո՞վ չգիտե, թե որքան գեղեցիկ է արևածագը, բայց այդ ո՞վ է, որ ամեն առավոտ վեր է կենում բնության այդ հրաշալիքին ականատես լինելու։ Նույնը և մայրամուտը։ Տեղի է ունենում ամեն օր, կրկնվում յուրաքանչյուր երեկո, ուրեմն և որքան սքանչելի, նույնքան և (իհարկե՝ դժբախտաբար) սովորական։ Քի՞չ է պատահում, որ երկինքը շառագունած է լինում, ինչպես մի մեծ հրդեհ, բայց գնում ենք փողոցով, խոսք ու զրույցի բռնված ,մի թեթև հայացք ենք նետում, ի միջի այլոց բացականչում «ի՜նչ գեղեցիկ է» ու անցնում, երբեմն չենք էլ նկատում։

Այդպես է նաև Համիկի արվեստը։

* * *

Հիմա հաճախ է խոսվում դերասանական ժամանակակից ոճի մասին։ Այդ հասկացողությունը ճշտման կարիք ունի, բայց դա չէ հարցը, այլ այն, որ ինչ ըմբռնվում է դրա տակ՝ պարզություն, կյանքի հավաստիություն, հոգեբանական ստուգություն, զսպվածություն և խստություն-այս ամենը Համիկի մեջ կար։ Եվ շատ վաղուց։

Համիկը ժողովներում ելույթ ունենալու սովորություն չուներ։ Ոչ էլ սիրում էր հրապարակային հայտարարություններ անել։ Ասելիքը ասում էր բեմից։ Ասում էր գերազանց։ Գիտեր այդ թե ու՝ չեմ կարող ասել, ուներ ներքին համոզմունքներ, որոնցից շեղել նրան՝ հնարավոր չէր։

Մի օրինակ միայն։

Քսանական թվականների վերջերին Արմեն Գուլակյանը բեմադրում է «Պեպո»։ Երիտասարդ ռեժիսորը հափշտակված էր այն ժամանակվա մոլոր ուղղություններով։ Իսկ դա, ամենից առաջ, նշանակում էր անվստահություն դասական հեղինակի նկատմամբ։ Վերանայված էր տեքստը՝ կրճատումներ, հավելումներ, տեղաշարժեր։ Բովանդակալի լռությունը փոխարինված էր փայլփլուն հնարամտություններով։ Ոչ թե կերպարի հոգեբանական բացահայտում, այլ վերաբերմունք

դեպի նա։ Մեզմ ասած՝ շեղում ռեալիստական ավանդներից։ Եվ ո՞վ կարող էր ընդդիմանալ։ Ռեժիսորի «բռնակալական տիրապետության» տարիներ էին թատրոններում։ Անված է՝ ուրեմն վերջ։

Մի անգամ, շատ տարիներ հետո, խոսք բացվեց Հասմիկի մասին, Գուլակյանը, հիշելով «Պեպոյի» բեմադրության ժամանակները, պատմեց, թե ինչպես մի օր, ցերեկով, երբ փորձերն արդեն փոխադրված էին բեմ, դերասանուհուն գտնում է մի դեկորի ծայրին նստած, արցունքն աչքերին։ Հարցնում է, թե ինչ է պատահել։ Մի այնպիսի ձայնով, ասես հարցը հարազատի կյանքի փրկության է վերաբերում, Հասմիկն ասում է, թե ինքը չի կարող հնազանդվել բեմադրողի նոր մտահղացմանը և խնդրում է թույլ տալ իրեն՝ խաղալու այնպես, ինչպես միշտ խաղացել է։ Ռեժիսորն ասում է, որ թեև դա հակառակ է Սունդուկյանին վերանայելու իր, այսպես կոչված, «նորարարական» ծրագրերին, բայց ինքը այնքան էր սիրում նրան, որ չի կարող չզիջել, թեկուզ այն պատճառաբանությամբ, թե նահապետական Շուշանը «վերակառուցման» ենթակա չէ։ Իսկ ուրիշները՝ նույնքան փորձված՝ հնազանդվեցին և հաշտվեցին «վերախմբագրված» Սունդուկյանի հետ։ Ով տեսել է ներկայացումը, երևի հիշում է, որ Հասմիկի Շուշանը չէր մերվում բեմադրության ընդհանուր մթնոլորտին։ Նույնիսկ օտարոտի էր թվում։ Շատերն այդ դիտեցին իբրև անհարկի շեղում բեմադրության ոճից, տուրք պահպանողական ավանդներին։ Իսկ գալիք ժամանակները հաստատեցին դերասանուհու պատմական իրավացիությունը։

* * *

1952-ին բոլորեց Հասմիկի մահվան հինգերորդ տարեդարձը։ Այդ առթիվ թատերական ընկերությունը որոշեց երեկո կազմակերպել։ Զեկուցումը հանձնարարվեց ինձ։ Ես չբավականացա իմ տպավորություններով, ոչ էլ այն նյութերով, որ կարելի էր գտնել և գտա մեր մամուլի էջերում։ Հարց ու փորձ էի անում դերասանուհու արվեստակից ընկեր-

ներին, թե ինչ են հիշում կամ ընդհանրապես ինչ հետաքրքիր բան կարող են ասել իրենց խաղընկերուհու մասին, որին բոլորն էլ շատ էին սիրում։

Զրույց ունեցա նաև Գուլակյանի հետ։ Նա ի միջի այլոց ասաց.

— Համլիկը դերը կենդանի էր պատկերացնում և տեքստը սկզբում նրան խանգարում էր։

Ռեժիսորի ասածը ես գրանցեցի, բայց չանդրադարձա, իսկ հետո մի քանի օր անց, երբ աչքի էի անցկացնում իմ գրառումները, ուշադրությունս կենտրոնացավ այս վկայության վրա։ Գուլակյանի ասածը շատ հետաքրքիր թվաց։ Հիշեցի, որ նման մի դիտողության հանդիպել եմ այն սքանչելի հոդվածում, որ գրել է Լևոն Քալանթարը Համլիկի մասին։ Իսկապես, այդպե՛ս լավ դեռ ոչ ոք չի գրել Համլիկի մասին։

Ու միտքս հեռացավ Համլիկից։ Թող տարօրինակ չթվա՝ գնաց դեպի Ստանիսլավսկին։ Վերհիշեցի Գորչակովի գրքի այն էջերը, ուր պատմվում է, թե ինչպես «սեղանի շուրջ» փորձերից հրաժարված վարպետը, դերապատրաստման մի նոր առաջարկ է անում, խաղալ նույն հոգեվիճակը, սակայն ոչ թե դրամատուրգի, այլ սեփական, ինքնահնար խոսքով։ Ամրացնել հոգեկան զգացողությունը և հետո միայն անցնել հեղինակի տեքստին։

Ինչ որ կապ տեսա Ստանիսլավսկու մտահղացման նոր եղանակի և Համլիկի փորձելակերպի միջև։ Երբ այս մտորումների մասին ասացի Գուլակյանին, նա մի պահ զարմացած նայեց ինձ։

— Ես չէի մտածել այդ մասին։

Եվ ապա հաստատելով ենթադրածիս ճշտությունը, ավելացրեց.

— Ոչ ոք, կրկնում եմ, ո՛չ ոք չգիտեր, թե Համլիկը ինչ մեծ դերասանուհի էր։

Դերասանուհու մահվան օրից անցել էր հինգ տարի։ Վաղարշյանը, որ այն կարծիքի էր, թե Համլիկը իրոք լավ դերասանուհի է, բայց մենք չափազանցնում ենք նրա արժեքը, պատմեց հետևյալ դեպքը.

— 1933 թվականին էր։ Զախավան մեր թատրոնում բեմադրում էր «Եգոր Բուլըչովը»։ Թե ինչպիսի ճշգրիտ դերաբաշխում էր կատարել՝ հայտնի է։ Մելանիայի դերը հանձնված էր Համմիկին։ Փորձերին Համմիկը ոչ մի տպավորություն չէր թողնում։ Զախավան հուսահատվեց։ Չգիտեր ինչ անել։ Մտածում էր մի ուրիշով փոխարինելու մասին։ Բոլորս, որ շատ լավ գիտեինք Համմիկին, խորհուրդ էինք տալիս ռեժիսորին համբերել։ Երբ վերջին փորձը եղավ՝ գրիմով ու զգեստներով, Համմիկը իր տարերքի մեջ էր։ Իսկ Զախավան անընդհատ կրկնում էր.
—Замечательно! Это на грани гениальности.

* * *

Խոսում էինք չափի զգացման մասին։ Բորբոքվել էր վեճը այն հարցի շուրջը՝ բնածի՞ն հատկություն է դա, թե ստացական։ Վիճողներից Արաքսմանյանը բերեց Համմիկի օրինակը։ Նա հիշեցրեց «Արշալույսին» ներկայացման այն տեսարանը, երբ Համմիկի Աննան իմանում է, որ Վահագնին սպանել են։ Ոչ մի հառաչանք։ Նստում էր խրճիթի կողքին ընկած գերանին։ Լուռ նստում էր ու քարանում։ Կամեցել են իմանալ, թե դերասանուհին հասկանալո՞վ է այդպես խաղում։

Համմիկը պատասխանել է.

— Մեռելատանը ո՞ր սգավորն է քեզ վրա խիստ ազդում. նա՞, որ գլուխը ծեծելով, ձայնն աշխարհ գցելով իր հպարտ գովքն է անում, թե՞ նա, որ քարացած նստած է դագաղի մոտ և արցունքները հազիվ են երևում աչքերում։

* *

Ո՛չ հաջողությունը, ո՛չ էլ փառքը բարձրամտություն չառաջացրին Համմիկի մեջ։ Սունդուկյանի անվան թատրոնում, ուր նա քառորդ դարից ավելի գործեց, ոչ ոք չէր մտաբերում գեթ մի դեպք, որ նա խուսափեր խաղալուց, ձգտեր քիչ հանդես գալ։

Երբեք ուշացած չէր գա ներկայացման։ Տասպողականու-

թյուն չկար նրա մեջ, թեև միշտ անհանգիստ էր լինում ներկայացումից առաջ, նույնիսկ հուզված, առանձնապես նոր բեմադրության առաջին օրը։ Գալիս էր բավական վաղ։ Հանգիստ հանում էր վերարկուն, կարգավորում զարդասենյակը, ապա նոր միայն սկսում գրիմը։ Շատ հանգիստ, խաղաղ, կարծես դա մի մեծ և հանդիսավոր արարողություն էր։ Գրիմ անելիս ոչ ոքի հետ չէր սիրում խոսել, չէր սիրում, երբ իրեն որևէ բան էին ասում կամ հարց տալիս։ Այդպիսով, նա, կարծես, կամաց-կամաց դուրս էր գալիս իր առօրյա մթնոլորտից և մտնում կերպարի մեջ։ Նույնը և ներկայացումը վերջանալուց հետո, գրիմը հանելու ժամանակ։ Չէր շտապում։ Դարձյալ հանգիստ էր։ Տպավորությունն այնպես էր, որ չի ուզում կամ չի կարողանում հեշտությամբ հրաժարվել իր ստեղծած կերպարից, դուրս գալ այն մթնոլորտից, որի մեջ էր քիչ առաջ։ Տպավորությունն այնպես էր, որ մի առանձին գորովանքով է վերաբերվում դեպի կերպարը, և որից ոչ թե հրաժարվում է, այլ ժամանակավորապես բաժանվում, մի տեսակ պահում նրան, որ հետո մի օր, նորից վերադառնա, կյանք տա նրան։

* * *

Համմիկի համեստությունը բոլորին լավ հայտնի էր, բայց նա չէր քաշվում հետաքրքրվել, թե ի՞նչ տպավորություն է թողնում իր խաղը։ Դա դերասանուհու սովորական փառասիրություն չէր, այլ իր արած գործի կարևորությունը։ Նա հասկանում էր, թե ինչ է թատրոնը ժողովրդի կյանքում և իր հաջողությունները գնահատում էր հենց այդ իմաստով։ Ես չեմ հիշում նրա որևէ անհաջողությունը։ Բայց ճիշտ չի լինի մտածել, որ նա ընդհանրապես անհաջողություններ չի ունեցել։ Ունեցել է, ինչպես բոլոր դերասանները։ Եվ այդ անհաջողությունները շատ ծանր է ապրել։ Ասում են, որ Օզոլի դերում («Դատավճիռ») առանձնապես հաջողակ չի եղել։ Դերասանները պատմում են, թե ինչպես, ներկայացումից հետո, երբ բոլորը գնացել են, նա երկար մնացել է բեմում նստած, գլուխը ձեռքերի մեջ առած, շատ երկար ու դառն լաց է եղել։

* * *

Թատրոնում «Խաթաբալայի» նոր բեմադրության պատրաստման վերջին օրերն էին: Դա 1944-ին էր: Համբիկը Խամփերու առաջին դերակատարն էր: Բայց նա հիվանդանոցումն էր և դրությունը բավական ծանր: Որոշված էր, որ Աննիկ Մկրտումյանը կփոխարինի, իսկ Համբիկի լավանալուց հետո կխաղան փոխնիփոխ: Թատրոնի ղեկավարությունը Համբիկից գաղտնի էր պահում առաջին ներկայացման օրը: Անկարելի չէր, որ հիվանդ վիճակում էլ գար խաղալու, իսկ Խամփերու կատարումը պահանջում էր, բացի երիտասարդական ավյունից, նաև աշխույժ պար: Դա կարող էր կյանքին վտանգ սպառնալ: Այդ պատճառով բոլորը՝ և՛ դերասանները, և՛ բժիշկները զգուշացված էին, ամեն միջոց ձեռք էր առնված, որ հիվանդ դերասանուհին ոչինչ չիմանա: Բայց, ինչպես սովորաբար լինում է այդպիսի դեպքերում, պատահմամբ նրան հայտնի է դառնում «Խաթաբալայի» անդրանիկ ներկայացման օրը:

Համբիկը երեկոյան արդեն թատրոնումն էր, իր զարդասենյակում: Բոլորն իրար են անցնում: Գուլակյանը, որ այն ժամանակ թատրոնի գեղարվեստական ղեկավարն էր և «Խաթաբալայի» բեմադրող ռեժիսորը, զանգ է տալիս հիվանդանոց՝ գլխավոր բժշկին՝ պրոֆ. Մելիք Ադամյանին.

— Ինչո՞ւ եք թույլ տվել Համբիկին թատրոն գալ:

Պրոֆեսորն ասում է.

— Համբիկի համար խաղալը վտանգավոր է, շա՜տ վտանգավոր, բայց հիվանդի հետ զրուցելիս համոզվեցի, որ եթե թույլ չտամ՝ հետևանքը թերևս ավելի ծանր լինի: Գույժ և ճակատագրական:

Թատրոնում բոլորը տարակուսանքի մեջ էին, թե ինչպես պետք է խաղա, երբ հազիվ է ոտքի վրա մնում: Երբ Խամփերու մուտքը մոտենում է, խնդրում է օգնել իրեն՝ հասնելու մինչև բեմի մուտքը: Թե բեմը Համբիկի համար ինչ կախարդական ուժ ուներ, որ հիվանդ, ուրիշների օգնությամբ հազիվ տեղ հասնելով՝ նա կրկնապատկված է զգացել իր եռանդը բեմում՝ անհասկանալի է: Թատերասրահում եղած-

ներից ոչ ոքի մտքով չանցավ, թե իր մուտքով այդքան կյանք, այդքան աշխուժություն բեմ բերած դերասանուհին հիվանդանոցից է եկել։

Թատրոնում եղածներից ո՞վ չի հաստատի, որ Համմիկն այդ գիշեր իր խաղընկերներից ոչ ոքի չզիջեց, և ոչ նույնիսկ իրեն։ Նրա զվարթ, սրտագին ծիծաղը, կարկաչուն խոսքը, նրա պարը, որ լի էր կոլորիտով ու նազանքով, հետաքրքիր և նուրբ անցումները Մարգրիտի վիճակի կապակցությամբ, շողոքորթ ջերմությունը, որով թաքցնում էր սեփական շահի ճարպիկ հետապնդումը,— այս ամենը, ինչպես միշտ, այնպես էլ այդ երեկո, կենդանացրին ներկայացումը, համ ու բույր հաղորդեցին նրան։

* * *

Համմիկը սիրված էր։ Բայց այդ սիրո մեջ կար ինչ որ մի տարբեր բան, որ չենք նկատել ուրիշ անգամներ. կար մի մտերմական զգացում, ինչ-որ յուրահատուկ ջերմություն, որ վերացնում էր դերասանուհու և ժողովրդի միջև եղած տարածությունը և նրանց մոտեցնում իրար։

Դա հաստատում է 1947-ի մայիսի 26-ի ներկայացումը։ Այդ օրը Թատրոնում Մելիք Քոչարյանի «Հարազատ մարդիկ» պիեսն էր ներկայացվում։ Համմիկը, ինչպես հայտնի է, մոր դերն էր կատարում։ Ներկայացումը նոր չէր։ Համմիկի խաղը տեսել էին շատերը և քննադատությունն էլ գնահատել էր բարձր։ Այդ գիշեր էլ նա բոլորին հիացնում էր իր նուրբ խաղով։

Համմիկի մուտքը հաճախ է ծափահարությամբ ընդունվել, ինչպես և նրա խաղը՝ ներկայացման վերջում։ Սակայն այն, ինչ կատարվեց այդ օրը, գրեթե չեմ հիշում նրա բեմական կյանքի թեկուզ և վերջին քսան տարում, երբ նա ստեղծել էր իր լավագույն դերերից շատերը։ Համմիկն այդ գիշեր հանգիստ չուներ։ Նրան ծափահարում էին անընդհատ, կանչում բեմ նորից ու նորից։ Ծաղիկներ էին թափվում բեմ։ Սեազգեստ Համմիկը, նույնիսկ փոքր-ինչ շփոթված այդ ընդունելությունից, բայց և շոյված,— այդ երևում էր նրա

խոնավացած աչքերից,— գլուխ էր տալիս։ Մի-փոքր դադարից հետո որոտընդոստ ծափերը կրկին թնդացնում էին դահլիճը, և նորից երևում էր Հասմիկը, մի ձեռքը սեղմած կրծքին, մյուս ձեռքին մեկն այն ճերմակ ծաղիկներից, որ սփռել էին սիրելի դերասանուհու ոտքերի տակ…

Այդ օրվա մեծարանքն ու խանդավառությունը միայն այդ ներկայացմանը չէին վերաբերում, այլ Հասմիկին, նրա ստեղծագործության ընդհանրապես։ Այդ օրվա հանդիսատեսները ժողովրդի երախտագիտությունն էին արտահայտում սիրելի և հարազատ դերասանուհուն, և թերևս հրաժեշտ էին տալիս՝ զգալով, որ դա Հասմիկի վերջին ներկայացումն է…

Այո, վերջին դերը վերջին անգամ։

## ՕԼԳԱ ԳՈՒԼԱԶՅԱՆ

— Երկու օր է, որ հաճախ եմ հիշում Օլգա Գուլազյանին։ Ավելի ճիշտ՝ միտքս նրա հետ է։ Ում մասին էլ, որ մտածում եմ՝ Գուլազյանը մտապատկերիցս դուրս է մղում նրան և ինքը զբաղեցնում տեղը։ Աչքիս առջև, միմյանց հաջորդելով, անցնում են նրա բեմական մարմնավորումները՝ Նատալիա և Սալոմե, նորից Սալոմե և էփեմիա, Օղուգալովա, Կուկուշկինա, Տատիկ։

Ու ես գրիչը ձեռս եմ առնում մտաբերելու մեր ծանոթության մանրամասնությունները։

Առաջին անգամ տեսել եմ Օլգա Գուլազյանին Դեզդեմոնայի դերում։ Չեմ կարող ասել, թե ինչպես էր, քանի որ Օթելլոյի դերակատարը՝ Աբելյանը այնպես էր կլանել ինձ, որ ես, բացի նրանից, ոչ ոքի չէի տեսնում։

Հետո տեսա նրան «Համր կին» ներկայացման մեջ ու այլևս չմոռացա։ Եվ ոչ թե մեկ, այլ հաճախ, պատահել է այնպես, որ թատրոն եմ գնացել միայն Գուլազյանին տեսնելու մղումով։ Եվ այն տեղը, որ իբրև արվեստագետ նա գրավեց իմ մեջ, միայն իրեն է պատկանում, և հետագայում ուրիշ դերասաններից ստացած իմ տպավորությունները՝ ուժեղ, անգամ ցնցող, անկարող եղան տեղաշարժելու կամ նույնիսկ մի հյուլե խլելու նրանից։

Ինձ համար նա ոսկերչուհի էր, ժանյակներ ասեղնագործող նուրբ արվեստագետ։ Նա թեև առանձնապես կրթություն չէր ստացել, բայց աշխարհ գալով՝ իր հետ բերել էր այն բոլորը, ինչ պետք էր մի իսկական և անկրկնելի արտիստուհու համար։ Եվ իր բախտից՝ բնածին մշակման էր ենթարկվել թատերական մի աշխարհում, որտեղ Սիրանույշն ու Աբելյանն էին ուսուցչապետեր։

Անձնական ծանոթությունս, որքան հիշում եմ, կապված

է նրա հուշերի գրքի տպագրության հետ։ Բարեկամական հարաբերություններ հաստատվեցին։ Ես հաճախ եմ նրա տանը եղել, մեկ-մեկ էլ ինքն է եկել, երբ, մանավանդ, հիվանդացել եմ ու անկողին ընկել։ Համարյա թե չկար նորտարի, որ չլիներ իր տանը։

* * *

1941-ին Թատրոնը պետք է մեկներ Մոսկվա։ Որոշված էր, թե ինչ բեմադրություններ են տարվելու։ Դրանց մեջ էր նաև «Խաթաբալան», որտեղ Նատալիայի դերը կատարում էր Գուլազյանը։ Թե ինչպես էր խաղում, հայտնի բան է ու երևի հարկ չկա մի անգամ էլ անդրադառնալու դրա գնահատությանը։

Մոսկվայից որպես խորհրդատու հրավիրված էր թատերագետ Իոհան Ալթմանը՝ «Տեատր» ամսագրի խմբագիրը։ Նա հերթով դիտում է ներկայացումները և ամեն մի ներկայացումից հետո հավաքում դերակատարներին, հայտնում իր տպավորությունները, դիտողություններ անում, խորհուրդներ տալիս։

Ամեն օր թատրոնում լինելով՝ նա բոլոր դերասաններին և դերասանուհիներին լավ ճանաչում էր։

«Խաթաբալա» ներկայացումից հետո ասում է, որ ինքը բոլոր դերակատարներին գիտե բացի Գուլազյանից, շատ է ուզում տեսնել, թե ով է և հետը ծանոթանալ։

Համարյա վաթսունին մոտեցող դերասանուհին, դժվարանալով է վեր կենում տեղից և ասում.

— Ես եմ։

Թատերագետը, որին բոլորս ճանաչում էինք իբրև կիրթ մարդու, այնքան շփոթվեց, որ չկարողացավ հիասթափությունը թաքցնել.

— Իսկ ես կարծում էի մի քսան, ամենաշատը՝ քսանհինգ տարեկան դերասանուհու կտեսնեմ։

Ալթմանը հետո ասում էր, թե ինքը շատ բան կտար, որ այդ խոսքերն ասած չլիներ։ Դերասանները հանգստացնում էին նրան, ասում, որ Օլգան չափազանց գոհ է՝ համարելով դա իր համար բարձր գնահատություն։

* * *

Պատերազմի ժամանակ էր։ Չեմ հիշում որ թվականը։ Կարծեմ 1943-ը։ Թատրոնում ներկայացվում էր «Էլի մեկ զոհը»։ Գուլազյանը Սալոմե էր խաղում։ Ավետ Ավետիսյանը՝ Սարգիս։

Դահլիճում, որ տեղավորում էր 700-ից ավելի մարդ, զբաղված էր ամենաշատը մի հիսուն աթոռ։

Դերասանները շտապում էին, շտապում էին բոլորը, նույնիսկ Ռուզան Վարդանյանը, որ հայտնի էր բարեխղճությամբ։ Խոսք էին կրճատում, նույնիսկ տեսարան և խաղում էին անտրամադիր, որպես ակամա պարտականություն։

Չէին շտապում միայն երկուսը՝ Օլգան և Ավետը։ Խաղում էին ինչպես պահանջվում է։ Նրանց համար նշանակություն չուներ ո՛չ ժամանակը, ո՛չ էլ, մանավանդ այն, որ դահլիճը սակավամարդ էր։ Նրանք խաղում էին այն ներշնչանքով, ինչպես եթե դահլիճը լեփ-լեցուն լիներ։

Սալոմեն և Սարգիսը մի տեսարան ունեն։ Թե ինչպես կատարեցին Օլգան և Ավետը այդ տեսարանը՝ երկու խոսքով ասելու չէ։ Դա փայլուն խաղ էր։ Դահլիճը ծափահարությամբ վարձահատույց եղավ իրեն պարգևած բարձրագույն հրճվանքի համար։ Բայց ոչ միայն դրա համար։ Հանդիսատեսն ընդգծում էր նաև իր հիացումը Գուլազյանով և Ավետիսյանով՝ ի հեճուկս տուն շտապող դերասանների։

Մի-երկու օր հետո հանդիպեցի դերասանուհուն և հաղորդեցի իմ տպավորությունը։

— Շուտ վերջացնենք, շուտ վերջացնենք, սա էր բոլորի բերանին։ Չեմ հասկանում, մի՞թե եկածները մեղավոր էին և պիտի պատասխան տային չեկածների համար։

Հետո ավելացրեց.

— Չեմ հիշում մի դեպք, որ Աբելյանը ի միջի այլոց խաղար։ Գնում էինք գյուղերը, որտեղ բեմ էլ չկար, թախտերն իրար կողքի դնելով բեմ էին սարքում, երկու սավանից վարագույր ստեղծում և էլի նա խաղում էր այն լրջությամբ, ինչպես Թիֆլիսի Արտիստական թատրոնում։

* * *

Բեմադրվեց «Անօժիտը»։ Գուլազյանը փայլեց։ Խաղում էր Օգուդալովա։ Կուկուշկինայից հետո Օստրովսկու կերպարներից երկրորդ գլուխգործոցն էր ստեղծել դերասանուհին։

Մոսկվայից թատերագետներ եկան և հիացան Գուլազյանի խաղով։ Բոլորն էլ այն միտքն էին հայտնում, թե Օլգա Նիկոլաևնան բացառիկ հաջողություն է հասել, և նրա խաղը նայելիս մարդու ձեռքերը քոր են գալիս, պահանջ ես զգում գրիչ առնելու և գրելու։

Գուլազյանը երեխայի նման ուրախացել էր ու չէր էլ փորձում թաքցնել։

* * *

Մի օր հարցրի Սաթենիկ Ադամյանի մասին։ Հիացմունքով խոսեց՝ մարգարիտ էր, մարգարիտ։ Նման չէր ոչ մեկին։ Գնահատվեց, բայց հասկացող քիչ ունեցավ։ Մեկը Օվի Սևումյանն էր։ Ափսոս, շա՜տ ափսոս, որ քիչ ապրեց։

* * *

Օլգայի հուշերի գիրքը հաջողություն բերեց հեղինակին։ Եվ նա գոհ էր բնականաբար։

Մի օր նրան հայտնեցի, թե իր գրքին բարձր գնահատական տվեց Ստեփան Զորյանը։ Խիստ հաճելի էր լսել անվանի գրողի կարծիքը, մանավանդ որ նախապես ասել էի, թե Զորյանը դժվարահաճ է, հաճախ բոլորից ընդունված հեղինակություններին անգամ չի հավանում։

Թեև Զորյանը հայտնել էր ինձ, որ ինքը մտադիր է գրելու այդ գրքի մասին, բայց իրեն ոչինչ չասացի, մտածելով՝ իսկ եթե հանկարծ չգրի՞։

Անցավ մի երեք ամիս, Զորյանի գրախոսականը լույս

տեսավ։ Անմիջապես տարա իրեն, համոզված չլինելով, թե նա հետևում է մեր պարբերական մամուլին։ Երկու անգամ կարդաց և ասաց, որ իրեն ավելի լավ նվեր չէր կարելի անել։

* * *

1948-ին «Պեպոն» նորից բեմադրվեց։ Գուլազյանը, ինչպես միշտ, փայլեց Եփիմիայի դերում։ Սակայն մի բան կար, որի հետ շատ հանդիսականներ չէին հաշտվում. այս բեմադրության մեջ ավելի, քան նախորդ, գռեհկացված էին տանտիրուհու հարաբերությունները իր սպասավորի հետ։ Հիմա չեմ հիշում, թե որերորդ ներկայացումն էր, նորից նա-յում էի և այդ օրը Օլգա Նիկոլաևնային տուն ուղեկցեցի։ Ճանապարհին իմ զարմանքը հայտնեցի, որ համաձայնել էր այդպիսի մեկնաբանությամբ բեմ բարձրանալ։

— Ճիշտ է, շատ ճիշտ, սկզբից էլ սրտովս չէր, բայց ինչ արած, ենթարկվեցի Գուլակյանի պահանջին։ Մի-երկուսն էլ են ինձ նույնն ասել։ Ես էլ եմ մտածել այդ մասին, բայց ընդդիմանալու ուժ չգտա մեջս։ Վաղը գնալու եմ և խնդրելու Արմենին, որ փոխի։

Մի շաբաթ հետո նշանակված էր դարձյալ «Պեպո»։ Գնացի նայելու երկրորդ արարվածը միայն։ Եվ շատ ուրա-խացա, որ գռեհիկ մի մանրամասնություն հանված էր։

* * *

Չեմ հիշում, թե ինչ երեկո էր Արվեստի աշխատողների տանը, Օլգա Գուլազյանին խնդրեցին մասնակցել։

— Եթե խոսք պետք է՝ սիրով կասեմ, բայց դերից հատ-ված կատարել չեմ կարող։

Մի պահ հետո.

— Չեմ արել ու չեմ անի։

Եվ նա այդպես էլ չմասնակցեց երեկոյին։ Մի տարի հետո, նույն տեղում կազմակերպվեց իրեն նվիրված երեկո։ Խնդրեցին հանդիսավոր մասից հետո մի-երկու հատված

իր ընտրությամբ կատարել՝ որ ներկայացումից կկամենա։ Հրաժարվեց։ Հետաքրքրվեցի, թե ինչն է հրաժարվելու պատճառը։

— Իմ հաջողության գաղտնիքը բեմը դահլիճից բաժանող տարածության մեջ է։ Այստեղ բեմն ու դահլիճը իրար քիպ կպած են։ Որքան էլ ձայնս զնգուն լինի, ծիծաղս էլ նույնը, հանդիսատեսից չեմ կարողանա թաքցնել թոշնած դեմքս, և չի ստացվելու բեմական այն իլյուզիան, որ առաջանում է ներկայացման ժամանակ։ Էլ ինչ Նատալիա՝ իր նազ ու տուզով։

* * *

Մի շրջան եկավ, որ մեր թատրոնները նյութական ծանր դրության մեջ ընկան։ Պետությունից օժանդակություն չէին ստանում, իրենք իրենց էլ պահել չկարողացան։ Սունդուկյանի թատրոնն էլ մյուսների նման պարտքերի մեջ ընկավ։ Այդ վիճակից թատրոնը հանելու համար սունդուկյանցիները հրավիրեցին Փափազյանին։ Մի ամսվա խաղացանկ վերցրեց իր վրա, թատրոնը պարտքից դուրս բերեց, մի որոշ գումարով ապահովեց առաջիկա երկու թե երեք ամիսն ու մեկնեց։

Մի քանի օր էլ չկար, որ Փափազյանը մեկնել էր։

Թատրոնից մեքենայով տուն են վերադառնում մեր բեմի վարպետներից երեքը և սրանց հետ միասին՝ Օլգա Գուլազյանը։ Դրա հաջորդ օրը վարորդն անզգուշություն է ունենում մի դերասանի պատմել մեքենայում տեղի ունեցած միջադեպը, որն անմիջապես տարածվում է թատրոնում։

Մեքենայում սկիզբ է առնում մի խոսակցություն, որի ժամանակ Փափազյանը մի լավ «մշակվում է»։ Օլգա Նիկոլաևնան, որ նստած է լինում վարորդի կողքին, սկզբում լուռ լսում է, հետո տեսնելով, որ իրենց օգնության հասած Փափազյանի շուրջ սկսված անախորժ զրույցը վիրավորական բնույթ է ստանում, դիմում է մեքենավարին և խնդրում կանգնեցնել մեքենան։

— Չեք ամաչո՞ւմ,— դառնում է հետևի նստարանին

նստած դերասաններին,— ինչեր եք ասում մի մարդու մասին, որ եկավ ու փրկեց բոլորիս. թե տղամարդ էիք՝ չթողնեիք, որ Թատրոնն այս վիճակին հասներ։ Ձեզ նման անաղուհաց մարդկանց հետ չեմ ուզում մի մեքենայով ճանապարհ գնալ։

Իջնում է մեքենայից ու մնացած ճանապարհը շարունակում ոտքով։

* * *

Մի օր ասաց.

— Հիմիկվա դերասանուհիները փորձերին հաճախում են անկանոն, ներկայացմանն ուշ են գալիս, վերջում էլ շտապում են...

Պատմեց, թե ինչպես մի օր ինքն ու Ռուզան Վարդանյանը, որին, ի դեպ, շատ սիրում էր ու գնահատում, գնացել են Թատրոն փորձի։

— Գիշերն անձրև էր եկել, ամբողջ գիշերը։ Ես ու Ռուզանը ճանապարհ ընկանք և ի՜նչ տեսնենք՝ անձրևաջուրը փողոցները գետի նման բռնել է ։Հասանք այգի և մնացինք շվարած, թե ինչպես պիտի հասնենք Թատրոն։ Մտքներովս չանցավ, թե կարող է հենց այդ պատճառով մարդ եկած չլինի։ Իրար նայեցինք, բոպիկացանք և այգուղու եզրերին դրված նստարաններին մեկ ելնելով, մեկ իջնելով, հասանք տեղ ու պարզվեց, որ ոչ ոք չի եկել։ Բայց տեղ հասանք։ Գալն ավելի հեշտ էր, քան ետ գնալը։ Բայց ինչ արած, քոփշման, նույն ձևով, նստարանների վրա բարձրանալով և իջնելով՝ հասանք փողոց, հետո էլ՝ տուն։

* * *

Մի օր խոսեց երկու դերասանի մասին։

Հովհաննես Աբելյանը, Օլգա Նիկոլաևնայի ասելով, մի հաստաբուն կաղնի էր, որի հովանու տակ ապրում էին մյուս դերասանները։ Մեծ արվեստագետ էր և լավ էլ մարդ, աղա մարդ։

Ասաց, որ իր վրա անջնջելի տպավորություն է գործել Հովհաննես Զարիֆյանը։ Մինչև դերասան դառնալը կոշկակար է եղել, պետք էր տեսնել, թե ինչպիսի արքայազն էր «Համլետում»։ Ոչ մի դերասանի չի հաջողվել դերից-դեր այդպես փոխվել, ինչպես Զարիֆյանին։ Ո՞վ կմոռանա նրա Տոկերամին։ Իսկ որպես մարդ ոչ ոք չէր հասնի, ոսկի հոգի ուներ։

Հարցրի Փափազյանի մասին։

— Փափազյանը հրաշք է, ինչպես հրաշք էր Սիրանույշը։ Չեմ հավատում, որ մեկ էլ Սիրանույշ կամ Փափազյան աշխարհ գան, բայց ով իմանա, մեկ էլ տեսար... ո՞վ կսպասեր, որ Ադամյանից հետո Փափազյան կգա։

* * *

Լույս էին տեսել «Թատերական դիմանկարները»։ Երեք դիմանկարներից մեկը նվիրված էր Օլգա Գուլազյանին։ Իհարկե, մի օրինակ տարա իրեն։ Հաջորդ օրը զանգահարեց։

— Ճիշտ ես վարվել, որ մի-երկու տեղ էլ քննադատել ես։

Զարմացա, չէի սպասում, որ դերասանն այդպիսի խոսք կասի։

Բացատրեց։

— Երբ քննադատություն կա, ընթերցողն ավելի է հավատում գովեստին։

* * *

Մի օր էլ զանգահարեց «Սիրանույշի» առիթով և ասաց, թե ինքը շնորհակալություն է հայտնում մեծ արտիստուհու բոլոր խաղընկեր դերասանների անունից։

Գովեստի մի-երկու խոսք ասաց, ինչ որ ընդունված է նման դեպքում ասել։ Հետո ափսոսանք հայտնեց, որ չեմ տեսել Սիրանույշի խաղը։

— Սիրանույշը մի ամբողջ դպրոց էր իր ժամանակվա դերասանների համար։ Նայիր և սովորիր։ Խաղալ այնպես, ինչպես նա էր խաղում, հնարավոր բան չէր։ Եվ ոչ ոք չէր

համարձակվում, բոլորն էլ հասկանում էին, որ դրա համար պետք է Սիրանույշ լինել։ Բայց շատ բան կարելի էր սովորել։ Ու սովորում էին, ով ինչքան կարող էր։

* * *

1956-ին թատրոնը պետք է մեկներ Մոսկվա՝ մասնակցելու հայ գրականության և արվեստի տասնօրյակին։ Հայտնի էր, որ տասնօրյակից հետո մասնակիցներին տիտղոսներ են տրվելու և շքանշաններ։ Օլգա Գուլազյանը համոզված էր, որ ինքը կստանա Սովետական Միության ժողովրդական արտիստուհու կոչում։ Ուրիշներն էլ էին սպասում։ Բայց չստացավ։ Չստացավ նաև հետո, ու ամեն անգամ, երբ մեր թատրոնից մեկն ու մեկն արժանանում էր այդ բարձրագույն տիտղոսին, նրան թվում էր, թե իրեն հասնող փառքին մի ուրիշն է տիրացել։

Ես, և ոչ միայն ես, չէինք հասկանում, թե ինչու է դերասանուհին զրկվում մի պատվից, որին արժանի էր վաղուց և առաջիններից։ Նպատակ ունենալով մեղմել արտիստուհու հոգում կուտակվող դառնությունը և ընդհանրապես կամենալով հանգստացնել, ասում էի, թե ինքը մեծ վաստակ ունի, արդեն համարվում է կլասիկ, որին հետևում են, որից ազդվում և սովորում են երիտասարդ դերասանուհիները, հետևապես ունի այդ կոչումը թե ոչ՝ նշանակություն չունի։

Վրդովմունքն այնքան մեծ էր, վիրավորանքն այնքան խոր, որ չէր հասկանում իմ ասածը, բարկանում էր, նույնիսկ կարծում, թե ես կասկածի եմ ենթարկում այդ կոչմանն իր արժանի լինելը։ Նա գտնում էր, որ այդ հարցի շուրջ իր հետ զրուցելիս ես պետք է ոչ թե հանգստացնեմ իրեն, այլ միանամ իր դժգոհությանը, իր բողոքին և, որ գլխավորն է, հաստատեմ, որ եթե այսինչ կամ այնինչ խանգարողները չլինեին, անպայման կստանար։

Մինչև իր կյանքի վերջն էլ հույս ուներ, թե ուր որ է՝ ստանալու է։ Մաշող մի վիշտ էր դա, որ հյուծեց նրան, անկողին գցեց։ Ու նա, որ հեռու էր հավակնոտ լինելուց, համեստ էր շատ ավելի, քան իմ ճանաչած դերասաններից

որևէ մեկը, նա, որ քչով բավարարվող էր, մի սրտագին խոսքից ուրախացող և խանդավառվող, այս մի դեպքում չխաղաղվեց և մնաց դժգոհ ու բողոքող։ Ավելին. նա մեղավոր համարեց բոլորին՝ և՛ հեռու մարդկանց, և՛ իր մտերիմներին, համոզված, որ չարվեց անհրաժեշտը՝ արդարությունը վերականգնելու համար։

* * *

«Ծառերը կանգնած են մահանում» բեմադրությունը, որտեղ նա Տատիկի դերն էր կատարում, Գուլազյանին բերեց մեծ հաջողություն։

Ոչ միայն դահլիճի բուռն ծափահարություն։ Ոչ միայն հիացմունքի խոսքեր մամուլում։ Այս բոլորի հետ միասին՝ նաև հեռախոսային զանգեր, շնորհավորանքներ։ Շատ ուրախ էր ու մանրամասն հաղորդում էր, թե ով ինչ ասաց։

Ես հասկանում էի, որ այս ուրախության մեջ մի ինչ-որ տարբեր կողմ կար Օդուղալովայի ժամանակվա ուրախությունից։ Ինձ թվում էր, որ այդ ուրախության մեջ կար ընդդիմացում առաջացող տարիներին։ Նա համոզված էր, որ ինքը կարողանում է ստեղծագործել՝ նշանակում է դեռ չի պառավել։ Ոչ թե ընդհանրապես։ Դա նրան չէր հետաքրքրում։ Այլ բեմի համար, թատրոնի համար։

* * *

Տատիկի դերը կատարելու հրավիրվեց Վերիկո Անջափարիձեն։ Ինքը վրացերեն, մյուսները՝ հայերեն։

Առաջին արարվածից հետո բեմ եկան շատ դերասաններ և Օլգա Նիկոլաևնան ողջունեց վրաց արտիստուհուն։

— Հիմա հանգիստ կնայեմ խաղը,— ասաց ու գնաց օթյակ։

Ներկայացումը վերջացավ։ Օլգա Գուլազյանը շտապեց կուլիսները, խնդրելով իրեն մենակ չթողնել։ Վերիկոյով հիացած երկրպագուները, որ շրջապատել էին նրան, տեսնելով զարդասենյակ մտնող Օլգա Գուլազյանին, անմիջապես մի կողմ քաշվեցին։

Օլգա Նիկոլաևնան մի-երկու խոսքով իր հիացմունքը հայտնեց և համբուրեց արվեստակից ընկերուհու ճակատը։

Վերիկոն բռնեց Օլգայի ձեռքը և ասաց.

— Եթե ձեզ տեսնելուց հետո ինձ հավանում են, ես ինձ հպարտ եմ զգում. իմ հայ բարեկամներն ասել են, թե դուք ի՜նչ հաջողություն եք հասել այս դերում։

Եվ ծունկի գալով՝ համբուրեց Օլգա Գուլազյանի ձեռքը։

— Ապրես, որդի, թող ավելի բարձրից փայլի աստղդ։

Ասաց վրացերեն ու դուրս եկավ։

* * *

Հիվանդ էր։ Գնացել էի տեսության։ Հարցրի, բժիշկ կանչե՞լ են, թե չէ, ի՞նչ է հիվանդությունը։

— Ինձ ոչ մի բժիշկ չի օգնի։ Հավատա, եթե բեմ բարձրանամ՝ կլավանամ։

Լռեց մի պահ և հետո ավելացրեց.

— Ասում են՝ «հիվանդ ես» ու չեն թողնում։ Էսպես էլ բան կլինի. ես փորձ ունեմ, բեմն ինձ օգնում է, ինչպես ոչ մի դեղ։ Ոտս դնում եմ բեմ՝ տաքությունս էլ է անցնում, ցավս էլ ու տուն եմ դառնում բոլորովին առողջացած։ Ասում եմ, ասում, չեն հավատում։ Տեսնում եմ, դու էլ չես հավատում։

* * *

«Բրուտի ամրոցի» Տատիկը Օլգա Գուլազյանի վերջին դերն էր։ Խոսքը քիչ էր, թեև բեմում բավական շատ էր լինում։ Բեմադրող ռեժիսորը, հասկանալով, թե դերասանուհին ինչ դժվար կացության առաջ է կանգնած, առաջարկեց նրան սեղանի մոտ նստած լինել, մեծ մասամբ մեջքով, ուտելիս հատկապես, մանավանդ, որ ըստ պիեսի տատիկը ուտելու չափազանցված հակում ուներ։ Սրա վրա էլ Օլգա Գուլազյանը կառուցեց դերի բնավորությունը՝ որկրամոլ։

Եվ զարմանալի, շատ զարմանալի տպավորություն. հանդիսատեսի ուշադրությունը կենտրոնացած էր Տատիկի վրա,

թեև դրամատիկական գործողությունն առաջ մղելու կողմից նրա դերը մեծ չէր։ Խոսքի պակասը հանդիսատեսը չէր զգում։ Դերասանուհու մեջքը այնպես էր արտահայտում Տատիկի բնավորությունը, որ խոսքի կարիք չկար։

Օլգա Գուլազյանի վերջին հաղթանակներից էր սա։ Դա մի ճակատամարտ էր, որ նա շահեց յոթանասունութ տարեկան հասակում։ Թե որքան էր աշխատել ու ինչպես, ինձ հայտնի չէ, փորձերին չեմ եղել, բեմադրող ռեժիսորին՝ Գրիգոր Մկրտչյանին, չեմ հարցրել, բայց ներկայացման ժամանակ նրա խաղն ուներ այն բնական թեթևությունը, որով նա միշտ է աչքի ընկել երիտասարդ տարիներին՝ ո՛չ մի ջանք, ո՛չ մի լարվածություն։

* * *

Թատրոնի նոր շենքի բացումն էր։

Դերասանական ամբողջ խումբը բեմի վրա էր։ Կենտրոնում Օլգա Գուլազյանն էր, նրա երկու կողքից՝ Վահրամ Փափազյանն ու Մարտիրոս Սարյանը։

Շատերը խոսեցին։ Խոսեցի նաև ես։ Ու իմ խոսքում ես տվի նախ Սարյանի և Փափազյանի անունները, որպես հայ արվեստի հսկաների, որոնց ներկայությունն իսկ արդեն զարդարում է բացումը։ Դահլիճում բուռն ծափահարություն բարձրացավ։ Ու հետո տվի Գուլազյանի անունը։ Նորից ծափահարություն։ Եվ այլևս ոչ մի անուն։

Հանդիսավոր նիստից հետո մոտեցավ Օլգա Գուլազյանն ու ասաց, որ իր կյանքի երջանիկ օրերից է սա, գուցե ամենաբախտավորը։

Ու հետո բացատրեց.

— Առաջին անգամն է, որ հայ թատրոնն իր համար կառուցված շենք ունեցավ։

Ու հիշեց, թե ինչպես Գևորգ Տեր-Դավթյանը իր հոբելյանին, երբ իրեն խոսք են տվել, ասել է թե մի երազ ունի, այնքան ապրի, մինչև հայ թատրոնն իր շենքն ունենա ու ինքն էլ խաղա նրա բեմում։

Պատմեց ու հետո ավելացրեց, թե ինքն իրեն շատ

հպարտ էր զգում, որ ամբողջ երեկոյի ընթացքում նստած էր Սարյանի ու Փափազյանի նման մեծությունների կողքին։ Երբեք չի մտածել ու հիմա էլ չի կարծում, թե ինքն արժանի էր դրան։

Եվ ավելացրեց.

— Այդտեղ պետք է Սիրանույշը նստած լիներ։

* * *

Թեև ուժսունն անց էր, բայց չէր պատկերացնում, որ այլևս բեմ չի բարձրանալու։ Թատրոնից դուրս կյանք չուներ։

Մի օր ասաց.

— Էլ ինչի՞ եմ ապրում...

* * *

Օլգայի տանն ապրում էր մի աղջիկ, որը տուն-տեղ չուներ, ուրիշ քաղաքից էր եկել և դերասանուհին նրան տեղ էր տվել իր տանը։

Աղջիկը թատրոնի հուշարարն էր, ուրեմն՝ լավ տեղյակ թատրոնի անցուդարձին։ Գուլազյանը չէր քնում և սպասում էր նրա գալուն՝ գիշերվա ինչ ժամ էլ լիներ։ Եվ չէր թողնի քնել, մինչև չպատմեր, թե ինչ կա-չկա թատրոնում։

Ասում էր, թե ընդօրինակելու ընդունակություն ունի այդ աղջիկը, մեկ-մեկ օրվա ներկայացումից տեսարաններ է խաղում՝ դրամատիկ, կոմիկական, բավական հաջող վերարտադրումով ու ինքը տանում է թատրոնի կարոտը։

Հետո այդ աղջիկը քուն է մտնում, իսկ իր աչքերին քուն չի գալիս։ Ինքը փակում է աչքերը և մտքով տեղափոխվում թատրոն և իր հայացքի առաջ գալիս անցնում են անցածգնացած ժամանակները։

— Ինչ չէի տա, միայն թե հին օրերը վերադառնային՝ փառք, լավագույն դերակատարումներ, ամեն ինչ, ամեն ինչ կտայի, միայն թե նորից սկսվեր, միայն թե մի անգամ էլ ապրեի նույն կյանքը։

* * *

*Ես ժամանակին գրառումներ չեմ արել և այժմ, ուշ գիշերին թղթին հանձնեցի այն, ինչ միտս եկավ։*

*Գրում եմ ու հիշում, որ վերջին տարին, քիչ էի լինում իր մոտ։ Եվ նա գանգատվում էր։*

*— Մոռացել ես ինձ, ուրիշներն էլ են մոռացել, պառավիս մենակ եք թողել իր ցավերի հետ։*

*Այդ ուրիշներից մեկը Սարգիս Բայանդուրն էր, մյուսը Միքայել Ալեքսանդրյանը։ Ուրիշ ուրիշներ էլ կան, անշուշտ, բայց ես հիշում եմ այս երկուսին, որովհետև մի քանի անգամ նա մեզ միասին է հավաքել իր մոտ և կենցաղային, համարյա անլուծելի, խնդիրներ դրել մեր առջև։ Ու նա զարմանում էր, որ մենք իրեն օգնելու համար գործնական քայլերի չենք դիմում։*

*Երևի խուսափելու մի պատճառն էլ դա էր։ Ուրիշ պատճառներ էլ կային։ Մարդ չուզենա, թե չէ միշտ էլ իրեն արդարացնող պատճառներ կգտնի։ Իհարկե՝ անուշադիր գտնվեցի։ Գտնվեցինք։ Ու բոլորիս հոգու վրա մի մեղք կա ծանրացած։ Ու ես չգիտեմ, խոստովանությունն այս բերո՞ւմ է մեղքի քավում, արդյոք։ Բայց գիտեմ և համոզված եմ, որ նրա մասին գրվող այս էջերը թերևս հիմք տան «մեղմացուցիչ դեպք համցանացի»...*

*Մեղքը մնում է մեղք...*

* * *

*Մահը դժբախտություն լինելով, բերում է իր հետ կորցրած արժեքի գիտակցություն։ Եվ դա էլ հենց մեծագույն սփոփանք է։*

*Ինձ հաճախ է զբաղեցրել մի միտք, ինչպես պատահեց, որ մի կիսագրագետ կին, ծխական դպրոցի երկու թե երեք դասարանի կրթություն հազիվ ստացած արվեստի բարձրերը հասավ։ Ինչ խոսք՝ բնածին տաղանդի շնորհիվ։ Բայց ոչ միայն. և անդադրում աշխատասիրության, իհարկե։ Երևի այդքանը բավական չէր լինի, եթե օժտված չլիներ մի եզակի*

ընդունակությամբ ևս, որը ես անվանում եմ ուզենալ։ Ոչ թե կրավորական ցանկության մասին է խոսքը, այլ գործուն։ Ուզենալու կամք։ Դա այն ընդունակությունն է, որ շատ քչերին է վիճակվում։ Այդ ընդունակության տերը միշտ մի բանի հասնում է։ Իսկ եթե ուզենալու ընդունակությանը միանում է նաև բնությունից տրված ձիրքը, մարդը հասնում է այնպիսի բարձրության, որի մասին երազել իսկ չէր կարող։

Այդպիսի արվեստագիտուհի էր Օլգա Գուլազյանը։

## ՀՐԱՉՅԱ ՆԵՐՍԻՍՅԱՆ

Շատերը գիտեին նրան։ Ավելի ճիշտ ո՞վ չգիտեր։ Բայց եթե չիմանային էլ, ու նա անցներ փողոցով՝ անմիջապես ուշադրություն կդարձնեին։ Մեծություններ կան, որոնց հանդիպելիս, եթե չիմանաս ով է՝ չես նկատի։ Բայց երբ ասում են ով է՝ սկսում ես մեծությունը հաստատող նշաններ գտնել նրա մեջ։ Նախապաշարման ուժն է դա։ Եվ թվում է ինձ, թե դրա մեջ տարօրինակ բան չկա։ Հրաչյա Ներսիսյանը, սակայն, այնպիսի արտաքին ուներ, որ եթե մարդ չիմանար էլ նրան, միևնույն է, անպայման ուշադրություն կդարձներ։ Նա անմիջապես ջոկվում և տարբերվում էր շրջապատից։ Նրա արտաքին ընդհանուր պատկերի և ամեն մի շարժման մեջ նշանակալիություն կար։

Հիմա էլ իմ աչքի առջևն է նա։

Քայլում է փողոցով՝ ձեռքերը մեջքին դարսած, գլուխը վեր, քայլը՝ հանգիստ։ Հանգիստ ու հանդիսավոր։ Եվ անկախ նրանից՝ Աբովյանով իջնում էր դեպի Թատրոն, թե հակառակը՝ բռնում Նորքի ճանապարհը, նա բարձրանում էր։ Նա քայլում էր շրջապատից կտրված, վերացած։ Ո՞ւր էր գնում, գուցե ինքն էլ չգիտեր, բայց բարձրանում էր, գնում էր դեպի վեր։ Շուրջը երևանյան աշուն, վերը՝ անամպ կապտություն, իսկ ոտքերի տակ ծառից նոր ընկած, դեղնած, խշխշան տերևներ...

Միշտ այն տպավորության եմ եղել, թե նրա մեջ ապրում է միայնության մի թաքնված սեր։ Եվ մեն-մենակ քայլելը կարծես իր կյանքի սիրելի պահերից էր։ Մարդիկ ասես զգում էին այդ, և չնայած արտիստի պարզ ու հասարակ բնավորությանը, հաճախ մնում էին տարածության վրա, ասես չկամենալով խանգարել, ընդհատել սկիզբ առած մի կյանք, որտեղ նա ամեն ինչ էր՝ մերթ իսկապես արքա, որին թվում

է, թե ամեն ինչ ենթակա է իրեն, մերթ իրեն չվստահող մի հուսահատ անձ, որը տանջվում է այն բանից, որ ոչ ոք չգիտե, թե ինչեր են անցնում իր մտքով։ Ու այդ պահերին է, որ նա, այդ մեծ արտիստը, բացի իրենից ներում էր բոլորին՝ հանդիսատեսին, որ, սիրելով իրեն, քիչ արածը շատ է համարում, և արվեստակից ընկերոջը, որին հայտնի չէ «կամենալու» և «կարենալու» իրեն այնքան ծանոթ դրաման։ Ներում է բոլորին, բոլորին նայում հաշտ աչքով, մերձավորի այն սիրով, որ, հայեցողությունից ավելի չլինելով՝ պարտադրում է լուռ մնալ, ձայն չհանել, թողնել նրանց երջանիկ ինքնախաբեության մեջ։

Քիչ էր խոսում։ Գուցե և զգում էր սիրտը բանալու պահանջ, դրան անսովոր մարդու կյանքում հազվագյուտ էին այն պահերը, երբ բացվում էր լիասիրտ։

Ես սիրել եմ նրան, թեև շատ մոտ չեմ եղել։ Եվ ամեն մի հանդիպման, որ շատ չեն եղել, նա երևում էր ինձ, ճիշտ է, մի փոքր հակասական, երբեմն նույնիսկ խճճված, բայց ինչպես հետաքրքիր, անհամեմատ հարուստ նկարագրով, քան թվացել է մինչ այդ։

Երբ արտիստն ինչպես մեծ է՝ մարդիկ հետաքրքրասեր են դառնում նրա կյանքի նկատմամբ, ուզում են իմանալ ամեն մի մանրամասնություն։

Հրաչյայի մասին պատմելը նրան ճանաչողների պարտքն է։

Արտիստի բնավորության բոլոր կողմերի կամ նրա հոգեկան աշխարհի ամբողջական, ավարտված պատկերը գծելու հավակնություն չունեմ ես։ Սրանք բեկորներ են միայն։

Բացում եմ «Հրաչյա Ներսիսյան» թղթապանակը։ Տարբեր չափի թղթերի վրա զանազան ժամանակ արված գրառումներ։ Մեծ մասամբ մատիտագիր, շտապ գրված, որ չլինի թե մնան վաղվան ու մոռացվեն։

Ես հանում եմ առաջին պատահած թերթիկը ու կարդում...

1955-ի հոկտեմբերն էր։ Ամսվա առաջին օրերը։ Պետք է նշվեր Հրաչյա Ներսիսյանի ծննդյան 60-ամյակը։ Որոշված էր թե երբ՝ նոյեմբերի 12-ին, իր ծննդյան ճիշտ օրը։ Ջեկու-

ցողի պարտավորվածությամբ պետք է գնայի իր մոտ, կենսագրական մի քանի փաստ ճշտելու համար։ Պայմանավորվեցինք հանդիպել։

Մենակ չէի։ Ուղեկցեց ինձ Նշան Մուրադյանը, որը նրա մոտ հաճախ էր լինում։ Ներկա էր նաև դերասանի ավագ որդին՝ Լևոնը։ Սկզբում զրույցը տարբեր ու պատահական հարցերի շուրջն էր։ Ես չէի խոսում, լուռ լսում էի, նայում Հրաչյային։ Նայում էի ու մտածում, թե կնճիռներով պատած այս դեմքը գեղեցի՞կ է, թե ոչ։ Չգիտեի։ դժվարանում էի հարցիս պատասխան տալ։ Բայց գիտեի, և հաստատ, որ այդ դեմքը հմայում էր ինձ։ Ի՞նձ։ Իսկ ո՞ւմ չի հմայել, չի ձգել դեպի իրեն։ Երևի սխալված չեմ լինի, եթե ասեմ, որ ավելի հմայիչ դեմք չեմ տեսել։ Միաժամանակ՝ արտահայտիչ։ Գեղեցկության դասական ըմբռնումները խառնվում էին և ընկրկում մի ցանկության առաջ՝ հասկանալ նրա արտաքինի «ձգողության», նրա հմայքի գաղտնիքը։ Կնճիռներ... մի ուրիշի դեմքին ծերություն են վկայում, իսկ Հրաչյայի դիմագծերին նրանք հաղորդում էին կամք և ուժ։ Դեմքի առնական արտահայտությունը մեղմում էր աչքերի կապույտը։ Խորունկ, բովանդակալի, հաճախ առանց խոսքի օգնության արտահայտում էին մի ամբողջ կյանքի պատմություն։

Ասում են՝ աչքերը հոգու հայելին են։ Եթե այդ ճիշտ է, ապա Ներսիսյանի աչքերը վկայում էին հոգեկան այն հարստությունը, որ ամեն անգամ բերում էր իր հետ արտիստը՝ բեմ ելնելիս։

Տարօրինակ երևույթ, որ ակամա մղում է դեպի պարադոքսալ մի միտք։ Ներսիսյանի աչքերը կյանքում իրոք որ կապույտ էին, իսկ բեմում՝ ուրիշ։ Կապույտ էին, երբ նա խաղում էր, անտարբեր լինելու չափ հանգիստ, իսկ բեմում նրա աչքերն այլ էին, համենայն դեպս՝ ոչ կապույտ։ Դժվար էր որոշել գույնը։ Կարելի՞ է նկարագրել այն գույնը, որ առնում է ծովը, երբ փոթորկված՝ զարկվում է ափերին։ Այդ ի՞նչ գույն է՝ կապո՞ւյտ՝ երբեք, կանա՞չ, ոչ միայն, գո՞րշ՝ ամենևին։ Ուրեմն՝ ի՞նչ գույն է. այնուամենայնիվ, գուցե և՛ մեկը, և՛ մյուսը։ Եվ որովհետև Ներսիսյանը հաճախ էր բեմում փոթորկահույզ վիճակներ ապրում, ապա նրա

աչքերը ցոլում էին, ցողում էին, փայլում, գույն տալիս, գույն առնում, անես նույնիսկ գունափոխ էին լինում, մեկ մռայլվում էին, ինչպես աՀեղ ծովը գիշերով, մեկ՝ մաքըրվում, դառնում ջինջ, ինչպես պայծառ առավոտ։

Խաղընկերները կՀաստատեն, որ ամեն մի նոր դերում Ներսիսյանը նրանց նայել է բոլորովին այլ աչքերով։ Փոխվել է ներքինը, ներքինի Հետ փոխվել են և աչքերը։

Չեմ Հիշում, թե որքան ժամանակ էր անցել, երբ վերջապես անդրադարձանք գալուս նպատակին։ Եվ իմ կատարելիք առաջին իսկ ճշտումը աշխույժ ծիծաղի առիթ տվեց։

Պարզվեց, որ դեռևս մի քանի տարի կա Ներսիսյանի վաթսուն տարին լրանալուն։ Մեջտեղ եկավ մի աղոթագիրք, լույս տեսած ավելի քան Հարյուր տարի առաջ՝ 1849-ին, որի վրա ծնողների ձեռքով գրված՝էր՝ «Ծնունդը Հրաչյայիս», Տարին՝ 1898։ Ամսաթիվն էլ կար, նույնիսկ ծննդյան օրը և ժամը՝ Հինգշաբթի օրը, ժամը ճիշտ վեց և կեսին։

— Չգիտեմ, թե ինչպես է ստացվել, բայց անձնագրով արդեն վաթսուն տարեկան եմ։

Այնուհետև անդրադարձավ իր կյանքի պատմությանը, խոսում էր կցկտուր, Հիշածն անմիջապես ասելով։

Պարզվեց, որ Դանիել Վարուժանն է եղել իրենց Հարեվանը, և Հաճախակի Հյուր՝ նրանց տանը։ Կոմիտասի Հետ Հեռավոր ազգակցական կապեր է ունեցել, մայրը Հիվանդ ժամանակ խնամել է նրան։

— Իմ ծննդյան օրը ջինդենենիրների տանը Հարսանիք կար. երբ ես ծնվում եմ, ասում են, որ տղան քյանդըրբազ պիտի լինի։ Էդպես էլ եղավ։

Ասում էր ու ծիծաղում։

Խոսք բացվեց Սևումյանի մասին։

— Ուզում էր մի ամբողջ խումբ բերել Կովկաս։ «Թագավորը» պատրաստեց։ Հետո «Հո՞ երթար»։ Մարկոս էի խաղում։ Ուզում էր բեմադրել «Դատաստանը»։

Եվ Հետո.

— Սևումյանի վերջին օրը մոտն եմ եղել։ Նրա պատվերով գնացի Պերա և բերի ՄեՀրաբյանի կնոջը, որ տավիղ էր նվագում։ Նա նվագում էր, իսկ Օվի Սևումյանը սուլում։ Շատ լավ էր սուլում։

* * *

Հարցրի, թե երբ է սկսել իր բեմական կյանքը։

— Սկսել եմ որպես երգիչ։ Պոլսում գործում էր Պենկլյանի օպերային թատրոնը։ Նրա խմբում երգում էի։ Լավ ձայն ունեի։ Մի օր, չեմ հիշում ինչ ներկայացում էր, ինձ գտավ Ջանանը։ Ջանանը, Տրդատ Նշանյանը և ուրիշները, հիմա չեմ հիշում, թե ովքեր, 1918-ին հայկական դրամատիկն էին ուզում կազմել։ Ես էլ միացա նրանց։ Պատրաստում էինք «Նամուսը»։ Ինձ հանձնարարված էր հարբած հյուրերից մեկի դերը։ Ահա այդ ներկայացման հետ է կապված առաջին հաջողությունս։ Մի զավեշտական պատմություն է դա, որ առանց ծիծաղի չեմ կարողանում հիշել։

Մի պահ լուռ մնաց՝ շրթունքները փնչելով։

— Ներկայացման օրն էր։ Հարսանիքի տեսարանը սկսված էր արդեն։ Հագիս կովկասյան զգեստ էր՝ ճերմակ չերքեզկա, գլխիս էլ մի փափախ, թեք դրած, արծաթե դաշույնը գոտկիցս կախ։ Մի երկու խոսք ունեի, այն էլ տեսարանի վերջում։ Մինչ այդ ազատ էի, ինչ ուզում էի՝ այն էլ անում էի։ Հայտարարվել էր, որ հարսանիքի տեսարանում լինելու են կովկասյան պարեր։ Հրավիրված էին հատուկ պարողներ, եթե չեմ սխալվում՝ Կովկասից նոր եկած։ Երաժշտությունն սկսվել էր, իսկ պարողները չկային։ Ես այդ պահին բեմի ետևումն էի։ Ջանանը փրփրած չափում էր կուլիսները, ետ ու առաջ էր գնում, չգիտեր ինչ աներ։ Մեկ էլ մոտեցավ ինձ, թե՝ գնա պարի։ Ասելն ու բեմ հրելը մեկ եղավ։ Ճիշտը որ ասեմ՝ բեմում հասկացա, թե ինչ էր նրա ուզածը։ Բայց էլ ինչ, հակառակվելու տեղ չկար։ Հենց որ հայտնվեցի, բեմում եղած հարսանեկան բազմությունը, որ մինչ այդ խռնված էր, ապարեց բացեց ու ինձ առավ իր շրջանակի մեջ։ Երբեք կովկասյան պար պարած չկայի։ Մի օր փորձին տեսել էի, այն էլ ի միջի այլոց։ Իմ բախտից, հանդիսականներն էլ դրանից մի առանձին գաղափար չունեին։ Ու ես պարեցի, երաժշտության տակտին ընտելանալու համար հանդարտ անցա մի շրջան, ապա թափ առած, սկսեցի մի արագ պտույտ։ Թե ինչ էր իմ պարը, չգիտեմ,

բայց երբ, վերջացնելով, բեմից դուրս եկա, դահլիճում ծափահարություն ընկավ։ Պահանջում էին կրկնել։ Երաժշտությունը կրկնվեց։ Ես նորից բեմ նետվեցի և այս անգամ քամու պես սուրացի բեմով։ Նորից լսվեցին որոտընդոստ ծափեր։ Ես գոհ էի։ Գոհ էի ոչ թե պարիցս։ Ձէ, այդքան հասկանում էի, իհարկե, գոհ էի պարիս հաջողությունից, որի համեմատ՝ տեսարանի վերջում որպես հարբած հյուր ասած մի քանի խոսքը՝ անգույն բան էր։

* * *

Հրաչյան մի դեպք էլ պատմեց իր կյանքից, որի բոլոր մանրամասնությունները չէ, որ հիշողությանս մեջ մնացել են։

Առաջին պատերազմի օրերն էին։ Թուրքիան Գերմանիայի հետ է ընդդեմ Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի։ Պոլսի շատ ուրիշ պատանիների հետ զորակոչվում է նաև Հրաչյան։ Զինվորական կարգապահությունը խախտում է Հրաչյան և նետվում բանտ։ Նա տաճկերենին տիրապետում էր մայրենի լեզվին հավասար։ Ձեանում է տաճիկ, բայց առաջին իսկ նամազի ժամանակ պարզվում է նրա ոչ-մահմեդական լինելը։ Գանակոծություն։ Գյավուրը դատապարտվում է մահվան։ Բանտապահը, որ հայ է լինում (կարծեմ անունը Գրիգոր), զգուշացնում է Հրաչյային, թե նրա միակ փրկությունը գերմաներեն իմանալն է, որովհետև բանակի ղեկավարությունը թարգմանի կարիք ունի։ Հրաչյան ֆրանսերեն գիտեր, իսկ գերմաներեն ոչ։ Մնում է մի ելք՝ կարճ ժամանակում տիրապետել գերմաներենին։ Բանտապահը մի-երկու բառարան է տալիս և առաջարկում զբաղվել։ Մի շաբաթ հետո, երբ նրա գերմանագիտությունը մի քանի բառից այն կողմ չէր անցնում, բանտից ուղարկվում է «Մշանինընգեռ-ինսպեկցիան» այսինքն՝ գնդացրային տեսչություն, որպես թարգմանիչ։ Ներկայանում է մայոր Բարեկյային, որի մասին ամեն առիթով Հրաչյան արտահայտվում էր սիրով, և ահա թե ինչու։

Հրաչյան այնքան գիտեր գերմաներեն, որ կարող էր

Բարելլային զեկուցել, թե ինքը որպես թարգմանիչ ներկայացել է հրամանատարությանը։ Բարելլան ինչ-որ բան է ասում։ Հրաչյան չի հասկանում, ուստի և ձայն չի հանում։ Բարելլան հարց է տալիս։ Հրաչյան չի պատասխանում։ Մայորը զարմացած նայում է նրան։ Մի ուրիշ հարց էլ է տալիս։ Դարձյալ լռություն։ Մայորը բարկացած խոսում է։ Հրաչյան ոչինչ չի հասկանում։ Բարելլայի դեմքը զայրույթ է արտահայտում, ձայնը՝ սպառնանք։ Հրաչյան մտածում է՝ իր վերջը եկավ, հիմա կկարգադրի գնդակահարել, իսկ ինքը բոլորովին երիտասարդ՝ կյանքը, հույսերը դեռ առջևում։ Եվ ինքն էլ չի նկատում, թե ինչպես լալիս է։ Մայորը նայում է Հրաչյային և տեսնում երիտասարդին՝ զգաստ կանգնած, իսկ կապույտ ու խոշոր աչքերից արցունքները վազում են։ Մայորը մեղմանում է։ Զգիտե, չի հասկանում, թե ինչ է պատահել։ Հետո կռահում է, որ դիմացինը գերմաներեն չի հասկանում։ Խոսում է ֆրանսերեն։ Հրաչյան պատասխանում է նրա հարցին, պատմում գլխին եկածը։ Բարելլան, բարի մի մարդ, զգացված Հրաչյայի պատմությունից, հովանավորում է և փրկում նրա կյանքը։

* * *

— Փորձել չեմ սիրում։ Ոչ թե կարևորություն չեմ տալիս, այլ չեմ սիրում։ Մի տեսակ՝ ամաչում եմ։ Ինձ թվում է, թե վրաս ծիծաղում են, ամեն ինչ այնպես չեմ անում, ինչպես պետք է, ինչպես պահանջվում է։ Ա՛յ, ներկայացումն ուրիշ է։ Բեմական անտուրաժն է շուրջս, իսկ դիմացս՝ հասարակությունը, որին չեմ տեսնում։ Իմ առաջ մութ-մութ է, և ես ինձ ազատ եմ զգում, տեր ու տնօրեն։ Ինչ ուզում եմ՝ այն էլ անում եմ, «պոլնովլաստնի խաղլային եմ»։ Հենց որ դահլիճը լուսավորվի, ես անմիջապես կանգորանամ, այն չեմ լինի, ինչ եմ և այլն։

Ես հարցրի, թե ունի՞, արդյոք, հին ու նոր հասարակության զգացողություն։ Ծիծաղեց։

— Ա՛յ, լսիր՝ ինչ կասեմ քեզ։ Ես Երևանում լավ չեմ խաղում։ Օթելլո ես ասում։ Իմ Օթելլոն Օթելլո չէ Երևանում։

Եթե ուզում ես տեսնել՝ հետս արի շրջան, Կիրովական կամ Թեկուզ Արտաշատ, Աշտարակ։ Թիֆլիսում էլ լավ եմ խաղում։ Ախպեր, և ի՞նչ կա այստեղ անհասկանալի, մի՞թե կարելի է քսան տարի շարունակ նույն ձայնը լսել կամ միևնույն դեմքը տեսնել։ Ես չեմ ասում, թե խաղընկերներս վատ են խաղում, չգիտեմ, մի խոսքով՝ իմ գործը չէ։ Ես մի բան գիտեմ—չեմ կարող անընդհատ նույն ձայնը, նույն ինտոնացիան լսել։ Երևի ես էլ նույնն եմ նրանց համար։ Չէ, ես նոր ձայն եմ ուզում։ Մի անգամ ինձ խնդրեցին Ստեփանակերտում խաղալ. շատ եմ գոհ խաղիցս։ Ես երբեք այդպես չեմ խաղացել. իմ ամենալավ Օթելլոն այդ գիշեր ծնվեց։

Չեմ հիշում այժմ, թե զրույցն ինչի շուրջն էր, երբ Հրաչյան ընդհատեց մեր խոսքը.

— Ես պետք է անպայման մի դեր խաղամ, որ կյանքիս խոսքը լինի։ Նոր դեր, այնպիսի դեր, որ ոչ ոք խաղացած չլինի, նորություն լինի, գոնե մեզ մոտ։

Ներկաներից մեկն ասաց, թե Հրաչյան իր հաշիվները փակել է դրամատիկական թատրոնի հետ, այնտեղ այլևս անելիք չունի, որ նրա ասպարեզը կինոն է, և այդ իր երազած դերն էլ պետք է կինոյում ստեղծել։

Չհամաձայնեց։

— Կինոյում ես հաջողություն ունեմ, ճիշտ է։ Բայց ինձ լավ չեմ զգում։ Դա իմ ասպարեզը չէ, ես այնտեղ դրության տերը չեմ։ Ռեժիսոր կա, օպերատոր կա, որոնցից ազատվել չես կարող։ Իսկ թատրոնում ռեժիսորի իշխանությունը փորձի ժամանակ է, բարձրացա բեմ թե չէ՝ նրա իշխանությունը թոթափում եմ, և ես ազատ եմ։ Բեմում ինչ ուզում եմ, այն եմ անում։ Ասենք թե՝ արեցի մի բան, որ ռեժիսորի համար ընդունելի չէ, նրա սրտով չէ, ի՞նչ կարող է անել՝ ոչինչ։ Իսկ կինոյում այդպես չէ. թե մի շեղում կատարեցիր, ժապավենի այդ կտորն անմիջապես կկտրեն։

Հավաքվածներս անդրադարձանք այն հարցին, թե ի՞նչ դերեր է ուզում խաղալ։ Նա հիշեց Օշին Պայլը, ասաց, որ շեքսպիրյան շնչով է գրված։ Իմացել էր, որ ես Մոսկվայում նայել եմ Աստանգովի Մատիաս Կլաուզենը։ Հարցնում էր,

*թե դերը կբռնի՞ իրեն, թե չէ. մեր հանդիսականի համար հետաքրքի՞ր կլինի, թե ոչ։*

*Ես ասացի, որ իմ կարծիքով հետաքրքիր կլինի և նույնիսկ շատ։ Լավ կանի, որ անպայման խաղա։ Հետո անցանք ուրիշ հարցերի և չեմ հիշում, թե ով, հարցրեց.*

*— Պատահականությունները բեմում դեր խաղո՞ւմ են, թե ոչ։*

*— Այդպիսի դեպքեր կան, օրինակ՝ «Սեր և խարդավանքի» մեջ Ֆերդինանդ էի խաղում։ Առաջին օրը, ներկայացումից անմիջապես առաջ, բեմ մտնելիս, հայելու մոտով էի անցնում. տեսա կնճիռներս և այլևս խաղալ չկարողացա, չէի հավատում, որ պատանի եմ։ Եվ այդպես էլ չկարողացա լավ խաղալ։ Խաղում էի, բայց միշտ անհաջող. ոչ ես էի գոհ, ոչ էլ հանդիսատեսը։ Համոզվեցի, որ դերը Խաժակին տամ։*

* * *

*Հարցրի, թե հոբելյանի օրը խաղալո՞ւ է։*

*— Ոչ։*

*Զարմացա։*

*— Ի՞նչ պիտի խաղամ. «Պատվի համարից» մի կտոր, «Պաղտասարից», «Օթելլոյից» տեսարաններ։ Է՜, ինչ պիտի ստացվի. կտոր խաղա՞լը որն է։ Չեմ սիրում. ոչ սկիզբ ունի, ոչ վերջ։ Մեքենա հո չե՞մ։ Մինչև դերիս մեջ մտնեմ, մինչև տաքանամ, տեսարանը պիտի վերջանա։ Չէ՛, չեմ կարող։ Մի ուրիշ պատճառ էլ կա. այնպիսի օր է այդ, որ ես պիտի ուզեմ լավ խաղալ, անպայման լավ, իսկ երբ ուզում եմ լավ խաղալ՝ վատ եմ խաղում, ինչքան շատ եմ ուզում լավ խաղալ, այնքան ավելի վատ եմ խաղում։ Նկատել եմ, միշտ այդպես է։*

* * *

*Հոբելյանը այդպես էլ չկայացավ։ Չկայացավ, որովհետև Հրաչյան հանկարծ հրաժարվել էր։*

*— Հոբելյան չեմ ուզում։*

Հանդիպեցի իրեն և հայտնեցի ոժգոհությունս։ Ժպտաց։

— Քեզ համար էլ լավ է. ազատվեցիր զեկուցում գրելու հոգսից։

Ասացի, որ զեկուցումն արդեն գրել եմ։

— Ի՞նչ ես ասում։ Ափսո՜ս։ Իմանայի՝ չէի հրաժարվի,— կատակի տվեց։— Գիտես ինչ, ճիշտն ասեմ քեզ, ինձ համար դժվար է, շատ դժվար հոբելյարի վիճակում լինել, նստել բազկաթոռին և ժամերով գովեստներ լսել։ Բոլորն էլ իրար նման։

Չկայացած հոբելյանից մնաց մի հիշատակ։ Թատրոնի հրատարակած ալբոմը՝ «Հրաչյա Ներսիսյան», որ լույս տեսավ իմ առաջաբանով, իսկ դա ոչ այլ ինչ էր, քան հոբելյանի համար պատրաստածս զեկուցման համառոտ շարադրանքը։

Ալբոմը վաճառվեց թատրոնում նոյեմբերի 12-ին, ճիշտ այն օրը, երբ նշանակված էր հոբելյանը։ Նույն երեկո էլ սպառվեց։ Մեկի փոխարեն շատերը գնում էին երկու, երեք, ոմանք նույնիսկ հինգական օրինակ՝ իրենց բարեկամներին ու մտերիմներին նվիրելու համար։

* * *

Հրաչյան սիրում էր կարդալ։ Կարդում էր ոչ միայն հայերեն և ռուսերեն։ Կարդում էր նաև ֆրանսերեն, անգլերեն։ Եվ դա նրան առավելություն էր տալիս շատերի նկատմամբ։ Սովորություն չուներ կարդացած գրքերից խոսելու։ Դա էր պատճառը, որ շրջապատի աչքում կարդացած մարդու համարում չուներ։ Այն ժամանակ, երբ զարգացած արվեստագետի համբավ վայելող մեր դերասաններից մի քանիսը Հեմինգուեյից ոչինչ չէին կարդացել, Հրաչյան ծանոթ էր նրա շատ երկերին, ուներ իր սեփական ու ընդհանուր մտայնությանը չհամընկնող կարծիքը նրա մասին։

Խուսափում էր խոսել, արտահայտվել, մանավանդ ելույթ ունենալ, և այդ պատճառով շատերն այն կարծիքին էին, թե նրա ստեղծագործությունը մտքի հենակետեր չունի։ Սխալ տպավորություն։ Երբ խոսում էր՝ տպավորություն չէր գոր-

ծում։ Բայց երբ փորձում էիր խորանալ, թե նրա անկաշմակերպ խոսքի ետևը ինչեր են թաքնված, տեսնում էիր մտքի երբեմն այնպիսի խորություն, որով հաճախ չեն փայլել իրենց մտքով Հրաչյայից առավել համարված դերասանները։

Այդպես է. հաճախ ենք արտաքին չափանիշներով ղեկավարվում՝ մեկին և մյուսին գնահատելիս, փոխանակ խորանալու նրանց էության մեջ։ Խորապես համոզված եմ, որ յուրաքանչյուր միտք կարող է խամրել, եթե իր տարերքի մեջ չէ, և ընդհակառակը, փայլատակել, եթե գտել է արտահայտվելու հարազատ ասպարեզը։ Որ զրուցելիս Մարտիրոս Սարյանը բավական հետաքրքիր է, երբեմն նույնիսկ իմաստուն, այդ ճիշտ է, բայց ի՜նչ թռիչք է կատարում նրա միտքը, երբ ձեռքն է առնում վրձինը։ Ի՜նչ համեմատություն։ Եվ ի՜նչ տպավորության պետք է լինեինք, եթե նրան ճանաչեինք միայն զրույցներով ու երբեք տեսած չլինեինք իր կտավները, այսինքն այն, ինչ նրա մտքի ճշմարիտ դրսևորումներն են։

Նույնը և Հրաչյան։

Կյանքում կարծես անտարբեր, մի կողմ քաշված, ավելի դիտող, քան արտահայտվող, ընդհանրապես սակավախոս, նա բեմում լեզու էր առնում, ուժ ստանում և արտահայտվում էր, իր խոսքն ասում շատ ավելի ազդեցիկ, քան շատ և շատ գիտուններ։

Արտիստ էր ոչ թե զբաղմունքով, այլ էությամբ։ Բեմը նրա տարերքն էր, այն հարազատ միջավայրը, ուր նա ուժեղ էր, երբեմն՝ ամենակարող։

* * *

1944-ին էր։ Ամիսը չեմ հիշում։ Արմեն Գուլակյանը նշանակվեց Սունդուկյանի անվան թատրոնի գեղարվեստական ղեկավար և, միաժամանակ, դիրեկտոր։ Զանգահարեցի, թե հետը խոսելիք ունեմ։ Գնացի։ Ասացի, որ թեև պատվիրակ չեմ, բայց ասածս թող ընդունի որպես մեր մտավորականության մի բավական լայն շրջանի ցանկություն։

Գուլակյանը լրջացավ։

Ասացի, թե լսել ենք, որ Հրաչյան ցանկություն ունի Արքա Լիր խաղալու։ Ես եկել եմ իմ և այդ ընկերների անունից խնդրելու, որ դերասանի ցանկությունը անկատար չմնա։ Նախ՝ դա իր վաղուցվա իղձն է, երկրորդ՝ հավատում ենք, որ խիկապես լավ Լիր կլինի։ Իսկ ինչքա՜ն ժամանակ է, որ մի կարգին դերում չենք տեսել նրան։ Եվ երրորդ՝ ճիշտն ասած, լավ կլինի, որ հայ բեմը դուրս գա միայն «Համլետ» և «Օթելլո» ներկայացնելու կախարդական շրջանակից։

Գուլակյանը քթի տակ ծիծաղեց։ Զարմացած նայեցի իրեն։

— Չի խաղա։ Նրա ամեն ասածին այդքան նշանակություն մի տվեք, խոսք է, էլի։

Առարկելու փորձ արի։

— Երանի դուք ճիշտ լինեիք, ես սխալ, բայց ես նրան ավելի լավ եմ ճանաչում։ Երկար տարիներ եմ ճանաչում։ Կասի, ինչի՞ չէ, բայց կանի՞։ Իսկ եթե նա իրոք ցանկանա՝ ո՞վ դեմ կլինի։ Միայն թե անի։

Մեր խոսակցությունն ընդհատեց հեռախոսի զանգը։ Երբ վերջացրեց՝ դարձավ ինձ.

— Վաղը երեկոյան ազա՞տ եք, հա՞, կարո՞ղ եք թատրոն գալ։ Ես ձեր ներկայությամբ կանեմ այդ առաջարկը։

Մյուս օրը պայմանավորված ժամին գնացի թատրոն։ Անցա դիրեկտորի առանձնասենյակը։ Գուլակյանը քարտուղարուհուն հանձնարարեց կանչել Հրաչյային։ Նա ներս մտավ, բարև տվեց ու, ըստ երևույթին, ոչ առանձնապես սովոր այդպիսի կանչերի, «հը, ի՞նչ կա» հարցն աչքերի մեջ՝ նայեց Գուլակյանին։

Վերջինս գրասեղանի գզրոցից հանեց մի գիրք ու մեկնեց Հրաչյային։

— Ի՞նչ է։

— Նայիր։

Հրաչյան բացեց գիրքը. անվանաթերթի վրա, հին ուղղագրությամբ, գրված էր՝ «Արքա Լիր»։

Հրաչյան տարակուսած նայեց Գուլակյանին։

— Բեմադրելու ենք,— ասաց Գուլակյանը,— դու էլ Լիր ես խաղալու։ Տար ու աչքի անցրու։ Տես ինչ կասես։

Հրաչյան ձեռքով գիրքը հրեց դեպի Գուլակյանը։

— Էդքան մեծ դեր պատրաստելու գլուխ չունեմ։

Հետո դարձավ ինձ.

— Կարծում են հեշտ է, էլի։

Հետո նորից դառնալով Գուլակյանին.

— Լիր արքա։ Կատա՞կ է, ինչ է։ Ես ո՞ւր, Լիրն ո՞ւր։

Զանգահարեցին։ Գուլակյանը վերցրեց հեռախոսափողը։

— Ես հետո կգամ, Արմեն,— ասաց ու արագ քայլերով դուրս գնաց։

Գուլակյանը նայեց ինձ։

— Տեսա՞ք։ Որ ասում էի՝ չէիք հավատում։ Գլուխն առավ ու փախավ։ Այդ մարդը ամենաօժտվածն է. բայց և ամենածույլը։ Բնավորությամբ թեև սարսափելի անկազմակերպ՝ պատասխանատվության ուժեղ զգացում ունի։ Երբեմն հիվանդագին չափերի հասնող։ Հեշտությամբ բեռան տակ չի մտնում։ Եթե այլևս չխոսեմ՝ չի էլ հարցնի, թե ինչ եղավ Լիրը։ Բայց եթե ես ասեմ, մի ուրիշն էլ, կսկսի հավատալ, որ իրենից Լիր դուրս կգա և կխաղա։ Երեխայի պես մարդ է։ Ամեն մի նոր դերի առաջ կանգնում է ինչպես անփորձ սկսնակ։

* * *

Բեմադրվեց Տոլստոյի «Կենդանի դիակը», Հրաչյան այդ բեմադրությանը մասնակից էր իշխան Աբրեզկովի դերով, բայց ոչ Պրոտասովի։ Տարօրինակ է, բայց այդպես էր։ Պրոտասով խաղում էին Վաղարշյանն ու Ջանիբեկյանը։

Անցան օրեր և հանկարծ հայտնի դարձավ, որ Ներսիսյանը գնացել է Գուլակյանի մոտ և խնդրել՝ թույլ տալ իրեն Պրոտասով խաղալու։ Այդ դերասանի ցանկությունը իր համար պարտադիր համարելով՝ Գուլակյանը տվել է համաձայնությունը և անմիջապես փորձեր նշանակել։

Առաջին ներկայացման օրը թատրոն էի գնացել գործով, բայց ոչ ներկայացում նայելու մտադրությամբ։ Բայց չկարողացա հաղթահարել ինձ համակած ցանկությունը՝ նայել գոնե մի-երկու տեսարան։ Մտա դահլիճ և գրավեցի պատահած առաջին թափուր աթոռը։ Եվ... մնացի մինչև ներկայացու-

ման վերջը։ Հրաչյան այդ օրը բուռն էր, անկեղծ, հուզիչ։ Ամբողջ գիշերը նրա խաղի տպավորության տակ էի։

Մյուս օրը նորից գնացի ներկայացման։ Ճիշտն ասած՝ մի երկյուղ կար սրտիս մեջ. չլինի՞ թե հանկարծ երեկվա հաջողությունը մի երջանիկ բռնկում էր, որ կրկնվել չէր կարող։ Ներկայացումը սկսվեց, և Հրաչյան նույնքան անկեղծ, ինչպես երեկ՝ հիասթափվեց, սիրեց ու կարոտեց, տանջվեց ու տառապեց, մինչև հասավ իր գահավեժ խորտակման օրը։ Նույնն էր, ինչ երեկ, բայց դա կրկնություն չէր։ Նույնն էր միայն շրջանակը։ Ապրումն այնքան անմիջական էր, որ ինձ թվում էր, թե առաջին անգամ եմ նայում։

Մի օր որդուն՝ Լևոնին հարցրի, թե այդ ի՞նչպես պատահեց, որ ուզեց խաղալ։ Ասաց, որ հոր այդ ցանկությունը իր համար էլ անակնկալ է եղել։ Հրաչյան ասել է, թե ինքը պիեսի ընթերցանությանը գնացել է ուշացած, երբ մտել է փորձասրահ՝ բոլորը իրեն են նայել։ Ընթերցումը շարունակվել է։ Պանդոկի տեսարանից դերասանների մեծ մասը շրջվել է դեպի Հրաչյան։ Արտիստի հոգու մեջ կասկած է ընկել, թե իր մեջ տեսնում են Պրոտասովին։ Իսկ ինչո՞ւ ոչ,— անցել է իր մտքով, բայց ձայն չի հանել։ Ոչ ոքի ոչինչ չի ասել, և փորձերին միշտ մտածել է, որ եթե ինքը Պրոտասով լիներ, ի՞նչ կաներ, ինչպե՞ս կաներ։ Ամառը՝ Ստեփանավանի անտառներում կարդում, մտածում է կերպարի շուրջը և պատրաստում դերն այնքան, որ հիմք ունենա բեմադրող ռեժիսորին ներկայանալ և խնդրել։

Մի տարի էլ չէր անցել, որ Լենինգրադից եկավ Փափազյանը։ Նա նույնպես ցանկություն հայտնեց Պրոտասով խաղալու։ Եվ խաղաց։ Տարբեր էր, քան առաջին երեքը։ Ակամա մրցությունն անխուսափելի էր։ Եվ ուրիշ կերպ չէր կարող լինել, քանի որ մի դերը չորս կատարող ուներ։ Եթե չասենք ամենքի, համենայն դեպս շատերի կարծիքն այն էր, որ լավագույնը Հրաչյայի Պրոտասովն էր։ Ես այդպես էլ չիմացա. թե ինչ կարծիքի էին Վաղարշյանն ու Ջանիբեկյանը, իսկ Փափազյանը ի լուր բոլորի՝ ընդունեց կրտսեր ընկերոջ գերազանցությունն այդ դերում։

* * *

Չեմ կարող ասել, Հրաչյայի համար միևնույն էր, թե ինչ է գրվում ու ասվում իր մասին։ Կողքից գոնե տպավորությունըն այնպես էր, թե անտարբեր է մնում ինչպես քննադատության, այնպես էլ գովեստի նկատմամբ։ Ես, ոչ էլ իմ ընկերներից որևէ մեկը չենք հիշում, որ նա, ուրիշների նման, գնահատություն հայցի կամ մարտնչող դիրք բռնի քննադատության դեմ։

Ահա հիշողությանս մեջ մնացած միակ դեպքը։

«Նույն հարկի տակ» բեմադրության քննարկումն էր։ Արտահայտվեցի նաև ես։ Ես, ինչպես նաև ուրիշները, հիացած էի Բաբկեն Ներսիսյանի դերակատարմամբ։ Բարձր գնահատելով նրա խաղը՝ ես վերջացրի խոսքս այսպես. «Այն հանգամանքը, որ Բաբկենի ազգանունը նույնպես Ներսիսյան է, հետևանք է, իհարկե, պատահական զուգադիպության, բայց ես հույս ունեմ, որ կգա ժամանակ, երբ մի Ներսիսյանը կփոխարինի մյուսին և այն ժամանակ մարդիկ երկու արտիստների նույն ազգանունը կրելու մեջ որոշակի իմաստ կգնեն»։

Հրաչյային, որ ներկա չէր քննարկմանը, իմ խոսքը աղավաղված էին հայտնել։ Մյուս օրը թատրոնում հանդիպեց ինձ։

— Էդ ի՞նչ ես ասել։

— Ի՞նչ։

— Թե մի Ներսիսյանն արդեն հեչ, մյուս Ներսիսյանն է Ներսիսյան։

Զհասկացա՝ կատակո՞ւմ է, թե լուրջ է ասում, բայց ես չէի կամենա անտեղի վշտացրած լինել։ Եթե ասում է, թեկուզ կատակով, նշանակում է մի կասկած, գուցե և չնչին չափի, բույն է դրել մեջը։ Ու հարկ համարեցի բացատրել, թե ինչ եմ ասել։

— Это можно: Ինչո՞ւ չէ, ինչո՞ւ չէ։

Վաղարշյանը, որ մոտեցել էր մեր զրույցի կեսից, զվարթ կատակի շեշտով ասաց.

— Դու լավ հոգեբան ես, բայց զարմանում եմ, թե ինչ-

պես ընկար սրա ծուղակը։ Մի՞թե չհասկացար, որ ճիշտ հակառակն է. ասածդ իր սրտովն է, բայց ուզում է, ոչ թե երկրորդ մարդուց, այլ քեզանից լսել և համոզվել, որ դա այդպես է։

Հրաչյան ժպտաց և ժխտելու մի աննշան փորձ արեց։

* * *

Մի օր որդուն հարցրի՝ հայրը թատերական ռեցենզիաներ կարդո՞ւմ է, թե ոչ։ Լևոնն ասաց թե՝ խնդրում է բարձրաձայն կարդալ և երբ իմանում է, որ քննադատի կարծիքը դրական է, ձեռքը թափ է տալիս, չի հետաքրքրվում և հակառակը՝ հետաքրքրվում է, երբ քննադատում են, դիտողություն են անում։

Չէր արտահայտվում, բայց ինձ թվում էր, թե նա մի ներքին դրամա ուներ։ Ցույված իր անվան շուրջ եղած սիրուց՝ դժգոհ էր իրենից։ Նրան այնպես էր երևում, թե ինքն ավելի քիչ է արել, քան կարող էր։ Այդ պատճառով հաճախ զարմանում էր, թե ինչու են իրենով այդքան հիանում։ Չէ՞ որ գիտեր, թե ինչ է իր մտքովն անցնում և լավ էր հասկանում, թե որքան նվազ է իր արածը մտքովն անցածի համեմատ։ Եվ այդ պատճառով նրա համար տարօրինակ էր, որ մարդիկ կարող են այդքան քչով բավարարվել։ Ըստ իս, դրա համար էլ առանձնապես ուշադիր էր դեպի քննադատական դիտողությունը։ Թերևս կամենում էր անբավարարվածության հիմնավորումը գտնել և նոր մղումների առիթ ստանալ։

* * *

Մի անգամ հարցրի, թե ինքն ինչ կարծիքի է իր Պաղտասար աղբոր մասին.

— Ոչ բարձր։

Գիտեի, որ կեղծ համեստությունը հատուկ չէ նրան և ուզեցի հասկանալ, թե ի՞նչն է նրա անբավականության պատճառը։ Հարցրի, թե այդ դեպքում ի՞նչպես բացատրել քննադատության հիացական վերաբերմունքը և՛ այստեղ, և՛ Մոսկվայում։

— Չգիտեմ։ Հավանում են նրանք, ովքեր ավելի լավը չեն տեսել։ Օրինակ՝ Խաչանյանը հրաշալի էր։ Նա էլ էն չէր, թեև նրանից լավը չեմ տեսել։ Ճիշտն ասեմ՝ իմ պատկերացրած, իմ երևակայության Պաղտասարը դեռ չեմ տեսել։

Մի օր էլ, անդրադառնալով Պաղտասարին, ասաց, որ ինքը շատ է սիրում Աճեմյանին և բարձր է գնահատում նրա տաղանդը, բայց այս բեմադրության մեջ մի հակասություն կա իրենց միջև։ Կերպարն ինքը կառուցում է ընդհանրացումներով, իսկ ռեժիսորը դետալավորում է, և ստացվում է ոճական անհարիրություն։ Ասում էր, թե իրեն շատ է նյարդայնացնում Օգսենի լիմոն զողանալու տեսարանը։

* * *

Ընկերներով հավաքված զրուցում էինք։ Հրաչյան ավելի լսում էր, քան խոսում։ Իսկ երբեմն էլ մտքով առանձնանում էր, հեռանում մեզանից և հետո նորից վերադառնում զրույցին։ Չեմ հիշում հիմա, թե խոսակցությունը ինչի շուրջն էր, երբ ասաց.

— Գիշերը մինչև մանկական գիրք չառնեմ ձեռս, մի քանի էջ չկարդամ, քուն չի գա աչքերիս։

— Ինչի՞,— հարցրեց ընկերներից մեկը, չթաքցնելով իր հեգնական վերաբերմունքը նրա ասածի վերաբերմամբ։ Հրաչյան չզգաց այդ, բայց շփոթված, որ իրենից բացատրություն են պահանջում, նկատեց.

— Չգիտեմ, ինքս էլ չգիտեմ։ Պարզապես սովորություն է, ինչ ասեմ։

Մի պահ լռելուց հետո, կարծես բացատրությունը գտնելով, ուրախ-ուրախ վրա բերեց.

— Երևի օրվա տպավորություններից ուղեղս հոգնում է և ազատվելու կարիք եմ զգում։

Ասաց, նայեց մեզ, ասես մեր աչքերի մեջ կամենալով ստուգել, թե իր տված բացատրությունը որքան է համոզիչ։

Ոչ ոք ձայն չհանեց։

— Օրվա աղմկոտ տպավորություններից։

Առանձնապես շեշտեց աղմկոտ բառը։

Ես նկատեցի, որ երբ մարդ մանկական գիրք է կարդում՝

երեխի մանկական անհոգություն է գալիս վրան, անհոգ, թեթև։

— Ճիշտ է,— ասաց Հրաչյան,— ես էլ նույնն էի ուզում ասել։

* * *

1958-ին էր։ Բաբկեն Ներսիսյանը բնակարան էր ստացել։ Այդ առթիվ հավաքվել էին նրա տանը, մեծ մասամբ թատրոնի մարդիկ։ Չեմ հիշում, թե ով, բաժակը բարձրացրեց և առաջարկեց խմել Հրաչյայի կենացը։ Կենացի առթիվ, ինչպես ընդունված է մեզանում, արտահայտվեցին մի քանիսը և ամենքն էլ հիացած խոսեցին նրա արվեստի մասին։ Դրանցից մեկը նրան կշտամբեց շատ խմելու համար։ Եթե չխմի՝ ամեն ինչ լավ կլինի։ Շատերն արձագանքեցին՝ «Ճիշտ է»։

Տեսնելով, որ այլևս խոսող չկա՝ Հրաչյան կանգնեց։

Բոլորը լուռ սպասում էին, թե ընդհանրապես խոսելու սովորություն չունեցող Հրաչյան ինչ է ասելու։

— Շնորհակալ եմ,— ասաց նա և նկատելի էր, որ հուզված է։— Շատ եմ շնորհակալ ձեր խոսքերի համար,— ասաց ու շուրթերը հավաքեց և աչքերն առաստաղին նետեց։— Գիտե՞ք ինչ, շատ եմ ցավում, երբ խմելու մասին են խոսում։ Հասկանում եմ, ամենքն էլ իմ լավն են ուզում։ Ընկերներ են, բարեկամներ, իմ մասին են մտածում։ Բայց մի բան կա, որ չեն հասկանում։ Չեն հասկանում, որ ես չեմ կարող չխմել։

Բոլորի դեմքին հիասթափություն երևաց։ Նրա աչքից դա չվրիպեց։

— Բացատրեմ, բացատրեմ միտքս։

Մի պահ լռեց, հետո շարունակեց.

— Ես վախկոտ եմ։ Այո՛, այո՛, մի զարմանաք, ես վախկոտ մարդ եմ։ Եթե չխմեմ՝ խաղալ չեմ կարող։ Ես բեմ եմ մտնում՝ իմ թշնամին դահլիճն է, վախենում եմ նրանից, ծնկներս ծալվում են, ձեռքերս ու ոտքերս կապ են ընկնում։ Չգիտեմ ինչ անել։ Որ խմած եմ լինում՝ ինձ նրանից ուժեղ եմ զգում ու հաղթում եմ։ Այո՛, այո՛, հաղթում եմ։ Որ չխմեմ՝ կխեղճանամ նրա առաջ, կպարտվեմ։

Դադար։

— Խմածս էլ ինչ է, մի հարյուր գրամ օղի։ Եղածը մի բան չի, բայց տրամադրություն է ստեղծում, ուժ տալիս։

Լռեց, նայեց չորս կողմը և սեղանակիցներից ոչ ոքի դեմքին հավանության արտահայտություն չնկատեց։

— Չէ, մեկ է, ինձ չեք հասկանա։

Ու դատարկեց իր առջև դրված օղու գավաթը։

* * *

Հայ գրականության և արվեստի տասնօրյակին Լեոն Քալանթարը բեմադրել էր «Օթելլոն»։ Դերակատարը Փափազյանն էր։ Տասնօրյակից հետո, արդեն Երևանում, բավականին ժամանակ անց, թատրոնի ղեկավարությունը տեսնելով, որ մի քանի այլ պիեսներ հանդիսատես չեն բերում և լավ իմանալով Հրաչյայի ժողովրդականությունը՝ խնդրեց նրան էլ հանդես գալ Օթելլոյի դերով, որպեսզի Փափազյանի համար նախատեսված ներկայացումներից բացի, լրացուցիչ ներկայացումներ նշանակվեն և ունենան ապահովված մուտք, դիմել էին Հրաչյային,— իսկ նրան համոզելը դժվար չէր,— համաձայնել էր։

Նշանակված էր առաջին ներկայացումը։ Չէի գնացել, բայց երկրորդ օրը մտա թատրոն։ Տեսնեմ, դիրեկտորի սենյակում, գրասեղանի կողքին, Հրաչյան լուռ նստած է։ Մոտեցա, բարևեցի և ուզեցի արդարանալ, որ երեկ չէի կարողացել գալ իր խաղը դիտելու։

— Շատ էլ լավ ես արել, որ չես եկել։

Զարմացա, թե ի՞նչ է նշանակում իր ասածը։

— Վատ խաղացի, ուղղակի տապալվեցի։

Ես հայտնեցի, որ ընկերներս հակառակն են ասում, նույնիսկ իր խաղի մասին մտադիր են հատուկ գրել։

— Մի հավատա։ Ինձ սիրում են, և ուրիշ ոչինչ։ Ես ճիշտ եմ ասում, ճիշտ, երեկ իմ կյանքի ամենաձախորդ օրերից մեկն էր։

Խնդրեցի բացատրել, թե այդ ինչպես է պատահել, որ նրա նման արտիստը տապալվել է։ Չէ՞ որ առաջին անգամը չի

խաղում այդ դերը, երկար տարիներ խաղացել է, ճանաչվել ու գնահատվել։

— Լսիր, ասեմ քեզ։ Ներկայացման օրը ցերեկը, փորձից որ գնում էի տուն, մեր տղաները շրջապատեցին ինձ, թե՝ «Հրաչ Ներսեսովիչ, դժվար օր է քեզ համար։ Փափազյանի Օթելլոն մեջտեղն է։ Ուզում ես, չես ուզում՝ մրցության պես բան է ստացվում։ Ուժերդ հավաքիր, որ ծանր բեռ բարձրացնես։ Տես՝ չլինի թե խմես։ Գոնե այսօր մի խմիր, էլի։ Գիտես, չէ՞, հանդիսատեսը քեզ ինչպես է սիրում։ Տես որ էդ սերը գետնով չտաս»։ Այնքան ասին, որ ես, վախկոտս, ավելի վախեցա։ Մտածեցի, ինչ պիտի անեմ։ Ու, ճիշտն ասած, անիծում էի էն օրը, որ համաձայնություն տվի մտնել «Օթելլոյի» նոր բեմադրության մեջ։ Ու չխմեցի։ Չխմեցի, որ իբր թե խելքս գլխիս լինի։ Երեկոյան Օթելլոյի զգեստները հագած մտա բեմ, դահլիճը այնպիսի բուռն ծափահարությամբ ընդունեց, որ ինկի էդպիսի բան չեմ էլ հիշում։ Եվ դա ավելի ծանրացրեց վիճակս։ Նրանք ծափ էին տալիս, իսկ ես մտածում էի՝ սրանք ի՞նչ հույսեր են կապում ինձ հետ ու ես ո՞նց եմ դուրս գալու էդ բոլորի տակից։ Վախս կրկնապատկվեց։ Ու ես մի կերպ խաղացի։ Ճիշտ է, դահլիճը վերջում էլ շատ ծափ տվեց, բայց դե ես գիտեմ՝ կարողացա խաղալ, թե չէ։

Հետո, երբ բավական օրեր էին անցել, նա գանգատվում էր, ասում, որ ինքը՝ իր փափուկ բնավորության պատճառով, բայց ըստ էության իր կամքին հակառակ, մտել էր մի բեմադրության մեջ, որը ինքը չի ընդունում։ Այդ բեմադրության մեջ, իր ասելով, նրան ամեն ինչ ջղայնացնում էր, ամեն բան խանգարում։ Ջրավազանի տեսարանը, ուր Դեզդեմոնան, ռեժիսորի ցուցումով, ջուր է ցայտում Օթելլոյի երեսին, ինքը պետք է հրճվալի դեմք ընդունի, մինչդեռ դա նրան կեղծ է թվում։ Եվ այդ, ինչպես ասում էր, ինքը ճակատագրական եղավ։ Նա չի կարծում, թե Դեզդեմոնան այդպես կարտահայտի իր սերն Օթելլոյի նկատմամբ։ Այդ պատճառով երկու գործողություն նյարդային վիճակ է ապրել, անբնական հոգեբանության մեջ գտնվել։ Ասում էր, որ իրեն խանգարում է նաև ձևավորումը, թույլ չի տալիս ազատ

շարժվել ու թափ առնել։

* * *

1959-ին էր, ո՛չ ամիսն եմ հիշում, ո՛չ օրը։ Հրաչյա Ներսիսյանի և Ավետ Ավետիսյանի հանդիպումն էր Նոր Արեշի Կուլտուրայի համալսարանի ունկնդիրների հետ։ Ես պետք է ներկայացնեի նրանց։ Առաջ Ավետիսյանի մասին խոսեցի, հետո Ներսիսյանի։ Իմ միտքն այն էր, որ քաղցր պատառը մնա վերջում։ Եվ սխալվեցի։ Ավետի մասին այնքան երկար խոսեցի, որ Հրաչյայի համար այլևս ներքին եռանդ չմնաց։ Մի տեսակ՝ սպառվեցի։ Եվ Հրաչյային նվիրված խոսքս կցկտուր ստացվեց։

Ընդմիջում հայտարարվեց, որից հետո պետք է գեղարվեստական մաս լիներ՝ Ավետի մասնակցությամբ։ Ես ու Հրաչյան նստած զրուցում էինք։ Ինքը ոչ մի ձայն չհանեց խոսքիս մասին, իսկ ես նրա առաջ արդարանալու պահանջ էի զգում։ Փորձ արի բացատրել։

— Նշանակություն մի տա, ջանը՛մ։ Ինչ է, ես նույնը չե՞մ, մի օր լավ եմ խաղում, մի օր չէ։ Մարդ չի կարող միշտ լավ խոսել։

Ուզում էի հասկանալ, թե որքանով է անկեղծ, իրո՞ք նշանակություն չի տալիս, թե՞ ինձ է ուզում հանգստացնել։

— Գիտե՞ս ինչ,— բացականչեց ուրախացած ձայնով,— ընդունենք, որ դու իսկապես մեղք ունես։ Շատ լավ։ Արի քեզ մի առաջարկ անեմ։ Ուզո՞ւմ ես մեղքդ քավել։

Ասաց ու լուռ նայեց ինձ։ Հայացքի մեջ անվստահություն կար։ Ու տպավորությունն այնպես էր, թե ինքն է մեղք գործել ու չգիտե՝ ասի՞, թե ոչ։

— Հիշո՞ւմ ես մեր խոսակցությունը Մատիաս Կլաուզենի մասին։ Թատրոնի Գեղարվեստական խորհրդի անդամ ես։ Հարց բարձրացրու՝ Հաուպտմանի պիեսը բեմադրելու մասին։ Ես էլ կխաղամ։

Հայացքիս մեջ, ինչպես երևում է, թերահավատություն կար։

— Էդպես մի նայիր։ Կխաղամ, անպայման կխաղամ։ Չե՞ս հավատում։ Ահա պիեսը, տես՝ գրպանումս է։

Գրպանից հանեց «Մայրամուտից առաջը» և դրեց սեղանին։

— Հիմի հավատո՞ւմ ես։ Հենց որ ազատ րոպե եմ ունենում՝ կարդում եմ մեկ մի տեղից, մեկ ուրիշ տեղից։

Մի պահ լռեց։

— Եթե առաջ խաղայի՝ երևի չստացվեր։ Հիմի ես ավելի եմ զգում կերպարը, անգամ տեսնում եմ։

Եվ նրա կապույտ աչքերը մտերմիկ փայլ առան, մեկն այն շողերից, որից մարդու սիրտն է ջերմանում։

— Երբ լույսն իջնում է վրան՝ ես տեսնում եմ կապույտ երկինքը և քեզ, կարմիր շուշանները և քեզ, ոսկյա աստղերը և քեզ, արևը և քեզ։ Ամեն տեղ, ամեն ինչի մեջ քեզ։ Քե՛զ, քե՛զ, օ՜, իմ Ինկեն։

Ասում էր ու այն երջանիկ հայացքը, որով փայլում էին աչքերը, առիթ էին տալիս մտածելու, թե հեռվում, երևակայության ստեղծած կապույտ ոլորտներում ինչ-որ դեմք է տեսնում՝ մտերիմ ու սիրելի...

— Ես եմ թարգմանել։ Մի կտոր, այնպե՜ս, ինձ համար։ Հիմի հավատո՞ւմ ես, որ կխաղամ։ Կխաղամ և լավ կխաղամ։ Այսպիսի ինքնավստահություն կարծեմ երբեք չեմ ունեցել։ Այդ էլ գուցե նրա համար, որ Մատիաս Կլաուզենը՝ ես եմ և Ինկենը՝ իմ կյանքի երազը։ Նրանք, որ չեղան իմ կյանքում։ Նրանք, որ կարող էին լինել ու չեղան...

Եվ այս զրույցը դեռ կշարունակվեր, երևի, դեռ կխոսեր (իսկ դա նրա հետ հաճախ չէր պատահում), եթե Ավետը ներս չմտներ և իր պարտքը չհամարեր հայտնել մեզ այն բուռն ընդունելության մասին, որ դահլիճը ցույց էր տվել իրեն։

* * *

Հաուպտմանի դրամայի բեմադրության խնդիրն ուշացավ և ի վերջո մնաց անկատար։ Նրա նախասիրած դերը ուրիշներն էլ ցանկացան խաղալ։ Օրինակ՝ Փափազյանը։ Երբ իմացավ դրա մասին, ասաց.

— Ինչու չէ, թող նա էլ խաղա։

Բայց հետո, երբ մի երկուսն էլ ցանկությունը հայտնեցին՝ տխրեց, տրտնջաց։ Նրան մրցակցությունը չէր զբաղեցնում։ Նա գիտեր, որ ինքը չի լինի այնպես, ինչպես մյուսներն են և նրանք էլ չեն լինի այն, ինչ կլինի ինքը։ Բայց նա համոզված էր, որ դա նրանց ներքին պահանջը չէ։ Կարծում էր, որ պարզապես մի լավ դեր էլ խաղալու արտաքին ցանկություն է դա։ Նրա ոգևորությունն իջավ, այլևս նախկին ոգևորությունը չկար, կլինի՝ լավ, չէ՝ ոչինչ։ Խուսափում էր դրա մասին խոսել և եթե, այնուամենայնիվ, անդրադառնում էր, ապա խոսում էր որպես անկատար մնացած փափագի մասին։

Մի օր, չեմ հիշում, թե ինչպես, նորից խոսք բացվեց դրա շուրջը, և նա ասաց, թե ինչպես է ինքը պատկերացնում՝ մեկ այն տեսարանը, երբ վրդովված պահին Մաքբեթը զարկում և պատռում է պատից կախված նկարը՝ կնոջ դիմանկարը։ Եվ մեկ էլ վերջում՝ մահը։ Հիմա էլ իմ հայացքի առջև են նրա աչքերը։ Առաջին դեպքում՝ նա նայում էր ինձ և թվում էր, թե աչքերը շանթ ու որոտ են արձակում, երկրորդ դեպքում՝ նրա աչքերը մեղմացան՝ ինչպես երկինքն անձրևից հետո։ Եվ մի այնպիսի տաքուկ փայլ առան, այնպիսի սիրով նայեցին, որ ես ոչ մի կասկած չունեի, որ այդ պահին նա ինձ չի տեսնում, այլ Ինկենին, իր կյանքի երազին, նրան, որին տեսնելու երջանկությունն այնքան էր մեծ, որ դրանից հետո դժվար չէ այլևս այս աշխարհի հետ հաշիվները փակել։

* * *

Փափազյանի հոբելյանն էր։ Ծննդյան յոթանասուն տարին։ Հոբելյանական երեկոյից հետո թատերական ընկերությունը ընթրիք տվեց։ Հրավիրված էին այլ հանրապետություններից եկած հյուրերը՝ գրողներ, ռեժիսորներ, դերասաններ։

Շատերն էին իրենց պարտքը համարում բաժակ բարձրացնել և խմել հոբելյարի կենացը, մեծարանքի խոսքեր ասել։ Հրաչյան լուռ էր և ամեն մի խոսքի վրա մի գավաթ օղի էր խմում։ Բավական գինովցած էր նա և այլևս իր

հարևանների հետ կատակներ չէր անում։ Բոլորին լավ հայտնի էր, որ Հրաչյան կենացներ առաջարկելու սովորություն չունի, որ նա միայն սուսուփուս միանում է առաջարկվող կենացներին ու խմում։ Եվ մեկը կատակով, բայց այնպես, որ նա լսի, ասաց, թե Հրաչյան խոսք է խնդրում։
Թամադան դարձավ Հրաչյային.
— А почему нет,— ասաց ու ոտքի կանգնեց։ Պղտորված աչքերով նայեց շուրջը և թեև ռուսերեն, որ հյուրերը նույնպես հասկանան, բայց ավելի մեզ, քան նրանց՝ ասաց.
— Ասում են, որ ես լավ դերասան եմ։ Այնքան շատ են ասում, որ ես էլ եմ հավատում, որ լավ դերասան եմ։ Բայց ես ուզում եմ, որ մարդիկ իմանան, բոլորն իմանան, եթե ես դերասան եմ դարձել՝ ապա՝ Փափազյանի շնորհիվ, այն մարդու, որ իմ առաջին և միակ ուսուցիչն է եղել և մինչև հիմա էլ մնում է այդպիսին։ Ու ես...
Դարձավ ինձ.
— Ինչպե՞ս են ասում ռուսերեն ակնածություն։
Մինչև ես կասեի, նա վրա բերեց.
— Да, благоговение,— ասաց ու շարունակեց,— ես հիմա էլ, ինչպես նաև քառասուն տարի սրանից առաջ, գլուխս խոնարհում եմ մեծ վարպետի առաջ։

* * *

Պետք է ճանապարհվեի Անգլիա։ Մեկնելուցս մի օր առաջ գնացի Հրաչյային տեսության։ Մի քանի ամիս է, ինչ հիվանդ էր։ Երկար ժամանակ մոտը չէի եղել։
Դեմքի գույնը, ինչպես և արտահայտությունը, հիվանդագին էր։ Տնքում էր ծանր։ Աչքերը խամրած էին։ Սևեռ Ներսիսյանինը չէին։ Եվ այդ պատճառով էլ երբեմն թվում էր ինձ, թե անկողնում պառկածը Հրաչյան չէ։ Ծնծող էր թվում այն հակասությունը, որ կար նրա արտաքինի թողած տպավորության և անկասկած հավատի միջև, թե միաժամանակ հետո ինքը, իսպառ ապաքինված, կրկին բեմ է բարձրանալու։

Լսել էր, որ ծրագրվում է Սունդուկյանի անվան թատրոնի արտասահմանյան շրջագայությունը դեպի արաբական երկրներ։ Ասում էր, թե բավական է ինչքան պառկած մնաց, այս է, ուր որ է՝ ոտքի կկանգնի։ Շատ բեմադրություններ արդեն խարխլել են։ Պետք է փորձեր անել, կարգի բերել, մաքրել, հղկել։

Խոսում էր, ու թեև մարած աչքերի մեջ փայլի ոչ մի շողակ չկար՝ ձայնը համոզված հավատով էր հնչում։ Եվ այնքան հաստատ, որ ես, ինչպես և հետո եղած մյուս ընկերները, թեև գիտեինք, որ մեր առջև պառկած է դատապարտված Հրաչյան, մի պահ վարակվեցինք նրա լավատեսությամբ։

Ասացի, թե վաղը թռչում եմ Մոսկվա, այնտեղից էլ Անգլիա։

Ձայն չհանեց, բարձրացրեց գլուխը, ուշադիր նայեց ինձ։ Շրթունքները ժպտում էին, իսկ աչքերը ոչինչ չէին ասում։ Ինձ թվաց, թե ես կռահեցի միտքը, «առողջ լինեի՝ ես էլ գայի»։

Հառաչեց։

* * *

Երբ վերադարձա՝ ուզում էի գնալ Հրաչյային տեսության։ Ասում էին, որ շատ է փոխվել, անճանաչելի դարձել։ Ու ամեն անգամ մի պատրվակ գտնելով՝ այցելությունս հետաձգում էի։ Մի օր էլ գնացի։ Դա նոյեմբերի 5-ին էր, աշխատանքից հետո, ճաշի կողմը։ Ինձ հետ էր Լևոն Հախվերդյանը։ Տնեցիներն ասացին, թե քնած է, բայց կարճ ժամանակից կարթնանա, խնդրեցին սպասել։ Ու մինչ կարթնանար՝ Լևոնը, Հրաչյայի որդին, զգուշացրեց, որ հայրը երբեմն չի ճանաչում, թե ով է եկել իր մոտ։ Հետո ասացին, թե շատ երազներ է տեսնում և հաճախ արթնանում է դրանց ուժեղ ազդեցության տակ ու սկսում է խոսել տեսածից։ Զգուշացրին նաև, որ խոսելիս մեկ-մեկ միտքը խառնվում է, ասածի կապը կորցնում է, անցնում նախորդի հետ ոչ մի առնչություն չունեցող նյութի։

Քառորդ ժամ էլ չէր անցել, որ արթնացավ։ Անցանք նրա պառկած սենյակը։ Հակառակ արված նախազգուշացման, անմիջապես ճանաչեց ինձ, Լեոնին էլ, տվեց մեր անունները։ Եվ ընդհանրապես այդ հանդիպմանը նրա միտքը և հիշողությունը գործում էին բավական հստակ։

Ի՞նչ ուժ պահեց ինձ, գամեց նստած տեղին, որ ես չճչացի ու դուրս չփախա, չեմ կարող ասել։ Ինչպես շատ էր փոխվել։ Ուռել էր սաստիկ։ Աչքերը հազիվ էին երևում։ Եվ աչքերի շուրջը ինչ-որ արնաշերտեր կային։ Ձայնի մեջ ոչ մի եռանդ։ Աչքերիս առաջ մահը դեգերում էր նրա գլխավերևում։ Հետևում էի նրան, չգիտեի ինչ անել։ Ահագին ճիգ էի անում, որ հանկարծ չմատնեմ ինձ պաշարած խորին հուսահատությունը։

— Վատ եմ։

Գանգատվեց, ասաց, թե այսօր ավելի, քան ուրիշ օրեր՝ օդի պակաս է զգում։ Խնդրեց, որ դուռ և լուսամուտ բանան։

Հետաքրքրվեց, թե Անգլիայում եղածս ժամանակ ինչ քաղաքներ եմ տեսել։ Հետաքրքրվեց, թե, արդյոք, եղե՞լ եմ Ստրատֆորդում։ Ասացի, որ այցելել եմ այն տունը, որտեղ ծնվել է Շեքսպիրը։ Երբ ասացի, թե տան երկրորդ հարկում՝ լուսամուտի ապակու վրա բազմաթիվ այցելուներ թողել են իրենց անունները՝ հետաքրքրվեց, թե ո՞վքեր։ Նախ՝ դերասանների անուններ տվի.

— Իրվինգ, Էլլեն Թերի։

Կրկնեց այդ անունները, ինչպես մի խուլ արձագանք։

— Վալտեր Սկոտ։

Ժպտաց։

— Կարլայլ։

Գլխով հաստատող շարժում արեց։

Մի պահ լռեց, հետո կարծես մի տանջալի խոստովանություն անելով՝ ասաց.

— Առողջությանս հետ դաժան վարվեցի։

Լեոնը հարցրեց, թե ի՞նչ նկատի ունի, արդյոք այն, որ շատ է խմել։

— Ո՛չ միայն այդ։

Մյուս Լևոնը կամեցավ խսկույն նյութը փոխել, և ասաց թե հայրիկի հետ որոշել են նոր տարուն մի լավ քեֆ անել, հետո մի ամսով մեկնել Վանա, ուր նա մի-երկու տարի առաջ եղել էր Դավիթ Մալյանի հետ։

Ես զարմացա, թե ինչո՞ւ անպայման Վանա։ Ասացի, որ երեք ժամի չափ եղել եմ և ինձ վրա առանձին տպավորություն չի թողել։

— Օդը մեղմ է, փափուկ։ Իսկ ծովափը շատ գեղեցիկ է։ Լևոնը, որ նույնպես եղել էր Վանայում՝ ավելացրեց.

— Եվ սիրուն աղջիկներ։

— Աղջիկների գլուխս չունեի։

Ուզեցի կատակի տալ.

— Ինչքա՞ն էիր որ։

— Վաթսուն։ Բայց հարցը տարիքը չէ։ Մազերս են ճերմակ, էլ ի՞նչ աղջիկներ։

Պետք էր ստեղծված զվարթ մթնոլորտը պահպանել։ Ու ես ասացի.

— Իմ մազերն էլ արդեն ճերմակել են, ուրեմն ի՞նչ, ես էլ քո օրինակի՞ն հետևեմ։

Մի պահ նայեց գլխիս, կարծես ուզում էր ստուգել, իսկապե՞ս ճերմակել եմ, թե ոչ, ապա մի կարճ լռությունից հետո պատասխանեց.

— Не удобно.

Հախվերդյանը ասաց՝ գիտե՞ք, արդյոք, որ Աճեմյանը ուզենար է պատրաստել՝ «Պաղտասար աղբարը» նկարահանելու համար։ Ասաց՝ այո, բայց թերահավատ ձայնով։

Խոսք բացվեց իր ծննդյան օրվա մասին։ Յոթ օր հետո, նոյեմբերի 12-ին, ծննդյան օրն է։ Ասացի, որ կգանք։ Խնդրեց՝ անպայման։ Հետո ավելացրեց, թե որոշել է այդ օրը կոստյում հագնել, նստել սեղանատանը և հյուրեր ընդունել։ Ծննդյան օրը նշելու է կյանքում առաջին անգամ։

Ասաց, թե դեմ չէ նաև հոբելյանին։

Հիշեցի, որ մի քանի օր առաջ թղթերիս մեջ գտել եմ այն շնորհակալական խոսքը, որով ինքը պիտի հանդես գար հոբելյանական երեկոյին։ Ժպտաց։ Ասացի, թե զուր է հրա-

ժարվել, պատկերացնում եմ, թե ի՜նչ լավ կանցներ հոբել-յանը։

— Այն ժամանակ ուրիշ էր, հիմի ուրիշ։ Հիմի ուզում եմ, թող լինի, ինչո՞ւ չէ։ Պետք է նշել, պետք է տեսնել ինչ է արված, տեսնել, թե ինչ է մնում դեռ անելու։ Ուզում եմ, այո՛, ուզում եմ։

* * *

Հաջորդ օրը, ցերեկվա ժամը մեկը կլիներ, երբ քաղաքում լուր տարածվեց, թե Հրաչյան չկա այլևս։

Մեր գնալուց հետո՝ երեկոյան վատ է դարձել։ Ես և Հախվերդյանը եղանք նրա վերջին այցելուները։ Առավոտյան արթնացել է և չի կարողացել խոսել, միայն մի անգամ տվել է աղջկա անունը, և այլևս ոչ մի խոսք։

Ես հանձն չեմ առնում նկարագրել թաղման թափորը։ Դժվար է, իմ ուժերից վեր։

Դագաղը դրված էր թատրոնում։ Ժողովուրդ էր, որ գալիս էր վերջին տեսության։ Տպավորությունն այնպես էր, որ ամբողջ քաղաքն այդտեղ է, թատրոնի այգում։

Երբ դագաղը դուրս էին բերում, հնչեց Առնո Բաբաջանյանի երաժշտությունը, գրված «Իմ սիրտը լեռներումն է» բեմադրության համար։ Ոչ մի այլ նվագ այդպես չէր հնչի։ Ջութակները շատ էին։ Այդ երաժշտությունը բոլորին տանում էր դեպի նրա կյանքի օրերը, վերջին դերը՝ Մեք-Գրեգորը… Եվ մանավանդ որ մտածված անփութությամբ դագաղին էր նետված Մեք-Գրեգորի բեմազգեստը և նրա շեփորը։

Սրտամորմոք, ողբերգականորեն վեհացնող տեսարան։

Թատրոնի դռները արդեն փակ էին։ Ով ներս չէր ընկել՝ աղմկում էր, բախում դռները, սպառնում ջարդել։ Ուշացողը չէր հաշտվում, որ ուշ է եկել։ Բոլորը մտածում էին, թե իրենք իրավունք ունեն բոլորի նման՝ լինել դագաղի կողքին։ Եվ իրավացի էին։ Իսկ դռները փակ էին ու դուրս մնացած բազմության թիվը անցնում էր մի քանի տասնյակ հազարից։ Մարդիկ լցվել էին թատրոնի այգին, Շահումյանի հրապարակը, շրջակա փողոցները, և չգիտեին, որ դագաղն

արդեն դուրս են բերել թատրոնի եռևի մուտքից։ Մյուս օրն ասացին, թե այդում եղած ժողովուրդը, այդ լուրն առնելով, վրդովվել է՝ ումի՞ց են փախցնում իրենց դերասանին, ինչե՛ր ասես չեն ասել, չիմանալով, որ եռևի մուտքից են դուրս բերել, որ չլինի՞ թե հանկարծ զոհեր լինեն...

* * *

Գերեզմանոցից տուն դարձանք և, մեր ժողովրդական սովորության համաձայն, սեղան նստեցինք։ Բացի մեզանից, սեղանի շուրջը տեղ էին գրավել Վրաստանից և Ադրբեջանից եկած հյուրերը։ Այդ թվում և Ադրբեջանի ժողովրդական դերասան Մարդանովը, որ ճանաչում էր Հրաչյային Պոլսից, նրա պատանեկան տարիներից։ Այստեղ էր և Ակակի Խորավան, որի սերը դեպի Հրաչյան ու ակնածանքը նրա արվեստի նկատմամբ, վաղուց հայտնի է։ Շատերը խոսք ասացին։ Խոսեցին և հյուրերը։ Խոսք ասաց և Խորավան։ Վավիկ Վարդանյանը, որ նստած էր դիմացս՝ հեռացավ սեղանից և մի կարճ ժամանակից վերադարձավ ու գրավեց իր տեղը։ Ձեռքին մի մեծ ծրար կար։ Սեղանը մոտենում էր իր ավարտին, երբ նա բարձրացավ տեղից ու դարձավ Խորավային։ Հուզված էր, դեմքը գունատ։

— Դուք Հրաչյայի լավ բարեկամն էիք։ Եվ այսօր, երբ մեր ժողովուրդը սուգի մեջ է՝ դուք մեզ հետ եք։ Ես տանից հիմա բերի մի լուսանկար, որ տամ ձեզ՝ իբր հիշատակ։ Այստեղ երեք հոգի են լուսանկարված, որոնցից մեկը, ավա՜ղ, արդեն չկա։

Եվ լուսանկարը, ձեռքից-ձեռք անցնելով, հասավ Խորավային։ Լուսանկարված էին բեմի երեք գործիչներ՝ Հրաչյան, Խորավան և ինքը՝ Վավիկը։

Խորավան նայեց լուսանկարին և աչքերից արցունքներ հոսեցին։ Ոտքի կանգնեց։ Մի ձեռքով բռնել էր լուսանկարը, մյուսով սրբում էր թարթիչներից կախված արցունքի կաթիլները։ Գինու բաժակը ձեռքն առավ։ Ուզում էր խոսք ասել, բայց հուզմունքը չոքել էր կոկորդին ու ճնշում էր։ Եվ, մի կերպ հաղթահարելով հուզմունքը, կարողացավ այսքան միայն ասել.

— Да здравствует жизнь!

* * *

Հավաքում եմ գրածս թերթերը՝ թղթապանակի մեջ ամփոփելու համար։ Եվ հանկարծ այնտեղ՝ թղթապանակում, գտնում եմ մի թերթիկ, որ առաջ չէի նկատել, թվագրված է «25 հոկտեմբերի, 1955 թ.»։ Կարդում եմ.

«Մի մեքենագրուհի, որին թելադրում էի Ներսիսյանի հոբելյանական երեկոյի համար գրածս զեկուցումը, պատմեց հետևյալը.

— Մեր հարևան բակում ապրում է մի երիտասարդ, որը իրեն խմելու է տվել։ Կովարար, անկարգ տղա է, միշտ հայհոյանքը բերանին։ Հրաչյա Ներսիսյանի երկրպագուներից է։ Նրա ոչ մի նոր խաղը բաց չի թողնում։ Նույն ներկայացումը նայում է մի քանի անգամ։ Եվ միշտ պատմում է իր տպավորությունները այնպիսի ոգևորությամբ, ասես առաջին անգամ է տեսել։ Եվ ամեն անգամ Հրաչյայի խաղը նայելուց հետո մի տեսակ «մաքրվում է», կարգի է ընկնում, չի խմում, կռվի չի բռնվում, չի հայհոյում, տանը կամ դուրսը որևէ գործ է անում, եթե բակից ջուր ենք բերում՝ գալիս է դույլը ձեռքներիցս վերցնում...»։

Մեքենագրուհին, որ պատմել էր այս, նույնպես չկա։ Բժիշկները չհասկացան նրա հիվանդությունը, և այն օրերին, երբ նոր էր լրանալու նրա կյանքի քառասուն տարին՝ գնաց։

Կարդում եմ թերթիկն ու տխրությամբ մտածում, որ չկա դերասանի բազմահազար երկրպագուներից այս մեկն էլ։ Չկա և ինքը՝ Հրաչյան։ Բայց կյանքը կա։ Մարդիկ երախտապարտ սրտով կհիշեն Հրաչյա Ներսիսյանին, հպարտությամբ կտան նրա անունը։ Չէ՞ որ նա իր արվեստով այնքան մարդկային էր, այնքան հրճվանք էր բերում մարդկանց։ Բայց ավելի ևս նրա համար, որ Հրաչյայի արվեստի ազդեցությամբ «մաքրագործվում» էին հոգիները՝ դառնում ավելի լավ, ավելի բարի, ավելի հարուստ։

## ԵՐԿՈՒ ԵՂԵԼՈՒԹՅՈՒՆ

Դեպքը, որի մասին պետք է պատմեմ, տեղի է ունեցել գնացքում։ Մոսկվայից Երևան էի վերադառնում։ Իմ բախտից կուպեում ոչ ոք չկար։ Հոգնած էի, մտածեցի, լավ է, կհան-

զբոսանում, իսկ երբ դիմացդ ուղեկից կա՝ ուզես չուզես պետք է հարմարվես նրան, ծանոթանաս, զրուցես։ Բայց ուրախությունս երկարատև չեղավ։ Մյուս առավոտ աչքս բացի և տեսնեմ դիմացս նստած է մի աղջիկ՝ եղնիկի աչքերով։ Ես աչքերս ճպճպացրի։ Նա ժպտուն հայացքով նայեց։ Ըստ երևույթին հասկացավ, որ ես ստուգում եմ՝ երազո՞ւմ եմ, տեսի՞լք է իմ առաջ, թե իրականություն։

Տեղի ունեցավ առաջին ծանոթությունը։ Գնացքում մարդ կարճ ժամանակում իմանում է այնքան, ինչքան չի իմանա այլ պայմաններում, մի քանի օրվա ընթացքում։

Աղջկա անունը Նատաշա էր, ազգանունը՝ Բիրյուկովա։ Ծնողներին կորցրել է Հայրենական պատերազմի ժամանակ։ Մեծացել է մորաքրոջ մոտ։ Միտք է ունեցել կինոդերասանուհի դառնալ, բայց ավարտել է Խարկովի Բժշկական ինստիտուտը և այնտեղ էլ աշխատում է հիմա։ Իր տարեկան արձակուրդն է, գնում է Ռոստով՝ մորաքրոջ մոտ։

Հենց որ իմացավ Երևանից եմ, հարցրեց.

— Ճի՞շտ է, որ հայերը լավ դերասաններ ունեն։

Եվ չսպասելով պատասխանիս, ասաց, թե ինքը Խարկովում տեսել է մի հայկական կինոնկար, որից չի երևում, թե այդպես է։

— Ոչինչ չունեմ, փորձված դերասաններ են, իրենց գործի մեջ վարժ մարդիկ, գիտեն, թե ինչ է հարկավոր և անում են,— փորձում էր հիմնավորել իր անբավականությունը։— Բայց ես նրանց չհավատացի։ Իրենք էլ, իմ կարծիքով, չէին հավատում ոչ իրենց ասածին, ոչ էլ արածին։ Դրանից հետո,— շարունակում է իր խոսքը Նատաշան,— ես այլևս հայկական նկարներ չէի նայում։ Ցույց էին տալիս «Զանգեզուրը»։ Չէի ուզում գնալ, ընկերուհիներս ուժով տարան։ Եվ ի՜նչ լավ արին։ Նկարը ոչինչ, վատը չէր, բայց մի դերասան էր խաղում, որին տեսնելը ինչ ասես արժեր։ Ես շատ եմ սիրում իտալական նկարները։ Բայց այդպիսի դերասանի չեմ հանդիպել ո՛չ այնտեղ, ո՛չ էլ մեր մյուս նկարներում։

Մի պահ կանգ առավ։

— Ես հավատացի նրան։ Հավատացի, ինչպես ինձ։ Ու այդ գիշեր չքնեցի։ Անընդհատ իմ աչքի առջև նրա պատկերն

էր։ Իսկ մյուս օրը ընկերուհիներիս ու հիվանդներիս նրա մասին էի պատմում։ Ինչպես սիրահարվածը՝ պահանջ էի զգում նրանից խոսելու։

— Ազգանունը չե՞ք հիշում։

— Ինչպես չէ։

Ասաց ու պայուսակից հանեց ծոցատետրը, թերթեց, գտավ որոնած էջը։

— Հրաչյա Ներսիսյան։

Ցույց տվեց ինձ ծոցատետրը, որ տեսնեմ՝ ճի՞շտ է գրել, թե չէ։

Մի քանի մանրամասնություններ պատմեցի Հրաչյայի կյանքից։ Լսում էր հետաքրքրությամբ, նույնիսկ լարված, որ չլինի, թե հանկարծ ասածիցս մի բան բաց թողնի։ Հետո խնդրում էր կանգ առնել ու շտապ-շտապ նշումներ էր անում ծոցատետրում և ապա նրա մասին անվերջ լսելու պատրաստակամությամբ աչքերը հառում վրաս։ Ու ես պատմում էի ինչ որ գիտեի։

— Ի՜նչ լավ եղավ, որ հանդիպեցի ձեզ,— ասաց Նատաշան ու շնորհակալ աչքերով նայեց ինձ։

Մի կարճ ժամանակ հետո ժպտաց։

— Գիտեմ, որ ծիծաղելու եք, բայց քանի որ խոսք է բացվել, ուզում եմ մի խոստովանություն անել։

Մի պահ կանգ առավ։ Ինձ թվաց, թե տատանվում է՝ ասե՞լ, թե չէ, բայց քանի որ սկսել էր, ինքն էլ համարձակ աղջիկ, չկամեցավ նահանջել։

— Ես ամուսնացած չեմ։ Եվ գիտե՞ք ինչու։ Ձեր այդ Ներսիսյանի պատճառով։ Հիմա դուք կմտածեք, թե ինչ կապ կարող է լինել Ներսիսյանի և իմ ամուսնության միջև։ Բայց կա և շատ սերտ։

Ասաց ու ծիծաղեց։

— Փեսացուներ շատ եմ ունեցել։ Բայց ինձ դուր չեն եկել և միշտ քշել եմ նրանց ինձանից։ Վերջապես մեկն ինձ դուր եկավ։ Մի ամիս ամեն երեկո հանդիպում էինք, գնում էինք կինո, համերգ։ Ավելի հաճախ՝ թափառում էինք քաղաքի խուլ փողոցներով։ Ես երջանիկ էի, նա նույնպես։ Որոշված էր՝ պետք է ամուսնանայինք։ Այդ ժամանակ էր,

որ տեսա Հրաչյա Ներսիսյանին՝ կինոնկարում։ Եվ մի ներքին որոշում հաստատացավ մեջս՝ իմ ամուսինը պետք է այնպիսին լինի, ինչպեսին նա է։ Իսկ իմ փեսացուի մեջ ոչինչ չկար նրանից։ Եվ նա՝ իմ փեսացուն, պատկերացնո՞ւմ եք, այլևս ինձ դուր չէր գալիս։ Խե՛ղճ տղա։ Խնդրում եմ ասածս չհամարեք կանացի կամակորություն։ Ճիշտ այդպես է եղել, ինչպես պատմում եմ։ Ու ես ասացի նրան, որ միտքս փոխել եմ։ Ինչքան ուզեց իմանալ պատճառը՝ չասացի։ Նույնը և աղջիկներին, որ ասում էին, թե բախտը կանգնել է իմ առջև, իսկ ես նաղ ու տուզ եմ անում։ Չասացի, գիտեի, որ չեն հասկանա, կծիծաղեն վրաս։ Բայց այդպես էր։ Դրանից անցել է երկու տարի և չեմ զղջում արածիս համար. սպասում եմ ու հավատում, որ կգա նա՝ իմ փեսացուն, նա, որ նման կլինի նրան։

Ոչինչ չասացի։

— Դուք ծանո՞թ եք հետը։

— Այո։

— Ինչ բախտավոր եք։ Երբ հասնեք Երևան՝ բարևեք նրան։ Ասացեք, որ Նատաշա Բիրյուկովան, Խարկովում ապրող մի բժշկուհի, իր երկրպագուն է։

Ես լուռ էի։

— Լա՞վ։

Հայացքս փախցրի նրանից։

Նա դեմքը մոտեցրեց ինձ, գտավ իմ աչքերը և վախվորած արտահայտությամբ նայեց ուղիղ աչքերիս մեջ։ Ոչինչ ասել պետք չէր։ Նա ամեն ինչ հասկացավ։ Լուռ ետ կեցավ, և մեջքով պինդ սեղմվեց թիկնակին։ Ներքին այրոցից էր, թե ինչ, մի պահ շառագունեց, հետո գունատվեց, դարձավ ճեպ-ճերմակ։ Եվ արցունքները, խոշոր կաթիլներ, վազեցին։ Լուռ էր։ Ես էլ ոչ մի ձայն չէի հանում։

Ոչ մի վշտահար անվերջ լաց չի լինում։ Այդպես էլ Նատաշան։ Նա մի հոգոց հանեց և թաշկինակի ծայրով սրբեց աչքերի թարթիչներից կախված վերջին արցունքը ու մի շնորհակալ արտահայտությամբ նայեց ինձ, երևի նրա համար, որ լուռ մնացի, չխանգարեցի իրեն լալ։ Եվ այլևս ոչինչ չխոսեց հետս։ Ավելի շատ պատուհանից դուրս էր նա-

յում, իր տխուր հայացքը բնությանը հառած, իսկ երբ այդ զբաղմունքից հոգնած շրջվում էր իմ կողմը, ապա խռովկան արտահայտությամբ մնում էր գլխահակ, ասես անհարկի վշտացրած լինեի նրան։

Մյուս օրը Ռոստով հասանք։ Նա վերցրեց իր փոքրիկ ճամպրուկը, դանդաղաքայլ առաջացավ, դռան մոտ շրջվեց իմ կողմը, խուլ և անտարբեր ձայնով ասաց.

— Ի՜նչ լավ կլիներ, եթե չհանդիպեի ձեզ։

Արդեն ուշ գիշեր էր, բայց ես քնած չէի։ Հայացքիս առաջ նորից կանգնած էր Նատաշա Բիրյուկովան, ոչ թե արցունքն աչքերին, ոչ էլ խռովկան, այլ այն Նատաշան, որ փութկոտ սիրով գրի էր առնում իր ծոցատետրի մեջ Հրաչյայի մասին իմ ամեն մի պատմածը։ Ես մտածում էի, թե ինչ երջանկություն է, երբ քեզանից հեռու, ինչ-որ տեղ կա մի սիրտ, որ բաբախում է քեզ համար, չափանիշ համարում քեզ իր կյանքի հակասական ճանապարհին։

* * *

Կես տարի էր անցել Հրաչյայի մահից։ Մի քանի ընկերներով, որոնց մեջ նաև Լևոն Ներսիսյանը, գնացինք գերեզմանատուն։ Գիշեր էր։ Ժամն էլ բավական ուշ։ Երբ տեղ հասանք՝ տեսանք երեք մարդ նստել են թարմ ծաղիկներով զարդարված հողաթմբի կողքին։ Այս երե՞քն էին բերել ծաղիկները, թե ուրիշ երեք այցելու՝ դժվար էր որոշել։ Բայց որ սրանք գինու շշով էին եկել և մի սրտագին խոսակցություն սկսել՝ կասկածից վեր էր։ Սկզբում մեզ վրա ուշադրություն չդարձրին, բայց հետո, երբ տեսան, որ անցանք և կանգնեցինք հողաթմբի մյուս կողմում՝ անբավական նայեցին միմյանց և ապա իրենց դժկամ հայացքները ուղղեցին մեզ։ Հասկացանք, որ մեր գալով խանգարվեց նրանց կյանքի նվիրական պահերից մեկը։ Վադիմ Մելիքսեթյանն ուզեց փրկել դրությունը և դառնալով նրանց, բայց մատնացույց անելով Լևոնին, ասաց.

— Հրաչյա Ներսիսյանի որդին է։

Երեքն էլ կերպարանափոխ եղան։ Անմիջապես ոտքի

կանգնեցին։ Լևոնի մեջ գտան արտիստին, որի սերը գիշերվա ուշ ժամին բերել էր նրանց այստեղ։ Ինձ թվաց, թե նրանք անհարմար զգացին իրենց մտերմական անկեղծության համար այդ պահին, և այն, որ իրավունք էին վերապահել «դու»-ով դիմել մեծ մարդու հիշատակին։ Մեկը ճակատին թափված մազերը ետ մղեց, մյուսը շապկի բաց կոճակները կոճկեց։ Ու նրանցից մեկը, մոտեցավ Լևոնին, գրկեց ու ասաց.

— Դու բախտավոր ես։

Լևոնը ձայն չհանեց։

— Դու բախտավոր ես, որ քո ցավը քո ցավը չէ միայն։ Բոլորինս է, ամբողջ ժողովրդինը։

Այլևս ոչ մի խոսք չասացին։ Թողին ու հեռացան։ Ովքեր էին՝ այդպես էլ չիմացանք։ Եվ ինչ կարևոր է։

Այդ գիշեր երկար ժամանակ քուն չեկավ աչքերիս։ Ես Հրաչյայի մասին չէի մտածում։ Ոչ էլ նրա որդու։ Մտածում էի այն երեքի մասին։ Մտածում էի այն մասին, որ ժողովուրդը ժողովուրդ է ոչ միայն ներկայով, ոչ միայն ապագայի ձգտումով, այլև հիշողությամբ, որը մի խնամքոտ իմաստությամբ անցյալից ջոկում և պահպանում է այն, ինչ նրա հետ է այսօր և նրա հետ կլինի վաղը՝ գալիքի շեմին։

1925 թվական։ Թիֆլիս։ Թատրոնով տարված պատանի էի, որ առաջին անգամ Փափազյանին տեսա բեմում. Օթելլոյի դերն էր կատարում։ Այդ տարի Աբելյանն էլ եկավ։ Նա էլ Օթելլո խաղաց։ Աբելյանի խաղում կար մի բան, որ ընկավ սրտիս խորքերը և մնաց մինչև օրս։ Ինչ վերաբերում է Փափազյանին, որ իր արվեստով գերել էր հանդիսատեսին, ինձ համար բեմի գերագույն մակարդակը եղավ, ու եթե մի երկու տարի անց դիմում տվի և ընդունվեցի «Հայարտան» դրամատիկական ստուդիան՝ «մեղքը» Փափազյանինն էր։

Փափազյանը մեզ դաս էր տալիս՝ դերասանի վարպետություն։ Տևեց դա մի ամբողջ տարի։ Չկար ներկայացում, այն էլ Փափազյանի մասնակցությամբ, որ բաց թողնեի՝ Օթելլո, Համլետ, Արբենին, Ղարա, Դոն-Ժուան, Ժորժ, Քին։

Երկու տարի տևեց իմ հափշտակությունը. թատրոնը թողի, բայց Փափազյանը ինձ համար մնաց Փափազյան։ Տեսել եմ նրա բազմաթիվ խաղերը և՛ այն դեպքում, երբ նա «գլուխ է պահել» և՛ այն դեպքում, երբ, թող որ հնարճ հնչի, աստվածային է եղել...

Իմ բարեկամությունը Փափազյանի հետ սկսվեց Հայրենական պատերազմի տարիներին։

1944-ին Երևանում կազմակերպվեց շեքսպիրյան փառատոն։ Փափազյանը չկար։ Մի օր մեր անվանի դերասաններից մեկին հարցրի, թե ինչո՞ւ Փափազյանը հրավիրված չէր։ Եվ այդպես խոսք բացվեց Փափազյանի մասին։ Անվանի դերասանը մի արտառոց միտք հայտնեց. բնությունը,— ասաց նա,— Փափազյանին տվել է ամեն ինչ և այնպիսի չափերով, ինչպես ոչ ոքի, բացի մտքից։ Նրա խաղերում միտք չկա։ Ես վեճի բռնվեցի։ Եվ այդ օրը, վեճի տպավորության տակ,

մտածեցի գրել Փափազյանի Օթելլոյի մասին ու ցույց տալ, թե նրա միտքը ինչպիսի հազվագյուտ խորք ունի։ Փափազյանին նամակ գրեցի, հարցնելով, թե երբ է մտադիր գալ, որ միտք ունեմ անդրադառնալ նրա Օթելլոյին։ Ուղարկեցի նրան «Համլետի» մասին գրած իմ հոդվածը։ Ստացա ընդարձակ պատասխան։

Ի՞նչ փոթորկալի արկածների միջով ասես, որ չի անցել Փափազյանի կյանքը։ Լրջությունը կյանքի անլուրջ հաճույքներին ներդաշնակելու դժվար կենսաձևին տիրացած՝ աշխարհի որ անկյունում ասես, որ չի եղել։ Եվ ամենուրեք Փափազյանի անունը շրջապատվել է խոսք ու զրույցով նրա տարածված հռչակից, դասական գեղեցկությունից, նրա շուրջը հյուսված բազում առասպելներից։ Երիտասարդությունը շտապել է ծանոթանալ, նրա ինքնագիր մակագրությունը խնդրել գրքի կամ լուսանկարի վրա, կարծես այնքան շռայլությամբ նրան բաժին ընկած անմահությունից մաս «մուրալով»։ Արկածախնդիր կյանքի բոլոր վտանգներից նա անցել է անվտանգ. սեր տվել, սեր առել, սեր առել՝ անսեր թողել։ Այսպես նա հասել է իր փառքի կատարներին՝ վայելելով կյանքը, ինչպես մի ճշմարիտ արվեստագետ...

Ահա այդ նույն Փափազյանը ինքնահոժար մնաց պաշարված Լենինգրադում։ Նա կարող էր ավելի շուտ գալ։ Բայց նա չլքեց պաշարված քաղաքը պատերազմի նույնիսկ ամենաահեղ օրերին, թեև շատ ուրիշ հռչակավոր դեմքերի հետ՝ նրան էլ առաջարկեցին մեկնել։ Թշնամու գնդակների տարափի տակ շրջում էր զորամասից զորամաս, զրուցում ռազմիկների հետ, նրանց համար ոգի և արիություն բերող խոսքեր գտնում Շեքսպիրից և իր սրտից։

Փափազյանը մեզ մոտ եկավ պատերազմից հետո միայն։

Նստած եմ Փափազյանի դիմաց։ Զրուցում ենք։

Սա նույն Փափազյանը չէ, որին մենք տեսել ենք տարիներ առաջ։ Պատերազմը դրել է իր կնիքը. սիրելի վայրերի ավերում, հռչակավոր կոթողների կործանում, ոմբակոծության ահ, նույնիսկ հարազատի կորուստ... Փոխվել է նա։ Առաջ էլ խելոք էր նրա հայացքը, բայց միշտ էլ մի անհոգ, ավելի շուտ՝ չարաճճի զվարթությամբ քողարկված։ Այժմ

անհոգությունը տեղի է տվել մի փոքր կարծես հոգնած արտահայտության՝ մտքի և հոգու այն չտեսնված լարումից, որ նա ապրել էր այդ տարիներին։

* * *

**1945**-ին Փափազյանը անցել էր Բաքու, մտադիր էր գնալ Թբիլիսի, իսկ այժմ եկել էր Երևան։ Բաքվից հեռագիր էր ուղարկել և խնդրել թատրոնի ղեկավարության համաձայնությունը՝ հանդես գալու մի քանի ներկայացումով։ Մերժել էին։ Եվ Փափազյանը Երևան եկավ որպես կոնցերտանտ։ Հայֆիլհարմոնիայի Փոքր դահլիճում հանդես եկավ. Օթելլոյից, Մակբեթից, Համլետից, Լիրից մենախոսություններ էր կարդում, ինչպես նաև բանաստեղծություններ Պեշիկթաշլյանից ու Տերյանից։

Լավ հիշում եմ. հագին սև ֆրակ կար։ Շատ էր նիհարել։ Դեմքը գունատ էր, հայացքը թախիծով լի և գլուխն էլ մի թեթև օրորվում էր։

Կատարում էր, իհարկե, լավ, բայց դա մեր իմացած Փափազյանը չէր։ Անտրամադիր էր, և այնպիսի տպավորություն էր ստացվում, թե պարտք է կատարում։

Առաջին համերգի ընդմիջմանը շտապեցի իր մոտ։ Այնտեղ էր և Հրաչյա Ներսիսյանը, որը, ի տարբերություն մեր մյուս աչքի ընկնող դերասանների փայլուն բացակայության, շտապել էր ներկա լինել։

Տեսնելով, որ կողմնակի մարդ չկա մեր կողքին, Հրաչյան, որ Փափազյանին համարում էր իր ուսուցիչը, հաղթահարելով անհարմարության զգացումը՝ ասաց.

— Էս ի՞նչ ես անում, վարպե՛տ, մի քեզ ցույց տուր, ինչպես առաջ։ Ինչի՞ ես թողնում, որ ժողովուրդը տխրի, ու դահլիճում ցուրտ լինի։

Փափազյանը ժպտաց։ Եվ այդ ժպտի մեջ կար մի այնպիսի դառնություն, որ ես երբեք չէի տեսել նրա դեմքին ոչ միայն այդ պահին, այլև դրանից հետո։ Սևեռեց հայացքը ընկերոջ աչքերին և մի այնպիսի շեշտված, ազդու արտահայ-

տուԹյամբ, որ սա իրեն վատ զգաց, մտածելով, Թե երևի վշտացրեց նրան։

Փափազյանը ձեռքը դրեց Հրաչյայի ուսին։

— Որտե՞ղ ես նստած, երրորդ կարգո՞ւմ։ Շատ լավ։ Քեզ համար մի կտոր կկարդամ, միայն մի կտոր։ Ավելին չպահանջես, այսօր չեմ կարող, ուժիցս վեր է։ Այդ էլ կկարդամ քեզ համար, հասկանո՞ւմ ես, միայն քեզ համար, որ տեսնես, Թե Վահրամդ ինչի է ընդունակ, այն Վահրամը, որի առաջ, սիրելինե՛ր, պինդ փակել եք Թատրոնի դռները։

Հրաչյան վիրավորվեց։ Եվ իրավունք ուներ։ Իսկ Փափազյանն էլ այդ ասելիս, իհարկե, նկատի չուներ նրան, բայց առիԹ էր որոնում հոգու դառնուԹյունն արտահայտելու։

— Գիտեմ, գիտեմ, սիրելի՛ս։

Ու պինդ գրկեց Հրաչյային, սեղմեց կրծքին, համբուրեց և դարձավ հեռվում կանգնած մի մարդու ու կարգադրեց երրորդ զանգը տալ։

Մտանք դահլիճ։ Հրաչյայի կողքին ազատ աԹոռ կար. նստեցի նրա մոտ։ Բեմ եկավ Փափազյանը և սկսեց կարդալ այնպես, ինչպես առաջին բաժնում։ Հրաչյան շուռ եկավ իմ կողմը, նայեց ինձ զարմացած, ուսերը վեր բարձրացնելով։ Փափազյանը, որ այդ ժամանակ Լիրից մի հատված էր կարդում, որսաց ընկերոջ այդ հայացքը և ժպտաց։ Այս անգամ նրա ժպտի մեջ չարաճճի գոհունակուԹյուն կար, ասես ուրախ էր, որ բարեկամին ջղայնացնում է։

Համերգը մոտենում է վախճանին։ Իսկ Փափազյանը շարունակում է նույն ձևով։ Հրաչյան նստած է ճնշված։ Հայտարարվեց վերջին համարը՝ մենախոսուԹյուն ՄակբեԹից։ Նա կարդաց այն կտորը, երբ ՄակբեԹը…

Երկու խոսք էլ չէր ասել, որ ամբողջ դահլիճը լարվեց։ Մարդիկ շունչները պահած հետևում էին Փափազյանին։ Նկարագրել հանձն չեմ առնի։ Բայց չեմ կարող նրա կատարումից մի պահ չարձանագրել. դեմքի մի այտը՝ աջը, կանգ առավ, քարացավ, իսկ մյուսը ջղային ցնցում էր ապրում, մկանները դողում էին, իսկ աչքը ասես ծռվել էր, կարծես ջանք էր Թափում խոռոչից դուրս գալու։ Սահմռկեցուցիչ մի պատկեր էր դա։ Նայում էիր ու սարսափում։ Տանջահար մի

ոճրագործ էր մեր աչքի առաջ։ Երկու մարդ կռվում էին նրա մեջ։ Ոճրագործը հաղթեց։ Եվ երբ նա բարձրացրեց աջ ձեռը՝ երևակայական դաշույնը բռնած՝ մարդիկ տեսան այդ դաշույնը։ Այո՛, տեսան։ Ու թեև լավ գիտեի, որ նրա ձեռին ոչինչ չկար, ոչ ոք ինձ չի կարող համոզել, թե նրա ձեռին այդ պահին, լույսի տակ շողացող դաշույն չկար։

Երբ մենախոսությունն ավարտվեց, դահլիճը թնդաց որոտալի ծափերից, իսկ ինքը, լուռ ու գունատ, գլխահակ կանգնել էր իրենով հիացած հասարակության առջև։

Երբ տուն էինք գալիս, Հրաչյան լուռ էր։ Երևում էր, որ տեսածի տպավորության տակ էր։ Եվ հանկարծ կցկտուր ասաց.

— Հրաշք էր։ Չեմ հավատում, թե մի ուրիշ դերասան էլ դրան ընդունակ լինի։

Կարճ լռությունից հետո.

— Եթե աչքովս չտեսնեի, ուրիշները պատմեին՝ չէի հավատա։

* * *

Փափազյանը մի օր ասում էր, թե ինչ կցանկանար խաղալ։ Հիշեց Սիրանո դը Բերժըրակը, Էդիպը, Թիմոն Աթենացին։

— Իմ ամենամեծ երազը մնում է Թիմոն Աթենացին։ Ասում են Ադամյանը շատ է մտածել խաղալու մասին։ Դա իմ վաղուցվա երազն է։ Ինձ հետ և իմ մեջ մեծանում, հասունանում է այդ պահանջը։

Հարցրի՝ իսկ Արքա Լի՞ր։

— Արքա Լի՞ր, դա արդեն պատրաստ կերպար է, Լենինգրադում խաղացել եմ, մնում է աշխատել հայերեն տեքստի վրա։

Հարցրի, թե ինչպես ընդունվեց Լենինգրադում նրա Լիրը։

Փափազյանը նայեց իմ կողմը, ժպտաց և խուսափելով հարցի պատասխանը տալուց՝ ասաց.

— Ես Լիրի կերպարի շուրջը շատ էի խորհել, տարիներ անընդհատ զբաղվել, բայց փոսծս ըմբռնումը կենդանու-

թյուն տռավ միայն վերջին ժամանակները։ Ես մի աղջիկ ունեմ, որին անչափ սիրում եմ։ Թատրոնին է նվիրել իրեն և կարծես ոչ-անհույս։ Աղջիկս աննկատելի մեծացավ, բայց ես կորցրի նրան պատերազմի ժամանակ։ Ես այդ զգացի առանձնապես կնոջս մահից հետո, ինչպես երևում է՝ նա էր մեզ իրար բերողն ու կապողը։ Մեծացավ, ինքնուրույն սկսեց մտածել։ Մի տեսակ իր բախտին հանձնվեց։ Կյանքի հանգամանքները դասավորվեցին այնպես, որ ես նրան ղեկավարել չկարողացա, հայրական իրավունքներս կորան ու ես զգացի, որ աղջիկս ձեռիցս գնում է։ Ու ես, մի տեսակ շոշափեցի Լիրին, զգացի նրա հոգեբանությունը։ Աղջկաս կապակցությամբ ունեցած ապրումներս օգնեցին կծիկի միջից գտնելու այն թելը, որը քաշելով՝ կարելի էր զգալ, հասկանալ Լիրին։

* * *

Մի անգամ էլ անդրադարձավ «Սիրանո դը Բերժըրակ» խաղալու մտքին։

«Սիրանոն» զգույշ պետք է խաղալ, Ռոստանը խոր հեղինակ չէ, բայց փայլ ունի, սրամտություն, կենսախնդություն։ Շատ կուզեի Սիրանո խաղալ։ Սիրանոյի թարգմանությունն ունեմ, որ կատարել եմ վաղուց և խաղացել։ Հիմա կշտկեմ, նորից աչքի կանցկացնեմ։

* * *

Վերջապես, Փափազյանին իրավունք տրվեց Սունդուկյանի անվան թատրոնում հանդես գալու։ Չորս ներկայացում էր տալու. երկու անգամ Օթելլո, նույնքան էլ Համլետ։

Առաջին ներկայացումը նշանակված էր 1946-ի հունվարի 19-ին։

Ժողովուրդն անհամբեր էր տեսնելու նրա խաղը։ Բոլորն անխտիր, և՛ նրանք, որ մի ժամանակ տեսել էին, և՛ նրանք, որ առաջին անգամն էին տեսնելու։ Թատրոն էին շտապում ամենքը։ Ովքեր տեսել էին՝ ճշմարիտ արվեստի գերագույն

հաճույքը մի անգամ էլ զգալու, իսկ ովքեր չէին տեսել՝ լսածով գայթակղված, սրտատրոփ սպասում էին վարագույրի բարձրանալուն՝ հաղվագյուտ խաղ տեսնելու նախահաճույքն ապրելով։ Դժվար է նույնիսկ որոշել, թե ով էր ավելի անհամբեր, նա՞, որ տեսել էր, այն էլ մի քանի անգամ, թե նա, որ առաջին անգամ էր դիտելու։

Վերջապես՝ վարագույրը բացվեց։ Ներս են մտնում Յագոն և Ռոդրիգոն։ Մի փոքր իրար հետ զրուցելուց հետո, աղմուկով ձայն են տալիս Բրաբանցիոյին. կեսգիշերին արթնացնելով ծերունուն, հայտնում են նրա աղջկա՝ Դեզդեմոնայի փախուստը և ամուսնությունը Օթելլոյի հետ։ Պատկերը վերջացավ, կանաչ թավիշե վարագույրներն իրար եկան։ Մի փոքր հետո, վարագույրի մեջտեղի ծալքը ետ գնաց, երևաց Յագոն, ճանապարհ տալով Օթելլո-Փափազյանին։

Ահա և վերջապես Օթելլո-Փափազյանը բեմի վրա իր բոլոր շքեղությամբ՝ փառահեղ գլուխը լայն ուսերին, կանգնած հաստատ ու հպարտ։

Թատրոնը դղրդում է ծափերի որոտից։ Ծաղկեփնջեր են բեմ թռչում։ Փափազյանը բռնում է ծաղկեփնջերից մեկը, գոտկատեղից հանում կեռ դաշույնը, մի վարժ հարվածով կիսում ու ետ նետում դեպի հասարակությունը։ Ցրիվ եկած ծաղիկները դահլիճով մեկ շաղ եկած՝ ընկնում են այս ու այն կողմ։ Եվ այս ամենը այնպես հանգիստ, այնքան գեղեցիկ ու ճոխ, որ կարծես դերի մի մասը լիներ։ Ճիշտ է, ծափերի մի նոր թնդյուն է բարձրանում, բայց և արտիստի մի շարժումը բավական է, որ թատերասրահը նորից ենթարկվի իրեն և այնուհետև մինչև ներկայացման վերջը, բոլորին պահի իր զորեղ հմայքի տակ։

* * *

Իմ այն հարցին, թե պատերազմը դեր խաղացե՞լ է, արդյոք, իր անձնավորած կերպարների ըմբռնման մեջ։

— Արտիստը կյանքից է, հետևաբար, այնպիսի խոշոր իրադարձությունը, ինչպես պատերազմն է, չէր կարող աննշմար անցնել, միայն թե երևի շատ դժվար է ասել, թե

ինչի՛ ազդեցության տակ ի՞նչը ինչպես եղավ։ Այդ ազդեցությունները կուտակումներ են, հոգեկան կուտակումներ, որոնք քո գիտակցության, թերևս, ավելի ճիշտ լինի ասել, ենթագիտակցության մեջ շերտ առ շերտ հավաքվում և մի օր հանկարծ զգալ են տալիս իրենց այնպես, որ դու ինքդ էլ կդժվարանաս ասել, թե սա այսպես եղավ, որովհետև կյանքում այսինչ ժամանակ վկա եմ եղել այս բանին։

Լռեց։

— Կարող եմ ասել միայն, որ ոչ մի տպավորություն զուր չի անցնում՝ մի տեղ, որևէ կերպ արտահայտվում է։

Մի փոքր հետո.

— Ինչ վերաբերում է պատերազմին, ապա իմ ամենամեծ զգացումը, որը և, անշուշտ, դեր է խաղացել, մարդու կորուստ է։ Մարդկանց կորուստը յուրաքանչյուր աստծո օր, այն էլ այդպիսի չափերով, բարձրացրեց իմ աչքում մարդու արժեքը։

Կանգ առավ։

— Պատմեմ ձեզ մի դեպք, իմ խմբով գնում եմ Կրոնշտադտ՝ զորամասում ներկայացում տալու։ Ես ու երեք դերասանուհի նստեցինք մարդատար մեքենա, իսկ դերասանները,— ի՜նչ լավ տղաներ էին, եթե միայն տեսած լինեիք դրանց,— բեռնատար մեքենան բարձրացան և տեղավորվեցին դեկորների արանքում։ Ծանապարհը սառած Նևայի վրայով էր։ Մեր մեքենան շուտ հասավ տեղ։ Անցավ բավական ժամանակ, իսկ բեռնատարը չկա ու չկա։ Մի ժամ էլ անցավ։ Մեքենավարը թե՝ «Գնամ, տեսնեմ ինչ են եղել»։ Մի վատ զգացում մեջս խոսեց ու ես էլ միացա։ Մի երեք թե չորս կիլոմետր գնացինք և ի՜նչ տեսնենք՝ սառույցը ճեղքվել է, մեքենան սուզվել է գետը, բոլորին տանելով իր հետ։ Կարո՞ղ է մի այդպիսի դեպք ինչ-որ բան չփոխել մարդու ներսում, բայց ե՛րբ և ի՛նչ՝ դժվար է ասել։

* * *

Խնդրեցի, որ պատմի աշխարհահռչակ ողբերգակ Այրա Օլրիջի դաշույնի մասին, որ այժմ իր մոտ է։

— Երևի գիտեք, որ Օլրիջը թաղված է Կալուգայում։

Օլրիջի մահից հետո տանտիրուհին, կարծեմ Ցյոկլա Անտոնովնա, նրա դաշույնն ուրիշ իրերի հետ ծախում է Իվանով-Կազելսկուն. սա գործ է ածում Օթելլո խաղալիս, բայց մի օր էլ թղթախաղի մեջ տարվում է Մամոնտ-Դալսկուն։ Երկար ժամանակ մնում է նրա մոտ, մինչև որ սա էլ իր հերթին, դարձյալ թղթախաղի մեջ, տարվում է Ադելհեյմին։ Մի յոթ-ութ տարի առաջ, ռուսական քաղաքներից մեկում, տարբեր թատրոններում ես և Ադելհեյմը պետք է հանդես գայինք միևնույն դերում։ Թե՛ նրա, թե՛ իմ բոլոր տոմսերը սպառված էին։ Ներկայացումից մի փոքր առաջ Ադելհեյմից նամակ ստացա, որով հայտնում էր, թե ծեր է ու հիվանդ և խնդրում է իր տեղը խաղալ։ Ես նրա խնդիրքը չմերժեցի։ Եվ ի պատասխան՝ նա Օլրիջի այս դաշույնը նվիրեց ինձ։

Պատմեց այս բոլորը, հետո շատ հասարակ ավելացրեց.

— Դաշույնի վրա գրված է Օլրիջի անունը. եթե տեսնեք Օլրիջի լուսանկարն Օթելլոյի դերում՝ այդ դաշույնն է վրան։

* * *

Սուրճին փոխարինեց ծխախոտը։ Փափազյանը գրպանից հանեց մի արծաթյա պորտսիգար, որի կենտրոնում առյուծ էր նկարած արևի և նրա ճառագայթների ֆոնին։ Իսկ նկարի շուրջը ինչ-որ բան էր գրված։

Տեսնելով իմ հետաքրքրությունը, Փափազյանն ասաց.

— Ստացել եմ Իրան եղած ժամանակս, գնացել էի, ինչպես երևի գիտեք, կազմակերպելու նրանց ազգային թատրոնը։ Իրանում գոյություն ունի մեր կարմիր խաչի նման ընկերություն՝ Շիր-խորշիդ։ Խնդրեցին, որ ելույթ ունենամ իրենց ակումբում։ Խոստացա, բայց հետո նույն օրը կնոջիցս հեռագիր ստացա, որ մայրս ծանր հիվանդ է։ Այնպես կոտրվեցի, որ հրաժարվեցի գնալ։ Այդ երեկո ինձ մոտ եկան ընկերության ղեկավարները և ասացին, թե իմ հրաժարականը պատիվ է բերում ինձ որպես ծնողասեր որդու։ Եվ ինձ պարգևեցին այս պորտսիգարը, որի վրա մակագրված է՝ «Հիշատակ Իրանի մայրերից, որոնք թող քեզ հարազատ մայր լինեն»։

* * *

Անհնկատելի, չեմ հիշում, թե ինչպես, մեջտեղ եկավ Դանթեի «Դժոխքի» ռուսական շքեղ հրատարակությունը։ Փափազյանը սիրով ձեռքն առավ, թերթեց մի քանի էջ, ապա աչքը մնաց բացված գրքի վրա, աչքերը փակեց, գլուխը մի փոքր ետ գցեց, և իտալերեն հատվածներ կարդաց... Հետո հանկարծ կանգ առավ.

— Լենինգրադում բավական հարուստ գրադարան ունեմ մի շարք լեզուներով, կան հազվագյուտ գրքեր։ Պատերազմի ժամանակ շատ թանկագին գրքեր եմ ձեռք բերել. ձյունի վրա ընկած շքեղ հրատարկված գրքեր եմ հավաքել, տարել տուն։ Շատ ուրիշ հազվագյուտ իրեր էլ կան մոտս... Հավաքել եմ տարիների ընթացքում՝ կնոջս հետ։

Այս խոսքի վրա հանեց ծոցատետրը, որի մեջ չորացած ծաղկի թերթ էր դրված... Կարոտով նայեց...

— Սա իմ ծաղկանոցից է։ Պարտեզից զատ մի փոքրիկ ավազան ունեմ, ի՜նչ հավեր ունեմ, ի՜նչ ալքորներ... ինչ արի, որ մի հնդկահավ ապրեցնեմ՝ չեղավ, չդիմացավ, մի լավ կով ունեմ... Ինձ հյուր եկեք, դժգոհ չեք մնա...

* * *

Մի հավաքույթի ժամանակ Փափազյանին հարց տվին, թե ինչպես է իր դերը պատրաստում։

— Ինչպե՞ս եմ ուսումնասիրում պիեսը և կերպարը։ Կարդում եմ մեկ անգամ, խորհում, ապա կարդում նորից՝ ստուգում տպավորությունները, մեծ ուշադրություն դարձնում խաղացվելիք կերպարի վիճակներին ու խոսքերին։ Կերպարն ուսումնասիրում եմ և պատկերացնում նրան ամենատարբեր վիճակներով. օրինակ՝ Օթելլոն. ի՞նչ կլիներ Օթելլոյի հետ, եթե նա չհանդիպեր Դեզդեմոնային, ի՞նչ կլիներ, եթե նա ամուսնանար իր ցեղակից կնոջ հետ, ինչո՞ւ նա սիրեց և սիրվեց Դեզդեմոնայից, ի՞նչ կլիներ Օթելլոն, եթե ապրեր մեզ հետ, հագնվեր, դիցուք, ինձ նման։ Դրանք

բոլորը ճշտում և հղկում են կերպարի մասին ունեցած մտապատկերը, բացում նրա բոլոր, ամենափոքր անկյուններն անգամ։ Արտիստը պետք է ուսումնասիրի անգամ կենդաղային ամենափոքր մանրուքները։ Ես այդպես եմ վարվել իմ Օթելլոյի հետ։ Երբ խաղում եմ Օթելլոն կամ որևէ այլ կերպար, ամբողջ ներկայացման ընթացքում, այդ թվում և ընդմիջումների ժամանակ, կերպարն իմ մեջ ապրում է, պահում եմ նրան իր զարգացման վիճակում։ Զգում եմ նրա աճի պրոցեսը։ Մի քանի հազար անգամ խաղացել եմ Օթելլոն և ամեն անգամ իմ մեջ առավել կամ պակաս ճշտությամբ ծնվել և վախճանվել է Օթելլոն, քանի որ ներկայացումն սկսվելիս ամեն անգամ հղանում եմ այդ կերպարը։

Արտիստը պետք է իր մտապատկերում ունենա խաղացվելիք կերպարի բարձրագույն և կատարելագույն պատկերը, որին պետք է շարունակ ձգտի, բայց չկարողանա հասնել։ Եթե նա կարողացավ հասնել և նույնանալ նրա հետ՝ ստեղծագործությունը դադարում է։ Եթե ես համոզվեմ, որ հասել եմ իմ Օթելլոյին, նշանակում է Փափազյան չկա, չկա ստեղծագործող, բայց միշտ, իմ ամբողջ կյանքում, նպատակ եմ դրել հասնել նրան, ամբողջ կյանքումս ընկել եմ այդ շանորդու հետևից և չեմ հասել։ Երբեմն ինձ թվացել է, թե ահա հասնում եմ, անգամ բռնել եմ նրա փեշերից, բայց նա հեռացել է, փախել է հեռու և եղել ավելի բարձր, ավելի կատարյալ, քան իմ անձնավորումն է։

* * *

Փափազյանի հանդիպումն էր Երևանի թատերական ինստիտուտի ուսանողության հետ։

— Իմ փոքրիկ բարեկամներս, գիտեք, որ բնությունը ամենամեծ դպրոցն է մարդու համար։ Ձեզ հարկավոր է հաճախ քաղաքից դուրս գալ շրջելու դաշտերում կամ լեռներում։ Բնության մեջ ապրել՝ այդ նշանակում է նորացնել, բարձրացնել ճաշակը, հոգու թափը, ֆիզիկապես թարմանալ։ Ափսոս այստեղ չունենք գաղանանոց (ձայներ՝ «ունենք, ունենք»), ունե՞ք, շատ լավ։ Առյուծը ձեզ օրինակ։ Գնա-

ցեք գազանանոց. այնտեղ, համոզված եմ, որ կա առյուծ։ Եթե այդ առյուծը նոր են բերել՝ ապա մի քանի օրից կտեսնեք, որ խեղճ առյուծը «կատու» է դարձել։ Իհարկե, եթե նրան ամսական մի քանի անգամ դուրս չբերեն դաշտ կամ անտառ, բաց չթողնեն ազատության մեջ, որ շրջի, ցատկի, մի հատ էլ եղջերու որսա, էլ ի՞նչ առյուծ է։ Օգտվեցեք կյանքից։ Այն, ինչ որ չի տա ձեզ ոչ մի ուսուցիչ և ոչ մի ինստիտուտ՝ կտա կյանքը, կյանքի դպրոցը։ Իսկական արվեստագետը պետք է ուսումնասիրի մարդուն, նրա բնավորությունը, իսկ որքան մարդ կա աշխարհում, այնքան էլ բնավորություն։

Թատերական երիտասարդությանն իր խոսքն ասելիս, շեշտեց։

— Կարդացեք շատ և, գլխավորն է, ճանապարհորդեցեք, գոնե ամառային երկամսյա արձակուրդներին դուրս եկեք քաղաքից։ Ձեր վարած նույնանման կյանքը առավոտ վեր կենալ, նույն տեղը նստել, թեյել, նույն փողոցով գնալ թատրոն, հետո նորից տուն, և այսպես շարունակ,— այս միօրինակ ձևով վարած կյանքը առաջ կբերի ձեր ստեղծագործական թափի մակարդում, թմրածություն։

* * *

Փափազյանը երիտասարդներին խորհուրդ տվեց.

— Սիրեք ձեր գործը, եթե չեք սիրում՝ թողեք։ Միայն սիրով, աշխատասիրությամբ ու նվիրվածությամբ է, որ աշխատանքի արդյունքը՝ սերմը, լավ պտուղ է տալիս։

* * *

1951-ի փետրվարին էր։ Օրը չեմ հիշում։ Այդ օրվա գրառումը չեմ կատարել և մնում է դիմել հիշողության օգնության։

Այն ժամանակ արվեստի ինստիտուտը դեռ չէր ստեղծված, կար արվեստի պատմության և տեսության սեկտոր, որի ղեկավարն էր Մարտիրոս Սարյանը։

Փափազյանը հրավիրված էր Սունդուկյանի թատրոն՝

հյուրախաղերի։ Աշխատակիցները ցանկություն էին հայտնել կազմակերպել մի հանդիպում արտիստի հետ։ Փափազյանը չմերժեց ու եկավ։

Հավաքույթը բացեց Մարտիրոս Սերգեևիչը։ Հավաքվածների անունից ողջունեցի ես։ Նախ՝ մի երկու խոսք ասացի, թե ինչքան ենք սիրում իր արվեստը և հաճախ կարոտի մի խոր զգացում ենք ապրում, որովհետև մեզ հետ չէ, Երևանում չէ։ Եվ լավ ու ճիշտ չի՞ լինի, եթե մշտապես ապրի Երևանում։ Հետո ասացի, որ Սունդուկյանի թատրոնում հիմա ներկայացվում է «Դիմակահանդես» ու Երևանի մտավորականությունը շատ մեծ ցանկություն ունի տեսնելու նրան այդ դերում, մանավանդ որ բոլորը լսել են, թե այդ դերը ժամանակին խաղացել է Թբիլիսիում և այլն, և այլն։

Իմ խոսքից հետո Փափազյանը հարցրեց, թե հավաքվածներին ի՞նչ հարցեր են հետաքրքրում։ Չեմ հիշում, թե ով, բայց ներկաների անունից մեկը խնդրեց պատմել Օթելլոյի մասին։

Եվ նա պատմեց։ Բավական երկար ու հետաքրքիր, մանավանդ նրանց համար, ովքեր չէին կարդացել կամ կարդացել ու մոռացել էին արտիստի «По театрам мира» գրքի համապատասխան էջերը։ Այդ ամբողջ պատմությունը մագնիտաֆոնային ժապավենի վրա գրի առնվեց ու, եթե պահպանվել է, արժե թերևս հրատարակել։

Այնուհետև նա պատասխանեց Երևանում չմնալու կշտամբանքին։ Ասաց, որ չորս կողմից դրա մասին է լսում։ Այդ կապակցությամբ այն միտքը հայտնեց, թե անցյալի համեմատությամբ փոխվել են մարդկային, ուրեմն և ժողովուրդների հարաբերությունները, մեր երկրում մի նոր իմաստ է ստացել այդ հարաբերությունների ըմբռնումը, և դրա համար էլ ինքը գտնում է, որ մեկ է, թե ինքը որտեղ է ապրում, բայց մեկ չէ, թե ի՛նչ է անում։ Որտեղ էլ որ լինի՝ ինքը մարդկային մեծ գաղափարներին ծառայում է, որպես հայ ժողովրդի ներկայացուցիչ։ Հիշեց, որ ինքը վերջերս եղել է Ուլան-Բատորում և այնտեղ ասել են, թե շատ ժամանակներ առաջ մեր նախնիները գնացել ու կոտորել են հայ ժողովրդին, իսկ հիմա նրանց տաղանդավոր զավակը Շեքս-

պիրի լույսն է բերել մեզ։ Եվ ճիշտ է այն, ինչ հիմա է տեղի ունենում և ոչ թե այն, ինչ մեր հեռավոր պապերն են արել։

Այնուհետև ասաց, թե Երևանում ինքը հանդիպել է կանանց այնպիսի գեղեցիկ աչքերով, ինչպես ոչ մի տեղ։ Եվ միշտ ինքը, որտեղ էլ եղել է, կարոտել է այդ աչքերը։ Իսկ հիմա տեսնում է, որ տղաների աչքերն էլ գեղեցիկ են, որ գեղատես մի սերունդ է աճում Հայաստանում։ Ի վերջո գալու է, իհարկե, անպայման գալու է։

Վերջում անդրադարձավ Արբենին խաղալու առաջարկին և խոստացավ հաջորդ գալուն պես, երևի ապրիլին կամ մայիսին, իրականացնել անպայման։ Միաժամանակ ասաց, թե ինքն էլ է այդ մասին մտածել, ուրիշներն էլ են ասել և հիմա ինքը ծանոթանում է պիեսի նոր թարգմանությանը։

Մարտիրոս Սարյանը խնդրեց արտիստին իր մենախոսություններից մեկն ու մեկն ասել, որը կամենում է, մանավանդ որ գրի է առնվելու, որպեսզի մնա և իր բացակա ժամանակը գոնե ժապավենի միջոցով լսենք ու իրենից մեր կարոտն առնենք։

Փափազյանն ասաց, թե ինքը սիրով կբավարարի ներկա գտնվողների խնդրանքը, բայց քանի իր խոսքը «մնալու» մասին է, ապա իր ձայնը հոգնած է և չէր կամենա, որ ինքը «մնա» այդ հոգնած ձայնով։ Ինքը սիրով կգա վաղը, մյուս օրը, երբ ուզեն և կգրանցվի թարմ վիճակում։

Բոլորը գտան, որ ճիշտ է ասում, ոչ ոք չէր կասկածում, որ կգա անպայման, դրա համար էլ համաձայնեցին, բայց այդ էլ եղավ մեր սխալը։ Փափազյանը խոստացավ ու չեկավ։

Սակայն մի ուրիշ խոստում, որ նա այդ օրը տվեց և, իհարկե, ավելի կարևոր, կատարեց։ Հուլիսի 6-ին նա բեմ բարձրացավ Արբենինի դերով։

Հավաքույթի վերջում լուսանկարվեցինք։ Աչքիս առջևն է այդ լուսանկարը։ Ինքը Փափազյանը չկա արդեն, չկան նրա հետ նկարվածներից Ռուբեն Աղաբաբյանը, Էդվարդ Խոճիկը և Վարդան Սամվելյանը։ Նաև ուրիշներ։ Նայում եմ լուսանկարին ու տեսնում ընկերներիս բոլորովին երիտասարդ։ Քսան տարի է անցել այդ օրից։

* * *

*1948-ին մի կարգադրություն ստացվեց, որը տևեց մի քանի տարի, ապա վերանայվեց կառավարության կողմից։ Թատրոնները ինքնապահ քաղաքականություն պետք է անցնեին. եթե լավ թատրոն է՝ պետք է կարողանա ինքն իրեն պահել։ Այս էր սկզբունքը։ Շատ թատրոններ պարտքերի տակ ընկան. դերասանները փորձեր էին անում, ներկայացումներ տալիս, իսկ աշխատավարձ չէին ստանում։ Սունդուկյանի թատրոնը իր աշխատակիցներին մի քանի ամսվա աշխատավարձ էր պարտք։ Բանը հասավ այնտեղ, որ թատրոնը ստիպված էր մեծ հայելիներն ու գորգերը ծախել։ Դերասաններ կրճատվեցին։ Բայց դա էլ չօգնեց։ Այսպես շարունակվել չէր կարող. թատրոնն «այրվում» էր։ Հեռագրեցին Փափազյանին և խնդրեցին, որ օգնության հասնի։ Արտիստը, որ այդ ժամանակները գլխավորում էր ռուսական շրջիկ մի թատերախումբ, ամեն ինչ թողեց ու եկավ։ Երկու անգամ եկավ. մեկ՝ ձմռանը և մնաց շուրջ 15 օր և մեկ էլ՝ գարնան վերջին և այս անգամ մնաց մի ամսի չափ... Մի օր Համլետ, մյուս օրը՝ Օթելլո։ Երկրորդ գալուն խաղաց նաև Արբենին։ Բոլոր ներկայացումներին դահլիճը միշտ լեփ-լեցուն էր։ Երկու անգամն էլ ցանկություն ունեցողների թիվը ավելի մեծ էր, քան դահլիճը կարող էր տեղավորել։ Եվ շատերն էին, որ, տոմս ձեռք չբերելով, վերադառնում էին տուն մի թանկագին բան կորցրածի զգացումով։*

*Ասում են նրա ներկայացումները մեկ միլիոնից ավելի ռուբլու եկամուտ են բերել։ Թատրոնը ոչ միայն մարեց իր պարտքերը, այլև դերասաններին առաջիկա երեք ամսվա աշխատավարձով ապահովեց։*

*Փափազյանն այդ ժամանակ 60 տարեկան էր*

* * *

*Մի քանի հոգով մոտն էինք։ Այսպես խոսեց.*

*— Հորս շատ եմ սիրել, մորս նույնպես։ Թե ինչքան եմ նրանց պարտական՝ հասկանալի է ձեզ առանց իմ բացատրելու, բայց հավատացնում եմ, սիրելի բարեկամներ, երբ*

իմ հասցեին գովեստի խոսքեր եմ լսում՝ ես նրանց չեմ հիշում, այլ ուսուցիչներիս՝ Պոլսում և Վենետիկում։ Նրանք սովորեցրին ինձ սիրել մեր լեզուն, մեր պատմությունը։ Ու եթե երիտասարդական տարիներիս փառքի ձգտելով վազել եմ դուրս, հեռուները, դեպի աշխարհի չորս կողմը, ապա հետո, երբ հասուն գիտակցությունն է իջել վրաս, որոնել եմ հայրենիքս, որոնել իմ տունը, իմ ճրագը, դրա համար նույնպես պարտական եմ ուսուցիչներիս, ուսուցիչներիս՝ որոնց պատկերը, ահա, հիմա էլ պահում եմ մտքիս առջև։

* *

Խոսեց Ադամյանի մասին։

— Խորիկոփուլո, հույն կոմպոզիտոր, Ադամյանի հետ նույն օրը հրավիրված է եղել Պոլսո վարժարաններից մեկը։ Ադամյանը այդ երեկո կտորներ է կարդացել «Համլետից», «Դարբինների գործադուլը»։

Կոմպոզիտորին խնդրել են, որ մի երկու խոսքով իր տպավորությունը հայտնի Ադամյանից, որը, իրեն վատ զգալով, ներողություն էր խնդրել ու մեկնել տուն։ Կոմպոզիտորը մի միտք է հայտնել, որը գրեթե նույնությամբ հետագայում լսել եմ Նեմիրովիչ-Դանչենկոյից։

— Աշխարհում չեմ տեսել մի ուրիշ դերասան,— ասել է հույն կոմպոզիտորը,— որ կարողանա իր ներքինը, ուրախություն լինի, թե տխրություն, իր ներքին աշխարհը, մի խոսքով, պատկերացնել կարենա հասկանալի կերպով, առանց լեզվի օգնության։ Ադամյանի արածը լեզու էր առանց լեզու լինելու։

Նույնանման բան ինձ ասել է նաև Սիրանույշը, որին շատ եմ հարցուփորձ արել Ադամյանից։

— Կարելի էր նրա խոսքերը չհասկանալ,— ասում էր Սիրանույշը,— որովհետև կյանքի վերջին ժամանակները նրա ձայնը խռպոտ էր, բայց նա ինչ կարիք ուներ ձայնի, երբ դեմքը, շարժումը արտահայտում էին ներքին ապրումը։ Քանի ձայնը մարում էր, այնքան ավելի ուժեղանում էր նրա անխոս արվեստի ուժը։

* * *

1949-ին Սունդուկյանի թատրոնը բեմադրեց «Դիմակահանդես»։ Արբենինի դերը կատարում էր Վաղարշյանը։ Փափազյանը դեռ չէր փոխադրվել Երևան, բայց տարին մեկ անգամ, անպայման գալիս էր։ 1951-ին երկու անգամ եկավ, մեկ տարվա սկզբին, մեկ էլ վերջում։ Երկրորդ այցին ցանկություն հայտնեց Արբենին խաղալու։ Այդ դերը նա մարմնավորել էր անցյալում, 1917-ին Թիֆլիսում, հետո Պոլսում, վերջապես՝ նորից Թիֆլիսում 1927-ին։ Այս վերջին կատարումը տեսել էի ես, այն էլ մի քանի անգամ։ Ըստ որում խաղում էր իր թարգմանությամբ։ Գուլակյանը, որ այդ ժամանակ թատրոնի միանձնյա ղեկավարն էր, համաձայնեց։

Վաղարշյանի Արբենինը թեև ինձ թվում էր վիճելի, բայց մամուլի էջերում գնահատվեց բարձր։ Հանդիսատեսների մեծ մասը նույն կարծիքի էր։ Եվ շատերն էին կասկածում՝ Փափազյանը հաջողություն կունենա՞, մանավանդ որ մեկ և կես թատերաշրջան ներկայացվել էր այդ բեմադրությունը և հանդիսատես հասարակայնության հիմնական զանգվածը այդ դերում նայել էր Վաղարշյանին։

Արբենինի դերով Փափազյանը բեմ բարձրացավ հուլիսի 6-ին։ Նա հանդիսատեսին առաջարկեց իր մեկնաբանությունը, շատ ավելի բարդ, քան Վաղարշյանի պատկերած Արբենինն էր, հակասական մի կերպար։ Եվ հանդիսատեսն ընդունեց, հիացավ ու խանդավառվեց։ Դրվատող հոդվածներ լույս տեսան մամուլում։

Վաղարշյանը որոշեց նայել Փափազյանի խաղը, մանավանդ, որ այդ դերում չէր տեսել երբեք։ Ես այդ օրը թատրոնում էի։ Ընդմիջումներին ինքը ոչինչ չէր ասում, ես էլ չէի հարցնում։ Եթե խոսում էր, ապա մի այլ նյութի շուրջը։ Երբ ներկայացումը վերջացավ, հարցրի, թե ինչ տպավորություն է։

— Փայլուն է խաղում և այդպես էլ պետք էր սպասել, բայց ինչ է խաղում, լավ չեմ հասկանում։ Ա՜յ, նրա Օթելլոն ուրիշ բան է։

Գուլակյանը, դառնալով ինձ, բայց ըստ էության կամենալով պատասխանել Վաղարշյանին, ասաց.

— Չե՞ս կարծում, որ Աբբենինը գերազանցում է Օթելլոյին։

Վաղարշյանը ոչ մի ձայն չհանեց։

Հանդիսատեսների մեջ կային այնպիսիները, որ Փափազյանին տեսնելուց հետո էլ, գերադասությունը տալիս էին Վաղարշյանին, բայց մեծ մասը, մանավանդ երիտասարդությունը, հիացած էր Փափազյանով։

Առաջին ներկայացման օրը երիտասարդների մի սավար խումբ հավաքվել էր Փափազյանի ապրած հյուրանոցի առաջ (այժմյան «Երևան», այն ժամանակ «Ինտուրիստ») և ծափերով ու գոչյուններով դուրս էր կանչում արտիստին, որին ուղեկցել էր թատրոնից մինչև հյուրանոց, և չէր կամենում հեռանալ։ Երիտասարդությունը չհանգստացավ մինչև նա չերևաց։

Իսկ վերջին ներկայացման օրը երիտասարդությունը «Կոմունարների այգում» ծաղիկ չէր թողել, պոկել ու բերել էր թատրոն և վերջին արարից հետո նետում էին բեմ, ոգևորված կանչեր արձակում և չհեռացան թատրոնի շեմից, մինչև Փափազյանը դուրս չեկավ, և առաջին օրվա պես ծափահարություններով ուղեկցեցին մինչև հյուրանոց։

* * *

1951—1952 թատերաշրջանի սկզբներին բեմադրվեց Տոլստոյի «Կենդանի դիակը»։ Որպես Պրոտասովներ հանդես եկան նախ՝ Վաղարշյանը, հետո՝ Ջանիբեկյանը։ Հրաչյա Ներսիսյանը մարմնավորում էր իշխան Աբրեզկովի կերպարը։ Շատերս էինք զարմացած, թե ինչո՞ւ Պրոտասովի դերը նրան չի տրված։ Միաժամանակ անց Ներսիսյանը. առաջին անգամ իր կյանքում, թատրոնի ղեկավարությանը դիմեց, խնդրելով իրեն ևս Պրոտասով խաղալու հնարավորություն տալ։ Գուլակյանը համաձայնեց։ Թատերաշրջանի վերջում հյուրախաղերի եկած Փափազյանը ցանկություն հայտնեց նույն դերը խաղալու։ Գուլակյանն ընդառաջ գնաց։

Հանձն չեմ առնում գնահատելու Փափազյանի խաղն ընդհանրապես, բայց բեմական մի մանրամասն մեխվեց հիշողությանս մեջ։

Գնչուների տեսարանն է։ Կարենինը նամակ է բերել Պրոտասովին Լիզայից այն պահին, երբ նա, շրջապատված գնչուներով, զվարճանում է։

Դավիթ Մալյանը, որ Կարենինի դերը կատարում էր կերպարի բուն թափանցումով, տվեց նամակը և մի կողմ քաշվեց։ Եվ այն ժամանակ, երբ Պրոտասովի դերակատարներից մեկը կարդացած նամակը ծալում և դնում էր գրպանը, մյուսը՝ ճմլում և գետին նետում, Փափազյանը կարդալուց հետո նամակի թերթերը պարզեց դեպի մոմակալի բոցը և այրեց, առանց նայելու։ Այսինքն՝ հետադարձ ճանապարհ չկա, այրված են բոլոր կամուրջները։

* * *

Փափազյանը նոր էր վերադարձել Թբիլիսիում տված հյուրախաղային ներկայացումներից, վերադարձել էր լավ տրամադրությամբ։ Երկար ժամանակ այնտեղ չէր եղել և գտել էր լավ ընդունելություն։ Մի քանի օր անց եղա Թբիլիսիում, ուր մնացի մի շաբաթի չափ։ Պատմում էին, որ տասներկու օր իրար ետևից, առանց հոգնելու և իր հասակի համար զարմանալի թափով և ավյունով խաղացել է Օթելլոյի դերը։ Ասում էին, որ առանձնապես լավ է խաղացել երրորդ ներկայացմանը։ Իրեն նվիրված երեկոյին կտորներ է կարդացել Կորրադոյից, Ուրիելից, Համլետից, Լիրից, Մակբեթից, Արբենինից։ Եվ իբր այն մի հատվածը, որ խաղացել է Կորրադոյից, այնքան լավ է եղել, ինչպես երբեք։

Ահա այդ օրերին էր, որ մի կանուխ առավոտ Փափազյանը Երևանից զանգահարեց Մարտին Քարամյանին, բանաստեղծ ընկերոջս, որի տանը իջևանել էի ես։ Արտիստը սիրով էր պատմում այն աջակցության մասին, որ ընկերս Թբիլիսիում ցույց էր տվել իրեն։

Այստեղ եղած վերջին օրերին Փափազյանը հեռուստատեսությամբ հատվածներ է կատարել Օթելլոյից, որպես

Դեզդեմոնա՝ խաղընկեր ունենալով դերասանուհի Թոխձեին։ Եվ որովհետև չէր հասցրել իր հոնորարն ստանալ, մի հանձնարարական էր թողել ընկերոջս, որ ներողություն քաշի, ստանա և ուղարկի իրեն։

Զանգահարելով ընկերոջս, սովորական սիրալիր հարցուփորձից հետո, թե ինչպես են տանեցիք և այլն, խնդրեց, որ իր հոնորարից կոշիկներ գնի Հայկազի համար։ Հայկազը թատրոնի հուշարարն է, երկար տարիներ Փափազյանի խաղերին հուշարարություն է արել, և արտիստը, իր հուշերի երկրորդ գրքում, սիրով հիշում է նրան։

Այդ երեկո ընկերոջս հետ գնացինք թատրոն։ Փափազյանը պատվիրել էր ոչինչ չասել Հայկազին և իր անունից նվիրել այդ կոշիկներն անակնկալ մի պահի։ Դրա համար պետք էր Հայկազին տեսնել և որևէ պատրվակի տակ իմանալ նրա ոտքի համարը։

Ընկերս, ինչպես հատուկ է բարի մարդկանց, իհարկե, չդիմացավ և Հայկազին ասաց, թե վարպետն իրեն ինչ է պատվիրել հեռախոսով։

Հայկազի, ինչպես և ներկա եղող դերասանների ուրախությանը չափ չկար։

Երբ աչքս ընկավ Հայկազի հնամաշ կոշիկներին, հասկացա, որ Փափազյանը այդ վճիռը կայացրել է այստեղ, բայց դրա մասին հիշել է Երևան հասնելուց հետո։

* * *

1952 թվական։ Սիրանույշի մահվան 30-ամյակին նվիրված երեկոն է։ Զեկուցումից հետո ելույթ ունեցան Դերենիկ Դեմիրճյանը, Վաղարշ Վաղարշյանը։ Խոսեց նաև Փափազյանը։ Բեմի վրա դրված էր Սուրեն Ստեփանյանի «Սիրանույշ» կիսանդրին։ Փափազյանը խոսելիս շրջվել էր դեպի նա։

— Մեծ էր որպես աշխարհ և պարզ էր որպես ճշմարտությունը։ Դա էր պատճառը, որ նրա շուրջը շատ քիչ էին վեճեր լինում։ Համենայն դեպս, ներկայացման ժամանակ նա այնքան համոզիչ էր, որ ոչ ոք այլ կերպ չէր մտածում, քան նա։

Պոլսից որ եկա՝ ընկա նրա ազդեցության տակ։ Նա չէր խաղում, չէր ներկայացնում, նա դառնում էր Մեդեա, Համլետ՝ թե՛ արտաքին, թե՛ ներքին կերպով։ Ես չեմ տեսել մի ուրիշ դերասան, որը կարողանար այդպես երջանիկ ձևով միավորել միտքը, հույզը և տեխնիկան։ Նա ոչ միայն ինքն էր խաղում, այլև իր խաղով լուսավորում, գեղեցկացնում էր իր խաղընկերներին։ Նրա ամենամեծ հատկությունը ներքին ուժն էր, ոգին։ Դրա համար էլ դժվար է ասել, թե ինչն էր նրա մեջ ուժեղ՝ ձա՞յնը, որ իսկապես հազվադյուտ էր, դիմախա՞ղը, որ այլևս ոչ ոքի մեջ չեմ տեսել, թե մի ուրիշ բան, երևի, ավելի ճիշտ, այդ բոլորը միասին։

Ասում են նման էր Սառա Բեռնարին. ոչ ոքի նման չէր նա և չէր էլ կարելի նրան ընդօրինակել։ Այդպիսի փորձեր եղան, բայց անհաջող. Մեդեան մի օր մի կերպ էր խաղում, մի ուրիշ անգամ՝ այլ կերպ։ Ամեն անգամ նրա խաղը նոր ծնունդ էր, կրկնություն չկար։

* * *

Մի օր նորից խոսեց Սիրանույշի մասին։

— Եթե Սիրանույշը իր լավ ժամանակը Ֆրանսիա գնար՝ ոչինչ կլինեին նրա առաջ փարիզյան բեմի աստղերը, դերասանուհիները։ Թիֆլիսը պատրաստ էր օգնելու, որ գնա, բայց չգնաց։ Զուներ այդ ձգտումը. տարօրինակ բան էր՝ Ալեքսանդրապոլ կգնար, Փարիզ չէր գնա։

* * *

Իմ տպավորությամբ, Փափազյանն ապրում էր կյանքի և մարդկային փոխհարաբերությունների բոլորովին այլ չափանիշներով, քան ընդունված պայմանավորվածությունն է այսօրվա հասարակության մեջ վաղ ժամանակներից ի վեր։

Այսպես, օրինակ, նրա բազմաթիվ երկրպագուներից մեկը ներկայանում է արտիստին և հայտնում իր բարձր հրճվանքը նրա խաղի նկատմամբ։

Ուտել-խմելու սեր չունեցող Փափազյանը հանկարծ կարող էր ձեռքը դնել իր երկրպագուի ուսին և ամենայն լըր-

ջությամբ և ամենայն անկեղծությամբ հարցնել, թե ինչու իրեն բոլորը հրավիրում են իրենց տուն, իսկ ինքը՝ ոչ։

Երկրպագուն, որի մտքով անգամ չէր անցնի, թե Փափազյանը կարող է իրենց տանը լինել, ուրախությունից գլուխը կորցրած, տեղն ու տեղը հրավիրում է արտիստին, պայմանավորվելով, որ կիրակի օրը, ժամը 4-ին մեքենայով կգա նրա հետևից։

Երկրպագուն պատրաստություն է տեսնում, հրավիրում է մոտ մարդկանց, խնդրում, որ այդ օրն անպայման իր տանը լինեն։

Եվ ահա վրա է հասնում կիրակի օրը, ժամը չորսին երկրպագուն տաքսիով ճանապարհվում է Կիևյան փողոց, որտեղ ապրում էր ողբերգակը և Փափազյանը... սառը ջուր է լցնում իրմով ոգևորվածի գլխին. հայտնում է, որ ինքը իրեն լավ չի զգում և չի կարող գալ։ Ու երկրպագուն տուն է դառնում կոտրված սրտով և հիասթափ անում Փափազյանին սպասող հյուրերին։

Ես չէի կամենա, որ Փափազյանի մասին սրա և այլ նման դեպքերի կապակցությամբ հեշտ մի վճիռ կայացվեր։ Ինձ թվում է, որ սա այնքան էլ պարզ բան չէ։ Որ Փափազյանն անկեղծ տրամադրված էր ճաշի գնալու, ճիշտ է, և ենթակա չէ ոչ մի կասկածի, գոնե ինձ համար, որպես նրան քիչ թե շատ լավ ճանաչողի։ Բայց որ նա չի գնացել ոչ այնքան իսկապես տկար լինելու, որքան այն պատճառով, որ հյուրընկալվելու ցանկությունը չկար այլևս իր մեջ, սա էլ ճիշտ է։

Մի խոսքով՝ մտածելու բան է սա, և խորանալու դեպքում գուցե հանդենք այն մտքին, որ Փափազյանը ապրում էր հոգեկան անկախ մի կյանքով, ստեղծելով փոխհարաբերությունների մի չափանիշ, ըմբռնելի և ընդունելի իր, բայց ոչ շրջապատի՝ մեզ համար։

* * *

Փափազյանը միառժամանակ հյուրանոցում ապրելուց հետո երկսենյականոց բնակարան ստացավ Կիևյան փողոցում և Անահիտ Դատյանի հետ տեղափոխվեց։ Նրա բնակարանը

գտնվում էր Կիևյան փողոցի ձախ մայթին և մի սենյակի լուսամուտը բացվում էր փողոցի վրա։ Պատուհանի ուղիղ դեմ-դիմացում բնակելի նոր շենքի կառույց էր սկսված։

Զարմանալի սեր ուներ պատուհանի մոտ կանգնելու և նայելու նոր շենքի բարձրացող պատին։ Այդ անհանգիստ մարդը երբեմն մի ժամից ավելի մեխվում էր տեղում և հիացած հետևում, թե ինչպես է քարը քարի վրա դրվում։

Մի օր ասաց.

— Երևանը ինչ էր՝ ինչ դարձավ։

Մի ուրիշ անգամ.

— Ո՞ւր հասավ Երևանը։

Գնացի՝ տանը չէր։ Հարցրի Անահիտին, թե ուր է, տարավ ինձ դեպի լուսամուտը, տեսնեմ Փափազյանը կառուցվող շենքի վրա է։ Մոտիկից հետևում է որմնադիր բանվորների աշխատանքին, զրուցում հետները։ Մի փոքր հետո վերադարձավ։

— Դու հո գիտես, որ մեր երկրի որ ծայրն ասես, հասել եմ, քաղաք չկա, որ ոտք դրած չլինեմ, և ոչ մի տեղ շինարարությունը այսպիսի ծավալ չունի։ Նայում եմ ու հոգիս փառավորվում է։ Հասկանում եմ, որ դա իր պատճառներն ունի. գավառական Երևանը մայրաքաղաք դարձավ։ Եթե իր ապրած կյանքով մայրաքաղաք էր, իր արտաքին տեսքով էլ պետք է այդպիսին դառնար և դրա համար ժամանակ էր պետք։ Բայց կա մի ուրիշ և ավելի կարևոր բան՝ մեր ժողովրդի կառուցող ոգին։

Մի օր էլ ասաց, թե գնալու է և քաղաքային իշխանություններից խնդրելու, որ իրեն մի երկու սենյակ տրամադրեն դիմացի կառուցվող շենքում։

— Այնքան նայեցի՝ որ կապվեցի այդ տան հետ, հարազատացավ, իմը դարձավ։

Եվ իսկապես, միաժամանակ հետո տեղափոխվեց դիմացի շենքը, թեև նոր բնակարանը հնի համեմատությամբ առանձնապես ոչ մի առավելություն չուներ։

Տարիներ հետո մեր կառավարությունը որոշեց Փափազյանին բնակարանային ավելի լավ պայմանների մեջ պահել՝ Կիևյանից տեղափոխել Մոսկովյան (Թումանյանի Տոն-

*Թանգարանի կողքին կառուցվող բնակելի շենքը) և տրամադրել երեք սենյակ։*

*Ստացավ բնակարանի օրդերը, պարզ էր արդեն, թե որ հարկում էր ապրելու և որ բնակարանում, բայց մահն ավելի վաղ հասավ, քան կավարտվեր շենքի կառուցումը։*

* * *

*Փափազյանը խնդրեց, որ իր հուշերի խմբագրությունն ինձ հանձնարարվի։ Մի օր հարցրեց.*

*— Շա՞տ ժամանակ պետք կլինի խմբագրելու համար։*

*— Մի կես տարի։*

*Զարմացավ. մի՞թե խմբագրելու համար ավելի ժամանակ է պետք, քան գրելու*

*— Գիրքը ես մի տարում գրեցի։*

*Բացատրեցի, որ, զբաղված լինելով, չեմ կարող միայն դրա վրա աշխատել։*

*Կարծես հասկացավ։*

*Հինգ օր էր անցել, որ զանգահարեց ու հարցրեց՝ վերջացրե՞լ եմ, թե ոչ։*

*Մի շաբաթ էլ չէր անցել, որ գիշերվա կեսին, ժամը երեքը կլիներ, զանգահարեց, թե ո՞ր էջին եմ հասել։*

*Ու այսպես անվերջ։*

* * *

*Երբ «Հետադարձի» առաջին գիրքը լույս տեսավ, Փափազյանը խիստ շոյված էր զգում իրեն, մանավանդ որ ընթերցողները նամակներով ու հեռախոսային զանգերով հայտնում էին իրենց անվերջ հիացմունքը։ Փափազյանը չափազանցնելով իմ, որպես խմբագրի, կատարած աշխատանքն իր ձեռագրի վրա, մի օր հարցրեց.*

*— Ի՞նչ նվեր անեմ քեզ։*

*— Ոչ մի նվեր։ Վերջապես՝ հոնորար եմ ստացել դրա համար։*

*Նվերի միտքը մտել էր գլուխը և դուրս չէր գալիս։ Երբ*

մի անգամ էլ անդրադարձավ, խնդրեցի, որ եթե հիշատակ տա ինձ Նեմիրովիչ-Դանչենկոյի կարճ բնութագրականը։

Խորամանկ նայեց աչքերիս, ժպտաց։ Ինձ թվաց, թե ներքին մի տատանում ապրեց, բայց ոչինչ չասաց։

Նեմիրովիչ-Դանչենկոյի գրությունը ինձ մոտ է, սրբությամբ պահվում է իմ թղթերի մեջ և, ճիշտն ասած, ստիպված եղա ավելի վաղ մեջտեղ բերել, քան մտադիր էի։

Աշոտ Արզումանյանի «Բարեկամություն» գրքի առաջին հրատարակության մեջ Փափազյանը ներկայացված էր ոչ իր արժանիքի համապատասխան։ Վրդովված խոսակցություն ունեցա հեղինակի հետ, մեղադրելով նրան սրա-նրա ազդեցությամբ գործելու համար։ Արդարացավ, ասաց, թե նյութ չի ունեցել իր ձեռքի տակ։ Իմանալով, որ պատրաստվում է գրքի երկրորդ հրատարակությունը, տրամադրեցի բոլորովին անհայտ այդ փաստաթուղթը, մտածելով, թե գուցե դրանով կարելի կլինի Փափազյանի գնահատությունը գրքում մոտեցնել իրականությանը։

* * *

1956-ին «Հետադարձ հայացքի» առաջին գիրքը լույս տեսավ։ Ոչ Փափազյանը որպես հեղինակ, ոչ էլ ես, որպես գրքի խմբագիր, չէինք կասկածում, որ գիրքը հաջողություն է ունենալու։ Բայց այն, ինչ տեղի ունեցավ, անսպասելի էր երկուսիս համար էլ։ Ոչ միայն ընթերցող լայն հասարակայնությունը, այլև գրական-գեղարվեստական շրջանները Փափազյանի գիրքը դիտեցին որպես գրական մեծ երևույթ։ Ստեփան Զորյանը, Գուրգեն Մահարին, Մկրտիչ Արմենը, Հրաչյա Հովհաննիսյանը և ուրիշներ ոգևորված էին գրքով։ Սակայն գիրքն ուներ նաև հակառակորդներ, ինչպես գրողների, այնպես էլ մանավանդ, թատրոնի մարդկանց մեջ։

Մեկը զարմանում էր, որ բոլորը հիացած էին գրքի լեզվով ու ոճով։ Նա ասում էր, թե բավական է թերթել Պոլսո մամուլը՝ համոզվելու համար, որ տասական թվականների ամեն մի լրագրող այդպես էր գրում։

Մի հին դերասան գիրքը կարդալուց հետո հայտարարել

էր, թե գրքում եղած մտքերը իրենն են, որ ինքն է ժամանակին արտահայտել դրանք երիտասարդ Փափազյանի հետ ունեցած զրույցների ժամանակ։

Մեկ ուրիշը այն միտքն էր հայտնել, թե դա Փափազյանի գրածը չէ, որ իբր մի ուրիշն է գրում, բայց լույս է տեսնում նրա անունով։ Սկսեցին նույնիսկ այդ ուրիշին որոնել։ Ասում էին, թե լենինականցի մի կին կա, նա է գրում Փափազյանի համար, ոմանք էլ ասում էին, թե այդ կինը դերասանուհի Անահիտ Դատյանն է, որի հետ Փափազյանը հետագայում ամուսնացավ։ Կային մարդիկ, որ կասկած էին հայտնել, թե գուցե խմբագիրն է գրել, այսինքն ես, մանավանդ շատերին էր հայտնի իմ և դերասանի բարեկամությունը։ Անհեթեթ մի բան։ Գիրքը խմբագրելիս բավական կրճատումներ եմ արել ու երբ հարկը պահանջել է կրճատված երկու հատվածները միավորել մի կամ երկու նախադասությամբ, անհնար դժվարության առջև եմ կանգնել միշտ, որպեսզի կարողանամ հարազատ մնալ նրա ոճական մտածողությանը և, խոստովանություն լինի, մեծ մասամբ չի հաջողվել ինձ դա, իսկ եթե հաջողվել է, ապա նվազ չափով միայն։

Փափազյանին հասնում էին այդ լուրերը, բայց նա չէր վրդովվում, ու եթե վիրավորվում էլ էր, ապա ցույց չէր տալիս, հանգիստ մի ժպիտով, ներողամիտ կամ մեծահոգի արտահայտությամբ փակում էր զրույցը.

— Բան է, ասում են, ինչ եք այդքան նշանակություն տալիս,— և խոսակցության նյութը փոխում էր, մի ուրիշ բանի մասին խոսում։

Մի անգամ ասացին նրան, թե այսինչը մի քանի փաստագրական հակասություն է գտել Փափազյանի գրքում, Ուալդի, մեկ էլ մի ուրիշի մահը հետաձգել է մի քանի տարով... և չար ժպիտով նկատել է, թե ուրեմն շատ էլ չի կարելի վստահել նրա պատմածի իսկությանը։ Դուր չեկավ նրան այդ։ Մռայլ ու ծանր լռություն գամեց օդում։ Կախեց գլուխը, մի պահ տարուբերեց։

— Չար են մարդիկ...

Ասաց, իսկ մյուս օրը մի երկու էջ տվեց ինձ ու խնդ-

րեց տեղադրել երկրորդ գրքում, որ այդ ժամանակ խմբագրում էի։

— Այս էլ իմ պատասխանը գրական հաշվապահներին։

Թեև անուն չէր տվել, բայց հասկացողը կհասկանար։

Ու երբ տարիներ անց խնդրեցին նրան նույն մարդու մասին հոդված գրել, ոչ միայն չհրաժարվեց, այլև շռայլ եղավ գովեստների մեջ։

Երբ զարմանքս հայտնեցի, ասաց.

— Դա էլ պատժելու մի ձև է։

* * *

Փափազյանի հանդիպումն էր միլիցիայի աշխատողների հետ։ Արտիստին ողջունեցին սրտալի խոսքերով։ Եվ բոլորն էլ, հավաքույթի նախագահից սկսած, շնորհակալություն էին հայտնում,որ իրենց խնդիրքը չի մերժել ու եկել է։

Իր ելույթում Փափազյանը բողոքեց։ Եվ դա սեթևեթանք չէր, այլ անկեղծ մի պոռթկում։

— Ինչի՞ եք շնորհակալություն հայտնում։ Հայտնի չէ, թե այս հանդիպման համար ով ում պետք է շնորհակալություն հայտնի։ Դերասանը, ինչպես նաև գրողը, կոմպոզիտորը ժողովրդի ձայնն է։ Եթե դուք չլինեք՝ ես էլ չեմ լինի։ Ես ձեզ եմ արտահայտում։ Ես ձեզնով կամ։ Որտեղ էլ լինեմ՝ ձեզնով եմ հպարտ, ձեզնով եմ հարուստ, ձեզնով եմ կյանքին կապված։ Իմ խաղի մեջ ձեր զգացմունքն է ապրում ձեր միտքն է ճառագայթում։ Ինչի՞ է նման զինվորն առանց զորավարի։ Արտիստներս, այդ ես լինեմ, թե իմ արվեստակից ընկերները՝ զինվորներ ենք։ Զորավարը դուք եք, ժողովուրդը։ Ինչ հրամայեք՝ այն էլ անելու ենք։ Դուք եք մեզ ուղղություն տվողը, դուք եք ճշտում մեր քայլը, ղեկավարում մեր շարժումը։ Ինչ խոսք կարող է լինել խնդրանքի մասին, կարգադրել եք՝ եկել եմ։

Մի պահ լռեց, հետո շարունակեց.

— Մի նուրբ կողմ էլ ունի մեր այս հանդիպումը, որի մասին չեմ կարող թեկուզ մի խոսքով չհիշատակել։ Փոքր ժամանակս ենիչերի եմ տեսել, երիտասարդ տարիներս՝ ժան-

դարմ։ Երկուսն էլ սարսափելի հիշողություններ են թողել մեջս։ Եվ հիմա, եկեք-տեսեք, թե ինչքա՜ն են փոխվել ժամանակները, կյանքի պայմանները, որ միլիցիան կանչել է արտիստին իր մոտ, թե արի մի քիչ զրուցենք։ Եվ ինչի՞ մասին՝ արվեստի։ Լսված կամ տեսնված բա՞ն է սա մի ուրիշ երկրում։

Հավաքվածները ծափ տվին։

— Ես այստեղից երջանկացած եմ գնում, որ եկել-հասել ենք մի այսպիսի օրվա։

Նորից ծափահարություն։

— Մի՞թե պարզ չէ, որ եթե շնորհակալության խոսք պիտի ասվի՝ ուրեմն ես եմ ասելու, և ոչ թե դուք։

Ծափահարությամբ կրկին ընդհատվեց արտիստի խոսքը։

— Հա՛, մեկ էլ մի ցանկություն։ Ես գիտեմ, որ ձեր աշխատանքը շատ է ու ծանր։ Ես փափագում եմ այն օրը, երբ դուք աշխատավարձ կստանաք ոչինչ չանելու համար։ Ա՛յ, դա կլինի օր։ Ես հավատում եմ դրան ու սպասում։

* * *

Մի օր հարցրի, թե իր տեսած հայ դերասաններից ո՞րն է իր վրա ամենաուժեղ տպավորությունը գործել։

— Սիրանույշը։

— Այդ հայտնի է,— ասացի ես,— և՛ գրել ես, և՛ շատ անգամ ասել. խոսքս դերասանների մասին է և ոչ դերասանուհիների։

— Զարիֆյանը։

Պատասխանեց անմիջապես, նայեց ինձ և ապա վրա բերեց.

— Եթե հանդիպեիր կյանքում, երբեք չէիր մտածի, թե մի բան արժե, բայց բավական է բեմ բարձրանար, որ դառնար հրաշագործություն։ Աստված էր մատը դրել նրա ճակատին և ասել՝ թատրոնի համար եմ լույս աշխարհ բերել քեզ, գնա ու գործիր։ Նրա հետ երևի ոչ ոք համեմատվել չէր կարող։ Բայց նա չդարձավ այն, ինչ աստված էր նախատեսել նրա համար։ Խանգարեցին, շեղեցին։ Կինը լավ դեր չխա-

ղաց։ Օ՜հ, կանա՛յք, կանա՛յք։ Բայց ով աչք ուներ, մի քիչ էլ խղճմիտ սիրտ, չէր կարող չընդունել, որ մեր ընկերը ավելի լայն հորիզոնների համար էր ծնված, քան հայ բեմը միայն։

* * *

Նոր էի վերադարձել Մոսկվայից, ուր տեսել էի Պոլ Սկոֆիլդին՝ Համլետի դերում։ Հետաքրքրվեց, թե ինչպես էր։ Ասացի, նույնիսկ մի քանի մանրամասնություններ պատմեցի։ Ոչ մի ձայն չհանեց, լսեց լուռ և չգիտեմ թե ինչու մտահոգ։ Աչքիս նույնիսկ տխուր երևաց։

Տիրող լռությունը խախտելու համար ասացի, թե շատ Համլետներ եմ տեսել, բայց ամենալավերի խաղը նայելուց հետո էլ, նույնիսկ միշտ մի ինչ-որ չգոհացված զգացումով եմ վերադարձել թատրոնից։

Նայեց ու ասաց.

— Չի եղել ու չի էլ լինի այդպիսի Համլետ, որի խաղից մարդ, եթե, իհարկե, «Համլետը» խորապես ծանոթ է նրան, լիակատար բավարարում ստանա։

Մի-փոքր հետո բացատրեց իր միտքը.

— Համլետ շատ լավ խաղալու համար դերասանը պետք է երեսնամյա երիտասարդի արտաքին ունենա, բայց յոթանասուն տարեկանի խելք։ Եվ քանի որ այդ երկուսի ներկայությունը միաժամանակ անկարելի է, երբ մեկը կա, մյուսը չկա, և ճիշտ հակառակը, ապա հնարավոր չէ խաղալ ինչպես պետք է։ Բոլորն էլ, ամենահանճարեղ ողբերգակներն էլ խաղացել են մոտավորապես։

* * *

Մի անգամ էլ նույն մտքին անդրադարձավ։

— Աշխարհում ոչ մի դերասան չի խաղացել Համլետն այնպես, որ դահլիճում բոլորը գոհ մնան, ասեն, որ «ա՛յ սա է իսկական շեքսպիրյան Համլետը»։ Ինչքան էլ հավանել են, այնուամենայնիվ, միշտ էլ թատրոնից հեռացել են ինչ-որ

վերապահությամբ։ Համլետը երիտասարդ է, ուրեմն նրա դերակատարը նույնպես պետք է երիտասարդ լինի, լավ կառուցված, գեղեցիկ։ Բայց դրա հետ միասին՝ Համլետը հասկանալու համար մարդ պետք է շատ ապրած լինի, շատ էլ տեսած ու լսած, ուրեմն տարիք առած պետք է լինի։ Բայց եթե վաթսուն-յոթանասուն տարեկանը բարձրանա բեմ, ինչքան էլ տաղանդավոր, ո՞վ կհավատա, թե դա Համլետ է։

Մի պահ լռելուց հետո.

— Ուրեմն երիտասարդը չի կարող խաղալ, որովհետև մեծի խելք չունի. մեծն էլ թեև խելք ունի՝ չի կարող խաղալ, որովհետև երիտասարդ չէ։ Ահա և քեզ հավիտենապես անլուծելի խնդիր։

* * *

«Համլետի» մեջ մի այսպիսի տեսարան կա. Պոլոնիուսը, երբ Առաջին դերասանը Հեկուբի մենախոսությունն է ասում, ընդհատում է նրան՝ «մեկ տեսեք, ինչպես գույնը թռել է, աչքերը լցվել են»,— Փափազյան-Համլետը այստեղ մի խաղ ուներ, որ շատ անգամ եմ տեսել և միշտ էլ հիացած մնացել։

Փափազյան-Համլետը, որ բազկաթոռի մեջ ընկղմված լսում էր Առաջին դերասանի մենախոսությունը, Պոլոնիուսի խոսքերից հետո ելնում էր ոտքի ու դանդաղ, իրեն հատուկ արքայական քայլերով մոտենում պապանձված դերասանին, մեկնում աջ ձեռքը դեպի նրա արտասվալի աչքերը, մատով արցունքի մի կաթիլ վերցնում, փոխադրում ձախ ձեռքի ափին ու երկա՜ր-երկա՜ր նայում, և երևի այդտեղ, այդ պահին էլ նրա մտքով անցնում էր. «— Հեկուբը նրա ի՞նչն է կամ նա՝ Հեկուբի»։ Ուզեցի իմանալ, իրավացի՞ եմ, թե ոչ։

— Ես էլ եմ սիրում այդ տեսարանը, դու ճիշտ ես հասկացել. ես՝ Համլետս, խսկապես այդ ժամանակ եմ մտածում, թե «Հեկուբը նրա ի՞նչն է», և ապա, դերասանների գնալուց հետո, անդրադառնում այդ մտքին։

Հետաքրքրվեցի, թե ինչպե՞ս և ե՞րբ է մտահղացել ձեռով գեղեցիկ և իմաստով խոր այդ մանրամասնը։

— Դա երկար պատմություն է։

խնդրեցի պատմել։

— Առաջին դերասանի դերը կատարողներից ոչ մեկն ինձ չի գոհացրել մինչև հիմա։ Չեմ հանդիպել մեկին, որ իսկական լինի, հոգով խաղա և արտաքնապես էլ համապատասխան լինի։ Մեծ մասամբ դրանք եղել են միջին շնորհքի, գործ անհատականությամբ դերասաններ, որոնք կարողացել են ձևակերպել երկի խոսքերը, և միայն։

Իտալիայում, երբ դեռ սովորում էի, մի ամառ մասնակից եղա Մաձձինիի գլխավորած շրջիկ թատերախմբի ներկայացումներին։ Բոլոնիա քաղաքում, որպես ուսանող, փոքրիկ, հաճախ էլ անխոս դերեր էի կատարում։ Համլետի դերակատարության ժամանակ խաղում էի այն պատանուն, որ Համլետի պահանջով ֆլեյտա է բերում։

Մի այսպիսի դեպք պատահեց։

Բաչետտի անունով մի դերասան, որ խաղում էր Առաջին դերասանի դերը, ամեն անգամ իր մենախոսությունն ասելիս լաց էր լինում իսկական արցունքով։ Խաղընկերները ծիծաղում էին, մանավանդ որ ինքը՝ դերասանը, վատ արտաքինով մի խեղճ մարդ էր, և լավ դերասանների պակասի պատճառով էր միայն, որ նրան էր հանձնարարվում այդ դերը։ Այնպես որ, իսկական արցունքն անհամապատասխան էր այդ մարդու արտաքինին։ Մի օր հարցրի նրան, թե ի՞նչն է պատճառը, որ այդպես լաց է լինում։

Պատասխանն ինձ ապշեցրեց։

Տեսնելով իմ հետաքրքրությունը,— նա տարիքով ինձնից մեծ էր,— սիրտը բացեց.

— Իմ կյանքի միակ երազը Համլետ խաղալն է եղել, բայց արտաքինիս պատճառով չեմ խաղում։ Լավ եմ հասկանում էությունը, բայց բեմականորեն ձևակերպել չեմ կարող։

Շատ անկեղծանալով՝ ասաց, թե մեր մաեստրոն, որ խաղում է, իրեն չի գոհացնում։ Եվ վրա բերեց.

— Ես լաց եմ լինում նրա համար, որ չեմ խաղում, այս մեկ. որ վարպետս՝ Մաձձինին, վատ է խաղում. այս էլ երկու. և, վերջապես, որ ես, բնության տված արտաքին

խղճուկ տվյալներովս անկարող եմ խաղալ, թեև հոգով զգում եմ դերը։

Ես հասկացա այդ թշվառ մարդու վիճակը։ Այդ հասկացել էր նաև մեր մաեստրոն։ Եվ երբ մյուս ընկերները ծաղրում էին նրան, Մաձձինին մի օր սաստեց՝ ասելով.

— Մեծագույն դժբախտություն է դերը հոգեպես ըմբռնել, բայց չկարենալ անձնավորել տվյալների պակասության պատճառով։ Փոխանակ ծաղրելու՝ օգտվեցեք նրա սեփական տրագեդիայից։

Այդ խոսքը մնաց իմ մեջ։

Տարիներ անցան և ես շատ անգամ խաղացի Համլետի դերը։ Ահա այդ բազում երեկոներից մի օր՝ Հյուսիսային Կովկասում, Արմավիր քաղաքում, Բաղդասարյան ազգանունով մի դերասան, որ հետո խելագարվեց, նույնպես ցանկություն ուներ Համլետ խաղալու։ Իհարկե, չէր կարող։ Եվ նույն պատճառով, ինչ իտալացի Բաղետաին։ Բայց մի երեկո, Առաջին դերասանի դերը կատարելիս, նա բոլորիս շշկլեցրեց իսկական արցունքներով։ Եվ Համլետի դերը խաղալիս, տեսնելով նրան, հիշեցի Մաձձինիի ասածը։ Չկարողանալով նրան զատել մյուս դերակատարների քմծիծաղից, բայց և կամենալով արդարացնել նրան ամենքի առաջ, ձեռս երկարեցի ու վերցրի նրա աչքից արցունքի մի կաթիլ։ Լուռ խաղալով՝ անդրադարձա այդ արցունքի խոր նշանակությանը, մունջ կերպով տալով բացատրությունը՝ դերասանի ներքին հոգեկան հուզմունքը և այդ հուզմունքը արտաքնապես արտահայտել չկարենալու դրաման։ Ինձ շրջապատող սիրողդերասանները հասկացան այդ։ Եվ զգացվեցին։ Հասկացավ և ինքը՝ դերասանը։ Հասկացավ նաև հանդիսատեսը և դահլիճում խոսեց մի խորազգաց լռություն։

Բայց, ի տարբերություն Բաղետաիի, Բաղդասարյանը հրաժարվեց այդ դերից։ Եվ հետագա ներկայացումներին, կուլիսներում նստած, սովահար մարդու պես, նայում էր, թե ինչպես եմ անում այն, ինչ ինքը կկամենար, շա՜տ կկամենար անել, բայց չէր կարող, և խոր հառաչանքով արցունք էր թափում, մինչև որ խելագարվեց։

Դրանից հետո այստեղ և ուրիշ տեղեր, երբ դերասանները

խաղում էին այդ դերը, նրանց մեջ փնտրում էի այդ իսկական արցունքը։ Եվ գտնելով՝ չէի կարողանում նույնն անել։ Եթե կրկնում էի, զգում էի, որ կեղծ է ստացվում, որ հանդիսատեսին չի հասնում, չի ապրեցնում նրան։ Երբ հանկարծ, Լենինականում, մի տասնհինգ տարի սրանից առաջ, թե ավելի վաղ, միտս չէ,— դե դու գիտես, որ թվերը ես լավ չեմ հիշում,— Վարդան Թերզիբաշյանը, որ կատարում էր Առաջին դերասանի դերը, մի գիշեր այնպես զգացված արտասանեց Հեկուբի պատմությունը, որ արցունքներ երևացին աչքերին, ծիծաղի առիթ տալով իր խաղընկերներին, ճիշտ այնպես, ինչպես Բոլոնիայում Բաղետուին, Բաղդասարյանը՝ Արմավիրում։ Ես, կորցրածը գտնողի երջանկությամբ, կրկնեցի այն, ինչ անում էի միշտ իսկական արցունքի ժամանակ։ Անսպասելիորեն ինձ համար կրկնվեց նույն բանը թե՛ ինձ շրջապատող դերասանների, թե՛ հանդիսատեսի, թե՛ դերակատարի մոտ։

Հետագայում եկա այն եզրակացության, որ Առաջին դերասանն արտասվի թե չէ, միևնույն է, պիտի ստիպեմ ինձ հավատալ, որ նա արտասվում է, պիտի ստիպեմ ինձ նրա աչքերին արցունքներ տեսնել։

Հոգեկան երկվության շնորհիվ՝ որ ես, բեմի վրա կերպար լինելով, մնում եմ այդ կերպարի կառավարողը, կարողացա օգտվել այդ դրությունից՝ հօգուտ դերի հարստացման և նրա բարդացման։

* * *

Զարմանալի մի սովորություն։

Ներկայացումից հետո Փափազյանը երկար ժամանակ չէր կարողանում քնել։ Եվ, ըստ երևույթին, լիցքաթափվելու համար, գիշերվա ուշ պահին մի չարաճճի խաղ էր խաղում մոտ ընկերների գլխին։

Մի օր, ուշ գիշեր էր, երևի ժամը երկուսն արդեն անց կլիներ, լսվեց հեռախոսի զանգ։ Ով կարող է լինել այդպես անժամանակ։ Վերցրի լսափողը։ Կանացի անծանոթ մի ձայն, ներկայանալով որպես բուժքույր, խուճապահար հայտնեց, թե

Արտաշատից, ներկայացումից հետո, մեքենան, որով Փափազյանը վերադառնում էր քաղաք, վթարի է ենթարկվել։ Վարպետի վիճակը ծանր է և խնդրում է տեսնել իրեն, շատ կարևոր բան ունի ասելու։ Ես ու տիկինս՝ Նելլին, շտապ նետվում ենք փողոց և մեր դռների մոտ հանդիպում Արփենիկ Խաչանյանին, որին նույն ձայնը հաղորդել էր նույն լուրը։

Ճանապարհին հանդիպում ենք Վավիկ Վարդանյանին և Դավիթ Մալյանին, իրենց կանանց հետ վերադառնում էին ինչ-որ կերուխումից։ Հայտնում եմ լուրը. Վավիկը միացավ մեզ, իսկ Դավիթը Պերճանուշի և Կիրայի հետ շտապեց տուն, առողջապահության մինիստրի հետ հեռախոսով կապվելու համար։

Գնացինք երրորդ հիվանդանոց։ Չկա։ Անցանք երկրորդ հիվանդանոցը, դարձյալ չկա։ Շարունակեցինք ճանապարհը. առաջին հիվանդանոցում էլ չկա։ Եվ այսպես, քաղաքի բոլոր հիվանդանոցները շրջելուց հետո հուսահատ ու ջարդված վերադարձանք տուն։ Ժամը չորսից անց է։ Նորից զանգ, նորից կանացի նույն ձայնը հայտնում է, որ Փափազյանին է հանձնում լափողը։

— Բարեկա՛մս, ներիր ինձ, բայց հավատացի, որ սիրում ես ինձ։

Ու բարձր ծիծաղ։ Հաջորդում են միմյանց նույնատիպ զանգեր բոլոր նրանց, որոնց ուշ ժամին ոտքի էր հանել արտիստը։ Իսկ առավոտյան պարզվեց, որ ներկայացումից հետո մի քանի հոգով վերադարձել են Երևան և տուն գնալու փոխարեն «խուժել» են Անիկ Մկրտումյանի բնակարանը, իսկ տանտիրուհին ինձ և ուրիշներին ներկայացել է որպես բուժքույր։

* *

Մի օր ասաց.

— Շատ բանի եմ հասել, բայց մի փափագ մնացել է մեջս։ Հիսուն տարի ծառայել եմ Շեքսպիրին, ուր գնացել՝ տարել եմ հետս ու ներկայացրել նրան մեր հայ լեզվով, մեր հին լեզվով, որ խստաշունչ է, ինչպես մեր երկինքը կայծա-

կի զարկի պահին, քնքուշ է ու ջերմ, ինչպես մեր երկինքը երևանյան աշնան օրերին։ Ո՞ւր ասես, որ չեմ եղել, ո՞ւր ասես ոտ չեմ դրել։ Ու հավատա, ամեն տեղ էլ մեր ժողովրդի պատիվը բարձր եմ պահել։ Բայց մի տեղ, որ պատանի հասակիս եմ եղել՝ Շեքսպիրի հայրենիքն է։ Ուզում եմ հիմի գնալ, երբ ուժ եմ զգում մկանունքիս մեջ։ Ուզում եմ հիմի գնալ, երբ մեջքիս պետականացած ժողովուրդ է կանգնած։ Ասում եմ գնամ, լոնդոնցիների շլնքից բռնեմ, դնեմ տակս ու դառնամ տուն, էլ ետ չնայեմ։

* * *

Մտա հյուրանոց Փափազյանին տեսնելու։ Գործ ունեի, հիմա չեմ հիշում, թե ինչ։ Հուզված էր, կարծես նույնիսկ վրդովված։ Ետ ու առաջ էր անում։ Հետաքրքրվեցի, թե ինչ է պատահել։ Ասաց, որ եղել է գերեզմանատանը և շատ վրդովացել է, տեսնելով իր սիրելի ընկերոջ՝ Արուս Ոսկանյանի շիրիմն այդպես անշուք վիճակում։ Վճռելով իր ծախքով զարդարել նրա շիրիմը, զանգահարել է Արուսի մորը, հայտնել իր ցանկությունը և խնդրել տեսակցություն՝ դրա շուրջը խորհրդակցելու համար։

— Երբ վերահասու եղա, որ արժանավայել Արաքսի-հանըմը մտադիր է թաղվել իմ Արուսյակի կողքին և որ ինչ-ինչ պաշտոնական թույլտվություն էլ ունի ձեռքին, իր այդ ցանկությունն ապահովող՝ ես բարվոք համարեցի հրաժարվել իմ ծրագրից և Արուսյակիս շիրիմը կանգնեցնել իմ սրտում, ուր ո՛չ ոքի հնարավոր չլինի մոտածել իսկ հանգչելու նրա կողքին։

* * *

Մի օր հարցուփորձ էի անում թաշկինակի տեսարանի վերջին լուսաբանությունից։ Ուզում էի իմանալ, թե որտե՛ղ և ինչպե՛ս է հղացել այդ միտքը։ Այդ առթիվ պատմեց Տուգանովի ոգևորությունը այդ տեսարանով՝ Բաքվում, 1945-ին։ Ես ակամա անդրադարձա այն իրողությանը, որ ահա քանի՜ ժամանակ է, երևի մի քանի տասնամյակ, որ դերասանի խա-

ղի մեծարման ու գնահատության այդ կարգի դրսևորումներ չեն լինում։ Եվ մտածում էի ափսոսանքով՝ չլինի՞ թե Փափազյանն այն վերջին ողբերգակն է, որ իր հետ տանում է ռոմանտիկ հանդիսատեսին, որպիսին, Փափազյանի պատմածով, եղել է Տուգանովը, Բաքվի ռուսական թատրոնի նշանավոր ռեժիսորը։

Նայեց աչքերիս և չկռահելով, թե ինչի մասին եմ մտածում, կարծեց, թե չեմ հավատում ասածին, ժպտաց, որի մեջ վիրավորված մարդու դառնություն կար։

— Բոլորդ էլ այդպես եք, չեք հավատում, նույնիսկ դու, որ բարեկամս ես։

Մի փոքր հետո.

— Ոչ ոքի չէի պատմել, առաջին անգամ քեզ ասացի, և չհավատացիր։ Կարող ես Ժասմենին հարցնել, իրեն՝ Տուգանովին։

Ես, իհարկե, ոչ Ժասմենին հարցրի, ոչ էլ Տուգանովին հարմար գտա հարցում անել նամակով։ Անցավ բավական ժամանակ, երևի մի երկու թե երեք տարի և հանկարծ մի օր, նույնը, ինչ պատմել էր Փափազյանը, պատմեց ռեժիսոր Արտաշես Հովսեփյանը, որ այն տարիներին, աշխատելով Բաքվի հայկական թատրոնում, ներկա է եղել այդ դեպքին։

Գնացել էի Լենինական՝ թատրոնում զեկուցում տալու։ Արտաշես Հովսեփյանը, որ այդ թատրոնի դիրեկտորն էր և գլխավոր ռեժիսորը, մի քանի դերասանների ներկայությամբ գանգատվեց Փափազյանից. խոստացել է ներկայացումների գալ, սա էլ հայտարարություններ է փակցրել, տոմսեր վաճառել ոչ միայն քաղաքում, այլև գյուղերում, իսկ Փափազյանը, Լենինական գալու փոխարեն, ճանապարհվել է Ստեփանակերտ։

Գանգատն իրավացի էր և ես Փափազյանին արդարացնող ոչ մի պատճառաբանություն չկարողանալով գտնել՝ ասացի, թե ճիշտ է, լավ չի արել, բայց նրան պետք է ընդունել այնպես, ինչպես որ կա։

Հովսեփյանը, ենթադրելով, թե ես այն տպավորության եմ, թե ինքը դրա հիման վրա կասկածի է ենթարկում Փա-

փազյանի մեծությունը, հարցրեց, թե ես գաղափար ունե՞մ, թե ով է Տուգանովը և, դրական պատասխան ստանալով, ասաց.

— Դե որ այդպես է՝ լսեցեք, ես ձեզ մի դեպք պատմեմ Փափազյանի կյանքից, որ դժվար թե լսած լինեք։

Տեսնելով, պատրաստվում ենք լսելու՝ նա անշտապ մի շարժումով թարմացրեց ծխախոտի կրակը և պատմեց հետևյալը, որ նույնն էր, ինչ-որ հայտնի էր ինձ Փափազյանի պատմածից։

— 1945 թվականն էր։ Փափազյանը Երևան այցելելու ճանապարհին կանգ էր առել Բաքվում՝ ներկայացումներ տալու համար։ Բաքվի հասարակությունը կարոտել էր Փափազյանին։ Ես շատ եմ տեսել Փափազյանի Օթելլոն, բայց ինչպես նա խաղաց այդ օրը՝ երևակայությունից դուրս բան էր։ Երբեք նրան այդպես չէի տեսել, ոչ էլ կարող էր մտքովս անցնել այն բոլորը, ինչ որ նա արեց։ Առանձնապես տպավորիչ էր թաշկինակի տեսարանը։ Առաջին ներկայացումից հետո լուրը տարածվեց քաղաքում և բոլորն ուզում էին տեսնել նրա խաղը։ Ե՛վ ռուսներ, և՛ ադրբեջանցիներ, և՛ հրեաներ։ Եթե ասեմ, որ պատրաստ էին թատրոնի դռները ջարդել, միայն թե դահլիճ ընկնեն, հավատացեք, որ չեմ չափազանցնում։

Հովսեփյանը մի պահ կանգ առավ։

— Լուրը հասել էր Տուգանովին, և նա էլ, բոլորի նման, որոշել էր նայել Փափազյանի խաղը, մանավանդ երկար տարիներ նրա Օթելլոն տեսնելու առիթ չէր ունեցել։ Չեմ հիշում թե Փափազյանի որերորդ ներկայացումն էր, որ Տուգանովը եկավ թատրոն։ Թե ի՞նչ է Տուգանովը՝ ինքներդ լավ գիտեք, ի՞նչ ասեմ։ Ներկայացումից առաջ չգնաց կուլիսները՝ Փափազյանին տեսնելու։

Երրորդ զանգը տրվեց։ Նա դահլիճ մտավ բոլորի հետ։ Առաջին և երկրորդ արարներից հետո, ընդմիջումներին Տուգանովը եկավ իմ առանձնասենյակը, խոսեց զանազան հարցերից, բայց ոչ մի խոսք Փափազյանի ու նրա խաղի մասին։ Ինքը ոչինչ չէր ասում, մենք էլ, թեև շատ էինք հետաքրքրվում, սիրտ չէինք անում հարցնել։ Երրորդ արարից հետո չե-

րեաց մեր սենյակում։ Ենթադրելով, որ գնացել է Փափազյանի մոտ՝ շտապեցի կուլիսները։ Շատ մարդ կար այնտեղ, ով ասես, բացի Տուգանովից։ Մտա դահլիճ. այստեղ էլ չէր։ Կասկած ընկավ սիրտս, չլինի՞ թե չի հավանել ու թողել-հեռացել է։ Շտապեցի հանդերձապահի մոտ. ասաց, որ այո, հենց որ վարագույրը փակվել է, եկել է վերարկուն վերցրել ու գնացել։ Ասես սառը ջուր լցրին գլխիս։ Տարակուսած ետ դարձա և միակ բանը, որ կարողացա մտածել՝ այն էր, թե ինչ լավ եղավ, որ Փափազյանին չէի ասել, թե Տուգանովը եկել է ու նայում է ներկայացումը։ Երբ ներկայացումը վերջացավ, անցա կուլիսները, և հիմա չեմ հիշում, թե քանի անգամ, համենայն դեպս շատ-շատ էր դա, դահլիճն իր ծափով ու կանչերով Փափազյանին բեմ էր վերադարձրել։ Այժմ, ինչպես միշտ, մարդիկ, որոնց մատչելի էին կուլիսները, մարդիկ, որ երբեք չէին եղել կուլիսներում, մի մեծ բազմությամբ շրջապատել էին Փափազյան-Օթելլոյին, որն իր փառահեղ ու հաղթ հասակով կենտրոնում կանգնած, ժպտում էր մեկ սրան, մեկ մյուսին, կարճ պատասխաններ էր տալիս իրեն ուղղված հարցերին, ստորագրություն դնում իրեն պարզված լուսանկարների ու ծրագրերի վրա։ Ահա այդ ժամանակ էր, որ կուլիս մտավ Տուգանովը, երջանիկ մի ժպիտ դեմքին՝ կանգնեց դռների մոտ։

— Տուգանո՞վը...

Ասացին նրան ճանաչող մարդիկ ու իրենց պաշարումից ազատեցին Փափազյանին։ Սրանց օրինակին հետևեցին և նրանք, որ չգիտեին, թե ով է ներս մտած ծերունին։ Փափազյանը, տեսնելով Տուգանովին, բացականչեց.

— Ալեքսանդր Ալեքսանդրովի՛չ,— ու ձեռքերը պարզած՝ քայլեց դեպի նա։

Տուգանովը ձեռքի հրամայական շարժումով կանգնեցրեց նրան։ Փափազյանը քարացավ տեղում։ Տուգանովը, թատերական այդ մեծ հեղինակությունը, որ տարիքով էլ մեծ էր նրանից, ծունկի եկավ և այն մի քանի քայլը, որ իրեն բաժանում էր Փափազյանից, ծնկաչոք անցավ, մոտեցավ արտիստին, վերցրեց Օթելլոյի զգեստի քղանցքը, մոտեցրեց

շուրթերին և ապա գլուխը բարձրացնելով ի լուր բոլոր ներկաների՝ ասաց.

— Այս գիշեր ես համոզվեցի, որ դու աշխարհի ամենամեծ արտիստն ես։

Փափազյանը բարձրացրեց նրան, և երկար ժամանակ ողջագուրված մնացին՝ ներկա գտնվողների խանդավառված ծափերի ու կանչերի աղմուկի տակ։

Երբ շրջապատը հանդարտվեց և Օթելլոն իր սև բազուկներից ազատեց Տուզանովին, նա ձեռքը տարավ ծոցագրպանը և այնտեղից հանեց Փափազյանի լուսանկարը, 1913 թե 1914 թվականի մի նկար, որի վրա Պոլսից Թիֆլիս եկած Փափազյանի մակագրությունը կար։ Ահա թե ինչու էր երրորդ արարից հետո Տուզանովը տուն շտապել։ Եվ խնդրեց, որ Փափազյանը նույն նկարի վրա, երեսուն և ավելի տարիներ հետո, նոր մակագրության արժանացնի ջահել օրերի այս հազվագյուտ հիշատակը։

* * *

Փափազյանը չէր սիրում սեղան նստել, քեֆ անել։ Նա ուներ օրվա իր կարգն ու կանոնը, որին հետևելը տասնամյակների ընթացքում նրան հեռու է պահել հիվանդանալու վտանգներից։ Երկու բան միայն կարող էին խախտել այդ կարգն ու կանոնը՝ թատրոնը և կանայք։ Խմել չէր սիրում. կոնյակը և գինին շատ շուտ էին ազդում վրան։

Մի անգամ հարցրի, թե մի՞թե ինքը չի մասնակցել այն սեղաններին, որ բացվել են ներկայացումներից հետո, երբ ինքը ռուսական շրջիկ խմբի գլուխն անցած մի քաղաքից մյուսն է գնացել։

— Մեծ մասամբ խուսափել եմ։ Եթե հնարավոր չի եղել, մի կես ժամ նստել եմ պատշաճը պահելու համար, հետո, երբ խաղընկերներս արդեն գինովցած էին լինում, աննկատ հեռացել եմ մտել անկողին։ Նրանք նստում էին մինչև ուշ գիշեր։ Դե՛, նրանց, ինչ, դժվարն իմն էր, վաղը ներկայացման ծանրություն պետք է վրաս առնեի։

— Իսկ կանա՞յք...

Ծիծաղեց։

— Անունս է դուրս եկել և շատ էլ մի հավատա։

Ժպտաց։

— Գիտես ինչ, բարեկամս, կինն այնպիսի արարած է, որին անկարելի է չսիրել։

* * *

Աբովյան փողոցումն էր, Հյուրանոցի մուտքի մոտ։ Փափազյանն էր, նկարիչ Խաչատուր Եսայանը և ես։ Այն օրերին էր, երբ Փափազյանը պատրաստում էր «Ուրիել Ակոստայի» նոր բեմադրությունը՝ իր մասնակցությամբ։ Բոլորս էլ այն համոզման էինք, որ նա եթե կամենում է՝ պետք է բեմադրի և ոչ թե խաղա։ Իրեն դժվարանում էինք ասել, բայց ակնարկում էինք, երբեմն մութ, երբեմն բավական թափանցիկ։ Փափազյանը կամ չէր հասկանում, կամ էլ չհասկանալու էր տալիս։ Իսկ եթե հասկանում էր՝ դիմադրում էր ինչքան ուժ ուներ, նեղ դրությունից դուրս գալու մի սրամիտ ելք գտնելով։

Եսայանը հարցրեց.

— Քանի՞ տարեկան է Ուրիելը։

Նկարիչն այդ լավ գիտեր, բայց նրա նպատակն այլ էր։ Փափազյանը հասկացավ.

— Ուրիելը տարիք չունի. նա փիլիսոփա է։

* * *

Լենինականի թատրոնի շքամուտքի առաջ, ծառաստվերում կանգնած զրուցում էր երիտասարդ և ավագ դերասանների մի ոչ մեծ խումբ։ Փափազյանն էլ էր նրանց հետ։

Մի մուրացիկ մոտեցավ և հերթով ձեռքը պարզեց բոլորին։ Մի տարեց դերասան բացեց փողաքսակը ու երբ տեսավ, որ մի ռուբլիանոց է ձեռքին, թղթադրամը նորից տեղը դրեց, և երկար որոնելուց հետո, գտավ մի քսան կոպեկանոց։ Մուրացիկը մոտեցավ Փափազյանին. Նա ձեռքը տարավ գրպանը, շարունակելով խոսքը, և ավելի, որպես նախատինք տարեց ընկերոջ, քան օգնություն, արտիստիկ անփութությամբ մուրացիկի բռան մեջ դրեց մի տասը ռուբլիանոց։

* * *

Խոստացա երեկոյան լինել իր մոտ։ Տեսնեմ՝ գահավորակին նստած է մի ծեր հոգևորական, Փափազյանն էլ արտակարգ ուրախ է. ծանոթացրեց։ Պարզվեց, որ դա Հայր-Բոդուրյանն է, միակը, որ դերասանի ուսուցիչներից և դաստիարակներից ողջ է մնացել։ Բոդուրյանին Փափազյանը հանդիպել էր Վենետիկում ուսանելիս։ Պատմության դասատուն է եղել։ Հիսունմեկ տարվա անջատումից հետո կրկին հանդիպել են։ Բոդուրյանը, որ ուժսունը լրացրել ու վաղուց առաջ է անցել, խարխլած մի ծերուկ է, այնքան դալկադեմ, որ թվում է, թե արյունը սառել է մեջը։ Ժպտում է մանկական մի արտահայտությամբ։ Բայց հիշողությունը լավ է, և ուսուցիչ ու աշակերտ մեկիկ-մեկիկ հիշում են վարժարանցիներին, թե ով ուր է և ինչ ճակատագիր ունեցավ։

Երբ ներկայացրին ինձ՝ ասաց.

— Ինձի համար մեծ ուրախություն է ձեզի հետ ծանոթանալը. ամեն մեկ նոր անձ իմ կյանքում հույս է, որ տակավին կշարունակվի կյանքս։

Հիշեցին հայր-Ղազիկյանին։

— Ան ալ Պարտիզակից էր, ինչպես ես,—դարձավ ինձ,— մեր գյուղը տասներկու հազար բնակիչ ուներ, երբ թուրքերը վրա կուտան, հայր-Ղազիկյանը իր ձեռագրերը կթաղե հողին մեջ ու նոր կելլե գյուղը։

* * *

1956-ին պետք է տեղի ունենար հայ արվեստի և գրականության տասնօրյակը Մոսկվայում։ Փափազյանը մեծ ցանկություն ուներ մասնակցելու, հույսեր կապելով, թե վերջապես, կստանա դերասանի համար բարձրագույն տիտղոսը մեր երկրում՝ «Սովետական Միության ժողովրդական արտիստ»։

Թատրոնում կային մարդիկ, այն էլ բավական ազդեցիկ դեմքեր, որոնք դեմ էին Սունդուկյանի անվան թատրոնի կազմի մեջ Փափազյանին տեղ տալուն։

Այդ հարցը մի քանի անգամ քննության առարկա դարձավ թատրոնի գեղարվեստական խորհրդում։ Լինելով այդ խորհըր-

դի անգամ, ես ու մի քանի ուրիշ ընկերներ պաշտպանում էինք Փափազյանի շահերը։ Հակառակորդները ասում էին, թե Փափազյանի արվեստը իր բնույթով ոչ մի ընդհանուր բան չունի սունդուկյանցիների դերասանական արվեստի հետ։ Պաշտպաններս առարկում էինք, ասելով, թե Սունդուկյանի թատրոնի դերասանները մի միասնական ոճի դերասաններ չեն, հետևապես եղած առարկությունը արհեստական է, որով կամենում են կասեցնել մասնակցությունը մի դերասանի, որով, թվում էր, պետք է հպարտ լինի թատրոնը։

Փափազյանը գեղարվեստական խորհրդի անդամ չէր և չէր մասնակցում նիստերին։ Վեճերը բավական կրքոտ էին, երբեմն էլ ընդունում էին անձնական վիրավորանքի բնույթ։

Հարցը որոշվեց հօգուտ Փափազյանի։

Մոսկվա տարվող խաղացանկում կար «Օթելլո», բեմադրելու էր Լևոն Քալանթարը, որի կարծիքով գլխավոր դերը պետք է կատարեր Գեղամ Հարությունյանը։ Դերը տրվեց Փափազյանին։

Տեղի ունեցավ ներկայացման հանձնումը։ Փափազյանն այն չէր։ Ոչ այնքան այն պատճառով, որ տարիք էր առել, որքան այն, որ ենթարկվել էր բեմադրող ռեժիսորի մեկնաբանությանը, կորցրել իրենը և ռեժիսորի առաջարկած նորն էլ, որ գոնե ինձ խիստ վիճելի էր թվում, չէր յուրացրել։

Ներկայացման գիշերը քնել չկարողացա և հասկացա, որ չեմ հանգստանա, մինչև մի նամակ չգրեմ իրեն՝ Փափազյանին և չհայտնեմ իմ հուսահատ տպավորությունը։ Նամակը երկար ստացվեց։ Փափազյանը ոչինչ չասաց նամակը ստանալու մասին, բայց հանդիպելիս խուսափեց ինձանից։ Ներկայացման քննարկմանը ելույթ ունեցա գրածս նամակի ոգով։ Ինքը ներկա չէր, բայց նրան հայտնել էին, թե ով ինչ է ասել։ Սառնություն մտավ մեր հարաբերությունների մեջ։ Նա չէր ուզում հասկանալ, որ ես չէի կամենում, որ նա այդպես ներկայանա իրենով մի ժամանակ հիացած Մոսկվային, այդ պարտությունը համարելով շատ թանկ հատուցում՝ բարձրագույն տիտղոս ստանալու պատվի դիմաց։

Փափազյանը հիշաչար չէր։ Եվ այդ սառնությունը հազիվ մի ամիս տևեց։ Մի երեկո զանգ տվեց, խնդրեց անպայման

անցնել իր մոտ մի կարևոր գործով։ Ինչպես այդ, այնպես էլ մեր մյուս հանդիպումներին դրա մասին խոսք չէինք բացում։ Երբ մեկնում էր Մոսկվա, ճանապարհելիս բարեմաղթեցի հաջողություն։ Մոսկովյան մամուլը նրան գովել էր և նա, իհարկե, գիտեր այդ, մասնագետների նեղ շրջանը դժգոհ էր մնացել, որից, բարեբախտաբար, նա տեղյակ չէր։ Ու երբ վերադարձավ, միայն մի խոսք ասաց.

— Իզուր էիր անհանգստանում. ամեն ինչ կարգին էր։

Ասաց և գրկեց ինձ ու համբուրեց։ Բայց ես գիտեի, որ բնավ էլ ամեն ինչ կարգին չէ։

* * *

Մոսկովյան տասնօրյակից մեր արվեստագետները վերադարձան։ Ոչ ոքի հայտնի չէր, թե ով ինչ կոչում է ստանալու, ինչ շքանշան կամ մեդալ։ Բոլորն էլ անհամբեր էին։ Վերջապես հրապարակվեց տեղական որոշումը կոչումների մասին։ Միաժամանակ հետո հայտնի դարձավ նաև, թե Միութենական Գերագույն սովետը ում ինչ շքանշան է շնորհել։ Անցնում էին օրեր և այդպես էլ հայտնի չէր, թե Սովետական Միության ժողովրդական արտիստի կոչման քանի՜ հոգի են արժանանալու և ովքե՞ր են լինելու դրանք։ Պարզ էր, որ չորսից կամ հինգից չէր անցնելու քանակը, իսկ թե ովքեր էին լինելու՝ առատ ենթադրությունների տեղիք էր տալիս և հավակնորդների ցանկը տասից անցնում էր։

Ամեն օր սպասվում էր ու ես խմբագրությունում աշխատող ընկերոջս՝ Միրայր Հակոբյանին, խնդրեցի, որ իմանալուն պես հեռախոսով հայտնի ինձ։ Բոլորը սպասում էին։ Սպասում էր նաև Փափազյանը։ Երեկոյան ժամը 9-ը կլիներ, որ ընկերս զանգահարեց. ստացողների հնգյակում կար նաև Փափազյանի անունը։ Զանգահարեցի թատրոն, արդեն գիտեին։ Հարցրի, թե Փափազյանին հայտնե՞լ են։ Պարզվեց, որ ոչ, որովհետև այդ ժամանակ նոր էր ստացել բնակարանը և հեռախոս չուներ։ Իմ տանն էին այդ պահին արվեստի մի խումբ մարդիկ, որոնց մեջ՝ Բաբկեն Ներսիսյանը։ Առաջարկեցի գնալ Կիևյան փողոց և շնորհավորել արտիստին։

Անահիտը դուռը բացեց և զարմացած մնաց, որ այդքան

շատ մարդ, առանց իմաց տալու, եկել են իրենց տուն, իսկ Փափազյանը սեղանի մոտ նստած պասյանս էր բացում։

— Շնորհավորո՞ւմ ենք...

Գոչեցինք ու բոլորս վրա ընկանք ողջագուրվելու։

— Իսկ ի՞նչ է եղել որ։

— Դու այսօրվանից ու այս ժամից Սովետական Միության ժողովրդական արտիստ ես։

— Չի կարող պատահել։

Չէր հավատում։ Սկսեցինք հավատացնել, ասացինք նաև թե էլ ով է ստացել։ Կարծես սկսեց հավատալ, բայց մի տարակուսանք կար մեջը։ Մեկ էլ դռան զանգ ու սենյակ մտավ բեմի հնագույն բանվոր Կոստանը՝ շնորհավորանքը շուրթերին։

Հավատաց։

Նոր միայն փաթաթվեց ամեն մեկիս, շնորհակալություն հայտնեց բարի լուրով գալու համար ու խնդրեց Անահիտին սեղան պատրաստել։

Հետզհետե բնակարանը լցվեց ծանոթ և անծանոթ մարդկանցով։ Երբ զվարթ մթնոլորտ էր տիրում և Փափազյանի ուրախությանը չափ չկար, իմ մտքով մի բան անցավ։

Այս արտիստը, որ իր տեսակի մեջ եզակի էր, ոչ միայն իր հզոր արվեստով, այլև լայն ժողովրդականությամբ, թվում է թե կարող էր այդ կոչումը ստանալ Կաչալովի և Մոսկվինի հետ միաժամանակ, մի խոսքով՝ ոչ թե հիմա, այլ սրանից մի քանի տարի առաջ։

Եվ մի՞թե, մտածում էի ես, այսքան ուշացումով ստանալու դեպքում էլ, այդ մեծ արտիստը պետք է ապրումներ, կասկածներ ունենար՝ կստանա՞, թե ոչ։

Մի ուրախ պահի հարցրի։

— Վահրամ Գամերովիչ, մենք որ եկանք, թուղթ էիր բացում. ճիշտն ասա, մտածո՞ւմ էիր՝ «եթե բացվեց՝ կստանամ, եթե ոչ՝ ոչ»։

— Ինչ թաքցնեմ, մաքինս դա էր։

* * *

1958-ի հունվարի 6-ին լրացավ Փափազյանի 70 տարին։ Նա, որ այդ օրը որպես կանոն անպայման բեմ էր բարձրանում, ցանկություն հայտնեց այս անգամ Արբենին խաղալու։

Արտիստի երկրպագուները, տեսնելով, որ նրա հոբելյանի շուրջը ոչ մի խոսք չկա, ոչ մի պատրաստություն չի տեսնվում, խոսքերը մեկ արած, շնորհավորական հեռագրեր ուղարկեցին տան ու թատրոնի հասցեով։ Հեռագրերը բավական շատ էին ստացվել և դա խիստ հուզել էր Փափազյանին։ Իսկ անվանի դերասաններից մեկը, սրտնեղելով, ասաց.

— Եթե այսպես պետք է լիներ, գզուշացնեիք՝ մեզանից մեկն ու մեկը բեմ կբարձրանար և կողջուներ նրան ծննդյան օրվա առթիվ։

— Շատ լավ կլիներ. իսկ ինչո՞ւ չեք մտածել,— հարցրեց ներկա գտնվող դերասաններից մեկը։

— Օրը չգիտեինք։

— Այդ ինչպես է, որ այսքան մարդ գիտեր, իսկ դուք չեք իմացել։

Այս «վեճը» շարունակվում էր, իսկ Փափազյանը անտեղյակ դրանից, սիրո խելացնոր խոստովանության դարը պահեր էր ապրում բեմում և հանդիսատեսն իր ծափերով ու կանչերով շնորհակալություն էր հայտնում ոչ միայն այսօրվա խաղի, այլև դերասանին ընդհանրապես՝ տարիներ շարունակ գեղեցկի զգացողությունն իր մեջ հաստատ պահելու և խորացնելու համար։

* * *

1959-ին, մի տարվա ուշացումով Փափազյանի ծննդյան 70-ամյակը նշվեց։ Իր վերջին խոսքում, ի միջի այլոց, ասաց.

— Շնորհակալ եմ ամենքից՝ իրենց լավ խոսքերի համար։ Մի բան լավ չէին անում միայն, որ ասում էին, թե յոթանասուն տարեկան եմ դարձել։ Ինչի՞ եք այդպիսի անհարմար բաներով հետաքրքրվում։ Ես ձեզ, սիրելի հանդիսատեսնե՛ր, որ եկել եք այս գիշեր ինձ պատվելու, հարցնո՞ւմ եմ, թե դուք ինչքա՛ն եք դարձել։ Ես այնպիսի տպավորություն ստացա, թե այդ բոլորն ասում են նրա համար, որ տանը նստեմ ու այլևս գործ չանեմ։ Ձեզած բան է, չեմ կարող։ Կնի՞կ եմ, ինչ է, որ ձեռքերս ծալեմ ու նստեմ։ Չեմ զգում տարիքս, ուրեմն՝ այդքան չեմ։ Ես դեռ շատ բան ունեմ անելու, իսկ թե որտե՛ղ ու

*ինչպե՛ս կանեմ՝ չգիտեմ, գիտեմ միայն, որ ուր էլ լինի՝ կլինի միայն այս տախտակամածի վրա՝ բեմում։*

*Եվ այնուհետև.*

*— Ես մի նետ եմ, որի աղեղը քո ձեռին է, իմ ժողովուրդ։ Եվ դու ես արձակել ինձ միջոցի մեջ։ Ես հիմա էլ սլացքի մեջ եմ, թռչում եմ, գնում եմ։ Թե քո արձակած նետը ե՛րբ և որտե՛ղ է ժայռի հանդիպելու ու խորտակվելու՝ այդ իմ իմանալու բանը չէ։*

* * *

*Հոբելյանին անդրադարձավ Անգլիա գնալու փափագին։ Դարձավ դեպի կառավարության ներկայացուցիչները, դեպի ժողովուրդը և խնդրեց օգնել, ուղարկել իրեն Լոնդոն՝ այնտեղ խաղալու համար։*

*— Կգնամ՝ տարիքիս հիսունը այստեղ թողած, ու կվերադառնամ, հավատացեք ինձ, ինչպես մի քսան տարեկան։*

*Հետո.*

*— Իմ միակ ցանկությունն է հիմա այդ. մինչև չկատարվի՝ չեմ մեռնի։*

* * *

*Սունդուկյանի թատրոնը բեմադրեց Ուիլյամ Սարոյանի «Իմ սիրտը լեռներում է» պիեսը։ Մեք-Գրեգորի դերը կատարում էր Հրաչյա Ներսիսյանը։ Մի քանի ներկայացումից հետո Փափազյանը ցանկություն հայտնեց խաղալու նույն դերը։ Փոխնիփոխ էին խաղում։ Փափազյանի առաջին ներկայացման օրը թատրոնումն էի։ Այդ օրը տեղի ունեցավ մի բան, որ հետո կրկնվում էր բոլոր ներկայացումներին։*

*Մեք-Գրեգոր-Փափազյանի վերջին տեսարանն էր։ Մեկ հիշողության թելը կորցնելով, մեկ վերագտնելով մտքի պայծառությունը, բայց միշտ հոգեկան մեծ հուզումով նա մի խառը մենախոսություն էր կարդում Լիրից և Համլետից։ Փափազյանը մի-փոքր շեղվելով հեղինակից՝ հավելում էր շեքսպիրյան ուրիշ հատվածներ էլ։ Այսինքն՝ մտնում էր իր իսկական տարերքի մեջ։*

Այդ մենախոսությունից հետո Մեք-Գրեգորը վախճանվում է։

Բեն-Ալեքսանդրն ասում է.

— Այս մարդը մեր ժամանակի շեքսպիրյան ամենամեծ դերասանն էր։

Բեն-Ալեքսանդրի այս խոսքերը խլացան ծափահարությունների տարափում։

Հրաչյային, որ թվում է, թե Փափազյանից ավելի հաջող էր այդ դերում, չէին ծափահարում այստեղ։

Փափազյան-Մեք-Գրեգորին տեսել եմ մի քանի անգամ և միշտ նույն տեղում դահլիճը ծափերով էր լցվում

* * *

Միլիցիայի ակումբում Փափազյանի հանդիպումն էր։ Ջեկուցումից հետո միլիցիոներները ողջունեցին նրան։ Վերջում ինքը շնորհակալության խոսք ասաց։ Ի միջի այլոց նկատեց նաև հետևյալը.

— Ինչ լավ հայերենով էին խոսում այս ամբիոնից ինձ ողջունողները։ Այն ընկերը, որ առանց թղթի կարդի խոսեց այդքան գեղեցիկ, նույնպե՞ս միլիցիայի աշխատող է։

Դահլիճում նստածներն ասացին, թե այո, խոսողը միլիցիոներ է։

— Անցյալ օրը,— շարունակեց իր խոսքը Փափազյանը,— գնացել էի փոստ՝ մի ծրար արտասահման ուղարկելու։ Կողքիս կանգնած էր մի կին, երիտասարդ, հայ տիկին՝ մանչուկի ձեռքից բռնած։ Եվ պատկերացնո՞ւմ եք, այդ դեղեցիկ, հրապույրով լի կինը իր մանչուկի հետ խոսում էր մի այնպիսի անճոռնի հայերենով, որ զարհուրեցի։ Քանի որ ձեր մեջ այդքան լավ հայերեն իմացողներ կան, ապա աղերսագին խնդրում եմ ձեզ, չե՞ք կարող, արդյոք, մեր լեզուն այդպես անխնա աղավաղողներին, անճոռնի հայերենով խոսողներին կալանքի տակ առնել։

Դահլիճում ուրախ ծիծաղ բարձրացավ։

— Մի՛ ծիծաղեք, լուրջ եմ ասում։ Մի՞թե կարծում եք, որ դրանց հասցրած վնասը նվազ է գրպանահատի հանցանքից։

* * *

«Ուրիել Ակոստա» ներկայացումից հետո մի անծանոթ ծերունի մոտեցավ Փափազյանին, ներողություն խնդրեց ուշ ժամին անհանգստացնելու համար և հարցրեց՝ թե ինչո՞ւ չի թողնում բեմը, չէ՞ որ հենց ինքը իր գրքում ասում է, թե դերասանը պետք է թողնի բեմը ավելի վաղ, քան բեմը կթողնի նրան։

Անմիջապես չպատասխանեց։ Զննական հայացքով նայեց ծերուկի աչքերին և ուզեց հասկանալ, թե իր հոգնած պահին ուզում է իր հոգու հետ խաղա՞լ, թե պարզասիրտ հետաքրքրության արդյունք է այդ հարցումը։ Իսկ ծերունին նայում էր նրան այն անկեղծ սրտաբացությամբ, որ մարդուն կաշառում է անմիջապես։

— Քանի՞ տարեկա՞ն ես։

Հարցրեց Փափազյանը։

— 67։

— Կին ունի՞ս։

— Այո։

— Առաջվա պես սիրո՞ւմ է, երիտասա՞րդ, հրապուրի՞չ։

Ծերուկը շվարած նայում էր Փափազյանին և չէր հասկանում, թե այդ բոլորն ինչ կապ ունի իր հարցի հետ։

— Դե՛, թող էլի, ինչի՞ չես թողնում։ Չես կարողանում, այնպես չէ՞։

Լռեց։

— Այդպես էլ ես, սիրելի՛ս։ Տեսնում եմ, հասկանում եմ, ուզում եմ, բայց չեմ կարողանում։

* * *

Լևոն Քալանթարը, հետո նաև ուրիշները, նախատեց ինձ «Հետադարձի» այն էջի համար, որ Արշավիր Շահխաթունին է նվիրված։

Մի օր Փափազյանին ասացի, թե այդ մի էջը դժգոհությունների շատ առիթ է տվել։

— Դու ես մեղավոր։

*Զարմացա։*

*— Ինչպե՞ս թե։*

*— Շատ էլ գրել էիր՝ ջնջեիր։ Հենց սկզբից քեզ քարթբլանժ տվի, ասացի՝ ինչ ուզում ես արա։ Դու էլ արիր, շատ էջեր ու տողեր կրճատել ես, մի ձայն հանե՞լ եմ, չէ՛։ Չեմ հասկանում՝ ինչպես եղավ, որ այդ էջը թողիր։*

*Ես պատմեցի լսածս. Լոս-Անջելոսի օրիորդաց վարժարանը երեկո է կազմակերպում և դիմում է Շահխաթունուն, խնդրում մասնակցել։ Դերասանը, որ զամված էր անկողնուն, ուղարկում է մի նամակ, որ գրել էր թատրոնի մասին։*

*Փափազյանը լսում էր ուշադիր, կարեկցանքով լի։*

*Ասացի նաև, որ իր նամակում խոսել է այն մասին, թե հայ թատրոնը անկում է ապրում, թեև նա շատ մեծ դեր ունի ազգահաստատման գործում լեզվապահպանման տեսակետից։ Բայց վերջում ասել է, թե անկարելի է անկումը մի թատրոնի, որ աշխարհին տվել է երեք այնպիսի հսկա, ինչպես Ադամյանը, Սիրանույշը և Փափազյանը։*

*— Ճի՞շտ...*

*Հազիվ բացականչեց Փափազյանը և այլևս չկարողացավ շարունակել խոսքը, ձայնը խեղդվեց կոկորդում։*

*— 1932-ին, որ Փարիզ էի, առաջին ներկայացմանս՝ Օթելլո, ֆրանսերեն, ֆրանսիացի դերասանների հետ, «Օդեոն» թատրոնում ինքը հետևեց հագնվելուս, իր ձեռքով դիմահարդարեց ինձ, կողքիս մնաց կուլիսներում մինչև առաջին մուտքս ու ասաց. «Քեզ տեսնեմ, Հայաստանը թող աչքիդ առաջ լինի»։*

* * *

*Մի երեկո զանգահարեց.*

*— Չե՞ս կարող գալ ինձ մոտ։*

*— Ի՞նչ կա։*

*— Անհետաձգելի գործ։*

*— Իսկ եթե վաղը երեկոյան գամ։*

*— Անկարելի է։*

*— Վաղը ցերեկով գամ։*

— Անկարելի չէ։

— Վահրամ Գամերովիչ, հոգված եմ գրում, վաղը առավոտյան պետք է հանձնեմ։

— Գիշերը կգրես, արի անպայման, իմ գործն անհետաձգելի է. ուզում եմ խորհրդակցել հետդ։

Գնացի։

Սկզբում բարև-աստծու բարին, հետո քեֆ ու հալ, վերջապես հազար ու մի հարց, բայց ոչ մի խոսք այն գործից, որի համար կանչել է։

Արդեն ժամը ուշ է, շուտով գիշերվա 12-ը կլինի։ Վեր եմ կենում, բայց էլի չի ասում, թե ինչու է ինձ կանչել։ Ստիպում է նստել։

— Հա՛, գիտես ինչի՞ մասին էի ուզում հետդ խոսել։ Ասա խնդրեմ. ի՞նչ պիտի լինի մեր թատրոնի վիճակը։

Ու սկսվեց մի զրույց, որ կարող էր և՛ վաղը տեղի ունենալ, և՛ մյուս օրը, և՛ մի ամիս հետո։

Նստեցինք մինչև գիշերվա ժամը երեքը։

* * *

Երեկոյան դեմ ճանապարհվեցի Փափազյանի մոտ։ Հայելու առաջ կանգնած փողկապն էր կապում։ Այնտեղ էր նաև Արման Կոթիկյանը։

Հետաքրքրվեցի, թե ուր են պատրաստվում գնալու։

— Կոնսերվատորիա, հանդիպման։ Չե՞ս գա մեզ հետ։

Գնացի։ Կոթիկյանը ներկայացրեց դերասանին այնպես, ինչպես այդ արվում է սովորաբար, բայց մի մանրամասնություն կար նրա խոսքի մեջ, ըստ իս այնքան կարևոր, որ անհրաժեշտ է պահպանել ու ես տուն գալուց հետո գրի առա։

Կոթիկյանը, կամենալով Փափազյանին ներկայացնել առավելապես օտարների գնահատությամբ, պատմեց 1932-ի փարիզյան հյուրախաղերից մի դրվագ։

Փափազյանը պետք է բեմ բարձրանար Օթելլոյի դերում ֆրանսերեն՝ «Ատելյե» թատրոնի դերասանների ընկերակցությամբ։

Փափազյանը, ինչպես պատմեց Կոթիկյանը, խնդրում է վերջինիս իր հետ թատրոն գալ փորձերի։

— Առաջին օրը ռեժիսորը (անունը չեմ հիշում) ներկայացնում է Փափազյանին «Օթելլո» ներկայացման մեջ զբաղված դերասաններին։ Փափազյանը նեղվում էր և իմ տպավորությամբ մի փոքր էլ վախեցածի նման էր։ Ռեժիսորը իր բեմադրության գլխավոր սկզբունքները բացատրելուց հետո անցավ միզանսցեններին։ Ու թեև նա հայ ողբերգակին առաջարկեց սրբագրել, փոփոխել, եթե ուզում է, որ իրեն հարմար լինի խաղալ, բայց հայ դերասանը լուռ լսում էր։ Մյուս փորձին սկսեցին հարցեր տալ, իսկ երրորդ օրը բոլորը նստած էին, բացի Փափազյանից։ Չկար առաջին օրվա կաշկանդվածությունը, արտիստն իրեն ազատ էր զգում և բացատրում էր, թե ինչ է ուզում ինքը։ Չորրորդ օրը վիճակները բոլորովին փոխվել էին. դրության տերը արդեն Փափազյանն էր։ Ուշադիր լսում էին նրան, հետաքրքրված և, ճիշտն ասած՝ ինձ համար էլ նորություն էր ընկերոջս պաշարի այդպիսի մեծ չափը և մանավանդ ինքնատիպ մեկնությունները կերպարների ու նրանց միջև եղած փոխհարաբերությունների։ Այլևս ոչ մի կասկած չունեին ֆրանսացի արվեստակից ընկերները, որ Փափազյանի խաղը գրավելու է Փարիզի դժվարահաճ հանդիսատեսին։

Դրանից հետո Կոթիկյանը պատմեց առաջին ներկայացման թողած տպավորությունը, մեջբերեց ֆրանսիական մամուլի բարձր գնահատությունը և այլն։

* * *

Լուր հասավ ինձ, որ Փափազյանը սրտի ուժեղ նոպա է ունեցել ու պառկել է։ Դա 1965-ի հունվարի 16-ին էր։

Շտապեցի մոտը։

— Չեմ հասկանում ինչ է պատահել, որ այսօր այնքա՜ն մարդ եկավ ու գնաց, ինչպես ոչ մի օր։

Դադար։

— Չլինի լուրջ հիվանդ եմ ու ես ոչինչ չգիտեմ։

Առանձնացա Անահիտի հետ, իմանալու, թե բժիշկներն ինչ են ասել։

— Ասացին, որ ինֆարկտ է— շշնջաց Անահիտը։— Եվ զգուշացրին ինձ, որ հիվանդը պառկած է մնալու բավական երկար, մի տարի, գուցե նույնիսկ ավելի, պառկած ժամանակն էլ չպետք է շարժվի։

Մի փոքր հետո.

— Եվ պատկերացնում ես, բժիշկների գնալուց մի ժամ էլ չէր անցել, որ Վահրամս սրտնեղեց պառկելուց, վերմակը թափով նետեց մի կողմ և ընդոստ քայլերով մոտեցավ պատուհանին ու երկար դիտում էր փողոցի շարժումը։

Փափազյանը երկար պառկեց, երևի մի տարի, նույնիսկ ավելի։

1966-ի մարտի 5-ին տեղի պիտի ունենար թատրոնի բացումը։

Թատերասրահը լեփլեցուն էր։Շատ մարդ կար նաև բեմում, իսկ թատրոնի դերասանները գրեթե բոլորն էլ եկել էին։ Դեռ վարագույրը չէր բացվել, որ հայտնվեց Փափազյանը՝ լավ հագնված, գեղեցիկ ինչպես միշտ։ Բոլորը մնացին զարմացած, մանավանդ որ ամենքին հայտնի էր, որ բժիշկներն արգելել էին նրան տանից դուրս գալ։

— Ինչպե՞ս կարող էի տանը մնալ այսպիսի երանելի մի օր։

Ժպտաց։

— Վերջապե՜ս, վերջապե՜ս։

Չհասկացանք, թե ինչի մասին է խոսքը։

— Հայ դերասանի երազանքը կատարված է։ Հայ դերասանը միշտ էլ երազել է իր թատրոնն ունենալ և չի ունեցել։ Սա առաջին անգամն է։

— Ինչպես թե առաջին անգամը,— զարմացավ ներկա գտնվող դերասաններից մեկը։

— Սկզբում դաշնակցականների պառլամենտի շենքը տրամադրվեց թատրոնին։ Հետո՝ հին բոլշևիկների ակումբը։ Ճի՞շտ է։ Այդ շենքերից ոչ մեկը չի կառուցվել որպես թատերական շենք, որպես մեր մայր թատրոնի շենք, սա առաջինն է։ Եվ լավն է։

Ասաց ու նայեց շուրջը։

Բոլորին հրավիրեցին գրավելու իրենց տեղերը։ Մարտի-

րոս Սարյանը և Վահրամ Փափազյանը Օլգա Գուլազյանին առան իրենց մեջտեղն ու նստեցին նախագահությունում։

Վարագույրը բացվեց։

Եվ ամեն անգամ, երբ ճառախոսներից որևէ մեկը տալիս էր Փափազյանի անունը, դահլիճը թնդում էր ծափերից։

Երբ հանդիսավոր մասը վերջացավ և վարագույրը փակվեց, բեմում եղած մարդիկ ցրվեցին, Փափազյանը մնացել էր իր տեղում նստած։ Տխուր էր։ Մոտեցա իրեն։

— Տեսնես խաղալո՞ւ եմ այս բեմում։ Այդ բախտին էլ կարժանանա՞մ, թե...

* * *

Գնացել էի Լենինգրադ, Օլգին՝ Փափազյանին այցելության։ Թեև հունիսի վերջերն էին, բայց գիշեր-ցերեկ անձրև էր գալիս։

— Չե՞ս նյարդայնանում այս անվերջանալի անձրևից, այս խոնավությունից։

— Երևակայիր, որ ոչ, սիրում եմ անձրևը, մտաբերում եմ Տերյանին, միալարությունը հանգստացնում է ինձ, խաղաղություն է բերում հոգուս։

Մի փոքր հետո.

— Թիֆլիսի հայ դերասանները Ռոստով են եկել ներկայացումներ տալու և «այրվել» են։ Երեկ հեռախոսով կապվեցին, թե արի, մեզ հանի էս նեղ վիճակից։

— Գնալո՞ւ ես։

— Երևի ոչ, բժիշկների հետ խորհուրդ արի։ Ասին, թե վիճակս այնպես է, որ կարող եմ գնալ ու խաղալ, բայց հայտնի չէ, թե հետո ինչ կլինի։ Ասում են՝ հազիվ ենք ոտքի կանգնեցրել։

— Բժիշկները ճիշտ են ասում։

— Ես էլ գիտեմ, որ ճիշտ են ասում, բայց տղաները մեղք են, ես էլ որ օգնության չհասնեմ, ով է նրանց ձեռք բռնելու։

* * *

Երրորդ օրն է, որ Լենինգրադում եմ։ Անձրևները շարունակվում են։ Առավոտ է։ Փափազյանն ու ես սեղանի շուրջ նստած զրուցում ենք։ Սենյակում երևում է Ժաննան։

— Մայրդ ո՞ւր է։

— Փայտ են բերել ձմեռվա համար։

— Էդ լավ է, բայց մեղք ենք, մի ժամ է նստած սպասում ենք, թե նախաճաշ կտաք։ Կանչիր մորդ։

Եկավ Մարիան։

— Փայտ են բերել, պա՛պ, մի ամբողջ բեռնատար մեքենա։ Ձմեռը վառելիքով ապահովված ենք։

— Որտեղի՞ց են բերել։

— Թատրոնից։

— Որտեղի՞ց։

— Թատրոնից։

— Չեմ հասկանում,— զարմացավ Փափազյանը։

— Դեկորներ են։

—Դեկորնե՞ր։

Ապշեց Փափազյանը։

— Եվ դու մտադիր ես ձմեռը դրանք վառարան գցել ու այրե՞լ։

— Այո, ի՞նչ կա որ։

Խիղճդ էլ հանգիստ կլինի՞։

— Իսկ ինչո՞ւ չէ։

— Լսիր, դու դերասանուհի ես, հասկանո՞ւմ ես, դերասանուհի, որ խաղացել է այդ դեկորներով շրջապատված, ծիծաղել ու լացել և հանկարծ, դեկորներն այդ, որ քեզ կյանք են տվել բեմում, պետք է քո իսկ ձեռքով այրվեն։

— Հայրի՛կ, դրանք հին դեկորներ են, այլևս անգործածելի։ Ես չվառեմ, մի ուրիշն է վառելու, ի՞նչ տարբերություն։

— Թող ուրիշը վառի, բայց ոչ Փափազյանի աղջիկը, ոչ դերասանուհին։

— Չեմ հասկանում։

Զարմանում էր Մարիան։

— Այո՛, չես էլ հասկանա, որովհետև դուք դերասաններ չեք, այլ թատրոնում ծառայողներ։

Մի պահ լռելուց հետո.

— Եթե ուզում ես, որ ես տանը մնամ, ապա անմիջապես մարդ կանչիր և հետ բեռնիր փայտը, թող տանեն նրան, ով կարգադրել է վառելիք դարձնել դեկորը։ Արա այդ, եթե չես ուզում, հիվանդ տեղովս վեր կենամ ու ջահնամվեմ այստեղից։

Մարիան մի հոգոց հանեց,բայց խոստացավ հոր ասածի պես վարվել ու դուրս գնաց։

Փափազյանը կարծես հանգստացավ։ Բայց մեկ-մեկ նորից էր հուզվում։

— Ինչ չէի տեսել, այն էլ տեսա։

Կամ՝

— Պատկերացնո՞ւմ ես, Փափազյանի տանը դեկորներ են վառում, երևակայելու բա՞ն է, դու ասա։

* * *

Հետաքրքրվեցի նոր գրքով, որը դեռ չգիտեր, թե ինչպես է կոչելու, մի-երկու վերնագիր առաջարկեցի— «Իմ Օթելլոն», «Օթելլոն և ես», «Օթելլոն, ես և ուրիշները»։ Ասաց, թե կմըտածի։ Շատ չի մնացել, երևի հազիվ մի ամսվա աշխատանք, և գիրքը պատրաստ կլինի։

— Այդ գիրքն էլ որ լույս աշխարհ տեսնի, կարող եմ հանգիստ աչքերս գոցել։

Ու կարծես պատկերացրեց իրեն այդ վիճակում, գլուխը ետ գցեց, աչքերը փակեց։ Գունատ-գունատ էր։ Մի պահ, հազիվ մի-երկու վայրկյան, այդպես մնաց, հետո իր ասածից սոսկահար, բացեց աչքերը, շուրջը նայեց, տեղից պոկվեց և, ասես իրական դրությունը ստուգած լինելու համար, քայլեց սենյակում ետ ու առաջ։ Եվ արագ, կարծես վանելով մահվան միտքը, որպեսզի թույլ չտա ժամանակ անցնելու, խոսեց այն մասին, թե այդ գիրքն ավարտելուց հետո ինչ է ծրագրում անել՝ նովելների մի ամբողջ շարք, մեծ վեպ։

* * *

Ամեն անգամ հանդիպելիս խոսք է բացվում այն գրքի մասին, որ նվիրված է լինելու Օթելլոյին։ Կամ ես էի հետաքրքրվում ընթացքով, կամ ինքն էր անդրադառնում դրան, պատմում, ասում թե ուր է հասել։

Մի օր պատմեց, թե ինչպես է մտադիր ավարտել։

Երբ գիրքը լույս տեսնելուց հետո ծանոթացա՝ տեսա, որ հեղինակի միտքը մի այլ վերջվածքի վրա է կանգ առել։ Շատ ցավեցի և որոշեցի, գոնե հիշողությամբ, վերականգնել նրա պատմածը։

Կարդուչին, իտալական բանաստեղծ, մի օր այցելում է Թոմազո Սալվինիին։ Այն ժամանակ պետք է որ ութսունը անց լիներ։ Ծեր էր արդեն և վաղուց այլևս բեմ չէր բարձրանում։ Գարնան առաջին օրերն էին։ Բանաստեղծը ողբերգակին գտնում է իր տան պատշգամբում, բազկաթոռում ընկղմված, մի գիրք ձեռին։

— Այդ ի՞նչ եք կարդում մաեստրո։

— «Օթելլո»։

— Շեքսպիրի՞։

— Հապա էլ ո՞ւմ։

Բանաստեղծը տարակուսած նայում է դերասանին։

— Երկար տարիներ Օթելլո խաղալուց, այս դերով աշխարհով մեկ փառավորվելուց հետո, ամբողջ պիեսը համարյա անգիր իմանալուց հետո մի՞թե դուք կարող էիք պահանջ զգալ նորից անդրադառնալու ողբերգությանը։

— Այո՛, իհարկե։ Կարդում եմ և տեսնում, որ նոր, միայն հիմա եմ հասկանում, թե ինչպե՛ս պետք է Օթելլոյի դերը խաղալ։

Փափազյանի եզրակացությունը.

— Գրեցի գիրքս, գրեցի հիսուն տարի Օթելլո խաղալուց հետո, երեք հազարից ավելի անգամ այդ դերով բեմ բարձրանալուց հետո և, ճիշտ ու ճիշտ Սալվինիի նման, միա՛յն հիմա, հիմա՛ հասկացա, թե ինչպես կարելի է խաղալ։

* * *

Մի անգամ էլ անդրադարձավ Անգլիա գնալու իր ցանկությանը։

— Թող պետությունը զինվորագրի ինձ և մեջքիս սուր կապած ուղարկի Անգլիա՝ մեծ բանաստեղծի հայրենիքը։

* * *

Խոսք բացեցի դերասանական ներկա ուժերի մասին. կամենում էի իմանալ, թե ում մասին ինչ կարծիքի է։

— Երիտասարդներից ամենաշնորհալին Ֆրունզիկն է։ Եթե գլխին մարդ լինի՝ շատ առաջ կգնա։ Բնությունը նրան ավել է ավելի, քան մեկ ուրիշի։ Ստացականը քիչ է։ Բացի այդ, միօրինակության վտանգի առաջ է կանգնած, մեկ էլ չգիտի, թե որտեղ կանգ առնի։ Իսկ ընդհանրապես առատորեն օժտված է։

Մի փոքր հետո.

— Լավն են Վարդուհին և Մետաքսյանը։ Շատ հեռուները գնալ չեն կարող, բայց համակրելի են իրենց տարբերությամբ։ Մետաքսյան փայլով է վերցնում, Վարդուհին ներքինով, առաջինը տեխնիկապես ավելի վարժ է, քան երկրորդը, բայց սա էլ գերազանցում է նրան գեղարվեստական հոտառությամբ։ Մետաքսյայի սահմանը Նինան է, Վարդուհունը՝ Ջոնին։ Երկուսին էլ սիրում եմ, միայն թե և՛ մեկը, և՛ մյուսը պետք է ավելի մոտենան խոսքի բնական հնչմունքին։

Հարցրի Բաբկեն Ներսիսյանի մասին։

— Ամենաարտիստիկն է մյուս բոլոր դերասաններից, և՛ արտաքին տվյալներն են լավ, և՛ ներքինը, բայց ցավալի է, որ, չնայած հաջողությանը, չհասավ այն բարձրության, որի վրա պետք է լիներ հիմա։

Ես ասացի, թե դեռ ժամանակ կա, գուցե կհասնի։

— Չէ՛, սիրելի՛ս, կյանքը ցույց է տվել, որ տաղանդավոր դերասանը իր գլուխգործոցները ստեղծում է մինչև քառասուն տարեկանը, իսկ նա, կարծեմ, բավական անց է այդ տարիքից։

* * *

Մի օր անդրադարձավ Դոն-Ժուանի իր կատարմանը։ Հայտնեցի իմ տպավորությունը։

Լսեց ու ապա նկատեց.

— Հավատա խոսքիս, որ եթե չլիներ Արմենյանը, հազիվ թե իմ Դոն-Ժուանը լիներ այն, ինչ եղավ։ Շատ եմ պարտական նրան։ Գիտե՞ս, ընդհանրապես այդ գործչին չկարողացանք գնահատել։ Եվ չեմ հասկանում, թե ինչո՞ւ. թերևս պատճառը բնավորությունն է, բայց մի՞թե մենք մի այնպիսի անլուսավոր ժամանակներում ենք ապրում, որ չկարողացանք գործչի վաստակը տարբերել մարդու բնավորության գծերից։

* * *

Խոսք բացվեց Հայկական Թատերական ընկերության կից բացվող դրամատիկական ստուդիայի մասին։

— Ստուդիան իր կյանքը պետք է Մոլիերով սկսի. առանց Մոլիերի նոր թատրոնի հիմք դնել չի կարելի. երիտասարդ դերասանը շատ բան կարող է սովորել Մոլիերից։ «Ագահը» հոյակապ գործ է։

* * *

Հակոբ Սիրունին եկել էր Երևան։ Փափագ ուներ տեսնել իր վաղեմի ընկերներին ու ծանոթներին։ Դրանցից մեկը Փափազյանն էր, որի հետ սովորել էր Մուրադ-Ռաֆայելյան վարժարանում։

Ես հանձն առա Սիրունուն ուղեկցել Փափազյանի տուն. ճանապարհին հարցրի՝ ճի՞շտ է, որ Փափազյանը ինչպես ինքն է հավատացնում, մի երկու տարով ավելի մեծ պիտի լինի, քան իր հայտնի դառած տարիքը։

— Ոչ։— Ասաց նա,— շփոթում է։ Ինձնից երկու տարով է մեծ, ես 1890-ին եմ ծնվել, նա երկու տարի առաջ։

Հանդիպելիս գրկախառնվեցին։ Մի պահ կարծես միմյանց բան չունեին ասելու, բայց այդպես էր թվում առաջին

հայացքից։ Սկսվեց զրույցը։ Նրանց միտքը թռավ գնաց հեռուները։ Նկատի ունենալով ներկայությունս, անցան այնպիսի խոսակցության, որ ինձ էլ հետաքրքիր լիներ։ Տեսնելով, որ դա հարկադրական մի բան է երկուսի համար, ես ներողություն խնդրեցի, թե շտապ գործ ունեմ ու հեռացա, որ իրենց մայրամուտին մոտեցող երկու հին ընկերներ՝ միտք մտքի տան, հիշեն անցածն ու գնացածը, մի պահ վերադառնան դեպի իրենց մտերմությունն ու միատեղ արկածները, որոնց ոչ ոք վկա չի եղել այն ժամանակ ու չպիտի էլ լինի հիմա, երբ դրանց վրայից տարիներ են գլորվել ու անցել։

Երբ հրաժեշտ տվի՝ երկուսի աչքերի մեջ շնորհակալ մի հայացք էր նստած։

* * *

Սունդուկյանի անվան թատրոնում բեմադրվեց Կրոնինի վեպի փոխադրությունը՝ «Բրոուդիի ամրոցը»։ Բրոուդիի դերը հանձնվեց Գուրգեն Ջանիբեկյանին։

Փափազյանը դիմում է թատրոնի դիրեկտոր Ժիրայր Հակոբյանին ու ցանկություն հայտնում Բրոուդիի դերը խաղալու։ Դիրեկտորը չի կարողանում միանգամից մերժել, բայց մտածում է, որ Փափազյանն այլևս Փափազյան չէ, որ նրա համար դժվար կլինի նոր դեր սովորել, այն էլ այդքան մեծ, և մանավանդ որ Ջանիբեկյանն էլ հաջողություն ուներ, արժե՞ր, որ նրա համբավի վրա ստվեր ընկներ։

Մի քանի օր հետո Փափազյանը նորից է դիմում։ Նույն անորոշ պատասխանը։ Եվ այսպես մի-երկու անգամ էլ։ Մի օր Փափազյանը պահանջում է իրեն կտրուկ պատասխան տալ՝ այո կամ ոչ։ Թատրոնի դիրեկտորը պարզաբանում է իր միտքը։

— Լսիր, յավրո՛ւմ,— ասում է արտիստը, հազիվ զսպելով վրդովմունքը,— ես Փափազյանն եմ։ Հասկանո՞ւմ ես՝ Փափազյանը։ Ու եթե դիմում եմ քեզ, ապա նրա համար միայն, որ ընդունված կարգը պահպանեմ։ Իսկ թե խաղա՞մ պիտի, թե չէ, արածս սխա՞լ է, թե ճիշտ, այդ իմ որոշելու

բանն է։ Կան մարդիկ, որ իրենց արածի պատասխանատուն իրենք են, միայն իրենք։ Ես այդ մարդկանցից եմ։

Ասում է, չսպասելով պատասխանի ու թողնում-գնում է։

Մյուս օրը թատրոնում հայտարարվում է, որ Փափազյանը պետք է մուտք գործի «Բրուտի ամրոցը» ներկայացման մեջ, որպես Բրուտի դերակատար։

* * *

Մի օր հարցրի.

— Բոլորը խոսում են քո գեղեցկությունից։ Ես էլ նրանց հետ։ Ուզում եմ իմանալ քո կարծիքը. քո ժամանակվա դերասանների մեջ կա՞ր մի ուրիշը, որին քեզնից գեղեցիկ համարեիր։

— Կար, Շահխաթունին. սրա գեղեցկության մեջ մի կրակ կար, որ ես երբեք չեմ ունեցել։

* * *

1965-ին սկսեց թելադրել «Համլետը՝ ինչպես տեսա» գիրքը։ Սկզբում թելադրում էր կնոջը՝ Անահիտին։ Երբ սա անկողին ընկավ, ասպարեզ եկավ մի ուրիշ Անահիտ, Մանվելյան ազգանունով, և շարունակեց գրել վարպետի թելադրածը։

Այդ տարվա հոկտեմբերին էր, որ մի օր Փափազյանն ասաց, թե ինքը դրամի կարիք ունի և չի՞ կարող, արդյոք, արվեստի ինստիտուտը օգնել իրեն, ինքը պատրաստ է որևէ բան գրել։

— Ինչու չէ, իսկ ի՞նչ կգրես։

— «Դոն-Ժուան»։

— Կարելի է, անշուշտ, բայց ինչպե՞ս ձևակերպենք։ Եթե դեմ չես՝ գրի «Արքա Լիր»։ Նախ դա ինձ հիմք կտա ձևակերպել քեզ շեքսպիրագիտական կենտրոնի աշխատակից։ Հետո քեզ համար էլ լավ կլինի՝ «Օթելլոն» լույս է տեսել, հիմա գրում ես «Համլետը»։ «Լիրն» էլ որ գրես՝ կստացվի շեքսպիրյան տրիլոգիա։

Փափազյանը ոգևորվեց։

— Լավ ես ասում, երբվանի՞ց փող կտաս։

— Հենց այս ամսից։ Համլետը վերջացնելուն շա՞տ է մնացել։

— Կեսի վրա եմ. բայց դա ի՞նչ կապ ունի։

— Մեկը վերջացրու, որ մյուսը սկսես։

— Զարմանալի մարդ ես. ես քեզ ասում եմ, որ մեկը մյուսին չի խանգարի։ Դու կարո՞ղ ես ինձ մի խելքը գլխին աղջիկ տալ՝ գրագետ ու պատրաստված. կարո՞ղ ես, ուրեմն՝ շատ լավ։ Երեկոյան կթելադրեմ «Համլետը», ցերեկով՝ «Լիրը»։

Ուղարկեցի ինստիտուտի աշխատակիցներից մեկին։ Մի քանի օր թելադրեց և ասաց, թե հարմար չէ։ Ուղարկեցի ուրիշին, սրան էլ չհավանեց։ Ուղարկեցի, վերջապես, իմ ասպիրանտին՝ Անելկա Գրիգորյանին։ Գոհ մնաց և սրան թելադրեց մինչև վերջ։

* * *

Փափազյանը մի օր ասաց.

— Ես չեմ ուզում մեռնել, երևի ոչ ոք էլ չի ուզում մեռնել։ Բոլոր ասողները, թե իրենց համար մեկ է, վաղը կմեռնեն, թե մի քանի տարի հետո՝ անկեղծ չեն։ Ոչ ոք չի ուզում այս աշխարհից հոժարակամ գնալ։ Նկատված է, որ իրենց վրա ձեռք բարձրացնողները վերջին պահին զղջում են, խնդրում են փրկել...

Եվ միտքը շարունակեց այսպես.

— Բայց եթե մեռնել, ապա միայն այնպես, ինչպես այդ պատահեց Համբարձումի հետ։

Խոսքը Խաչանյանի մասին է, որին շատ էր սիրում և որը մահացել է «Երկիր հայրենի» ներկայացման ժամանակ, բեմազգեստը հագին, դիմահարդարված բեմ մտնելուց մի քանի րոպե առաջ։

Հիշում էր նաև Ռուզան Վարդանյանի մահը, բայց ամենից ավելի «տպավորություն» էր թողել նրա վրա Միքայել Թավրիզյանի մահը, մահ նվագախումբը ղեկավարելիս, պուլտի մոտ, բուռն շարժման պահին, երբ աջ ձեռքը մեկնվել էր դեպի վեր՝ հնչյունի հետևից...

— Մարդ պետք է այդպես մեռնի։ Ես շատ բան կտայի բեմում՝ խաղի ժամանակ մեռնելու համար։

Ես նրան ասացի, որ Մարի Նվարդը մահացել է բեմում

Մարգարիտ Գոթյեի դերը կատարելիս։ Եվ հետաքրքիրն այն է, որ հերոսուհու մահը զուգադիպել է դերասանուհու մահվան։

— Ի՞նչ ես ասում. չգիտեի։

Եվ տարբեր օրեր նա ինձ պատմել էր տալիս նույնը ուրիշների ներկայությամբ, նաև այն պահին, երբ միայն ես ու ինքն էինք միայն։

* * *

Եվ մի օր՝ Փափազյանի խաղի ժամանակ հիշեցի մեր այս զրույցը։

1967-ի դեկտեմբերի 14-ին էր։ «Իմ սիրտը լեռներում է» ներկայացումն էր։ Խաղում էր Մեք-Գրեգոր, որը, ինչպես հայտնի է, մեռնում է։ Երբ նա մահացավ, Վարդերեսյան-Ջոնին մոտեցավ և մի փոքր բարձրացրեց ձեռքը, որն ընկավ այնպես անկյանք, որ շատերը թատերասրահում, այդ թվում նաև ես, կարծեցինք, թե Փափազյանն իսկապես մահացել է։ Իսկ ներկայացումը շարունակվում էր։ Երբ Բեն-Ալեքսանդր—Բաբկեն Ներսիսյանն ասաց. «Այս մարդը մեր ժամանակի շեքսպիրյան ամենամեծ դերասանն էր», բարձրացավ այնպիսի ծափահարություն, ինչպես երբեք չէր եղել։ Մեք-Գրեգորին շալակեցին ու տարան։ Կյանքի ոչ մի նշույլ չկար։ Այդպես միայն դիակն է լինում։

Վարդերեսյանի խաղում վախեցած շփոթ կար։ Ու եթե դա համընկնում և համապատասխանում էր այդ պահի բեմական ապրումին ըստ պիեսի, ապա Արուս Ասրյանը հետագայում ասում էր, որ ինքը հավատացել է, թե տեղի է ունեցել ամենասարսափելին և խաղում էր, հազիվ զսպելով արցունքները և զարմացած էր, թե ինչու վարագույրը չեն փակում։

Երբ ներկայացումը վերջացավ և ծափահարությունների վրա Փափազյանը բեմ եկավ, հանդիսատեսը «ազատ շունչ» քաշեց և ապա ուրախացած, որ դերասանին հաջողվել է իրեն խաբկանքի մեջ պահել, որոտընդոստ ծափահարությանը միացան ցնծագին կանչերը՝ «բրավո՜»։

Դա Փափազյանի վերջին ներկայացումն էր Սունդուկյանի անվան թատրոնում...

* * *

Սունդուկյանի անվան թատրոնի հետ Փափազյանը մեկնել էր Բեյրութ։ Նրա կնոջ՝ Անահիտի, առողջական վիճակը ծանրացավ և նրան հարկավոր եղավ տեղավորել հիվանդանոցում։ Բժշկական միջամտությունններն անզոր եղան և նա մահացավ դեկտեմբերի 30-ին, ժամը 4-ին, ճիշտ այն օրը, երբ մի ժամ հետո, այսինքն՝ ժամը 5-ին, սունդուկյանցիներով լի սավառնակը վայրէջք կատարեց Երևան օդանավակայանում։ Դիմավորողները ճանապարհին, մինչև տուն հասնելը, նախապատրաստել էին Փափազյանին, ասելով, թե Անահիտի վիճակը ծանր է։ Փափազյանը տնից զանգահարում է հիվանդանոց՝ Անահիտի առողջական դրությունն իմանալու և այնտեղից անզգուշաբար հայտնում են խնդությունը։

Զանգահարեց Խաչատուր Եսայանը և, մոտավորապես ժամը 10-ին գնացինք Փափազյանի տուն։ Մենակ էր, նրա մոտ միայն Հարությունն էր, մի երիտասարդ, որի խնամքին էր թողել Փափազյանը հիվանդ Անահիտին և որը ոչինչ չէր խնայել Անահիտին ոտքի կանգնեցնելու համար։ Մի փոքր հետո եկավ նաև Բոստանջյանը, որ Փափազյանների տանու բժիշկն էր։

Թաղումը նշանակվեց հունվարի 3-ին։ Նկատի ունենալով, որ Փափազյանը մի տարվա չափ տառապել էր սրտի հիվանդությունից և բժիշկները ակամա էին համաձայնել, որ նա արտասահման ճանապարհվի, ընկերների մի խումբ հարմար գտավ արգելել դերասանին մասնակցելու թաղմանը։ Մտածում էինք, թե մի բան էլ նրան կարող է պատահել, մանավանդ բոլորին լավ հայտնի էր, թե նա ինչպես ծանր է տանում նույնիսկ օտար մարդու, էլ ուր մնաց հարազատի թաղումը։ Որոշվեց, որ կմնա տանը և մի երկու հոգի էլ նրա հետ, իսկ հուղարկավորությունը տեղի կունենա ժամը 3-ին, անատոմիկումից։

Փափազյանի հետ մնացել էր Անահիտի բարեկամներից մեկը, որի անունը չեմ հիշում, դերասան Աշոտ Ներսիսյանն ու ես։

Շրջապատել էինք ճաշարանի կլոր սեղանը։ Փափազյանը

նստած էր մեջքով դեպի պատուհանը, որի վրա ժամացույց էր դրված։

Խուսափում էինք հանգուցյալի մասին խոսելուց։ Ինքն էլ չէր խոսում։ Տարբեր հարցեր, զանազան խնդիրներ. տպավորությունն այնպես էր, որ ոչինչ չի պատահել։

Հանկարծ Փափազյանը երկու ձեռքով-գլուխը բռնեց ու հառաչեց.

— Տարա՜ն, տարա՜ն...

Չհասկացանք։

Ի՞նչ տարան, ո՞ւր տարան։

— Անահիտին, գերեզմանատուն, հողին պահ տալու։

Աչքս ընկավ ժամացույցին։ Ժամը երեքն էր։ Ոչ իմ թևլին, ոչ էլ մյուս ներկաների, ժամացույց չկար։ Բայց նա զգաց. թեև խոսում էր մեզ հետ, իսկ հոգով այնտեղ էր, հուղարկավոր բազմության մեջ։ Ու երբ գլուխը բարձրացրեց, նրա աչքերը խոնավ-խոնավ էին։

* * *

1965-ի գարնանն էր։ «Լիրը» ավարտելու վրա էր, երբ մի երեկո անախորժ խոսակցություն տեղի ունեցավ իմ և նրա միջև Անահիտ Մանվելյանի ներկայությամբ։

Հետաքրքրվեցի, թե «Լիրը» երբ է հանձնելու ինստիտուտին զարմացավ, թե ինստիտուտն ի՞նչ կապ ունի «Լիրի» հետ։ Հիշեցրի մեր պայմանավորվածությունը։

Պարզվեց, որ նա այդ գիրքը խոստացել է «Հայաստան» հրատարակչությանը, նույնիսկ պայմանագիր է կնքել և կանխավճար ստացել։

Իհարկե՝ վերջիվերջո ինձ համար պետք է միևնույն լիներ, թե ո՞վ է հրատարակելու՝ Ակադեմիա՞ն, թե «Հայաստանը»։ Կարևորն այն էր, որ նա գրեր ու գիրքն էլ լույս տեսներ։ Այդպես եմ մտածում հիմա, բայց այն ժամանակ, ճիշտըն ասած, ոչ միայն զարմացած էի, այլև վրդովված։ Եվ ինձ,— թող խոստովանություն լինի,— թույլ տվի մի երկու կոպիտ արտահայտություն։ Նա էլ չհամբերեց և վիրավորեց

ւին։ Ու մենք զժտվեցինք։ Մի ամիս, նույնիսկ ավելի, ո՛չ նա էր զանգ տալիս, ո՛չ ես։ Բայց հետո, երբ հաշտվեցինք, խընդրեց դրան այլևս չանդրադառնալ։

* * *

1968-ի հունվարի 6-ին, այսինքն իր ծննդյան օրը, Փափազյանը բեմ էր բարձրանալու Մեջ-Գրեգորի դերով։ Թեև ներկայացումը հայտարարվեց, բայց տեղի չունեցավ. Փափազյանն իրեն վատ էր զգացել ու հրաժարվել էր խաղալուց։

Այդ օրը, երեկոյան ժամին Փափազյանին նվիրված ռադիոհաղորդում էր կազմակերպված։ Թատերագետ Լևոն Խալաթյանի բնութագրական խոսքին հաջորդեց Փափազյանի ելույթը, որի համար օգտագործել էին վաղուցվա գրառումներից. Համլետից մի հատված, Օթելլոյից, Լիրից և հետո՝ Սիամանթոյի «Թաղումը»։

Անելկա Գրիգորյանը, որ այդ ժամին մոտ էր եղել, ասում էր, թե Փափազյանը նստած գահավորակի ծայրին լըսում էր իր ձայնն ու լաց լինում...

* * *

Իր պարտքը մարելու նպատակով, հանձնեց «Լիր արքայի» իր թարգմանության սկզբում մեքենագիր, հետո նաև ձեռագիր օրինակը։ Երևի մի օր կհրապարակվի դա և հետաքրքիր նյութ կտա արտիստի կյանքի և գործի ուսումնասիրությամբ զբաղվողներին։

Թարգմանությունը մեծ մասամբ արել է ռուսական խըմբերի հետ կատարած իր թատերական շրջագայությունների ժամանակ։

Մեկ-մեկ ձեռագիրը թերթում եմ ես։ Բաց էջերից մեկում կա մի այսպիսի խոստովանություն.

«Ժամը առավոտյան չորսն է,— գրում է Փափազյանը։ — Արխանգելսկում եմ։ Գիշերը խաղացի 219-րդ ներկայացումը՝ «Լիր արքա»՝ վերջին տասն ամսվա ընթացքում։ Քունը չոքել է կոպերիս. լույսը բացվում է, իսկ սիրտս խավար

է։ Արվեստը գնում է անել ճանապարհով դեպի անդունդ։ Մի քանի տարուց՝ մի մարդ չի մնա, որ կարողանա այս տիտանային գործը մարմնավորել, անձնավորել։ Այսօր քառասունչորս տարի է, որ մաքառում եմ հանուն մեծ արվեստի, հոգնել եմ, բայց ինձ այրող հրդեհը չի ուզում հանգչել, չընայած որ ո՛չ քաղաք, ո՛չ երկիր, ո՛չ ցեղ և ո՛չ ազգ չմնաց երկրի երեսին, որ այդ կրակից տաքացրած չլինեին իրենց սրտերը։ Իմ բարի, անուշ, համեստ ժողովուրդ, ուր էլ որ աչքերս փակեմ, վերցրու ինձ ու ծոցումդ պահիր»։

Այս գրել է նա 1951-ի օգոստոսի 15-ին ու հետո էլ ավելացրել՝ «փոքր բան է մարդը, և նրա աշխարհը՝ ոչինչ»։

Տեսնես ով է դառնացրել նրան այդ օրը և ինչի համար, որ արտիստը մտատանջ գիշեր է անցկացրել, ընկնելով մռայլ հուսահատության մեջ։

* * *

Հիվանդության օրերն էին։ Այցի գնացի։ Այնտեղ էր Արփենիկ Խաչանյանը։ Մի փոքր զրույցից հետո հարցրի, թե հիշո՞ւմ է, արդյոք, Նինային։

— Որտեղի՞ց գիտես այդ անունը։

Զարմացավ Փափազյանը։

Ու պատմեց հետևյալը.

— Վրացուհի էր, մի չքնաղ աղջիկ, ավելի գեղեցիկ արարած երբեք չեմ տեսել։ Ասես նկար լիներ՝ աչքերը, շրթունքները, ժապավենակապ հոնքերը. հիմա էլ հայացքիս առջևն է։ Նոր էի եկել Թիֆլիս, երիտասարդ տղա էի, ինչպես ասում էին՝ բավական հետաքրքիր։ Ծանոթացա այդ աղջկա հետ, մի քիչ ֆրանսերեն գիտեր, խոսեցինք մինչև ուշ գիշեր։ Ինչի՞ մասին, հիմա չեմ հիշում, իսկ ինչի՞ մասին չեն խոսում սիրահարվածները։

Անցան օրեր։

Մի օր ինձ կանչեցին նրա հայրը և մայրը։ Մի գեշ նախազգացումով մտա նրանց տուն։ Նինան չկար, նրա ծնողները տխուր էին ու մտահոգ։ Զբաղեցրի ինձ առաջարկված աթոռը և անհամբեր էի լսելու, թե ինչու են կանչել։

Հայրը նստած էր թթվադեմ, իսկ մոր աչքերին արցունք կար։

— Նինային բա՞ն է պատահել։— Չհամբերեցի ես։

— Երիտասարդ,— ասաց հայրը,— այստեղ օտար մարդ չկա, մենք Նինայի ծնողներն ենք, սա էլ նրա մորեղբայրն է։ Բոլորս էլ հարազատ մարդիկ ենք, կարող ենք անկեղծ բացատրվել։

Մի վայրկյան լռություն։

— Մեզ հայտնի է քո և Նինայի մտերմությունը։ Ես ու մայրը կամենում էինք իմանալ, թե քո մտադրությունը լո՞ւրջ է։

— Միանգամայն։

Բավական կտրուկ եղավ պատասխանս։

— Մի նեղանա, որդի՛,— մեղմ վրա բերեց հայրը։— Դեռասան մարդ ես, ի՞նչ իմանանք։ Գուցե էնպես ժամանակ ես անցկացնում։ Դու էլ լավ գիտես, որ դերասանները մի քիչ ուրիշ տեսակ ժողովուրդ են։

Ասացի, որ իմ մտադրությունները լուրջ են և կարող են միանգամայն հանգիստ լինել։ Պետք է ամուսնանամ և շատ շուտով։

—Դա մեզ հայտնի է։ Նինան ասել է, և դրա համար էլ քեզ խնդրեցինք նեղություն քաշել ու գալ,

Նորից լռություն։

— Իսկ դուք դե՞մ եք։— Անհամբեր հարցրի ես։

— Չէ, դեմ չենք, որդիս։ Բայց մի բան կա, որ դու պետք է իմանաս և նոր միայն որոշես՝ ամուսնանա՞ս, թե ոչ։

Լարվեցի։

— Քեզ հայտնի՞ է, որ Նինան հիվանդ է։ Շատ ծանր ու վտանգավոր. թոքախտ ունի։

Ես ապշահար եղա։

— Գիտեի՞ր։

— Ոչ։

— Նինան չի՞ ասել քեզ.

— Չի ասել։

— Իսկ հիմի՞ ինչ ես ասում, հիմի, երբ գիտես, որ հիվանդ է, այն էլ, ինչպես բժիշկներն են ասում՝ անհույս։ Հիմի՞ էլ որոշմանդ վրա ես մնում։

— Իմ վճիռը վճիռ է։ Ես Նինային սիրում եմ այնպես, ինչպես որ կա։

Ես անկեղծ էի, միանգամայն անկեղծ. բայց հուզված էի մինչև հոգուս խորքը։

— Կեցցե՛ս, որդի, հալալ լինի մեր աղջիկը քեզ։ Բայց ես չէի ուզի, որ դու միանգամից որոշում ընդունեիր. լավ կլիներ մտածեիր, երկար մտածեիր։ Ամուսնություն, ընտանիք, երեխաներ. կատակ բան չէ։

— Մտածելու ոչինչ չունեմ, որոշումս որոշում է,— պոռթկացի ես։

— Լսիր ինձ, երիտասա՛րդ։

Միջամտեց մորեղբայրը, որ մինչ այդ լուռ նստած լսում էր։ Դա կիրթ արտաքինով մի մարդ էր։

— Որ դու ուզում ես ամուսնանալ հիվանդ աղջկա հետ՝ քեզ պատիվ է բերում, բայց մտածիր, ճի՞շտ ես վարվում։ Դու դերասան ես։ Ես չեմ տեսել քեզ, բայց ասում են, որ քո ապագայի հետ մեծ հույսեր են կապում։ Եթե այդպես է, դու մենակդ իրավունք ունի՞ս, արդյոք, տնօրինելու այդ հարցը։ Կարծում եմ, որ ոչ։ Դու այլևս քեզ չես պատկանում, այլ բեմին, թատրոնին, ուստի հասարակությունն է քո տերը։ Հասարակության շահերը պահանջում են, որ դու առողջ լինես, երկար ապրես։ Իսկ այնպես, ինչպես դու ես որոշել՝ կյանքդ վտանգի տակ ես դնում։

Ես չէի հաշտվում Նինայից հրաժարվելու մտքի հետ, չէի պատկերացնում ոչ իմ կյանքը առանց իրեն, ոչ էլ նրանը՝ առանց ինձ։ Ես գիտեի, թե Նինայից հրաժարվելը ինչ հարված կլինի նրա համար։ Ու մերժելով-մերժում էի ինձ տրրվող խորհուրդը։ Բայց խոսակցությանը խառնվեցին նախ հայրը, ապա նաև մայրը։

Ես համառում էի։

Դռների մեջ երևաց Նինան։ Գունատ էր, աչքերը վառվում էին։ Ես ընդառաջ ելա նրան, և նա հազիվ շշնջաց, թե մեծերը ճիշտ են ասում ու ինքն էլ նրանց նման է մտածում։

Ամբողջ գիշերը չքնեցի։

Մյուս օրը ժամադրություն նշանակեցի Նինային։ Եկավ։ Աչքիս ավելի նիհարած երևաց, ավելի գունատ։

— Մենք,— ասաց նա,— այլևս չպետք է հանդիպենք։ Հանդիպումները բորբոքում են զգացմունքները։ Ավելի լավ է միմյանցից հեռու լինենք։ Այդպես ավելի շուտ կմոռանանք իրար։

Ասաց շշուկով, ու զգացի, որ ինքն էլ չի հավատում իր ասածին, թե ես մոռանալու եմ իրեն կամ ինքը՝ ինձ։

— Դու պետք է ներես ինձ,—շարունակեց նա,— ներե՛ս, որ ես քեզ ոչինչ չէի ասել հիվանդության մասին։ Վախենում էի, շա՛տ էի վախենում։

Շշնջաց ու մթան մեջ անհետացավ։ Ասես կար ու չկար։

Ինձ համար դժվար էր առանց Նինայի, բայց այլևս նրան չտեսա։ Անցա խանութի մոտով, հաճախ իբր պատահմամբ հայտնվում էի նրանց տան առաջ, չկար ու չկար։ Հետո իմացա, որ անկողին էր ընկել, տարել էին Աբասթումանի։

Վեց ամիս հետո նա այլևս չկար։ Երբ իմացա՝ մազերս էի փետում։ Ոչինչ աչքիս չէր երևում, ո՛չ բեմ, ո՛չ մարդիկ, ո՛չ հասարակություն, ո՛չ հաջողություն։ Ինձ զգում էի հանցավոր, մի գեղեցիկ էակի խորտակման պատճառ։

Գաա քրոջը, խնդրեցի՝ տարավ ինձ գերեզմանատուն։ Երկար կանգնեցի հողաթմբի առաջ։

Ու դրանից հետո աշխարհ անցա, շատ գերեզմանատներ ոտք դրի, ու ամեն անգամ երբ հանդիպում էի տասնութտասնինը տարեկան մի աղջկա գերեզմանի՝ ծաղիկ էի դնում. մի հատիկ ծաղիկ, ճերմակ վարդ, ճերմակ մեխակ, շուշան, ի նշան այն մաքրության, որի պատկերն ինձ համար Նինան էր։

Տարիներ անցան ու երբ ես խաղացի Սրբենին, Նինային գրկելիս հիշում էի ի՛մ Նինային, իմ լա՛վ, իմ ամենագեղեցի՜կ ու անմոռանալի՜ Նինային։

Ես այդպիսի գեղեցիկ աղջիկ չեմ տեսել։ Հիմա էլ աչքիս առջևն են նրա վառվող աչքերը, գունատ այտերը, կիսաբաց շրթունքները, երջանկության ու բախտի, սպասումի թրթիռը վրան...

Ահա և ամբողջը, սիրելի՛ս։

Լռեց։ Գլուխը կախ գցեց։ Եվ մի փոքր հետո.

— Ինչո՞ւ քրքրեցիր սիրտս։ Ո՞վ է տվել քեզ իրավունք

մտնելու հոգուս խորքերը, բացելու գաղտնարանների դռները և տեսնելու, թե ո՞վ կա այնտեղ կամ ի՞նչ կա այնտեղ։

Նորից լռություն։

— Նինայի հիշողությունը մի հոգեկան հայտնություն էր ինձ համար, միայն ինձ հայտնի, մանավանդ, որ այլևս չկա մեր սիրո վկաներից գեթ մեկը։

Լռեց, հետո ավելացրեց.

— Պատմեցի ու աղքատացա...

* * *

Մի օր Փափազյանը հայտնվում է Գրականության և արվեստի թանգարանի թատերական բաժնում։ Աշխատակիցներն անմիջապես շրջապատում են նրան։ Մի փոքր հետո Փափազյանն ասում է, թե եկել է խնդրելու, որ մի կարճ ժամանակով Օթելլոյի իր խալաթը տան իրեն։

— Թանգարանից ոչինչ դուրս չի տրվում։

— Ընդամենը մի շաբաթով,— խնդրում է Փափազյանը։

— Ընկեր Մելիքսեթյանին ասե՞լ եք։

— Խե՞նթ եմ, ինչ է, ես նրան լավ գիտեմ։ Մի բան, որ ընկավ ձեռը, էլ ետ կտա՞։ Դե՜, դուք ավելի գթասիրտ եք, քան նա։

— Առանց նրա թույլտվության չենք կարող տալ։

— Այդ ճիշտ է։ Բայց եթե նրա թույլտվությունը լինի, էլ ինչո՞ւ էի ձեզ այսքան խնդրելու։

Փափազյանի ասածը տրամաբանական է թվում, և այն, որ մեծ ողբերգակը դիմում է անմիջապես իրենց՝ շոյում է նրանց ինքնասիրությունը։ Փափազյանը նկատում է այդ։

— Նա չի էլ իմանա։ Արտաշատում պետք է Օթելլո խաղամ։ Մի շաբաթից կբերեմ, տեղը կդնեք։

Աշխատակիցները մի փոքր էլ դիմադրում են, բայց, ի վերջո, տալիս են խալաթը, չանդրադառնալով այն բանին, որ Փափազյանը վաղուց է, ինչ Օթելլոյի դերով այլևս բեմ չի բարձրանում։

Մի ամիս է անցնում։ Փափազյանը չի բերում խալաթը։ Ամիսներ են անցնում, բայց Փափազյանը ո՜չ գալիս է, ո՜չ էլ մի ուրիշի հետ ուղարկում։ Թանգարանի աշխատակիցներն

անհանգստանում են։ Զանգահարում են արտիստին և խընդրում խալաթը բերել։ Խոստանում է, բայց չի բերում։ Նորից են զանգահարում, նորից է խոստանում։ Եվ այս անգամ էլ խոստումը մնում է խոստում։ Եվ հասկանալով, որ սխալ են կատարել, խալաթը երբեք ետ չեն ստանա, աշխատակիցները Մելիքսեթյանին հայտնում են այդ մասին, սպասելով, թե հիմա դիրեկտորը կպայթի իրենց մեղավոր գլխին։ Մելիքսեթյանը, ի զարմանս աշխատակիցների, հանգիստ լսում է, մի-երկու հարց տալիս, կշտամբող ոչ մի խոսք չի ասում և լուռ հեռանում է։ Աշխատակիցների համար անսպասելի էր իրենց դիրեկտորի պահվածքը։

Մյուս օրը Մելիքսեթյանը նորից է հայտնվում թատերական բաժնում, հավաքում է իր շուրջը «մեղավոր» աշխատակիցներին։

— Այլևս չզանգահարեք Փափազյանին խալաթի համար։

Բոլորը զարմացած նայում են դիրեկտորին։

— Կարիք չկա։

Նկատում են, որ Մելիքսեթյանի աչքերը թախծոտ են։

— Փափազյանը, ինչպես գիտեք, վաղուց արդեն չի խաղում։ Ու եթե խալաթը վերցրել է, ապա նրա համար, որ վերհիշի, վերապրի իր երբեմնի փառքը։ Մի րոպե անգամ չեմ կասկածում, որ նա տանը այդ խալաթով է միշտ։ Դա ոչ միայն պատրանք է, որ նա ստեղծում է իր համար, այլ հոգեբանական մի ջանք՝ չբաժանվելու Օթելլոյից, որի դերը, հազարավոր անգամներ խաղալով, դարձել է նրա երկրորդ եսը։ Մի մեղադրեք և հասկացեք արտիստին։ Հարգենք նրա այդ «թուլությունը»։

Երբ Փափազյանին թաղում էին, նրա դագաղի վրա անփույթ նետված էր այդ խալաթը։

* * *

Մի զրույցի ժամանակ մի միտք հայտնեց, հիմա չեմ հիշում, թե ինչ։

— Հետաքրքի՞ր է։

Խոստովանություն լինի՝ միտքն այդ մի առանձին տպա-

վորություն չէր գործել, բայց հաստատեցի, որ հետաքրքիր է։ Նրա հետ ունեցած իմ խիստ անկեղծ փոխհարաբերության հակառակ, ինքս էլ չհասկացա, թե ինչու այդպես ասացի։ Երևի նրա համար, որ չվշտացնեմ։

— Արժե՞ գրի առնել։

Նահանջելու տեղ չկար։

— Իհարկե՝ արժե։

Ասացի, թեև համոզված չէի։

Մի ժամ էր անցել, թե մի փոքր ավելի, եկավ Անահիտ Մանվելյանը և նա նորից դարձավ ինձ.

— Ուրեմն՝ ասում ես արժե։

Չսպասելով խոսքիս՝ քարտուղարուհուն առաջարկեց թուղթ և գրիչ վերցնել։

Ու թելադրեց...

Եվ ի՞նչ. այն միտքը, որ ինձ մի բանն չէր թվում, թելադրելու պահին ընդարձակվեց, խորացավ և առկայծելով, մի այնպիսի կենդանություն և փայլ ստացավ, որ մտածում էի թե ինչպիսի սխալ գործած կլինեի, եթե, անկեղծ գտնվելով, արգելք հանդիսանայի մի փայլուն մտքի աշխարհ գալուն։

Հաճախ եմ անդրադարձել այդ դեպքին, պատմել ուրիշներին։ Գտել են, որ պատմածս դեպքը հետաքրքիր է անպայման։ Ու եթե գրի առա ու թղթին հանձնեցի, ապա այն պատճառով. որ հոգեբանների ուշադրությունը հրավիրեմ այն բանի վրա, թե ամեն մարդ երևի ունի իր ստեղծագործական տարերքը, որի մթնոլորտում նրա միտքը լարվածության գերագույն չափերի է հասնում։

Ուրեմն՝ Փափազյանի համար խոսքն ու գրույցը մի վիճակ էր և բոլորովին այլ՝ թելադրելու պահը։

* * *

Մտադիր էի մեկնել Լենինգրադ՝ Օլգինո, Փափազյանի ամառանոցը։ Նայելու էի, թե արտիստի գրադարանում Շեքսպիրի հետ կապված ինչ գրքեր կան, որ նա խոստացել էր նվիրել Երևանի շեքսպիրյան գրադարանին։

— Ձեռագիր նյութե՞ր էլ ես հավաքում,— հարցրեց նա.

— Ինչպես չէ։

— Ուրեմն, լսիր, բարեկա՛մս. գրքերը ներքևումն են, առաջին հարկում, պահարաններում, գրակալների վրա, իսկ երկրորդ հարկի միջանցքում դրված է մի սնդուկ, ուր շատ բան կա՝ աֆիշներ, ծրագրեր, պիեսներ։ Ուշադիր եղիր և կըգըտնես մի տետր՝ «Թիմոն Աթենացու» թարգմանությունը։ Ես եմ թարգմանել երիտասարդ տարիներիս։ Կարծում եմ, որ քեզ կզբաղեցնի։

— Ե՞րբ ես թարգմանել։

— Թվականը չեմ հիշում։ Պետք է որ տասական թվականներին արած լինեմ, մինչև հեղափոխությունը։

Լռեց։

— Գուցե վրան գրված լինի. նայիր։

Մեկնեցի Լենինգրադ, բավական թվով գրքեր գտա՝ ֆրանսերեն, ռուսերեն և իտալերեն։ Գտա նաև Շեքսպիրին նվիրված մի ձեռագիր, ընդամենը մի քանի էջ, սկսված, բայց չավարտված, իսկ «Թիմոն Աթենացու» ձեռագիրը չգտա։

Երբ վերադարձա՝ շատ ցավեց չգտնելուս համար։

— Անահի՛տ,— դարձավ կնոջը,— դու տեսել ես այդ ձեռագիրը, այնպես չէ՞։

— Տեսել եմ,— արձագանքեց անկողնում հիվանդ պառկած Անահիտը։— Տետրի շապիկի վրա կարմիր թանաքով գրված է՝ «Թիմոն Աթենացի»։

Մինչև հիմա էլ այդ ձեռագիրը չի գտնվել։

* * *

Կիրակի օր էր։ Ցերեկվա ժամերից մեկը։ Զրուցում էինք։ Դռան զանգ լսվեց և մի փոքր անց եկավ տիկին Ֆրանսուազը, որը Անահիտի մահից հետո մի-երկու ամսի չափ խնամեց հիվանդ Փափազյանին։

— Երկու միլիցոներ են եկել։

Ձայնի մեջ տագնապ կար։

— Ներս հրավիրիր։

Միլիցիոներները սենյակ մտան։

— Ո՞վ է տանտերը։

— Ես։

— Քաղսովետի որոշումը խախտված է...

Փափազյանը չթողեց խոսքը վերջացնել։

— Նստե՛ք, նստե՛ք։ Գործի մասին հետո։ Ֆրանսուա՛զ, ղահվե մը պատրաստե ընկեր միլիցիոներների համար։

— Աշխատանքի ժամանակ չի թույլատրվում, ընկե՛ր։

— Գիտեմ, սիրելիս, բայց որ ասում եմ՝ նստեք, ուրեմն նստեք։

Փափազյանն այդ բոլորն ասաց առարկություն չվերցնող ձայնով։ Միլիցիոներները ենթարկվեցին։

— Է՜հ, ինչպե՞ս եք, ամուսնացա՞ծ եք, ամուրի՞։

Մի փոքր անհարմար զգալով պաշտոնական պարտականությունների կատարման պահին մասնավոր դեղում ունենալու համար, միլիցիոներները ասացին, որ ամուսնացած են։

Ֆրանսուազը սուրճ բերեց։ Միլիցիոներները ըմպում էին սուրճը և պատասխանում Փափազյանի հարցերին, թե քանի՛ երեխա ունեն, որտե՛ղ են ծնվել, ծնողները կա՞ն թե չէ։

Միլիցիոներները սուրճի դատարկ գավաթներն իրենցից մի փոքր հեռացրին։ Փափազյանը դա ընդունեց որպես նշան այն բանի, որ ժամանակն է մտերմական զրույցից անցնելու իրենց այցի պաշտոնական կողմին։ Եվ նա ժպիտը դեմքին խնդրեց բացատրել, թե քաղխորհրդի այդ ինչ որոշում է խախտվել և ինչ կապ ունի դա իր հետ։

Բացատրությունն անմիջապես տրվեց։ Փողոցին նայող պատշգամբում լվացք է կախված։

— Էհ, չի՞ կարելի։

— Ոչ։ Դրա մասին քաղսովետը հատուկ որոշում է կայացրել։

— Մեղավորը Ֆրանսուազն է։ Ֆրանսուա՛զ,— կանչեց նա։

Դռների մեջ երևաց Ֆրանսուազը՝ մեղավոր արտահայտությամբ։

Միլիցիոներների դեմքերը նորից խստացան։

— Մենք չենք եկել պարզելու, թե ով է մեղավորը,— ասաց մեկը։

— Եկել ենք տուգանելու,— վրա բերեց մյուսը։

— Տուգանելո՞ւ։

Զարմացավ Փափազյանը։

Կողքս նստած միլիցիոների ականջին շշնջացի, թե ով է իրենց դիմաց նստածը, բայց ոչ մի ազդեցություն չունեցավ դա, մանավանդ որ առանձնապես տրամադիր չէին լսելու, թե ինչ եմ ասում։

— Օրենքի առաջ պատասխանատու են բոլորը։

— Ճիշտ է։— Հաստատեց Փափազյանը և անմիջապես հարցրեց.

— Տուգանքի չա՞փը։

— Երեք ռուբլի։

— Միայն այդքա՞ն։

— Այո, երեք ռուբլի։

Փափազյանը մի երեքանոց դրեց սեղանին։

— Այդպես չի կարելի,— ասաց միլիցիոները։

— Էլ ի՞նչ կա։

— Պետք է ակտ կազմենք։

Միլիցիոները սեղանին դրեց մի հարցաթերթիկ, գրիչը ձեռքն առավ ու հարցրեց.

— Ազգանո՞ւնը։

Փափազյանի հոնքերը վեր թռան։

— Փափազյան։

— Անո՞ւնը։

Փափազյանը զարմանքից սառեց. մի՞թե իրեն չեն ճանաչում։ Հետո նա համարեց, որ դա ընդունված ձևական մի արարողություն է, ոչ մի կապ չունի ճանաչել-չճանաչելու հետ, և, իրեն զսպելով ասաց՝ «Վահրամ», բայց երբ պատասխանին հետևեց միլիցիոների նոր հարցը՝ «ինչո՞վ եք զբաղվում», համբերությունը հատավ։

— Բավակա՛ն է,— գոռաց սաստիկ գունատված և ձեռքը այնպիսի ուժով զարկեց սեղանին, որ միլիցիոներները նստած տեղից վեր թռան։

— Դո՛ւրս, անմիջապե՛ս դուրս։ Վերցրեք ձեր երեք ռուբլին և չքվեք։

Միլիցիոներները շտապեցին դեպի դուռը։ Ես ուղեկցում էի և բացատրում, թե ով է Փափազյանը։ Փափազյանը իմ ետևից գոռաց.

— Ասա նրանց, որ ես Գերազույն սովետի դեպուտատ եմ։

Այս որ լսեցին միլիցիոներները, շրջվեցին, ներողություն խնդրեցին և այն է՝ ուզում էին երեք ռուբլիանոցը սեղանին դնել, բայց վիրավորված Փափազյանը նորից գոռաց.

— Դուք չէի՞ք ասում, որ օրենքի առաջ բոլորը պատասխանատու են։

Միլիցիոներները շվարած կանգ առան։

Երեկոյան մոտս էր և նա զղջում էր, որ միլիցիոներների հետ այդպես պահեց իրեն։

* * *

Սովոր մեծարանքի ու հիացումի, սովոր, որ մարդիկ պիտի գոհանան բեմից տվածով և կյանքում իրենից ոչինչ չպահանջեն, վերջին ամիսներին ապրեց մենակության դրաման։ Այլևս չէր խաղում ու եթե խաղում էր, այլևս այն չէր, ինչ մի ժամանակ։ Փափազյանը զգում էր ինչ է կատարվում, բայց չհասկանալու էր տալիս։ Ու չէր դիմանում։ Նրան տեսնում էինք տխուր ու թախծոտ, հուսահատ, երբեմն՝ ծառս եղած՝ պատրաստ՝ թողնելու և փախչելու։ Բայց ո՞ւր. երևի Լենինգրադ. այնտեղ էին աղջիկն ու թոռը։ Եվ գնում էր։ Գնում էր երբեմն երկու ամսով, երբեմն, իր հայտարարությամբ՝ հավիտյան, այլևս երբեք Երևան չդառնալու հաստատ որոշմամբ։ Անցնում էր մեկ, ամենաշատը երկու ամիս. չէր դիմանում, հայրենի հողը ձգում էր, Երևանի կարոտը մաշում էր, ու վերադառնում էր։ Վերադառնում էր ու ասում, թե ինքն էլ չի հասկանում, թե ի՞նչ է կատարվում իր հետ։

* * *

Երբ մի անգամ էլ տրտնջաց, որ իրեն հիվանդատես չեն գալիս, ես, իմ կարծիքով բավական նուրբ, հասկացրի, թե այդպիսի այցերը փոխադարձ են լինում, ինքը ուշադիր չի եղել ուրիշների նկատմամբ, հիմա էլ այդ ուրիշներն են անուշադիր։

— Նախ, սխալվում ես, ո՞ւմ նկատմամբ ուշադիր չեմ ե-

Այո, քեֆի, ուրախության սեր չեմ ունեցել, խուսափել …յդ ճիշտ է, բայց այդ ով է հիվանդ եղել, որ չեմ անհա… տացել։ Ինչքան հիվանդացել ես՝ եկել եմ, Ժիրայրը հիվ…դ է՝ ամեն օր զանգ եմ տալիս, հետաքրքրվում ու խոր…ուրդներ տալիս։ Արմանը անկողին ընկավ, գնացի տես…թյան, դու հո լավ գիտես, որ ես նրանից վշտանալու, վիր…որվելու պատճառներ բավական ունեմ։

…նց։ Ես էլ ոչ մի ձայն չհանեցի։

— Երկրորդը, սիրելիս, դու մոռանում ես իմ պրոֆեսիան. ես …ուն, վաթսուն տարի մարդկանց հետ եմ եղել։ Իմ գործը ն… ծառայելն է. ինձ հետ լաց են եղել, ինձ հետ ծիծաղ… …րիր այս հավակնոտ մտքիս համար, բայց այդպես է. … …շանակություն ունի, թե ես մարդկանց տանը նրանց ուր… կամ տխուր պահին եղել եմ, թե ոչ. կարևորն այն է, որ մ…րդկանց երբեք առանց ինձ չեմ թողել և միշտ աշխատե… բարձրացնել նրանց հոգին։ Դա էլ իրավունք է տալի… …սձ պահանջողի դերում լինել։

…՞ի օր, երբ հիվանդ էր ու մենակ՝ հեկեկաց, լաց եղավ …ախայի պես։ Աչքերից արցունքները վազում էին։

— Այս ի՞նչ փուչ բան է եղել աշխարհ ասվածը։

* * *

Հիվանդության օրերին նրան միշտ տեսնում էի Օթելլոյի խալաթի մեջ փաթթված և ձեռքին էլ մեծ, երկարուկ թաղքեհն էր, որ գործածում էր ներկայացման ժամանակ, երրորդ արարում։

* * *

Զանգահարեց Գևորգ Էմինը և լսափողը հանձնեց բժշկուհի Գալստյանին։ Բժշկուհին ասաց, թե Փափազյանի առողջական վիճակը վատ է, և որովհետև ինքը ճիշտ պատկերացում չունի իր դրության մասին, որոշել է մեկնել Լենինգրադ։ Բժշկուհին խնդրում էր, որ գնամ Փափազյանի մոտ, համոզեմ, որ չգնա։ Ասում էր, թե դա պետք է անել անհապաղ,

որովհետև կարող է նույնիսկ ճանապարհին, ինքնաթիռում տեղի ունենալ աղետը։

Սիրտ չարի մենակ գնալ։ Հեռախոսով կապվեցի Խաչատուր Եսայանի հետ, որ միասին գնանք։

Խաչիկը Փափազյանին չէր տեսել մի քանի ամիս։

Խաչիկը և Փափազյանը նստեցին թախտին, միմյանց մոտ, իսկ ես նրանց դիմացը։ Նկարիչը Փափազյանին գտավ չափազանց փոխված։ Խիստ ազդված՝ գլուխը ետ գցել, աչքերից արցունքներ էին վազում։

Համոզել չկարողացանք։ Նույնիսկ բարկացավ, թե ի՞նչպես մենք, իրեն մոտիկից ճանաչող երկու մարդ, չենք հասկանում, որ ինքը չի կարող մնալ այստեղ, որ պետք է անպայման, գոնե մեկ ամսով մեկնի, տեսնի աղջկան, տեսնի թոռանը, քայլի իր ամառանոցի պարտեզում, գոնե մի-երկու րոպե կանգնի Թինայի հողաթմբի առջև, հիշի անցածը... իսկ ինչքա՜ն շատ բան է կապված Լենինգրադի հետ։ Վերջապես, այցի կգան իրեն Լենինգրադի ընկերները, նրանք մենակ չեն թողնի իրեն։

Ասաց ու գլուխը դրեց Խաչիկի ուսին և լաց եղավ։

Հասկացանք, որ անկարելի է համոզել։ Իմանալով, որ նա վաղը չէ մյուս օրվա համար արդեն տոմս է վերցրել, ասացինք, թե կգանք ճանապարհելու։

— Այդ լավ է, իհարկե, բայց որ վաղը երեկոյան գաք, մի-երկու ժամ դեսից-դենից զրուցենք՝ ավելի լավ կլինի։

Ու հետո ավելացրեց.

— Бог знает, что ждёт меня.

— Ну, Ваграмчик, скажешь?— ասաց Խաչիկը մտերմաբար և միաժամանակ նորից գլուխը ետ գցեց՝ հուզմունքը չմատնելու համար։

* * *

Ինչպես խոստացել էինք Խաչիկն ու ես, գնացինք։ Ճանապարհին նկարիչն ասաց, թե ինքը մի կես ժամ ունի, ոչ ավելի, և խնդրեց այնպես անել, որ Փափազյանի մոտից շուտ դուրս գանք։ Խոստացա։ Գնացինք կես ժամով, բայց մնացինք երեք ժամից ավելի։

Ընդունեց անտրամադիր, մռայլադեմ, նույնիսկ մի չար բան կար հայացքի մեջ։

— Ի՞նչ եք աշխարհը խառնել իրար, ի՞նչ եք մարդկանց ոտի հանել իմ դեմ։ Ի՞նչ է պատահել, ո՞վ ասաց, թե ես հիվանդ եմ, հասկացեք, ես հիվանդ չեմ և շատ լավ եմ զգում ինձ։

Պարզվեց, որ այդ օրը նրա մոտ, բացի բժիշկների մի խմբից, եղել են կուլտուրայի մինիստր Կամո Ուդումյանը և Սունդուկյանի անվան թատրոնի դիրեկտոր Մխիթար Դավթյանը, և բոլորն էլ խոսքները մեկ են արել՝ համոզել, որ չըմեկնի։

— Ի՞նչ է, վախենում եք, որ մեռնե՞մ։ Մեռնում եմ, մեռնեմ։ Իսկ թե որտե՞ղ կմեռնեմ, դա իմ որոշելու բանն է, և ոչ ձեր։ Հասկացա՞ք։ Հասկացա՞ք, թե չէ։

Երբ խաղաղվեց, անցանք հազար ու մի հարցի, գլխավորապես թատրոնի շուրջ։ Եվ այդպես այլևս չանդրադարձանք ոչ իր հիվանդությանը, ոչ էլ մեկնելուն։ Ինչի մասին էլ խոսում էինք՝ միշտ վերադառնում էինք «Լիր արքային», իր այն դերերին, որ խաղացել է Լենինգրադում, հետո՝ իր ռուսական շրջիկ խմբի հետ։

Աստիճանաբար տրամադրությունը փոխվեց, և հիմա մի քնքշություն էր իջել վրան, որ առաջ երբեք չէի նկատել։

Ինձնից խոսք առավ, որ անպայման այցի գնամ իրեն Լենինգրադ։

— Քեզ համար էլ լավ կլինի, մի փոքր կհանգստանաս, կցրվես, կզրուցենք։

Խաչիկն ասաց.

— Վահրա՛մ, ես քեզ լավ գիտեմ, հիմա փախչում ես Երևանից, երևի իսկապես այստեղ մնալ չես կարող։ Կհասնես Լենինգրադ, կանցնի մի օր, մի շաբաթ, ամենաշատը տասն օր, և չես դիմանա, կվերադառնաս, կուզենաս գալ։ Դու այլևս չես կարող ապրել առանց Երևանի։

Քթի տակ ծիծաղեց։

— Ճիշտ է։ Հենց դրա համար էլ ուզում եմ, որ Ռուբենը գա, Երևանի կարոտը նրանից առնեմ, մինչև կարոտս քաշի ինձ դեպի Երևան։

— Կգաս, չէ՞։

Ասաց ու նայեց իմ կողմը, ուղիղ աչքերիս մեջ։ Ու թող զարմանալի չերևա, եթե ասեմ, որ ինձ թվաց, թե տեսնում եմ մահվան ստվերը նրա հայացքի մեջ, ճակատին դրոշմված։

— Ես քեզ նամակ կգրեմ։

* * *

Այդպես էլ չհաջողվեց Փափազյանին համոզել, որ Լենինգրադ չգնա։ «Դևը» մտել էր մեջը և առաջվա պես նորից տեղահան էր անում, մղում դեպի հեռուները։

Ճանապարհեցինք մարտի 28-ին։

Օդանավակայանում քիչ մարդ կար։ Խաչատուր Եսայանն էր, Մխիթար Դավթյանը, Արփենիկ Խաչանյանը իր քրոջ՝ Գոհարիկի հետ, Փափազյանի քարտուղարուհին՝ Անահիտ Մանվելյանը, դերասաններից Մամիկոն Մանուկյանը և Անատոլի Թորգոմյանը։

Փափազյանին ուղեկցում էր մի երիտասարդ բժշկուհի՝ Նորա Այվազյան, որը ճանապարհին օգնություն էր ցույց տալու, եթե պահանջվեր և, բացի այդ, Լենինգրադի բժշկական շրջաններին ներկայացնելու էր հիվանդի վիճակը։

Թվում էր, թե վերջին անգամն ենք տեսնում...

Ինքնաթիռն օդ բարձրացավ, ինչպես միշտ։ Եվ ինչպես չի լինում ամեն անգամ, տուն դարձանք կոտրված սրտով։

Երևան վերադառնալով՝ բժշկուհին բերեց Փափազյանի երկտողը, որով հիշեցնում էր իր հրավերը՝ մի տասն օրով հյուր լինել իր ամառանոցում, Օլգինոյում։

Լենինգրադից հասնող լուրերը մխիթարական չէին։ Հեռախոսով կապվեցի դստեր՝ Մարիայի հետ։ Ասաց՝ անհույս է, միտքը երբեմն մթագնվում է, անկապ բաներ է ասում։

Շտապեցի մեկնել և ապրիլի 21-ին Լենինգրադում էի։

Չորս ժամ քսան րոպե տևեց թռիչքը։ Չշտապեցի Օլգինո, վախ կար մեջս, արդյոք ի՞նչ վիճակի մեջ կգտնեմ իրեն։ Երկու ժամից ավելի թափառեցի քաղաքում, բայց հետո մտածեցի, որ արածս երեխայություն է, մեկ է՝ գնալու եմ, էլ ինչո՞ւ հետաձգել, գուցե օրհասական պահ է և տեղ հասնելս ավելի ճիշտ կլինի։

Իմ դիմաց նստած էր Փափազյանը, ոչ այն Փափազյանը, որին տեսել էի Լենինգրադ մեկնելու նախօրյակին՝ անտրամադիր ու մռայլ, հուսահատված, դառնացած, ընդունակ ամեն պահ պոռթկալու, ոչ էլ օդանավակայանի Փափազյանը՝ թեև ժպտերես, նույնիսկ հակված՝ կատակներ անելու, բայց մահվան ստվերը դեմքին։ Իմ դիմաց հիմա նստած էր Փափազյանը, որը եթե չասեին՝ չէիր իմանա, թե հիվանդ է։ Ճիշտ է, ծեր էր ու խարխլած, աչքերի փայլը խամրած, բայց նախկինի հետ համեմատած բավական կազդուրված էր, դեմքի արտահայտությունն էլ խաղաղ։ Դատում էր հանգիստ, հիշողությունը տեղը։ Դեպքեր էր պատմում, խորհրդածում և մի անգամ չեղավ, որ մտքի թելը կորցներ։

Մարիային հարցրի, թե սա ի՞նչ է նշանակում։

— Ձեզանից ոչ ոք հորս չի ճանաչում։ Նա այնպիսի կամք ունի, որ ուզածը կանի։ Եթե վճռեց հնարավոր չէ կանգնեցնել նրան։ Իմացավ ձեր գալը և ներքուստ հավաքեց իրեն։ Դուք կգնաք՝ էլի նույնը կլինի։ Հարազատների մոտ իրեն բարձիթողի է անում։ Գալիս են բժիշկները՝ դառնում է ուրիշ մարդ։ Եթե կամենա՝ այսօր բեմ էլ դուրս կգա։ Թե ինչ կլինի ներկայացումը՝ այլ հարց է, բայց այնքան ուժ, ինչքան պետք է ներկայացումը սկսելու և ավարտելու համար՝ կգտնի իր մեջ։

Լռեց մի պահ, հետո շարունակեց.

— Հավատացե՛ք ինձ, որ եթե նա մինչև հիմա ողջ է, ապա իր կամքի շնորհիվ։ Նա կարողանում է մահը վանել իրենից, չթողնել, որ մոտ գա։ Ճիշտ եմ ասում, մի ուրիշ հիվանդ նրա այժմյան վիճակում՝ վաղուց չէր լինի։

* * *

Հարցրի, թե ի՞նչ է անում։

— Ոչինչ, բարեկամս, երևակայիր՝ ոչինչ։ Ես՝ ու ոչինչ չանեմ, պատկերացնո՞ւմ ես։ Մի ժամանակ կարդում էի և բավական շատ, հիմա թմրություն է իջնում վրաս, հազիվ եմ հասցնում աչքի անցկացնել «Յումանիտեն», «Ունիտան»։

Շա՜տ, շատ բան կա մտքիս մեջ, պետք է մեկը, որին թելադրեմ, իսկ այստեղ ոչ ոք չկա։ Ա՜յ եթե Անահիտը այստեղ լիներ, շատ լավ կլիներ, կթելադրեի նովելներս։ Մեծածավալ գիրք կլինի, երևի քսանհինգ մամուլ, գուցե նույնիսկ ավելի։ Մի-երկու նովել կպատմեմ քեզ, պատահած դեպքեր են բոլորը։ Մի մասը մտքիս մեջ է, մի մասն էլ ժամանակին, երիտասարդ տարիներիս եմ գրել, շտապ, մշտական վազքիս կարճ դադարներին, վերախմբագրել է պետք, ինչ-որ բան էլ փոխել։ Կան և այնպիսիք, որոնց միայն ուրվագիծն եմ քաշել, աչքի զարնող դեպքերը, նրանց միջև ընկած գործողությունը, հիմա պետք է նովել դարձնել, բնավորություններ մշակել, հոգեբանական անցումներն ապահովել, փոխհարաբերություններ ստեղծել ու պատճառաբանել։ Մի խոսքով՝ մի քանի ամիս է պետք և գիրքը պատրաստ կլինի։

Կանգ առավ, ձեռքը տարավ դեպի «Ոմիտայի» նոր համարը, բայց չբացեց, և առաջ տարավ խոսքը.

— Այդ գրքից առաջ շատ կուզենայի Դանթեին անդրադառնալ։ Գևորգին,— Աբաջյանի մասին է խոսքը,— խոստացել եմ գրել Դանթեի մասին, բացատրել, թե ինչպես եմ հասկանում Իտալիո այդ մեծագույն բանաստեղծին։ Նա ուզում է, որ հանդես գամ հեռուստատեսությամբ։ Շատ երկար բան է, չէ՞, կարծում եմ, որ հարկավոր է կրճատել. թերևս հեռացո՞ւյց կամ հեռատեսի՞լ, լավ, դրա մասին թող ուրիշները մտածեն։ Հա՜, Գևորգը կամենում է, որ իտալերեն կարդամ և հետո մեկնաբանեմ։ Կարևո՞ր է։ Ուրեմն դու է՞լ ես կարծում, թե պետք է անել։ Ես կարևոր եմ համարում և անպայման կանեմ։ Դանթեին շատ եմ սիրում։ Մի ժամանակ օր չկար, որ ձեռքս չառնեի և մի քանի էջ նորից չկարդայի։

Մի պահ հետո.

— Ձէ՜, պետք է թելադրել, պետք է աշխատել, պետք է, վերջապես, թղթին հանձնել մտքերս, խոհերս։ Ինչքա՜ն ժամանակ է չեմ գրել, չեմ թելադրել։ Շատ բան է չարչրկում միտքս, շատ գրելիքներ կան, բայց ամենից առաջ՝ Դանթեն։ Ա՜յ. եթե կարողանայիր կարգադրել Անահիտի գալը՝ մեծ բան արած կլինեիր։

* * *

Հարցրի, թե ե՞րբ է զգացել, որ ինքը գրել գիտե։

— Վաղուց, դեռևս Փարիզում։ Մի օր հյուր էի Կավրոշի տանը։ Բավական մարդ կար, այնտեղ էր նաև Արշակ Չոպանյանը։ Մի դեպք պատմեցի, սիրո պատմություն, բոլորը զգացվեցին, իսկ Անահիտը լաց եղավ։ Չոպանյանն ասաց․ «Պարոն Փափազյան, դուք պետք է գրեք, պետք է անպայման գրեք, դուք գրող եք»։

— Շատ անհասկանալի է, թե ինչպե՞ս դրանից հետո մարդը կարող է չգրել կամ գրել քսան տարի անց միայն։

Ժպտաց։

— Գիտե՞ս ինչ, դա էլ իր պատճառն ունի։

— Ժամանակ չե՞ս ունեցել,— շտապեցի ես։

— Այո, իհարկե, ժամանակ չեմ ունեցել։ Գրելու համար հանգիստ, նստակյաց կյանք է հարկավոր, իսկ ես միշտ վազքի մեջ եմ եղել, թատրոնով կլանված, թատրոնին անձնատուր և ամեն անգամ, երբ մտքովս անցել է գրիչ առնել ու մի բան գրել, զգացել եմ ինձ դավաճանի դերում։ Ինձ թվացել է, թե դավաճանում եմ բեմին, իսկ թատրոնը ինձ համար ամեն ինչ է, թատրոնն այն է, որին երբեք չեմ դավաճանել ոչ մեկ պարագային։

— Իսկ ինչպե՛ս եղավ, որ դա 1954-ին չխանգարեց գրելու «Հետադարձը»։

— Եթե ոչ գիտակցությունս, ապա բնազդս երևի ասում էր, որ մայրամուտիս եմ մոտենում և, դժբախտաբար, այլևս այն չեմ թատրոնի համար, ինչ էի։

* * *

Մի քանի անգամ անդրադարձավ Հոբելյանին։ Ես նրան հասկանում էի։ Փափազյանին հոբելյանը, որպես այդպիսին՝ պետք չէր։ Նա պարզապես երազում էր հանդիսատեսի հետ մի նոր հանդիպում ունենալ։ Թեկուզ այլ կերպ, այլ ձևով, թեկուզ վերջին անգամ, բայց այդ հանդիպումը պետք է լիներ։ Հոբելյանը մի առիթ էր՝ վերադարձնելու իր հաղթական երիտասարդության օրերից մեկը՝ տեսնել իրեն նորից հասարակու-

թյան կենտրոնում՝ որոտընդոստ ծափահարություն, խանդավառ բացականչություններ, բեմ նետվող ծաղիկներ... Դերասան էր նա և սիրում էր այդ բոլորը։ Շատ էր տեսել, շատ էր վայելել, ավելի, քան որևէ հայ դերասան վերջին կես դարում, բայց դարձյալ ծարավի էր այդ ամենին, որ արտիստի հաջողության անբաժան մասն է կազմում մշտապես, դառնում անհրաժեշտություն, կենսական պահանջ։ Դժվար է ասել՝ ում վիճակն է ավելի ծանր, նրա՞նը, ով տեսել է ու վայելել այդ ամենը, և դրանից մնացել է լոկ մի հուշ, թե նրանը, որ երբևէ չի հասել փառքի կատարին և չգիտե, թե ինչ բան է դա, բայց երազում է դրա մասին։

Ասաց, թե ինքը Երևան կգա երեք օրով միայն, և չի կամենում խցկանել իր տանը, խնդրում է սենյակ վերցնել հյուրանոցում։

— Չսիրեցի բնակարանս։ Երբեք լավ չեմ զգացել ինձ այդ տանը, արդյոք, նոր բնակարանս մինչև տարվա վերջը պատրա՞ստ կլինի...

Նա խոսում էր, իսկ ես մտածում էի, որ թափառումների սովոր արտիստը նորից գլուխ է բարձրացրել և, ըստ երևույթին, Հոբելյանն էլ դիտում է որպես հերթական մի հյուրախաղ։

— Չէի համաձայնի, որ հոբելյանս արվի, բայց եթե համաձայնությունս տվի և հիմա էլ ուզում եմ ու սրտանց եմ ուզում, ապա նրա համար, որ իմ հոբելյանը չի լինելու, դա կլինի հայ թատրոնի հոբելյանը։

Մի պահ կանգ առավ, զննող հայացքով նայեց ինձ ու ավելացրեց.

— Օ՜, եթե ողջ լինեին Սիրանույշն ու Աբելյանը, իմ թանկագին խաղընկերները՝ Արուսն ու Համբիկը, Մանվելյանը, Ջանանը, Հրաչը վերջապես, այո, իմ հոբելյանը կլիներ ի՜մ հոբելյանը, սակայն, քանի որ նրանք չկան, մնացել եմ ես և, բնականաբար, ես կընկալվեմ ոչ միայն որպես Փափազյան, այլ որպես մեկը դերասանական հին փաղանգից։ Իմ մեջ կտեսնեն նաև նրանց, իմ մեջ կփնտրեն նրանց։ Ինձ կմեծարեն, բայց նկատի կունենան նաև նրանց, իսկ նրանց անդրադառնալ, թեկուզ մտքով՝ նշանակում է անդրադառնալ հայ

թատրոնին։ Եթե Սիրանույշը հայ թատրոնի անուշիկ մաման էր, ապա Աբելյանն էլ հայր էր դալիս ամենքիս։ Եվ դիմենք աշակերտական թվանշանների օգնությանը. հոբելյանական մեծարանքը տարբեր չափեր ունի ամեն պարագային։ Եթե մեծարանքիս չափը պետք է լիներ թվանշաններով, ասենք, թե գերազույնը՝ հինգ, ապա հիմա կլինի հինգ ու խաչ։ Զկասկածես մի պահ և իմացիր, որ հինգին գումարված խաչը թեև հասցեագրված ինձ՝ բայց կըլինի անցած-գնացած ընկերներիս արդար բաժինը։ Դա կըլինի մի հավելում, որ կառաջանա նրանց պայծառ հիշատակին տուրք տալու բնական պահանջից։

* * *

Մի օր հարցրեց.

— Ի՞նչ ես կարծում՝ հոբելյանից հետո դժվա՞ր է լինելու վիճակս։

— Ուրիշինը՝ գուցե, բայց քոնը՝ հազիվ. թե. դու թատրոնից բացի, մի ասպարեզ էլ ունես, գրում ես։

— Ճիշտ է, իրավացի ես, բայց դերասան եմ նախ և առաջ,— խուլ արձագանքեց խոսքերիս։ Պատկերացրու մի վայրկյան՝ մարդը ութսուն տարեկան է դարձել, հոբելյան են անում, մեծարում, հիշեցնում փառքդ, փայլդ, ամպագոռգոռ խոսքեր ասում և հետո մնում ես տանը, ձեռքերդ իրար բերած։ Ի՞նչ անել. օրվա լրագի՞րն աչքի անկացնել, թո՞ւղթ բանալ ու եթե մեկը հիշեց ու դուռդ բացեց՝ լավ, իսկ եթե չէ՝ գնա ու ապրիր մեն-մենակ։ Տարիների բուռն ու աղմկալի կյանք, հորիզոնից հորիզոն, իսկ հիմա՝ հուշ և ուրիշ ոչինչ։ Սոսկալի՛ է…

Լռեց։

— Չէ, իսկապես լավ է, որ ես գրել գիտեմ և մի բան կարող եմ անել, հակառակ պարագային սարսափելի կլիներ։ Ես չէի դիմանա, կխենթանայի. ես սովոր չեմ պարապ մնալու։

— Գրելուց բավականություն չե՞ս ստանում։

— Օ՜, մեծ հաճույք։

— Մանավանդ որ ընթերցողն անհամբեր է քո նոր գրքերին։

— Հասկանում եմ, հասկանում, բայց դու էլ հասկացիր. այնուամենայնիվ, նույնը չէ,, համենայն դեպս թատրոնի մարդու համար։ Թատրոնն ուրիշ է, հասկանո՞ւմ ես, թատրոնը՝ այդ եւ եմ։ Գիրքն ապրում է գրողից անկախ, ինչպես ծնողի համար նրա զավակը։ Դերասանը թատրոնը կրում է իր մեջ։ Ես ամեն ինչ պատկերացնում եմ, բայց թատրոն չլինի՝ այդ մեկը անկարելի է պատկերացնել։ Սիրելիս, քեզ լավ հայտնի է, թե ինչպես է միտքս հիմա չարչրկվում՝ ի՞նչ պիտի լինի թատրոնի հետ, վաղը, մյուս օր ի՞նչ է սպասում նրան։ Գրել թե նկարել նույնն է, բայց բեմում խաղալը նույնը չէ, ոչ, նույնը չէ. ի՜նչ անճարելի հաճույք է՝ զգալ քո դիմաց հազարաչքանի մի հրեշ՝ պահանջկոտ, հավակնոտ, և կարենալ նրա, այդ հրեշի շլինքից բռնել ու տանել քո հետևից՝ ուր ուզում ես. ի՜նչ երջանկություն է և ո՞ր արվեստը կարող է դրա հետ համեմատվել, ի՞նչը կարող է տալ այդ արբեցնող ուրախությունը։

Մի պահ լռելուց հետո, գլուխն օրորելով.

— Մի՛ զարմանա, մի՛ զարմանա բոլորովին, բարեկա՛մս, եթե վերջերս աշխարհն ինձ երբեմն փուչ է թվում, կյանքը՝ անարժեք մի բան։

— Ով՝ ով,— բողոքեցի ես,— դու իրավունք չունես գանգատվելու։ Փառահեղ կյանք ունեցար և գանգատվելդ մեղքի պես բան է։

Վշտով լի հայացքն ուղղեց ինձ։

— Վերջերս դու դադարել ես ինձ հասկանալ։ Ա՛յ հենց դրա համար, որ շա՜տ բանի հասա, դրա շնորհիվ էլ հիմա, երբ այդ բոլորը արդեն չկա, և կա միայն որպես անցյալ, որպես հիշողություն, ա՛յ դրա համար էլ դատարկություն եմ զգում շուրջս և ինձ մնում է մխիթարվել, որ կյանքիս այս օրերին մի երկու լավ բարեկամ ունեցա։

* * *

Մի երեկո հարցրի, թե ինչո՞վ բացատրել, որ երբ թելադրում է, շատ ավելի լավ է ստացվում, քան երբ գրիչը ձեռքն է առնում։ Արդյոք, ստեղծագործակա՞ն խառնվածքի հարց է։ Այդպես է եղել, օրինակ, նաև Սունդուկյանը։

— Դուք ինձ գրող եք համարում։ Ես ճիշտն ասած, մրտքումս ծիծաղում եմ, բայց մտածում եմ, եթե ուզում են՝ թող համարեն։ Դերասան եմ, միշտ դերասան եմ, գրելիս էլ դերասան եմ, գրելիս էլ շարունակում եմ խաղալ։ Ես կերպար եմ ստեղծում ինձ համար, մտնում նրա էության մեջ ու թելադրելիս ես չեմ, այլ նա է, որ խոսում է։ Եվ եթե մեկ-մեկ էլ պատմածիս մեջ անցած-գնացած դեպքն այնպես չեմ ներկայացնում, ինչպես եղել է, ոչ թե նրա համար, որ չեմ հիշում,— թեև այդ էլ է պատահում,— այլ նրա համար, որ կերպարը, որ ես եմ այդ պահին, այլ կերպ է մտածում, այլ բան է զգում, երևակայությունը թելադրում է և տանում նրան մի ուրիշ ուղղությամբ։ Դրածս, սիրելիս, նույն դերասանությունն է, բայց գրական ձևերի մեջ դրված։

* * *

Հարցրեց մի օր, թե Արևելյան Եվրոպայի ո՞ր երկրներում եմ եղել։

— Միայն Ռումինիայում։

Հետաքրքրվեց, թե ի՞նչ տպավորության եմ։ Ասացի, որ համարյա թե չի զիջում Արևմտյան Եվրոպայի մյուս երկրներին։

— Ճիշտ ես։

Մի փոքր հետո։

— Շա՛տ ճիշտ ես։

Հեռացրեց մի պահ հայացքը, ապա նորից դառնալով ինձ՝ հարցրեց.

— Իսկ գիտե՞ս, թե ինչու։

Եվ չսպասելով, թե ինչ կասեմ, պատասխան տվեց իր հարցին.

— Հնում Ռումինիան Հռոմի գաղութն էր։ Եղե՞լ ես Կոստանցա։ Տեսե՞լ ես հնագիտական պեղումների ժամանակ գտնված նմուշները։ Հին հռովմեական մշակույթ է, որ եկել ու թափանցել է Պոնտական ծովի այդ ափերը։

Զարաճճի ժպտաց։

— Մի բանաստեղծ է եղել, անունն ի՞նչ էր, չեմ հիշում, ա՛յ, դրան Կեսարը աքսորել է Կոստանցա։ Նկատելով բանաս-

տեղծի սիրաշեղ հայացքն իր կնոջ վրա՝ բռնել ու քշել է խեղճին։

Հայացքը լարվեց։

— Չէ, չեմ հիշում, չեմ կարողանում հիշել անունը։ Դու է՞լ չես հիշում։

— Գիտեմ, բայց միտս չի գալիս։ Արձանն էլ դրված է Կոստանցայում, ծովի ափին։

— Լեզվիս ծայրին է անունն ու չեմ կարողանում հիշել։

— Վարպետ, հիշողությունը չի սիրում բռնություն, միտքըդ հանգիստ թող ու կհիշե՛ս։

— Ճիշտ ես։ Չեմ հասկանում, թե դո՞ւ ինչու չես հիշում, երիտասարդ մարդ ես։

— Նախ՝ երիտասարդ չեմ արդեն, հետո, վերջապես, ես էլ կարող եմ մոռանալ։

— Հա՛, իհարկե։

Գիշերվա կեսին, մի արթուն պահի, հիշեցի՝ Օվիդիոս։ Առավոտյան նախաճաշին ասացի։

— Օ՜, իհարկե, Օվիդիո՜ս,— ուրախ բացականչեց,— ե՞րբ հիշեցիր։

— Գիշերը, ժամը երեքը կլիներ։

— Ամո՛թ քեզ։ Ի՞նչպես էլ համբերել ես, Գայիր, արթնացնեիր։

Կարճ դադարից հետո։

— Օվիդիոս, իհարկե՛, Օվիդիոս,— նորից բացականչեց մի բան գտած մարդու ուրախությամբ, որին հաջորդեց լատիներեն մի երկու քառատող՝ բանաստեղծի գրածներից։

* * *

— Ի՞նչ ես կարծում, Հոբելյանից հետո կառավարությանը չխնդրե՞մ ուղարկի ինձ արտասահման։ Շատ չէ, մի ամսով։

Ասաց ու որսաց իմ զարմացած հայացքը։

— Կարծում ես խաղալո՞ւ համար։ Չէ, այլևս խաղալ չեմ կարող։ Կկամենայի Իտալիա գնալ և ուսուցիչներիս հետքերը գտնել։ Կկամենայի Ֆրանսիա գնալ, Մարսելում քույրեր ունեմ, կարոտս առնեմ նրանցից։ Փարիզում էլ Անահիտի եղբայրներն են։

— Իսկ առողջական վիճակդ թույլ կտա՞։
— Ի՞նչ է եղել որ, ես շատ լավ եմ զգում ինձ։ Բժիշկներին էլ մի հավատա, հաճախ չափազանցնում են։ Դա նրանց սովորությունն է և ինչ-որ չափով՝ պարտքը։ Հետո, վերջապես, դու էլ արի հետս, միասին կլինենք։ Ինձ համար էլ լավ կլինի, քեզ համար էլ։
— Իսկ Պոլիս չե՞ս ուզում գնալ, չե՞ս ուզում մի անգամ էլ վերհիշել մանկությունդ։
— Որ ճիշտն ասեմ՝ ուզում եմ, ու երևի չափազանց, բայց չեմ գնա։
— Ինչո՞ւ։
— Ստամբուլի թուրքերը միշտ էլ իմ մասին մեծարանքով են խոսում։ Վերջերս էլ,— դեռ Երևանումն էի,— ռադիոյով թատրոնի մասին էին խոսում։ Հիշեցին Վարդովյանին, Մնակյանին։ Իմ անունն էլ տվին՝ «Վահրամ բեյ»։ Բայց չեմ գնա. ժողովրդիս աղաղակը ականջիս մեջ է, չի մոռացվում։

* * *

Այս խոսակցության հաջորդ օրը, երեկոյան դեմ, ասաց.
— Երեկվա ասածիս շատ չհավատաս։ Ուսուցիչներ, քույրեր, այնպես էի ասում։ Գնալուս պատճառն ուրիշ է։
Լռեց։
— Ճի՞շտն ես ուզում իմանալ։ Կամենում եմ վերջապես արտասահմանը տեսնել։
— Ինչե՞ր ես ասում, վարպետ, չեմ հասկանում, ինչպե՞ս թե արտասահմանը տեսնես, երկրագնդի վրա տեղ չի մնացել, որ չլինես։
— Ա՜խ, դու էլ չես հասկանում ինձ։ Վա՜յ ինձ, ի՜նչ մեղք եմ ու ի՜նչ մենակ։
Գլուխը բռնեց և հուսահատ օրորեց։
— Ես եղել եմ արտասահմանում, շատ տեղեր եմ եղել, շատ տեղեր էլ, երևակայիր, չեմ եղել։ Բայց դրա մասին չէ խոսքը հիմա։ Ամբողջ կյանքս վազք է եղել, ինչպես գիտես։ Քաղաքից քաղաք եմ անցել, երկրից երկիր՝ առանց շունչ քաշելու։ Իմ բոլոր շրջագայությունները գործ են եղել, աշխատանք, պարտականություն։ Երբ Փարիզ եմ հասել ու

մի հայտնի սրճարանում նստել, նախաճաշել, ծխել, ըմպել՝ դարձյալ լարված վիճակի մեջ։ Մտածել եմ, թե ինչպես նստեմ, ինչպես պահեմ ինձ, որ ղավառացու տեղ չդնեն։ Երիտասարդ տարիներս Իտալիայում կամ նույն Փարիզում չէի մտածում այդ մասին։ Իսկ հետո, արդեն ուրիշ էր։ Ցերեկը խաղ, երեկոյան խաղ։ Միշտ մտածել եմ, թե մի ժողովուրդ եմ ներկայացնում, մի ազգ։ Եվ այդ պարտականության մեջ՝ հանգիստ չեմ ունեցել։ Հանգիստ պահիս էլ՝ օտարության մեջ լարված եմ եղել։ Հիմա ուզում եմ գնալ, գնալ անցած կյանքիս հետքերով, բայց արդեն հանգիստ։ Ուզում եմ Իտալիո փոքր քաղաքներն անցնել, մի-երկու օրով սենյակ վարձել, վայելել տանտիրուհու ծառայելու պատրաստակամությունը, իսկ ամուսնուն խոսեցնել, իմանալ, թե միտքն ինչով է ապրում։ Ուզում եմ գնալ սուրբ Մարկոսի հրապարակը, այնտեղ հին, շատ հին սրճարաններ կան։ Կա մի սրճարան, ուր Գարիբալդին է եղել, նստեմ ժամերով, նստեմ անվրդով հոգով, չճանաչված, փառքից և աղմուկից հեռու։ Հասկացիր, ուզում եմ այնտեղ ինձ զգալ այնպես, ինչպես այստեղ եմ զգում, առանց այն լարումի, որի մեջ էի, երբ միտս էի դրել աշխարհի փառքից մի բեռ մեջքիս տուն դառնալ։ Փարիզում էլ շատ հին սրճարաններ կան, և ինչ մեծ բավականություն կլինի ինձ համար նստել ու դիտել շուրջս, ինչպես մի պարզ այցելու, մի գավաթ սուրճի առջև, նստել ու խորհել, թե մարդն ի՛նչով է մարդ։ Ես գիտեմ, որ իմ այս պահանջի մեջ ինչ-որ հիվանդագին բան կա, բայց ի՞նչ անենք եթե մի այդպիսի անմեղ, թեկուզ առաջին հայացքից փոքր-ինչ արտառոց ցանկություն մտել է ուղեղս և հանգիստ չի տալիս ինձ։ Մի՞թե չեմ վաստակել այդ իրավունքը։

Ասաց ու նայեց ինձ։

— Հիմա հասկացա՞ր։

* * *

Ապրիլի 27-ին ճանապարհվեցի Երևան։ Բաժանվելիս ասաց.

— Ասում ես հոբելյանը նշանակված է 10-ին։ Լավ, շատ

լավ։ Ուրեմն հունիսի ութին կամ իննին կհանդիպենք Երևանում։ Զեկուցումդ պատրա՞ստ է, թե նոր ես գրելու։ Մի հետաձգիր, խնդրում եմ, մի թողնիր վերջին օրվան։ Քո այդ սովորությունը բոլորովին չսիրեցի։

— Վարպետ, ես կգամ քո տանից, այստեղից միասին կգնանք։ Բժշկուհուն էլ հետս կբերեմ։

— Բժշկուհո՞ւն. ինչի՞ համար։ Ես այն վիճակում չեմ, որ բժշկուհու կարիքը լինի։ Իսկ ինքդ արի, այն ժամանակ ոչ թե ինքնաթիռով, այլ մեքենայով կճանապարհվենք։ Օ՜, սիրում եմ մեքենայով ճամփորդել։ Կդիտենք մեր շրջակա բնությունը, և գիտե՞ս քանի՜ բնություն կփոխվի մինչև տեղ հասնենք։

* * *

...Հունիսի 5-ին Արփենիկ Խաչանյանին թելադրում էի Փափազյանի հոբելյանական երեկոյին կարդացվելիք զեկուցումը, երբ զանգահարեցին ինստիտուտից ու ասացին, թե Մարիան հեռախոսով հայտնել է հոր մահը։ Ինչքան էլ լավատեղյակ էի Փափազյանի վիճակից, բայց բոթը մուրճի հարվածի նման իջավ գլխիս։

Հենց նույն օրը, երեկոյան, կուլտուրայի մինիստրության հանձնարարությամբ Մոսկվա թռավ մի պատվիրակություն՝ Գուրգեն Բորյան, Մխիթար Դավթյան, Ալբերտ Ասլամազյան, Գեորգ Աբաջյան և ես։ Մոսկվայից գնացքով մեկնեցինք Լենինգրադ և ապա մեքենաներով Փափազյանի ամառանոցը՝ Օլգինո։

Դռների մոտ հանդիպեցինք Մարիային, նրա դստերը՝ Ժաննային, սպասուհուն՝ Վալյային, որ այդ տանն է տասներկու տարեկան հասակից։ Ուրիշ մարդիկ էլ կային։ Մտանք այն սենյակը, որտեղ մի ամիս առաջ, սեղանի մոտ նստած զրուցել ենք, կատակել, ծրագրեր կազմել... Սեղանը չկա։ Սեղանի փոխարեն՝ դագաղ։ Դա Փափազյանը չէ, ուրիշ մարդ է, բոլորովին այլ մարդ։ Փափազյանը նա է, որ մեր մտքի ու հիշողության մեջ մնացել է որպես հավերժ կենդանի մի գե-

ղեցկություն։ Այդ Փափազյանը պատին փակցված մեծ լուսանկարից ժպտադեմ նայում էր դագաղի մեջ պառկածին։ Մեկը կյանքն է, մյուսը՝ մահը։ Մահն ու կյանքն իրար կողքի էին, ինչպես կյանքում՝ համարյա ամեն ժամ, ամեն վայրկյան։

■ ■ ■

Ես այստեղ պետք է վերջակետ դնեի, եթե Ժաննայի պատմածներից մի երկուսը կարևոր չհամարեի թղթին հանձնել։

— Ձեր գնալուց հետո հայրիկի (նա պապին հայրիկ էր կոչում) վիճակը ծանրացավ։ Օր-օրի վատանում էր։ Թմրություն էր իջնում վրան և անվերջ քնելու պահանջ էր զգում, բայց անկողին չէր մտնում։ Վատ էր զգում, բայց բժիշկներից, ինչպես միշտ, թաքցնում էր։ Նա կարծում էր, որ եթե ասի լավ եմ՝ իսկապես լավ կլինի։ Չէր խոսում մահից ոչ այդ ժամանակ, ոչ էլ դրանից առաջ։ Երկու ամսից ավելի այստեղ էր, ու երբեք մահվան մասին չխոսեց։ Երբեք չասաց, թե վատ է, երբեք չգանգատվեց վիճակի ծանրությունից, չասաց, թե ցավ է զգում։ Երբ, վերջապես, հասկացավ վիճակի լրջությունը, այլևս չպառկեց, գիշերն անց էր կացնում նստած։ Անկողինը նրան վախ էր ներշնչում։ Մտածում էր՝ եթե պառկի, կենթարկվի մահվան, իսկ այսպես թվում էր նրան, թե ինքն է տնօրինում իր կյանքի ընթացքը։

Մի օր այսպիսի բան պատահեց։

Բազկաթոռին նստած, լուռ ու մունջ, նայում էր լուսամուտից դուրս, այգուն, հասակ գցած ածիկներին, որ ինքն էր տնկել մի ժամանակ, երբ ես նոր էի աշխարհ եկել։ Հանկարծ թափով ոտքի ելավ, նայեց շուրջը ինչ-որ բան որոնողի հայացքով և իրեն նետեց սենյակից պատշգամբ, այնտեղից էլ այգի ու վազեց դեպի տատիկիս հողաթումբը։ Շտապեցինք ետևից։ Դիմադրում էր, չէր ուզում տուն դառնալ։

— Որտե՞ղ է իմ տունը։ Ես տուն ունեի, բնակարան, ամառանոց, որտե՞ղ է, ասացեք խնդրեմ, որտե՞ղ է, ես իմ

տունն եմ ուզում, իմ տունը։ Ես իմ անկյունն եմ որոնում այս աշխարհում։

Ում էր պետք գործ դնել՝ նրան տուն բերելու և խաղաղեցնելու համար։

Մի ուրիշ օր, մտամոլոր, դանդաղ քայլերով եկավ խոհանոց, որտեղ ճաշի պատրաստություն էինք տեսնում, և շատ հանգիստ, կարծես ոչինչ չէր եղել՝ հարցրեց.

— Որտե՞ղ է իմ զարդասենյակը։

—Դու թատրոնում չես, հայրիկ,— ասացինք,— տանն ես։

— Տանը չեմ, ես լավ գիտեմ, որ թատրոնումն եմ, բայց չեմ հասկանում, թե ինչո՞ւ չեմ կարողանում զարդասենյակս գտնել։ Որտե՞ղ է, ո՞ր կողմով գնամ, չե՞ք ասի։

Մտածեցինք, որ հակառակվելու կարիք չկա և տարանք նրան իմ սենյակը, որտեղ դուք էիք քնում, ինչպես գիտեք, այնտեղ մի մեծ հայելի կա։

Նստեց հայելու առաջ։ Նայեց իրեն ուշադիր, զննական հայացքով, իսկ հետո շրջվեց դեպի մեզ՝ մեղմ, ներող մի ժպիտ անփայլ աչքերի մեջ, կարծես ասելիս լիներ՝ «չէ՞ որ ասում էի...»։

Նորից նայեց հայելուն, հետո ձեռքը տարավ դեպի երեսը, և, իր կարծիքով, ճակատին մի գիծ քաշեց, հետո մատները տարավ դեպի այտերը... Գրիմավորվում էր, պատրաստվում ներկայացման։ Թե իր դերերից ո՞րն էր խաղում՝ հնարավոր չեղավ հասկանալ։ Գուցե Օթելլո՞ն։

Իրեն մենակ թողինք։

Երբ մի կես ժամ հետո եկանք, տեսանք՝ գլուխը թեքված ձախ կողմի վրա՝ հանգիստ ննջում է։

Ժաննան շարունակեց.

— Հունիսի երեքին ոչ մի խոսք չասաց։ Լուռ էր ամբողջ ժամանակ։ Հարց տայինք՝ գլխով կպատասխաներ կամ էլ անորոշ, չտեսնող հայացքով կնայեր մեր կողմը, որպես դատարկ մի տարածության։ Տպավորությունն այնպես էր, որ նայում է, բայց չի տեսնում։ Հունիսի չորսին հրաժարվեց ուտելուց։ Այդ գիշեր չքնեց, չխոսեց, բոլորին նայում էր մաբած աչքերով։ Լույս հինգի առավոտյան այլևս չկարողացավ

հաղթահարել վրա հասնող թմրությունը։ Քունը հաղթեց։ Եվ այլևս աչքերը չբացեց։ Սիրտը դավաճանել էր նրան քըննած պահին, և այդպես էլ չիմացավ, որ տեղի ունեցավ անխուսափելին...

* * *

Փափազյանի թաղումից երկու շաբաթ հազիվ էր անցել։ Շտապում էի Սունդուկյանի անվան թատրոն՝ գեղարվեստական խորհրդի նիստի։ Ցերեկվա ժամը 12-ը կլիներ։ Կանգնեցրի մի տաքսի։ Ասացի, թե ուր եմ շտապում։ Վարորդը մուգյաղեմ մի երիտասարդ էր, երևի մի 35 տարեկան և տրամադրված չէր զրույցի։ Իմ երկու հարցերի պատասխանն էլ տվեց հեռագրական ոճի այնպիսի կտրուկությամբ, որ չհամարձակվեցի երրորդ հարցը տալ։

Մեքենան կանգնեց «Կոմունարների այգու» մուտքի մոտ։ Խնդրեցի տանել ինձ թատրոնի «հետևի» դռան կողմը, որտեղ դերասանները ելումուտ ունեն։

— Դերասա՞ն ես,— հարցրեց վարորդը։

— Ոչ։

— Իսկ թատրոնի հետ կա՞պ ունես։

— Այո։

— Ուրեմն թատրոնի հետ կապված մարդ ես։

Ես ուղղեցի նրան, ասացի, չի կարելի ասել՝ կապված, ճիշտ ձևը կապվելն է։

Զարմացած նայեց ինձ։

— Ուրեմն ասում ես կապվել։ Զգիտեի, լավ, շատ լավ։ Միտս կպահեմ։

Մի պահ լուռ մնաց, ապա դարձավ իմ կողմը հետաքրքրված հայացքով։

— Փափազյանին ճանաչո՞ւմ էիր։

— Այո։

— Ծանո՞թ էիր հետը։

— Այո։

— Անձա՞մբ։

— Այո։

— Մեծ դերասան էր, չէ՞։

Լավ չհասկացա՝ հարցրեց, թե ասաց։ Հենց այդ ժամանակ էլ տեղ հասանք։

— Սպասե՞մ։

— Միտք չունի, նիստի եմ գնում։

Մտա թատրոն, բարձրացա վեր և պարզվեց, որ դիրեկտորին շտապ գործով կուլտուրայի մինիստրություն են կանչել և նիստը հետաձգված է։ Ցավեցի, որ մեքենան բաց էի թողել։ Դուրս եկա փողոց, տեսնեմ մեքենան կանգնած է, վարորդն էլ դռան մոտ է։

— Ձեզ էի սպասում։

Զարմացա. վարորդը ժպտաց։

— Ներս մտա՝ ինձ ասացին, որ նիստը չի լինելու։ Որոշեցի սպասել. մտածեցի՝ ուր որ է կգա։ Հարցրի, թե դուք ով եք։ Հիմի ես ձեր ազգանունն էլ գիտեմ. Զարյան, Ռուբեն Զարյան, այնպես չէ՞։ Ներող կլինեք, մինչև էսօրվա օրը չէի լսել։ Դե՛, ես թերթ, գիրք չեմ կարդում, բայց գրագետ եմ։ Գլուխ չեմ գնում, ժամանակ էլ չի լինում։ Մի խոսքով՝ ասացին, թե թատերագետ եք, դերասանների մասին եք գրում։ Է՞հ, Փափազյանի մասի՞ն էլ եք գրել։

— Ինչպես չէ։

Մի պահ լուռ մնաց։ Իսկ ես մաքով անդրադարձա այն բանին, որ նա դու-ից անցել էր դուք-ի։

— Գիտեք ինչ կա, ընկեր... հա՛, Զարյան. սրտիս վրա մի բան է ծանրացած։ Ուզում եմ ասել. դե՞մ չեք։ Շնորհակալ եմ, որ դեմ չեք, խնդրում եմ չմերժեք,— ասաց ու մեքենան կանգնեցրեց մի խորտկարանի առջև։

Նա այնպես նայեց, որ մերժել չկարողացա և լուռ հպատակվելով, հետևեցի նրան։

— Ընդամենը մի ոչումկա։ Ես ձեզ պատվել եմ ուզում։

Մի փոքր հետո օղին բերին։ Նախ ինձ համար լցրեց, հետո՝ իրեն։ Բաժակ բաժակի տվինք. ես խմեցի, ինքը՝ չէ։

— Անուշ եղա՞վ։

— Բա դո՞ւք։

— Կխմեի, բայց իրավունք չունեմ, ռուլի վրա եմ։

Մի խորտիկ բերանս գցեցի և ոտքի կանգնեցինք։

— Անպորս ասեմ,— սկսեց նա մեքենայի շարժվելուն պես։— Մի օր մի մարդ կանգնեցրեց մեքենաս, նստեց ու ասաց՝ «Կիևյան»։ Երբ տեղ հասանք, ասաց՝ «շնորհակալություն» ու գնաց։ Մնացի զարմացած։

— Ընկե՛ր, ընկե՛ր,— գոռացի ես,— բա փո՞ղը։

Կանգ առավ, շուռ եկավ իմ կողմն ու ասաց.

— Ես Փափազյանն եմ։

Ասաց ու գնաց։

— Է՞հ, ինչ անեմ, որ Փափազյանն ես,— գոռացի նրա հետևից, իսկ նա իսկի շուռ էլ չեկավ ու մտավ դալանը։

Մի պահ լուռ մնաց։ Երևում էր, որ հուզված է։ Մի փոքր հետո շարունակեց.

— Ժամանակ անցավ, մի տարու չափ կլիներ։ Ու մի օր էլ հաճախորդներից ով նստեց կողքիս, լրագիր էր կարդում, մեջն էլ են մարդու նկարը սև շրջանակի մեջ։ Հայերեն թերթի մեջ էլ, ռուսականի էլ։ Ու մեծ-մեծ տառերով գրված էր՝ «Փափազյան»։ Ու հարցրի.

— Դերասա՞ն էր։

Սա թե՝

— Հա՛, դերասան էր։

Հարցրի.

— Մե՞ծ։

— Համաշխարհային։

Էս, որ ասաց, սիրտս կանգ առավ, քրտինքը վրա տվեց։

— Ե՞րբ է թաղումը։

— Այսօր, ժամը 3-ին։

Մեքենան տարա մի տեղ կանգնեցրի, ինքս վազեցի թատրոն։ Շատ մարդ կար. ես մի տասը հազար ասեմ, դուք քսանն ասեք, ամբողջ քաղաքը լցվել էր «Կոմունարների այգին»։ Մի կերպ, ուժի զոռով ինձ գցեցի թատրոն։ Դագաղը բեմի վրա էր դրված, գլխավերևն էլ կրակ էր վառվում։ Ջահել ժամանակվա նկարն էր կախված, ի՜նչ սիրուն տղամարդ է եղել։ Բոլորը լաց էին լինում, ասես իրենց հարազատին կորցրած լինեին։ Ինձ բեմի հետև գցեցի, ուզեցի սգո պահակ կանգնել, մեղքս քավել, չթողին, քշեցին։ Ու ես խառնվեցի քաղաքին, որ ոտք առած գնում էր դագաղի հետևից։

Լուռ մնաց մի պահ։

— Սրտիս վրա ոնց որ քար ծանրացած լինի։ Դե՛, ասենք, էն ժամանակ չէի ճանաչում, թե ով է։ Չէի ճանաչում, փող ուզեցի, էդ ոչինչ, էդ մեղք չէ, բայց էդ ոնց պատահեց, որ լեզուս չշորացավ երբ ասի՝ «է՞հ, ինչ անեմ, որ Փափազյանն ես»․ էդ մեկը չպիտի ասեի, չէ՛, չպիտի ասեի։

Տեղ հասանք։

— Ես էլ իմ խոստովանությունը վերջացրի։

Ասաց ու ազատ շունչ քաշեց։

Ես ձեռքս դրի նրա ուսին։

— Պետք չի տանջվել, կյանքում ամեն բան էլ պատահում է։ Իհարկե, լավ կլիներ չպատահեր, բայց որ եղել-եղել է․ մեր մեծերին պետք է ամենքն իմանան։

Ուզեցի փող տալ, չվերցրեց։

— Խոստովանահայրը փող չի տալիս, այլ առնում է։ Մեկին պիտի պատմեի, ձեզ պատմեցի ու հանգստացա։

Ասաց ու ժպտաց։

Ես այլևս այդ վարորդին չտեսա, եթե նկատի չառնվի մի «հանդիպում» հեռակա կարգով։

Գնացել էի Մահարուն տեսնելու։

— Այ տղա,— ասաց նա,— մի բան պատմեմ, քեզ կհետաքրքրի։ Երկու օր առաջ մի տաքսի բռնեցի, որ տուն գամ։ Ասի՝ «տար Կասյան փողոց՝ գրողների բնակելի տուն»։

— Գրո՞ղ եք։

Հարցրեց վարորդը։

— Այո։

— Կարելի՞ է իմանալ ձեր ազգանունը։

— Ինչու չէ․ Գուրգեն Մահարի։

Ու այլևս ոչ մի խոսք։

Տեղ հասանք, փող եմ տալիս, չի առնում։

— Փափազյանին ճանաչո՞ւմ էիք, մեծ, համաշխարհային դերասան Փափազյանին։

— Իհարկե։

— Դե որ՝ իհարկե, էլ ոչ մի խոսք։ Եթե ուզում եք էդ մեծ մարդու հիշատակը վիրավորել, վճարեք։

Ասաց ու մեքենան քշեց։

Մահարին ավարտեց խոսքը։

— Հետաքրքիր է, չէ՞․ դու մի բան հասկանո՞ւմ ես։

Ու ես նրան արի վարորդի հետ կապված ամբողջ պատմությունը։

— Այ տղա, էդ հո գրելու բան է․ իսկական նովել։

* * *

Վարորդի պատմածը վերջին գրառումն է։ Մաքրագրեցի ու տարբեր ժամանակներ գրված մյուս թերթիկների հետ այս էլ ամփոփվեց թղթապանակում։

Օրվա այս ուշ պահին Փափազյանի շուրջն են մտքերս։ Գրապահարանից հանում եմ «Հետադարձ հայացքը» ու թերթում։ Անցնում են ժամեր, ու ես նույն բավականությունն եմ ստանում, ինչպես առաջին անգամ, երբ որպես խմբագիր ձեռքս առա գրքի ձեռագիրը։ Թերթում եմ ու գրքի էջերից նայում է ինձ կյանքով լի, ժպտադեմ Փափազյանը՝ մեկ կյանքի խորքերը մտնող, մեկ թեթև արկածների սիրահար, մեկ վերլուծող լուրջ միտք, մեկ անհոգ կատակող, հաճախ չարաճճի, բայց ոչ երբեք չար, մի տեղ իմաստուն, մի տեղ հրճվող երեխա, բայց միշտ սիրտը լայն ու գրեթե ամենքի համար մի լավ, մի բարի խոսք գտնելու հազվագյուտ ձիրքով հարուստ։

Թերթում եմ առաջին գիրքը, թերթում եմ երկրորդը, հասնում վերջին էջի վերջին տողերին։

Դերասանն ասում է, թե ինքը ընթերցողին բերեց հասցրեց իր կյանքի այն կետին, որից դենը մի նեղ արահետ է բացվում ճամփին, ուր տեղ չի լինի երկուսի համար։ Եվ վերջացնում է այսպես․ «Մնա՛ երջանիկ և զավակներիդ, ո-րոնց օրհնեցի, երբեմն պատմիր, թե՛ այսպիսի մի մարդ եղավ մեզանում… եկա՜վ ու անցա՜վ»։

Գրվել է այս 1956-ին։

Այն ժամանակ ոչ միայն մենք էինք հեռու հրաժեշտի այս խոսքին լուրջ նշանակություն տալուց, այլ նաև ինքը՝ Փափազյանը, որը մահվան անդրադարձել է իրեն հատուկ թեթև սրտով, որի համար կյանքի պարտամուրհակում վերջին ժամկետի տակ ստորագրելը նույնն էր, ինչ որ պատանու համար հավիտենական սիրո երդում տալը։

Փափազյանն այն ժամանակ խաղում էր «մահ» հասկացողության հետ, ճիշտ այնպես, ինչպես սարսափում էր անդրադառնալու այդ նույն մտքին իր կյանքի վերջին երկու-երեք ամիսը, երբ մահը չոքել էր արտիստի դռանը։

Մնում էր, որ ողբերգակը իր խոսքերին հավելի բեմում հազար անգամ կրկնածը՝ «մնացյալը լռություն»։ Լռության տեղ սակայն բարձրացող տարիներ եկան՝ նոր դերեր, նոր տիտղոս, երեք ծավալուն հատոր...

Հիմա, երբ չկա Փափազյանը՝ ականջիս լսում եմ նրա շշուկը. «Պատմիր, թե այսպիսի մի մարդ եղավ մեզանում... եկա՜վ ու անցա՜վ»։

Պատմությունն այդ գրվելու է, անշուշտ, ե՞րբ և ո՞ւմ ձեռքով՝ հայտնի չէ, գուցե և ես գրեմ, չգիտեմ, եթե ուժս պատի միայն։ Բայց այն, ինչ արձանագրել եմ նրա գլխով անցածից՝ ականատես բարեկամ լինելով, թեկուզ հատուկենտ դեպքեր, թող նկատվի իբր նյութ այդ մեծ կյանքի պատմությունը գրելու համար։

Զարյան Ռուբեն Վարոսի

**Հուշապատում**

Գիրք առաջին

Հրատ. խմբագիր՝ Վլ. Լ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Նկարիչ՝ Կ. Կ. ԴԱՖԱԴԱՐՅԱՆ
Գեղ. խմբագիր՝ ՕԳ. Ա. ԱՍԱՏՐՅԱՆ
Լուսանկարները ԱՆԴՐԱՆԻԿ ՔՈՉԱՐԻ
Տեխ. խմբագիր՝ Լ. Գ. ՓԻՐՈՒԶՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝ Ս. Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

**Рубен Варосович Зарян**

ВОСПОМИНАНИЯ

(На армянском языке)

Издательство «Айастан»
Ереван 1975

*Հանձնված է շարվածքի 27/XI 1974 թ.։ Ստորագրված է տպագրության 9/IV 1975 թ.։ Թուղթ տպագրական № 1 84×108$^{1}/_{32}$, տպ. 16,75 մամ.=28,14 պայմ. տպ. մամ., հրատ. 22,3 մամ.։*

*Պատվեր 1381։ ՎՖ 08443։ Տպաքանակ 10 000։ Գինը 1 ռ. 66 կ.։*

*«Հայաստան» հրատարակչություն, Երևան-9, Տերյան-91։*

*ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան 65։*